# ԴԱՐԱՊԱՏՈՒՄ

Տեառն Հ. Ղուկասու Վարդապետի
Ինճիճեան
'Ի Միաբանութենէ Մխիթարեան:



ՈՐ Է

## ԱՇԽԱՐՀԱՄԱՐ
ԿԱՄ
## ԸՆԴՀԱՆՈՒՐ
ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

Քաղաքական, Եկեղեցական, Ուսումնական,
և Արուեստական.

Դարուց 'ի չորս բաժանեալ:

-2-

ԴԱՐ ՈՒԹՈՒՏԱՍԱՆԵՐՈՐԴ·
1757—1768

'Ի ՎԵՆԵՏԻԿ
'Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ
1825



# ԱՄԵՐԻԿԱՅԻՆ

Պատերազմին պատճառը, ու սկզբնաւ-
որութիւնը.

1755:

Այս տարի մեզի մէկ նոր տեսիլ մը կը ցուցընէ աշխարհ. ծեծ մը կը բացվի ամերիկայ վարի աշխարհ ինկիլիզին ու ֆրանսզին մէջ, ան վարի աշխարհքին ծեծը պատճառ կըլլայ որ վերի աշխարհ եւրոպա տակնուվրայ կըլլայ, ալ աւելի սաստիկ ու երկան ծեծ կը բացվի զանազան տէրութենց մէջ. անանկով իրաւ կըլլայ ոմանց ըսելը՝ թէ ամերիկայէն գիւտը աւելի վնաս տըւաւ եւրոպացւոց քան թէ շահ: Մարդուս ագահութիւը

ու սաստիկ շահասիրութիւնը պատճառ կըլ-
լայ, ան բաննալ որ շահ պիտի բերեր, ա-
ւելի վնաս բերելու պատճառ կըլլայ ։

Մէկ ուրիշ զարմանալի տեսիլ մընալ ան է՝
որ՝ կըտեսնաս մէկ պզտիկ տէրութիւն մը՝
ինչպէս էր պրուշին տէրութիւնը, աս պըզ-
տիկ տէրութիւնը օխտը տարի հինգ մեծ
տէրութեանց դէմ կըդնէ կըպատերազմի,
նեմցէին, ֆրանսզին, մոսկովին, շվէտին,
ու գերմանական տէրութեն դէմ ։ Աս կը-
ցըցընէ որ՝ աշխըրհիս շատ բանը միայն
բազմութենով առաջ չերթար, հապա ա-
ւելի պէտք է որ՝ գլուխ եղօղը վարպետ ու
յարմար ըլլայ ան բանին մէջ՝ որ բանին
մէջն որ գլուխ է եղած. ինչպէս որ աս պա-
տերազմին մէջ պրուշին թագաւորը Բ ֆե-
տերիքոս գլուխ ըլլալով իր պատերազմին,
պատերազմական արուեստին մէջնալ խիստ
վարպետ ըլլալով, անանկ ըրաւ որ իրեն
դէմ ծեծկըվօղ ամմէն զօրապետներուն
այնչափ տարի դիմացաւ ։

Հիմա գանք պատմելու պատերազմին պատ-
ճառը ու սկզբնաւորութիւնը ։ Շատ հեգ
կըսվի՝ սուտ իրաւ, թէ թագաւորները
դաշնադրութիւն կընեն մէջերնին՝ չէ թէ
ըման սրտանց իրարու հետ հաշտըլվելու հա-
մար, հապա երկու դիացէնալ յոքնած ըլ-
լալով քիչ մը ատեն յոքնութիւննին առ-
նելու համար է որ հաշտութիւն կընեն, ա-
նոր համար ինչ որ ըլլայ՝ իրենց չուզած
դաշնադրութիւնալ ըլլայ՝ ձեռք կըդնեն.
ետքը ան դաշնադրութիւնը պատճառ կըլ-

լայ շատ երկիրներու փոփոխութե՟, և շատ
ջարդի ։ Անանկ եղաւ 1713 ուդրէք եղած
կեղ վրայ դաշնադրութիւնը, և Հիմաւ
1748ին դաշնադրութիւնը Աքվիսկրանայ
եղած, որ կեղ վրայ ու անորոշ խօսքերով
ըլլալով պատճառ եղաւ նոր նոր հակա-
ռակութե՟ սերմներ ցանելու, ոմանք ասանկ
մեկնելով դաշնադրութե՟ խօսքերը, ոմանք
անանկ, անկէց անպակաս կռիւ կըլլար մէ-
ջերնին ։ Ինչևիցէ Եւրոպայի բաներու վրայ
մէկ տեղ կուգային, բարեկամաբար մեկնե-
լով բացատրելով կըշտկէին, բայց ասիայի
մէջ Ինկլիզը ու Ֆրանսզը կռիւ կընէին
իբրև դաշնակից ու օգնական Հնտիստանի
ազգերուն, թէպէտև մրտվլընին ան էր
որ՝ վաճառականութիւնը իրարու ձեռքէն
յափշտակեն, ասանկալ Ափրիկեի մէջ կը-
կռուէին. իսկ ամմէն տեղէն աւելի հիւ-
սիսային Ամերիկայի մէջ ամմէն օր կռիւ
կըլլար Ինկլիզին ու Ֆրանսզին սահմանակ-
ցութեան ( հիւտիւտներու ) վրայ, որոնց
վրայ, բան մը չէր որոշված ան Աքվիսկրա-
նային դաշնադրութեանը մէջ ։
Անկլիզները միշտ ծաւալել կընային ի-
րենց տէրութիւնը նոր սկովտիային սահ-
մանակցութեր վրայ, անկէց երկու թա-
գաւորութեց մէջ միշտ խօսք խօրաթայ կըլ-
լար, իրարու կըսպառնային նորէն ծեծ
բանալու ։ Մէկալ դիւացենալ Ինկլիզը կը-
տեսնար որ՝ տասը տարվան պատերազմին
մէջ որ Ֆրանսզին դէմ ըրաւ, մէկ բան մը
չիշահեցաւ, կարելի է որ Ինկլիզը յատուկ

գիտմամբ ալ չորոշեց դաշնագրութեան պաղի գլխները, և քանատային ու աքատիային սահմանները [1], որպ զի ուզած ատենը ի-րեն դին մեկնէ։ Ասկէց զատ՝ ինկիլիզը շա-տոնցմնէ վրան էր առեր որ աշխըրհիս հա-ւասարակշռութիւնը թագաւորաց մէջ ինքը ըլ-լայ պահօղ, չիթողու որ՝ մէկ թագաւոր մը աւելի մեծնայ. և խելքը միտքը ան էր որ՝ Ֆրանսզին վաճառականութիւնը հնդստա-նի մէջէն ու վարի աշխարհէն ամերիկայ-էն՝ վերցընէ, ջնջէ, մանաւանդ հիւսիսայ-ին ամերիկայէն՝ ուր Ֆրանսզները գաղթա-կան ժողովուրդ ունենալով ուժով էին հոն։ Տեսաւալ որ՝ Ֆրանսզին ծովային ուժը 1751էն ետև խիստ տկարացած էր, վասն զի ամմէն իր սահմաններուն մէջի եղած պատերազմական նաւերը 63 հատ էին, անոնցմէ իրեքնալ բանի չէին իգար, ու թը կարօտ էին գրեթէ բոլորովին նորոգվելու, թող տուր որ՝ փայտ է, հալատ է, թօփ է, ասոնք ամմէննալ Ֆրանսային կըպակսէին։ Աստըկիալ խիստ կարօտութիւն ունէր, վասն զի ինչպէս որ վերը ըսինք, քառտի-նալ Ֆլըւրին մեռնելէն ետև՝ որ Ֆրան-սային եկամուտը կարգի դըրեր, ժԵ լուիզ թագաւորը շատ պարտքի տակ ձգեց Ֆը-րանսան։

Ասոր դէմ ինկիլիզին ծովային ուժը շատ

---

(1) Աս երկիրները ժԴ լուիզ ֆրանկսային թագա-ւորը տըվերեր ինկիլիզի թագուհիին, որ կըսվէր Աննա ըսդվարդ։

վեր էր. 1754ին 89 հատ երկու խափախլը նաւ ունէր. 92 ֆռխաթա. 67 քօռվէթ, ու հավան Թօփու նետօղ, Թող տուր ուրիշ պզտիկ նաւերը. իր Թերսանէները ամմէն տեղ լեցուն էին ինչ որ պէտք էր նաւու, տասնըմէկ նաւալ ապապրերէին նոր շինելու: Սանկ ըլլալով 1755. ապրիլի 22էն սկսեալ հինգ հեղ զանազան նաւատորմիղ (տօնանմա) հանեց զանազան տեղերէն: Նոր երկիր ըսված տեղին դիմացը մէկ ֆրանսզի նաւատորմիղ մը տեսաւ, առանց մէկ բարեւմընալ տալու, երկու պատերազմական նաւ առաւ. իսկ վաճառականի նաւ՝ ամմէն ովկիանոս ծովին մէջը պտըտելով, 300 նաւէն աւելի առավ ֆրանսըզէն, առանց մէկ յայտարարուն Թուղթ մը հանելու պատերազմին պատճառը հասկըցընելու համար, ինչպէս որ օրէն է, այլ այն Թուղթը 1756 յունիսի 9 հանեց (1):

## Պրուսիին հաշտուիլը ինկլիզին հետ.

## 1756:

Առաջ ֆրանսան իբրեւ ամմէնէն վեր մեծապանծ կըխօսէր ուրիշ Թագաւորներուն հետ, հիմա ԺԵ լուիզը զուարճասէր Թագաւոր մը ըլլալով ֆրանսայի վրայ, միայն

(1) Ինկլիզին ծեծ բանալը ֆրանսայի դէմ, ոմանք մայիսի 17 կըդնեն, ոմանքալ յուլիսի 9:

աս դիս ան դին գանկատ գրելը գիտէր Ինկ-
կիլիզին դէմ, թէ աս ինչ անիրաւութիւն
է որ կընէ, բայց Իրեններուն թող չէր ի-
տար գոնէ ծովասպատակութիւն ( խուր-
սանութի ) ընել ։ Առաջ Ինկիլիզին գրեց
որ՝ կամ ետ տայ իր առածները որ արդա-
րութեն դէմ էին, և կամ պատրաստ ըլլայ
պատերազմելու. Երբոր Ինկիլիզը յայտա-
րար թուղթ հանեց ծեծկըռվելու, Ֆրան-
սըզնալ իր յայտարար թուղթը հանեց 1756.
յունիսի 16. բայց Ինկիլիզը իբրև մենծ
մը կըխօսէր, ուրիշ բանէ չէր վախնար որ՝
գերմանիայի մէջ ( որ Նեմցէստանն է ) եր-
կիր ունէր հաննօվէր ըսված հարուստ ու
լեցուն մարդով, կըվախնար որ Ֆրանսզը կը-
վազէ կառնէ. ասորալ ճարը մոտածեց պրու-
շի թագաւորին հետ կապվելով. Բ ֆետերի-
քոսին հետ խօսք դրաւ որ՝ Ֆրանսզին թող
չիտայ Նեմցէստան մոննալու ։ Իսկ Ֆրան-
սան չիգիտնալով աս բանս, ինքնալ մարդ-
խըրկեց պրուշի թագաւորին՝ որ իրեն հետ
կապվի, հաննօվէրը երկուքնիս մէկ տեղ
Ինկիլիզի ձեռքէն առնենք ըսելով ։
Տեսնալով պրուշին թագաւորը Բ ֆետերի-
քոս՝ որ երկու թագաւոր զինքը կուզեն,
առաջ մոտածել սկսաւ, ետքը Ինկիլիզին հետ
կապվեցաւ ասանկ դաշնադրութիւն ընե-
լով 1756. յունվ. 16 ։ Ինկիլէզը օստ-Ֆրի-
զիայի իշխանութիւնը ( որ առաջ միշտ կը-
պահանջէր պրուշին ձեռքէն առնելու, )
բոլորովին տըվավ պրուշին. 20 հազար կի-
նեէ ոսկիալ տըվավ, որ պրուշի վաճառա-

կան նաւերու եղած վնասը վճարվի, թէ-պէտ աս քանի դաշնադրութեը մէջ գըրուած չիկար : Պրուշնալ պարտաւորեց զինքը որ՝ ինկիլիզին առնելիքը վճարէ, որուն համար գրաւ էր դրած շլեզվիան. պաշտպան կենայ որ՝ ինկիլիզի Թագաւորին յաջորդութիւնը հաննօվերի ցեղին վրայ մնայ. արգելէ որ՝ դրսի տէրութեց զօրքը գերմանիայի մէջ չիմտնան, այսինքն նեմցեստան, ու հաննօվերին կայսրընտրութիւնը ամմէն թշնամիներէն պաշտպանէ :

Պրուշը շատոնցմնէ պատրաստ կենալով պատերազմելու, 150 հազար զօրք ոտքի վրայ ունէր ան ատենը, կըփափագէր իր զինուորական գիտութիւնը ու իր քաջութիւնը եւրոպային ցըցընել, իր երկիրը ընդարձակել, տեղվանք առնելով նեմցէլէն : Աս կապս ընելէն ետեւ պրուշը՝ պատասխան տվաւ Ֆրանսզի դեսպանին ( էլչիին ), Բրանդըբուրս ժամ ուղենար. եւ որդէն դաշնադրութիւն ընելով ինկիլիզին հետ կապված էր : Պատճառ որ՝ պրուշը չուզեց ֆրանսզին հետ կապվիլ, աստնք են : Մէյմը որ՝ պրուշը առկէց առաջ եղած պատերազմի մէջ երկու հեղ ձգերէր ֆրանսզները, անոնցմէ քաժնըվերէր, անոր համար կըկասկածէր որ՝ հիմա աղէկ ընդունելութիւն չիգտնայ ֆրանսզներէն : Երկրորդ՝ որ ինկիլիզին ան ատէնվան վէզիրը ըլլալով լօռտ չադամ, աւելի հաստատուն՝ աւելի ողջ էր անոր խօսքը, բայց ֆրանսային ան ատէնվան կառավարութիը բօմբատուր ըսված խաթու-

նի մը ձեռք ըլլալով՝ ուզածին պէս պաշտօնները (մանսուպները) փոխել կուտար Թիւրքին, երբեմն աս մարդը՝ երբեմն ան մարդը դնել կուտար. չինայելով որը յարմար է ու ընդունակ։ Ասկէց զատ՝ գիտէր որ՝ ան բօմբատուրը իրեն խիստ Թշնամի էր, վասն զի Պրուսին Թագաւորը որ ոտանաւոր շինօղ էր, ատենօք բօմբատուրին դէմ քամահրական կծու խօսքերով ոտանաւոր (պէյիթներ) զուրցերէր, ինչպէս նաև վերոյիշեալ պէռնիս քահանային ու քառտինալին դէմ, որ Ֆրանսային րէիս էֆէնտին էր եղած։ Ասկէց հասկընալու է որ՝ մարդուս պզտիկ բան կարծածը՝ ատեն անցնելէն ետև ինչ մեծ հետևութիւններ կըհանէ խելքէ չանցած։

Նեմչէին կապվիլը Ֆրանսային հետ.

1756։

Պրուսին ու Ինկլիզին կապվիլը իրարու հետ՝ մէկ ուրիշ մեծ փոփոխութիւն մը պատճառ եղաւ Եւրոպայի մէջ, որ Պրուսի Թագաւորին միտքէն չէր անցած. վասն զի Ֆրանսան ու Նեմցէն տեսնալով աս երկուքին կապվիլը, իրենք ալ մէկ նոր դաշնադրութիւն մը մէջերնին կապվեցան 1756. Մայիսի 2. մէկմէկու երկիրները պաշտպանելու համար՝ բայց առանց խառնըրվելու հիմակուան նոր ելած ծեծին Ինկլիզին ու Ֆրանսըզին մէջ։ Փոփոխութիւն մեծ որ աշխարհս

տեսաւ, ինկիլիզն որ հին ու հաստատուն բարեկամն էր և դաշնակից Նեմցէին, հիմա կապվեցաւ Նեմցէին թշնամիին հետ, որ է պրուշը. իսկ ֆրանսան՝ որ միշտ թըշնամի էր Նեմցէի հետ (1), հիմա բարեկամ եղան իրարու հետ. ասկէց առաջ քանի դաշնադրութ̃ի, քանի խնամութ̃ի որ ըրերէին կապվելու համար Նեմցէն ու ֆրանսըզը, պարապ եղած էին։

Աս կապվիլը աւելի յորդորեց երկու տէրութեանց մէջ վերոյիշեալ պէռնիսը, որուն յառաջանալուն պատճառը ասանկ եղավ, երբոր թօմբատուր խաթունը աս պէռնիս քահանան ձեռք առավ, որ շատ յորդորելով թագաւորը բառլամէնդին հետ հաշտեցուց՝ ինչպէս որ վերը պատմեցինք, աս արդեանցը համար թօմբատուրը՝ դեսպան (էլչի) խավրել տըվավ պէռնիսը առաջ վենետիկ, ետքը վիէննա, բառլամէնդնալ ասանկով յաղթօղ ըլլալով, պէռնիսը մենծութեն հասցուց, ըսէս էֆէնտի ընել տալով, ետքը քառտինալ։ Բայց առաջ երբոր պէռնիսը վիէննա դեսպան գացած էր, հոն վարպետ խօսքերով գաղտուկ յորդորեց Նեմցէն աս դաշնադրութիւնը ընելու (2),

---

(1) Աս երկուքին թշնամութիւնը սկսեր էր կարոլոսի մեռնելէն ետև, որ պուրկօյնի ետքի դուքսն էր, 1477էն ինչվան աս տարի, որ ըսել է իրր 300 տարի։

(2) Թէպէտ պէռնիս-ֆրանսզին դեսպանը յորդորեց Նեմցէն աս կապս ընելու, բայց կարելի է

ցըցընելով որ Ֆետերիքոս պրուշին Թագաւորը մէկ անհանդարտ մարդ մընէ . դրսէնսէր մը կերևցընէ իբր եւրոպային ու գերմանական տէրութ̃ե ազատութ̃իը պաշտպանելու համար , բայց միտքը ան է որ՝ ինքը վճռօղ իշխօղ ըլլայ երկուքին վրայալ , անոր համար կ՚ըսայի որ մաճառներուն մէջ երկպառակութ̃ի ( Փուխա ) ձգէ հաւատքի պատճառաւ , ատոր համարալ է որ՝ դէմ կըդնէ հռոմայու Թագաւոր ընտրելու յովսեփը , որ Նեմցէի կայսրուհւոյն զաւակն էր . Թող չիտար ուրիշ տէրութեան զօրքը գերմանիայի կամ Նեմցէստանի մէջ մտցընելու , որպէս զի անով Նեմցէին ու Մոսկովի մէջի բարեկամութ̃իը պարապ հանել տայ ։ Ցըցուց նաև որ ինկիլիզը մէկ աղվոր պատրուակով ( մահանայով ) մը Թէ ես պահօղ պիտոր ըլլամ եւրոպայի Թագաւորաց մէջի հաւասարակշռութիւնը , 300 տարիէն վեր է՝ որ Ֆրանսան ու Նեմցէն Թշնամի կըպահէ իրարու հետ , ետքը իբր Թէ արդիւնք մը ցըցընել ուզելով , հաշտութ̃ե ատենը երկիր մը առնել կուտայ օտարի , ինչպէս որ ըրաւ ետքի պատերազմի մէջ , շլէզիային աղէկ կտորը՝ ու կլացին կոմսութ̃իը դուրս հանել տըվավ Նեմցէէն ։

Աս պատճառները լսելով կայսրուհին մարիամ Թերեզինան՝ յանձն առաւ պրուշին

---

որ առաջ Նեմցէն Ֆրանսայի Թագաւորին առաջնորկեց , ինչպէս որ ոմանք կըդնեն ։

իր թշնամւոյն դէմ դնել որ չմեծնայ (1), բայց միտքնալ դրաւ որ չխառնըվի Ինկիլիզին ու Ֆրանսզին մէջ եղած պատերազմին (2) ։

*Պէյ Զինէը Ճէզայիրին հետ ծեծ կռուեցաւ, եարողայէ ծեծին Պէյը ճերս կըռեցաւ.*

1754—1757 ։

Ճէզայիրին մէջը 1754 մէկ աղմուկ մը բըլըրլկոց (խալապալըխ արպէաէ) մը ելլալով, իրենց մեծը որ Տայի կըսվի, սպաննեցին, ետքը ուրիշներնալ բըլըրլկոց հանողները իրենց գլխաւորով սպաննեցին, ուրիշ նոր տայի դրին ։ Պատճառը աս էր որ՝ Ճէզայիրցիք շատը ծովասպատակութեամբ (խուրսանութ.) կըշահէին, տայիին ու իրեն մեծերունալ շատ պարգևներ կուտային, հիմա քրիստոնեայ տէրութեց հետ խաղաղութ. ըրած ըլլալով իրենց տային՝ չէին կրնար շահիլ, աս բանիս վրայօք տաքցած ըլլալով կըդժգոհային ։ Անոր համար նոր դրած տային ժողովուրդին սիրտը շահելու համար, դօսքանցոց ու Ֆիլէմէնկնէրուն վրայ ծեծ բացաւ, յուսալով որ շատ աւար կըգտնան, կը կողոպտեն մանաւանդ.

---

(1) Աս տէրութեանց կապվիլը ամանք հետեւեալ տարին կըդնեն 1757 ։

(2) Նեմցէին ու Ֆրանսզին հետ ետքը մէկ տեղ կապվեցան նաեւ մոսկովք, շվէտը, ու սաքսոնիան ։

Փիլէմենկի նաւերէն ։ Բայց աս բանիս մէջ ամէն եւրոպացոց տէրութիւնները սըրդը-դէլով օգնութիւն տալու եղան Փիլէմեն-կին՝ մանաւանդ ըսպանիան, որ իր նաւերը դուրս հանեց, Փիլէմենկնալ 15 պատե-րազմական նաւեր հանեց իրեն վաճառա-կանի նաւերը պաշտպանելու. անանկով բան մը չիշահեցան Ճէզայիրները ։

Անաց որ Փիլէմենկները՝ ամերիկային ծե-ծին պատճառովը նեղութիւն քաշեցին. ո-րովհետև 1756, Ինկիլիզը ու Ֆրանսզը ու-զեցին որ՝ ինչպէս պրուշը՝ անանկալ օլան-տան կամ Փիլէմենկը իրենց դին քաշեն, օգնական առնեն. Ինկիլիզը Փիլէմենկին կը յիշեցընէր հին դաշնադրութիւնները ժէ դարուն (1), հիմա ատենն է ըսաւ Ինկի-լիզը, պէտք է որ օգնէք մեզի 6000 ոտա-նաւոր (եաեան) զօրք տալով, 4000 ձիա-ւոր, ու 20 նաւ պատերազմական, ինչպէս որ խօսք կորըված է ։ Ինչափ ապահով էր աս բանիս վրայ Ինկիլիզը, որ մէկէն նաւեր խրկեց օլանտա, կամ Փիլէմենկ, որպէս զի անոր զօրքերը Ինկիլդերուա բերեն, միտ-քը հաստատ դնելով որ հարկաւորապէս պիտոր խրկեն ։ Բայց մէկալ դիհացէնալ Ֆրանսային իշխանը Ս. Ֆֆրի կոմսը կըցը-

(1) Ինկիլիզը ու Փիլէմենկը խօսք կապեր էին ի-րարու օգնելու երբոր ծեծ մը բացվէր աս երկու բանիս վրայ, մէյմը՝ Ինկիլիզին թագաւորութիւնը հիմնակված ցեղին վրայ մնալու համար, մէյմնալ՝ հա-ւատքի ազատութեան համար ։

ցընէր Ֆիլէմէնկներուն որ՝ Ինկիլիզին հիմակվան ծեծ բանալը ո՛չ Թագաւորին ցեղին համար էր, և ոչ հաւատքի համար, անոր համար ձեր շահը նայելով՝ ձեզի կըվայելէ որ՝ Ինկիլիզին հետ չիկապվիք ետ քաշվիք, մանաւանդ թէ անոր տեղը մեզի Ֆրանսզին հետ կապվիք մէկ ըլլաք, որպէս զի մէկ տեղ վռնտենք Ինկիլիզին ագահութի՛ ու անբարտաւանութիւը որ ծովային տէրութիւը մինակ իրեն քաշել կուզէ, ու վաճառականութիւնալ մանաւանդ ամերիկային մէջ՝ մինակ իրեն ձեռքը անցընել։

Էն ատենվան Ֆիլէմէնկի մէջ եղած մեծերը սրտերնին տաք, գլխընին պաղ մարդիկ ըլլալով՝ երկուքինալ ուշադրուցին պատասխան տալը. ըսել կուզենք որ՝ իրասրտերնուն մէջը շատ սէր ունէին իրենց մեծնալուն ու թշնամիները վերցըվելուն վրայ, բայց գլխընին հանդարտ մարդիկ ըլլալով՝ չխտաքնալով խոհեմութ՟ կամաց կամաց մտածեցին ինչ պատասխան տան։ Ինկիլիզին նաւերը տեսնալով առանց ուշանալը՝ պարապ դարձան, գացին որ հաննօվերէն հասսիայէն զօրք առնեն։ Ֆիլէմէնկը ետքը աղէկ մը մտածելով որ՝ ինքը չիկընայ պիտոր Ֆրանսզին դէմ դնել, յայտնի զուրցեց Ինկիլիզին որ՝ չեմ կրնար քեզի օգնութիւն տալ, այլ չէզոք կըմնամ. և թէպէտ Ինկիլիզը շատ հեղ կըկնեց իրեն ուզածը, բայց Ֆիլէմէնկը միշտ ընտրեց չէզոք մնալ։

Սկսեց Ինկիլիզն որ միշտ բարեկամ էր Ֆի-

լէմէնկէն՝ խիստ դժարցաւ վրանին, աւելի նեղեցաւ՝ երբոր տեսաւ որ՝ Ֆիլէմէնկը 1757 բռնադատեալ թող տըլաւ Ֆրանսըզներուն, որ իրենց զօրացը համար Ճէպխանէ տարին, նամուրին ու մաստրիքին կապանէն (պօղազէն) անցընելով, անոր համար սկսաւ Ֆիլէմէնկին նաւերը մտնալ նայիլ, ու պատրուակ (մահանայ) բերելով որ արգելված ապրանք կըտանին թշնամիներուն, կառնէր կըտանէր նաւերնին ։ Ասոր վրայ Ֆիլէմէնկը շատ գանկտեցաւ, Լօնտրա Ինկիլիզէն մարդ խրկեց որ՝ տարած ապրանքնին առնեն, իրենց նաւերը խրկեն, բայց Ինկիլիզը յաղթող ու զօրաւոր ըլլալով Ֆիլէմէնկին իրաւունքը ամենեւին բանի տեղ չսեպեց, նորէն անոնց նաւերը յափշտակեց ։

## Ֆրանսաը Մինօրքա կղզին կառնէ ։

## 1756 ։

Ասանկ շտկելէն ետեւ իր բանը ուրիշ տէրութեց հետ Ֆրանսզը իբր թէ նոր արթընցաւ, սկսաւ իր ծովային ուժնալ շտկել. 6 հազար արուեստաւորներէն աւելի գիշեր ցորեկ. սկսան աշխատիլ Պրեստ ըսված նաւահանգստին մէջ նաւեր շինելու համար, և ամէն տեղ զօրքեր սկսան պատրաստել ։ Աստըկլի կարողութիւն ունէր՝ բայց ան ատենը Ֆրանսային ժողովրդեան մէջ շատ հարուստներ կային, քիչ մը ժողովուրդէն

առնելով, քիչմընալ նոր պաշտօններ ծախելով, և փոխ ըստակ առնելով, հերիք ըստակ գտաւ ծեծին առջի տարիները, թէպէտ ետքը աս եղավ պատճառ որ Ֆրանսային կործանում բերաւ.

Ինչ ընէ որ՝ առջի բերանը իր ուժը ցըցընէ Ինկիլիզին վ՞ր, ու վարկում ձգել տայ իր զօրացը վ՞ր, ձան հանել տըվավ որ՝ Ֆրանսըզը իր ամմէն պատրաստութեամբը պիտոր վազէ, Ինկիլըզէռռան պիտոր կոխէ : Աս ձանս խիստ վախցուց Ինկիլիզին թագաւորը Գ՟ Գէօրգ, անոր համար համնօվէրի մէջ եղած իր զօրքնալ կանչեց, Ինկիլըզէռռա մտուց, որպէս զի աղէկ մը ամրըցընէ, բայց Ինկիլիզի ժողովուրդը օտարական զօրք չախորժիր, սկսաւ ճչցօհալ թէ ինչու նեմցէի զօրք Ինկիլըզէռռա մտուց թագաւորը. շատնալ վախնալ սկսան ; չըլլայ թէ ասով իրենց ազատութիւնը կորսնցընեն :

Երբոր Ինկիլիզը կըսպասէր որ՝ Ֆրանսըզը Ինկիլըզէռռա պիտոր գայ, մէյմընալ լսեց որ Ֆրանսըզին մառէշալը ռիշլիէ ըսված դուքսը (1) ապրիլի 10 դօլօնէն ելավ, վազեց եկավ մինօռքա կղզին. 18ին անոր բօռդօ մաօն ըսված բերդը պաշարեց, հետը 12 նաւ երկու խափախը, 5 Ֆրիգաթա, 120 նաւ պաշար (զահրէ) բերող, 11 հազարալ զինուոր : Աս բօռդօ մաօնին բերդը որ Սէ

(1) Ան որ քիչ մը առաջ ճէնովան պաշտպանեց նեմցէին դէմ :

Փիլիպպոս կըսվի, խիստ զօրաւոր բերդ մը-նէ, իբր երկրորդ Ձիպրալթար . դիրքը ամուր, ետեւէ ետեւալ 30 տարվընէ վեր նորէնոր շէնքերով ամրութիւններ եվելցուցին . մէկ ապառաժ քարի մը վրայ է, չորս դին խորունկ փոսեր փորված նոյն քարին մէջը, տեղ տեղ 20, տեղ տեղ 30 ոտնաչափ խորունկ . 24 տեղալ գաղտուկ ական՝ այսինքն լաղըմ փորած ունէր շէնքերու տակ :

Անկլիզը աս դարուս սկիզբները իրեն էր առեր աս բերդս, հիմա Ֆրանսըզին յարձրկիլը լսածին պէս Ինկլիզի ժողովուրդը՝ խիստ կատղեցան, որչափ ըստակ որ պէտք էր՝ տըվլին Թագաւորին, Պինկ անունով զօրապետնալ հոն խրկեցին 13 նաւով, անչափալ Ֆուխաթա . ասիկայ մայիսի 17 կըղզին դիմացը երեւցաւ, մայիսի 20 (1) Ֆրանսըզին նաւերը ելան ծեծկըվելու : Պինկ ամմէն քաջութ͞ ծեծկըվեցաւ Ֆրանսըզի նաւերուն հետ, բայց իր նաւերը շատ վնասեցան, անոր համար Թողուց բօազօմաօնը, քաշվեցաւ Ձիպրալթար որ նորոգել տայ : Երբոր Ինկլիզին նաւերը քաշվեցան, Ֆրանսըզները իրենց ճարտարութ͞ը շուտ մը սանդուխքներ (նէրտիվէններ) շինեցին 13 ոտնաչափ բարձր, ու անհնարին արագութ͞ մէկմէկու ետեւէ վեր ելլալով ան ապառաժ քարին վրայ ուր որ

---

(1) Ոմանք յունիսի 20 կըսնեն :

բերդն էր, ներս մտան, բերդը առին։ Բերդին մէջի եղօղ Ինկլիզները թէպէտ թօփէր նետելով դէմ կըդնէին, բայց պարապ եղաւ, չիկրցան դիմանալ, յունիսի 28 Ֆրանսըզներուն տըվին։

Աս բանս շատ անուն հանել տըվաւ Ֆրանսըզներուն քաջութեանը վր. ամմէնքնալ զարմացան որ՝ ինչպէս ան ապառաժին փոսերուն մէջէն վեր ելան, ուր որ նաև խաղաղութեան ատենը շատ դժար էր կամաց կամաց վեր ելլալ, բայց Ֆրանսըզները բերդ պաշարելու առնելու արուեստին մէջ ամմէն ազգէն աւելի վարպետ են։ Իսկ Ինկլիլիզները շատ ցաւեցան մինօրիքա կղզին կորսնցընելու համար, որ Ձերմակ ծովին առուտուրին վրայ իշխելու համար իրենց խիստ պէտք էր. նորէն պատրաստել սկսան աւելի մեծ նաւատորմիղ (տօնանմայ) մը՝ որ երթայ ան կղզին առնէ։ Պինկնալ իբրև յանցաւոր բերին, բօրդամութ քաղաքը բանտը դրին. ժողովուրդը անչափ կատղած էր անոր դէմ որ՝ ձեռվընէրնէն խալըսցընելու համար՝ լօնտռային մեծ աշտարակին մէջը դրին. ամմէննալ կըկանչէին որ՝ Ինկլիզը ծովու վրայ անպարտելի է չյաղթըվիր, հիմա ինչպէս կըննայ ըլլալ որ՝ մէկ Ինկլիզ խափուտանա մը ինչպէս է պինկը, ծովու վրայ ասանկ յաղթըվի։ Օր մը Նոր պօղոսի եկեղեցնայ մէջ Ինկլիզ քարոզիչ մը քարոզ տալ սկսաւ թշնամեաց ներելու համար, հոն մէկ պառաւ մը 90 տարուվանի չափ աս խօսքս լսածին պէս՝ ոտք ե-

լավ, բարձր ձայնով կանչել սկսաւ։ Ինչ ըսել կուզես, հիմա պինկ խափուտանային ալ ներէ՞նք, ով որ մատնիչ է Թագաւորին ու Հայրենեաց, անոր ոչ ես, և ոչ ուրիշները կըններեն։

Ասանկով ամէննալ կըկանչէին որ մեռնի, Թէպէտև պինկ յանցանք չունէր, յանցանքը մենծերուն էր՝ որ հինտխստան ու ամերիկայի մէջ եղած ծեծերուն խելվընին տալով, պինկ խափուտանային քիչ նաւ քիչ զօրք տըվին։ Ֆրանսզի մառէշալնալ ռիշլիւ աղերսագիր (արզուհալ) մը գրեց ինկիլիզի տէրութեանը, ցըցընելով որ ինչպէս անմեղ էր աս ծեծիս մէջ պինկ խափուտանան։ Բայց մենծերը իրենց յանցանքը գոցելու համար՝ ամէն պակասութիւնը պինկին վրայ կըձգէին. մէկ վճիռ մը եղած կար Բ կարօլոսին ատենը՝ դատաւորները ան վճռին ուժովը դատապարտեցին պինկը որ մեռնի, այսինքն Չընելու համար ան բանը՝ որ կըրնար ընել։ Աս վճռոյն չուզեց ձեռք դնել Ֆօռապէս իշխանը։ Պինկը հանեցին բերին իր նաւուն կիւվերտէին վրայ, անիկայ մէկ Թուղթ մը խորկեց Թագաւորին իր անմեղութիւնը ցըցընելով, և շնորհակալութի՛ գրեց Ֆրանսզի մառէշալին որ զինքը արդարացուց, բայց մտիկ չըրին, հոն Թիւֆէնկի բռնելով մեռուցին անանկ դատաւորներու առջին, որ պինկէն շատ աւելի արժանի էին մեռնելու։

Ռիշլիւ դուքսնալ Ֆրանսզին մառէշալը՝ գովեստին տեղը յանդիմանութիւն լսեց իր

տէրութեան պզտիկ բանի համար, հնհնու-քէն նոյն տարվանը մէջ մեռաւ 63 տարվան. 46 տարի ծովու վրայ ծառայելով իր տէրութեան առանց մէկ սխալելու մը իր արուեստին մէջը. Փրանսան անոր մեռնելէն ետեւ իմացաւ որ՝ ինչ մեծ մարդ կորսնցուց:

Անկլիզը Ամերիկայի մէջ տեղ կորսնցնէ, եւ նաւազօրութիւնը կորսնցնէ.

1756—1758:

Անկլիզները ասկէց ետքը կատղելով ովկեան ծովու վրայ քանի նաւ որ կըգտնային չէզոք տէրութեանց, ամէնը կըբռնէին, անոր համար շվէտը ու տանիմարքան պատերազմական նաւեր հանեցին ծովու վր, որ իրենց վաճառականի նաւերը պաշտպանեն. իսկ Փրանսզը իմանալով որ՝ ամերիկայի մէջ եղած իր ժողովուրդը կարօտ էր կերակուրի ու ձէպխանէի, ազատութիւն կուտար ամէն չէզոք տէրութեանց՝ որ իրենց առուտուրը ընեն ծովու վրայ ինչպէս առաջ: Անկլիզը աս միջոցին մէջ քիչ տեղ առավ ու պզտիկ, բայց իր պարտքը հասաւ 70 միլիոնի:

Փրանսզը առաջ կերթար, որովհետեւ ամերիկային վայրենի ազգերնալ Փրանսզին հետ մէկ ըլլալով, ուր որ Անկլիզ կըգտնային՝ շատ անգթութիւն կընէին, շատ վնաս կուտային անոնց, անանկով Փրանսզը Օզ-

վէկօ ըսված տեղը առաւ․ որ շատ պիտանի տեղ էր քաղաքային սահմանակցութենը քով, Օնդարիօ լճին վրայ, որ ան լճին (կեօլին) ու Նոր Ինկիլդէռային բալլիքն է․ իսկ 1757 ներս վազեցին բէնսիլվանիայի, վէռճինիայի, ու մառիլանտի մէջ։ Ինկիլիզին ժողովուրդը շատ կատղեցաւ ասոր վրայ, ամմէն քաղաքներէն Թագաւորին աղերսագիր (արզուհալ) կուղար, ըսելով որ՝ պատրաստ ենք հայրենեաց համար արիւնիս թափել, բայց կաղաչենք որ պատճառ եղողները պատժես, նոր զինուորներ ղրկես ազգային՝ ծովու և ցամաքի վրայ․ հաննօվէրէն եկած նեմցէի զօրքերը դուրս հանես ։

Նմանակ ըրաւ Ինկիլիզին տէրութիւնը, հին նաւերը նորոգեց, նոր նաւեր շինել տըւաւ՝ պաշար (զահրէ) տանելու համար իր զօրաց, նոր զօրքեր գրեց, հաննօվէրի զօրքը տեղերնին խրկեց, որոնք շատ չարչըրկելով տարին Ճամփան․ զօրապետները փոխեց։ Բայց ինչ որ ըրաւ Ինկիլիզը աս միջոցին մէջ, բան մը առաջ չիգնաց, ինչվան որ կանչեց բիդ անուանի ծերը, որպէս զի ինքը ըլլայ կառավար․ ան ատենը շուտ մը ամմէն բանը փոխվեցաւ, ինչպէս որ վարը տենինք պատմելու․ ասով յայտնի եղաւ որ՝ շատ հեղ մէկ մարդէ մը կըկախվի ամբողջ ժողովրդեան կամ տէրութեան բաղդը։ Ասկէց ետքը 1758 Ինկիլիզը ահեղ պատրաստութեն տեսաւ նաւերու՝ որ չէր տեսնըված, ասով սիրտ առաւ Ինկիլիզ ազգը․ աս նաւատոր-

միղը ( տօնամնման ) գնաց Ֆրանսացին ծով֊եզերքը, զօրք հանեց Նօռմանտիայի մէջ. վախ կար որ պիտոր առնէր Ս. Մալօն ըս֊ված տեղը, Հօվռ տէ կռաս, ու Հօնֆլէօռ, բայց քանի մը չինկրնալով ընել՝ յուլիսի մէջ ետ դարձաւ. Իսկ Ֆրանսացին նաւերը եր֊բոր 1758 Ջիպրալթարին նեղուցէն ուզե֊ցին անցնիլ, մեծ մասը հոն կորսվեցան:

Մոսկովային պատերազմութիւնը պրուսիային դէմ, պրու֊սիային հնարքները պատերազմ բանալու համար.

1755.

Գանք հիմա պատմելու գերմանիայի կամ նեմցէստանի մէջ եղած ծեծին վրայ, որ ամերիկայի ծեծէն բացվեցաւ, ու անկեց շատ աւելի վնաս տըվաւ Եւրոպայցոց: Մոս֊կովի վրայ կըթագաւորէր աս ատենս Եղի֊սաբէթ թագուհին՝ որ դեռ չէր որոշած մէ֊կի մը հետ կապվելու աս պատերազմիս մէջ, բայց երբոր լսեց որ Բ Ֆետերիքոս պրուշին թագաւորը չարաչար զինքը ծաղր կընէր, 1755 հոկտեմ. մէջ վճռեց որ՝ իր ամմէն զօրութիւնը դէմ դնէ պրանտէպուր֊կին տանը մեծնալուն՝ որ էր տուն նոյն պրուշի թագաւորին:

Աման զի աս Ֆետերիքոս քանաստեղծ ըլլալով ոտանաւոր կըշինէր, բայց իր ոտա֊նաւորներուն մէջ շատ մարդ ծաղր կընէր. մէկ գիշեր մը բօստամ ըսած տեղը շատ գի֊նի խմելով գլուխը տաքնալով՝ երգել տը֊

վալ ոտանաւոր մը սատիրիկ նախատական բոմբատուրին դէմ, որուն ձեռքով կըկառավարվէր ան ատենը Փրանսային թագաւորը, բոմբատուր խաթունին կարգը դնելով նաեւ երկու մեծ կայսրուհիները, անոնքալ միապէս կընախատէր ան երգին մէջը, որոնց մէկն էր մարիամ թերեզիանա որ նեմցէի կայսրուհին էր, մէկալը՝ եղիսաբեթը որ մոսկովի կայսրուհին էր. իբր թէ իրեք կնիկ՝ իրեք էրիկ մարդ են դարձեր, եւրոպային մեծ թախտերը կըկառավարեն. կառավարութիւննալ իրենց կեօրէ, իրենքալ կըմանին խիստ վատահամբաւ թագուհիներուն՝ որ հին պատմութեանց մէջ սաստիկ անարգանօք գըրցըված կնիկներ են։ Աստանկ ծաղր կընէր իրեք կնիկը, որոնց երկուքը թախտերնին նըստած օրինաւոր թագուհի էին. ատոնք նախատելը՝ ամբողջ ազգը նախատել էր. բայց աղէկ կըսեն առակաց խօսքը. Լեզուն կակուղ ոսկոր չունի, բայց փշրելով ինչ ոսկորներ կըկոտրէ։ Աս ֆրետերիկոսին նախատական խօսքերը, ինչ դժնդակ ծեծ բացվելու պատճառ եղան, ինչ կտրիճներ ջարդըվեցան, ինչ արիւններ թափեցան։

Ֆրետերիկոս ատանկալ ծաղր կընէր Պրուհլ կոմսը, որ խիստ սիրելի էր օգոստոս թագաւորին (1). աս կոմսնալ կըյորդորէր սաքսոնիայի կայսրընտիրը՝ որ պրուսցին դէմ

---

(1) Աս օգոստոս սաքսոնիայի կայսրընտիր էր, ետքնալ լեհի թագաւոր եղած էր։

ելլայ, բայց անիկայ զուարճասէր մէյմը ըլլալով, կախ փէշէր անճըրկած մարդ մը՝ մտիկ չէր ըներ անոր խօսքերուն ։ Միայն աս կրցաւ ընել տալ՝ որ նեմցին ու մոսկովը 1746ին դաշնադրութիւն մը ըրած ունէին, ան դաշնադրութեանը մէջ ծածուկ խօսք դրած ունէին որ՝ երբոր պրուսը տրէզտա եղած դաշնադրութե̄ը դէմ բան մը ընէ, երկուքնալ պրուսին երկիրը առնեն, իրենց մէջը բաժնեն. աս դաշնադրութե̄ը մէջ 1753ին զինքնալ՝ որ է սաքսօնիայի կայսրընտիրը՝ գաղտուկ մը խօթել տըւած, բայց առանց մէկ պատերազմական պատրաստութի̄ մը տեսնալու ։

Աս բանս նաբօլիի թագուհիին բերնէն լսելով գանուչչի մառքէզը, որ անհնարին թըշնամի էր նեմցէի, շուտ մը ծածուկ իմացուց Ֆետերիքոսի պրուշի թագաւորին. Ֆետերիքոս ուզեց աս բանս աղէկ մը ստուգել, ձեռք առավ ըստըրկով մէկ մարդ մը Մենցել անունով, որ տրէզտայի (1) խորհրդանոցին մէջը գրագիր էր, իսկ իր կնիկը երբեմն սենեկապետ էր եղած նեմցէի կայսրուհւոյն քով մարիամ թերեզինայի, հիմայ սաքսօնիայի թագուհիին քով կըծառայէր ։ Աս գրագիրը իր կնկանը ձեռքով կրցաւ երթալ ան խուցին (օտային) առջին՝ ուր որ կըպահվէին վէզիրին թղթակցութիւնները. մէկ հնարքով մը կղպակին կաղպարը օրինակը մոմի վրայ առաւ բե-

---

(1) Տրէզտա սաքսօնիայի մայր քաղաքն է ։

րաւ, տրվաւ Մալցանին՝ որ պրուշին դիւա-ցէն դեսպան (էլչի) կընստէր Սաքսոնիա։ Մալցանը շուտ մը աս կաղապարը խրկեց պէռլին (1), հոն կաղապարին կեօրէ մէկ բալ-լիքմը չինեցին, աս բալլիքով վերոյիշեալ մէնցելը մինակ մնացած ատենը գիշեր ա-տեն կըբանար կըմտնար ան խուցը, թղթե-րը կըկարդար, պէտք եղած խօսքերը կօ-րինակէր, կուտար պրուշի դեսպանին, որ ան ալ յատուկ մարդով կըխրկէր պրուշի

թագաւորին։

Ու քանի ետքը պատահմունքով մը ասանկ երևան ելաւ. օր մը նեմցէնները ծեծկըվե-լէն ետև պրուշին հետ, գետնէն մէկ ձըղ-տան մը գտան, որ պրուշի թագաւորին ձզտանն էր, անոր մէջի եղած թղթերէն իմացան վերոյիշեալ մէնցել գրագրին ա-նունը և ըրածները. փարշով քաղքին մէջը գտան անիկայ բռնեցին, ետքը քօնիկս-

դէյն բերդը դատապարտեցին։

Հիմա գանք մեր սկսած պատմութիւնը շա-րունակել. Ֆետերիքոս պրուշին թագաւո-րը կըտեսնար որ՝ նեմչէն աս միջոցիս մէջ իր զօրքը շատցընելու հետ էր պօէմիային ու մօռավիային մէջ, գիտէրալ որ՝ մոսկովը երբոր ուզէ՝ շուտ մը իր զօրքը պրուշին երկիրը կընայ խօթել, յունիսին ետքերը հրամմեց վէննա նստող իր դեսպանին, որ հարցընէ նեմչէի կայսրուհւոյն, ինչ է աս

---

(1) Պէռլին պրուշին մայր քաղաքն է։

զօրաց պատրաստութիւնները, պրուշին դէմ ծեծ բանալու համար է՞, թէ չէ ։ Կայսրուհին պատասխան տըվավ, եւրոպայի համար վտանգաւոր ատեն ըլլալով, պէտք է որ ես ալ պատրաստ գտնըվիմ թէ ինծի համար, և թէ իմ դաշնակցացս համար ։ Պրուշին Թագաւորը նորէն յուլիսի 26 պատասխան ուզեց որ՝ իրեն հաստատուն խօսք տայ նեմցէն՝ որ ոչ աս տարի, և ոչ գալ տարի, իր վըրայ չելլայ, ծեծ չիբանայ ։ Կայսրուհին պատասխան տըվավ. ես առջինը չեմ ըլլար ոտքի տակ առնելու ան դաշնադրութիւնները, որ դեռ ոտքի վըրայ կեցած են ։

Ի՞նչափ խօսքէս իբր թէ պատերազմի կառկած առնելով պրուշի Թագաւորը, ինքը պատերազմ բացաւ. որովհետև ինքն էր որ մաքքեավէլլի հեղինակին դէմ շինած գրքին մէջը գրեր էր, թէ Լաւագոյն է թշնամիէն առաջ հասնիլ ծեծկըվելու, քան թէ սպասել որ թշնամին առաջ հասնի՝ ծեծկըվելու համար ։ Աս խօսքս ՚ի գործ դնելով, և իբր թէ իրաւունքի բերելով, որ պրանտէպուրկին երկիրը՝ այսինքն իր երկիրը՝ անանկ դիրք մը ունի որ՝ սպասել չըլլար՝ առաջ թշնամին ներս մըտնայ, ետքը ծեծկըվելով դուրս հանվի, ինքիրենալ վախ առնելով թէ նեմցէին միտքը շըլէզիան (1) առնել է ։ Ի՞նչափ պատ-

---

(1) Շըլէզիան՝ նեմցէն 1742 ու 1745 պրուշին էր տըված ։

Ճառմները հերիք սեպեց իրենն պատերազմ
բանալու, անկեցաւ մէկ մեծ ծեծ մը բաց-
վեցաւ եւրոպացոց մէջ, որ կէս միլիոն զօրք
ոտք հանեց, օխտը տարի քշեց, ու բիւրա-
ւոր կոտորածներու վնասներու պատճառ
եղաւ գերմանիայի մէջ՝ որ դեռ ինչվան
ատքերս կըքաշէին, որոնք մէկիկ մէկիկ
պատմենք:

Պրուսը յանկարծ կըմտնայ Սաքսոնիան կառնէ.

1756:

Փիլիսոփայ ըսված պրուսցին թագաւորը Բ
Ֆետերիքոս՝ կուզէր փիլիսոփայութիւնը
միայն իր շահուն բանեցընել, ինքիրեն նոր
սկիզբներ կըշինէր, որոնք ամմէնը արդա-
րութիւնը նայելուն տեղը՝ իրեն շահը
միայն կընայէին, բայց դուրսէն կըջանար
խօսքով զինքը արդարացընել, ըրածները
ուզելով իրաւունքի բերել: Աս մարդս
ծեծի մէջ վարպետ ըլլալով, ու իր բանին
մէջ խիստ շատգէտ, կըմտածէր կիմանար
որ՝ ինչ ծեծ որ կուզէր բանալ՝ խիստ
դժնդակ ու խիստ երկան պիտոր քշէր,
իր ըստակը պիտոր չօգտէր, թէպէտ և ինք
կիլիզը իրեն ըստակ տըվերէր օգնութիւն,
իր զօրքը օրէօր պիտոր հատնէին, որը ծե-
ծի մէջ մեռնելով, որնալ հիւընտնալով,
կամ փախչելով. աս բաներուս դեղ ամմէն
դիտցէն՝ սաքսոնիային մէջը կըգտնար.
որովհետև բոլոր գերմանիայի մէջ անկեց

հարուստ, անկէց մարդաշատ երկիր չէ-
կայ ։

Աս բաներս մտածելով 1756. օգոստ. 29. յանկարծ իրեք դիհացէն մէկէն վազեց մտաւ սաքսօնիա, ոչ աս նայելով և ոչ ան, ոչ յայտարարական գիր հանելով պատերազմէն առաջ՝ ինչպէս որ օրէն է ամմէն թագաւորներու, հապա օրինակ առնելով ինկիլիզէն՝ որ յանկարծ մէկէն Փրանսզին նաւերը բռնել սկսաւ, ասանկալ հիմա պրուսը ըբաւ ըսելով որ " Հարկ եղաւ ինծի աս
„ բռնութիւնս ընել իս ապահովցընելու
„ համար, որպէս զի նեմցէի կայսրուհիէն
„ առաջ ես կանխեմ որ՝ ինծմէն առաջ
„ սկսեր էր մեծ պատրաստութիւն պատե-
„ րազմի տեսնալ իմ երկիրներս ինծմէն հա-
„ նելու համար, բայց ես բարեկամի պէս
„ կըմտնամ կըսէր սաքսօնիա, հերիք է ին-
„ ծի որ իբր աւանդ (էմանէթ) ձեռքս
„ պահեմ„ ։ Աս լսելով մարդ խրկեց մայցանին իր դեսպանին՝ որ զրուցէ սաքսօնիայի կայսրընտրին օգոստոսի, թէ " Հարկը բե-
„ րաւ աւստրիայի այսինքն նեմցէի հետ պի-
„ տոր պատերազմիմ, պէտք եղաւ որ քու
„ երկրիդ մէջէն անցնիմ, միայն թէ իմ
„ ձեռքս կըպահեմ ինչվան որ հաշտութն
„ ըլլայ, հաշտութիւնը եղածին պէս՝ իր
„ օրինաւոր տիրոջը դարձընեմ" ։

Սաքսօնիային կայսրընտիրը՝ որ միանգամայն լեհի թագաւոր էր Գ օգոստոս անունով չիկրցաւ ուրիշ բան ընել որ՝ իրարու ետեւէ մարդ խրկել իրեն դաշնակից թա-

գաւառներուն ծանուցանելով այս բանս . պրուշի թագաւորին ալ թղթեր կըխրկեր եանէ եան հասկըցընելով որ՝ ոչ երբէք մտքէս անցերէ քեզի դէմ բան ընելու , խոստանալով որ միշտ չէզոք պիտոր մնար կատարեալ ։ Աս վախս առաջ կուգար իր անկարգ կառավարութէ, վասն զի սաքսօ-նիան թէպէտ շատ հարուստ ու բազմա-մարդ աշխարհ է, բայց ան ատենը հազիւ ունէր 16 կամ ըստ ոմանց 20 հազար զօրք պատրաստ, անալ հոս հոն ցրուած , որոնք ետքը Պիռնա ժողվըվեցան ։ Ինքը օգոս-տոս մէկ տկարամիտ իշխան մը ըլլալով, չունէր մէկ լոյս մը գտնէ իր հօրը չափ , այլ թմրած մնալով իր սէրը՝ ըստակը՝ բոլոր-վին տըվերեր զեղխութե , թատրոններու , երգողներու , խիստ ուշ իմացաւ որ ասանկ ալեկոծութե ատեն՝ պէտք է եղեր իր յօ-ժարութիր բանեցընել աւելի իր երկիրը պաշտպանելու համար , և պատրաստել ինչ որ պէտք էր մէկ արթուն իշխանի մը պատ-րաստել ։

Ասոր դէմ պրանտէպուրկին տունը կամ պրուշը իր ամմէն խելքը միտքը տըվերեր իր երկիրը բարեկարգելու , չափաւորելու , շտկռտելու ։ Թէպէտ ինքիրեն պզտըլտիկ թագաւորութի մըներ , բայց շլէզիան ու օստ-ֆրիզիան առնելէն ետև՝ իր եկամուտը 20 միլիոն ֆիօրինէն աւելի շատցուց , խար-ճըը անանկ կանոնաւորեալ էր, որ տարին 6 միլիոն միշտ կաւելնար . պէռլին ու պռէս-լաւ եղած թէրպանէներուն մէջը միշտ պատ-

բաստ ունէր, 30 հազար Թուր, 20 հազար սուր, այնչափ ալ բէշԹով, ու խառնապխնա. միայն ձիաւոր ու ոտանաւոր զօրքը անհանկ տեղ տեղ կարգաւորված ու զետեղված էին որ՝ ուզած ատենը տասն օրվան մէջ կըրնային ամէնքը մէկ տեղ ժողվըվիլ, ծեծի երԹալ:

Ասանկ բարեկարգեալ ըլլալով երբոր Ֆերտինանտոս պրունզվիքէին իշխանը պրուշի դիւացէն սաքսօնիայի վրայ վազեց, մէկ դէմ դնօղ մը չգտնալով, լիբսիա հարուստ ու շահաստան քաղաքը բռնադատեց դռները բանալու, մտաւ հոն, պրուսին ուրիշ զօրքնալ յարձըկեցան տրեզտա մայրաքաղաքին վրայ, սպառնալով քաղաքը երելու Թէ որ դռները չբանան. սաքսօնիային կայսրընտիրը ելավ փախավ տրեզտայէն, գնաց Պիռնա դաշտը քօնիկստէյն բերդին քով, ուր որ քիչ մը զօրք ժողվըվեր էին իր զօրքէն: Սաղվան օրը պրուսին զօրապետը վիլլիք՝ մտաւ տրեզտա, շուտ մը զօրք խըրկեց որ կայսրընտրին խորհրդարանը մըտնան, ինչ որ ծածուկ Թղթեր կան առնեն, վասն զի պրուսին Թագաւորը կուզէր ան Թղթերը տպել, որպէս զի իրեն ըրածը արդարացընէ (1):

---

(1) Նոյն ինքը Է Ֆետերիքոս պրուսին Թագաւորը առ մօրով կըգրէ իրեն շինած երկրորդ հատորին մէջ, որ մեռնելէն ետև տպվեցաւ: « Երբոր Թագա-
« ւորները կուզեն մէկ աւերութեն մը հետ ավըրվիլ,
« պէտքը չէ եա կենալ ասոր համար որ՝ պատճառ

Սաքսօնիայի Թագուհին որ էր դուստր ա̅ յովսէփ կայսեր՝ դրանը առջին կենալով դէմ դրաւ որ խորհրդանոցը թող չիտայ մոռնալու, ամմէն օրէնքէ դուրս բան է ըսելով տասնկ բռնադատել. բայց պրուշին զօրքը ուրիշ պատճառ չխտեն որ՝ միայն հնազանդիլ իրենց մեծին, անոր համար առանց նկատման մէկ դի. հրեցին Թագուհին դրան առջեւէն, կնիքները (մէօհիւրները) քակեցին, դուռը կոտրեցին, որչափ որ ծածուկ Թղթակցութի ըրեր էր սաքսօնիայի արքունիքը 1746էն մինչեւ 1756, ամմէնը 40 հատոր բան խրկեցին բօստամ, որոնցմով շինվեցաւ յայտարար Թուղթը, որ վարը դնենք.

Սս բռնութիս տեսնալով Թագուհին, շուտ մը տասնկ Թուղթ գրեց եւրոպայի Թագաւորներուն. « Սս երկրորդ անգամ է՝ որ
„ պրուշին Թագաւորը՝ մենք պատճառ մը
„ չիտրված ինքիրմէ կըյարձրկի սաքսօնիա
„ առանց ծանուցանելու պատերազմի հա-
„ մար, թող տուր ինծի տըված անարգանք-
„ նին՝ իս հարկաւոր բաներէնալ զրկեցին.
„ Թագաւորական խորհրդանոցը բռնութե̃
„ բացին իմ առջեւս, հասարակաց ըստըկին
„ մնտուկը՝ ու Թագաւորին ամմէն եկա-
„ մուտը յափշտակեցին. Հիմա դուք դա-

---

„ չուներն յայտարար գիր հանելու, թող յանձնեն
„ մէկ ճարտար իրաւագիտի մը՝ որ մէկ քանի տող
„ բան մը գրէ, եթէ թէ փոշի ցանէ ժողովրդեան
„ աչքին վրայ »։

„ տասստան կտրեցէք որ մէկ չենզաք աշխարհ
„ մը ձեռքս առնող պահելու պատրուակով
„ (մահանայով) կըլլա՞յ սատանել ավըրշորկել,
„ մանաւանդ երբոր անանկ ձան կըհանէ
„ որ՝ խաղաղութիւն ու բարեկամութիւն ալ
„ տոր պահեմ“ ։

Պրուշնէրը քաղքին ու բերդին դուռները շուտ մը ձեռք առին. կայտրընտրին դարպասին ու դեսպաններուն տներուն առջին շատ պահապաններ դրին. Պոօրկաւ ըսուած տեղը զինուորական սնտուկ մը դրին, որ ինչչափ եկամուտ ունի սաքսոնիան՝ հոն ժողվուի. Թերսաննէները բացին, որչափ զէնք (սիլահ) ու Թօփ կար, ամմէնն ալ առին տարին. սաքսոնիացոց վրայ ալ ծանր տուրք ձգեցին, մէջի մարդիկներն ալ ամմէն սաքսոնիացինները 15 տարվընէ ինչվան 40 տարեկանը բռնութ̃ պրուշի զօրք գրեցին, ան որ չէր հնազանդեր՝ շուտ մը կըպատժըվէր։ Ինկեց ետքը պրուշին Թագաւորը Կ՝էյթ մառէշալին հետ գնաց սաքսոնիային քէչվոր զօրքը տեսնալու, տեսնալով որ կեր կերակուր չունին, Թողուց անանկ որ ետքը ինքիրենին ձեռք կենան, իրենք զիրենք տալով։

## Նեմցէն պրուշին վրայ ելլայ.

## 1756.

Գանք Նեմցէին վրայ. լսելով կայսրուհին մարիամ Թերեզինան սաքսօնիային ողորմելիութիւնը, շատ կցաւէր վրանին, վասն զի Թող տուր վերը պատմած պրուշի Թագաւորին բռնաւորութիւնը, անկեց զատ պրուշին զօրքն ալ տները կըմըտնային, ուզածնին կըյափշտակէին, քաղքըները գեղերը կըրակը կուտային, անանկ եղաւ որ՝ ունեւոր սաքսօնիացիներէն շատը տնէ տեղէ զըրկըված մերկացած մուրացկան կըքալէին շվէտին՝ լեհին՝ ու Նեմցէին մէջը: Նոր համար կայսրուհին իր մառեշալը որ կըսվէր կոմս պրաօնայ՝ խրկեց անոնք ազատելու: Պռօշը որ 70 հազար մարդով կեցած էր պօէմիայի մէջ, տաք ելաւ դէպ 'ի սաքսօնիա երթալու. շատ ըստրկով մարդիկ գըտաւ որ գաղտուկ երթան Բիռնա, ու սաքսօնիայի կայսրընարին հասկըցընեն ինչ պիտոր ընեն երբոր ինքը հոն գայ: Բայց Ֆետերիքոս պրուշին Թագաւորը իմանալով Նեմցէին գալը լըտեսներուն (չաշուտներուն) ձեռքովը՝ որոնց շատ ըստակ կուտար, սաքսօնիայէն զօրք առաւ իրեն, ինքը Նեմցէներուն առջին գնաց, լօվօսից տեղը հասաւ անոնց, անտառի մը ետեւ պահվեցաւ, կարծեց որ կընայ չիմացընել իր գալը, ու նանկով յանկարծ կուզէր վրանին վազել

կոտրել, անկէց երթալ ձմեռել քառակա պօէ միայն մայր քաղաքը ։

Պրուսիա իմացաւ, գիշերվան մէջ իր զօրքը կարգաւորեց ծեծկըռվելու, երբոր պրուշը հօկտ. 1. առտըվանց վրայ յարձըկեցաւ, չիգտաւ ինչպէս որ կըկարծէր, պատերազ մը երկու դիրացենալ հաւասար եղաւ, իրեք հազարական հոգիի չափ կորսնցընելով երկու դիրացէն ։ Պրուսիա հօկտեմ. 11. դժար ճամփաներէն անցնելով նորէն յարձըկեցաւ 15 հազարով [illegible] անտավէ դին, ուր պրուշը չիկարծելով 4 հազար մարդով միայն կեցած էր. սաքսօնիացոց զօրքը հոն մօտիկ էր, պրուսիա իմաց տըվավ անոնց՝ որ իրենքալ մէկ տեղ յարձըկին, բայց սաքսօնիացիք պատասխանեցին որ՝ չէին կրնար էլպա գետը անցնիլ, որովհետեւ իրենց նաւաւարները փախերէին, վաղվան օրը ձգեցին, եօքը հօկտ. 13ին ձգեցին, անանկով չյաջողեցաւ, այլ պրուշները առին գտան զինենք ուժովցընելու ։

Պրուշին թագաւորը Ֆետերիկոս՝ էլպա գետը անցաւ ան մտքով որ՝ իր ամմէն զօրքովը նեմցեին վրայ վազէ, ան ատենը պրուսիա իրաւ իր զօրքովը կըկորսըվէր, բայց իմանալով Ֆետերիկոսին միտքը՝ պուտին քաշվեցաւ որովհետեւ ապրուստալ չունէր ։ Սաքսօնիայէն կայսըրնտիրնալ տեսնալով զինքը նեղեալ յուսահատեալ, արձակման թուղթ (բասսաբօռդ) խնդըրեց պրուշին թագաւորէն, անանկով եղավ գնաց վարշով լեհին քաղաքը ։ Իսկ պրուշը 15 հա

ղար Սաքսօնիացի իրեն զինուոր առնելով, 200 պղնձէ Թօփ, 5 հազար ձիաւոր զօրք, քիչ մը Պօմէռանիա խրկեց, քիչմըն ալ վեստ-Փալիա.

Փրանսային և ուրիշ Թագաւորներուն պատրաստութիւնը Պրուսիոյն դէմ, ու Պրուսիոյն ըրածները.

1756 — 1757.

Այս միջոցիս մէջ Փրանսային աւրուեցաւ պրուսիոյն հետ ասանկ պատճառով. Փրանսըզի դեսպանը որ կենար կոմս պռօկլիոյի, և էր միանգամայն երեսփոխան (մուրախխաս,) խնդրեց պրուսիոյ Թագաւորէն՝ որ անմնալի սաքսօնիայի կայսրընտրին հետ, բայց անիկայ հրաման չիտալով, պռօկլիոն անանկ կերպով Թուղթ մը գրեց Փրանսա, որ Փրանսային Թագաւորը սրդողելով փարեզ եղած պրուսիոյն դեսպանը ետ խրկեց, և իրեն դեսպաննալ որ պէռլին պրուսիոյն մայր քաղաքը կենար՝ ետ կանչեց. ան ատենը պրուսիոյն Թագաւորնալ հրամմեց վերոյիշեալ պռօկլիոյին՝ որ շուտ մը ելլայ երԹայ սաքսօնիայէն.

Իսկ Գ օգոստոս սաքսօնիային կայսրընտիրը, կամ որ նոյն է՝ լեհին Թագաւորը՝ ամէնէն Թագաւորներուն կրգրէր իր Թշուառութիւը, որպէս զի զինքը պաշտպանեն, գրեց նաև ռատիսպօնա եղած ժողովքին, ուր գերմանիայի իշխանները ժողվըվերէին.

Ասկէց ետ Թղթերէն շարժեցան մտօկովը

կայսրուհին եղիսաբեթ, որ յայտնի վճռեց վրէժ առնել սաքսոնիային համար, նեմ-ցերի կայսրնալ Ա̃ Ֆրանչիսկոս իր խորհրդա-կաններուն հետ մտածելով վճիռ հանեց Ֆետերիքոսի վրայ իբրև պրանտէպուրկի կայսրընտրին վրայ թէ խռովարար է ու թշնամի գերմանական իշխաններու, հրամ-մելով որ շուտ մը դուրս ելլայ սաքսոնիայէն, ինչ վնաս որ տուած ամմէնն ալ թող վճա-րէ, ինչպէս որ կապտուրրէ կայսերութեան առհմանադրութիւնը. բայց Ֆետերիքոսին պէս թագաւոր մը ուրիշ բաներ ու շատ աւելի մեծ բաներ պէտք էին զսպելու, ո՛ւր մնաց միայն մէկ վճիռ մը.

Իսկ ինքը Ֆետերիքոս՝ անիրաւ են կըսէր աս վճիռները. դեսպանմընալ խրկեց գեր-մանիայու ժողովքին հասկըցընելով որ՝ կայսրուհին մարիամ թերեզինան ու սաքսո-նիան՝ անանկ բաներ ըրին պրուշին դէմ, ա-նանկ զաղտուկ մտածմունքներ, որ աւելի անոնք գրգռեցին իս աս բաներս ընելու, ա-նոր համար անոնք են խռովարար տէրութեց՝ չէ թէ ես. Աս ըսելով կըյորդորէր ամմէն կայսրընտիր իշխանները՝ որ իրեն օգնութի ընեն ան դաշնադրութեցը կեօրէ որ վէստֆա-լիա ու տրէզտա ըրեր էին. բողոքեստան-տէրութիւններունալ գրեց որ՝ իրեն դին կե-նան, իրեն օգնեն, որովհետև աւիկայ է կըսէր մէկ պատերազմ մը հաւատքի հա-մար, բայց անոնք աղէկ գիտէին որ՝ Ֆե-տերիքոսի ըրածը հաւատքի համար բան չէր, յայտնի տեսնալով ինչ կերպ նեղու-

թէ մէջ ձգեց սաքսոնիացիները՝ որ իր հաւատքէն էին։ Ձմըռուան մէջ 1756, կէս միլիոն ռիալի տուրք ձգեց Լիփսիա քաղաքին վրայ, աս պատճառով որ՝ իմ զօրքս սաքսոնիա նստերէ ձեզի համար, պէտք է որ դուքալ վճարէք կերակրելու համար. 10 հազարալ սաքսոնիացոցմէ զօրք պահանջեց շուտով, ամենուն հասակնալ 5 ոտք ու 5 բթաչափէն վար չըլլայ. և որովհետև չիկըրցան շուտով ժողվըվիլ, պրուսիները սկըսան անոնք պատժել, ողորմելի քաղաքցիները քաշկռտել, իբր թէ իրենց գերիները ըլլային.

Մ՛էկ դիացէն աս զըրկումները կընէր Ֆետերիքոս, մէկալ դիացէնալ ուրիշներուն վրայ կըձգէր աս խռովութեան պատճառները. որչափ Ֆաղֆաւըրի կայլին արքայական գործարանին (քերխանային) մէջը՝ որ շատ անուանի գործարան է, ամէնն ալ պրուշին երկիրը տանիլ տըվաւ. Նորէն բռնադատելով զօրք ժողվեց Ֆռանքօնիայէն, Վեստֆալիայէն, ու ստորին սաքսոնիայէն, ամմէն քաղաքին սպառնալով որ՝ կայսերութեան հրամանին չիհետևին. Ինչպէս ալ որ նեմցէն ետ կանչէրէր ամէն նեմցէները՝ որ պրուշի ծառայութեան մէջը կըգըտնըվէին, սաանկալ պրուշը ետ կանչեց ամէն մարդ՝ որ իրեն ձեռքի եղած երկիրներու մէջ ծնած էին, բայց նեմցէի կայսրութեան ծառայութեան մէջը մտերէին. Գիր մը հանեց աս բանիս համար՝ ուր կըսէ. "Մենք թէ-
„ պէտ պատերազմ ունինք նեմցէի կայս-

„ րուհուոյն հետ, բայց կուխ մը բան մը „ չունինք իր ընկերոջը հետ իբրև կայսր“։ Երկու ընդարձակ գիրալ հանեց ցըցընելով որ՝ Ինչպէս իրաւունք ունէր սաքսօնիան առնելու, որպէս զի խալըսի ան վընասներէն՝ որ Նեմցէի կայսրուհին կըմտածէր պրուսիէն ընելու, ու Թղթերուս գրողը հերցպերկ կոմսն էր։ Մէկ ընդարձակ Թուղթմըխալ ու Փրանչիսկոս կայսրը հանեց, պրուսիէն ամմէն գրածները սուտ հանելով. ու Թուղթս գրել տըվալ անուանի փաստաբանին որ կըսվէր սոնէփամնոս քմէր չի Փիօռենցա քաղաքէն, իրեք լեզուով գրած, լատ. իտ. Փրանսզերէն (1)։

Ըս գրեբէս ետև Փրանսան որ 24 հազար մարդ պիտոր խրկէր Նեմցէստան, 100 հազար մարդ խրկեց մանաւանդ վէստֆալիա եղած դաշնագրութենը համար, ուր խօսք դրերէր ծեծ բանալ ան իշխանին վրայ՝ որ առջինը կըլլայ գերմանիայի կայսերութեն խաղաղութիւը ավրելու, մէյմեկալ սաքսօնիային աղաչմանքին համար, մանաւանդ որ սաքսօնիայի կայսրընտրին աղջիկը կին առերէին Փրանսայի Թագաւորին առջինեկ տըղին։ Ըս բանակին (օուտուին) մառէշալը եղավ Էդրէ, որուն ապսպրեց որ մինայ պրուսիին երկիրները ու համնօվէր, անկեց

(1) Աստր գրել տըվալ Փրանչիսկոս, վասն զի շատ համարում ունէր դօսքանցոց խելքին վրայ ուր է Փիօրէնցա։

երթայ Լիփսիա ու Տրէզտա Սաքսօնիային մայր քաղաքը, որպէս զի պրուշի ձեռքէն խալսցընէ ։

Նոյն տարի 1757 յունվ. մէջ յայտնի միաբանեցաւ Մոսկովը Ֆրանսզին ու Նեմցէին հետ, շուտ մը շատցընելով իր զօրքը 130 հազար զօրք հանեց պրուշին դէմ, մառէշալ դնելով վրանին Աբրաքսինը, նաւերովալ զօրք հանեց որ զարնէն պրուշին երկիրները պալդիկ ծովուն եզերքը ։ Շվէտիանալ յորդորակ գրեց Ֆրանսզը, որ իրենց հետ՝ մէկ ըլլայ, պրուշին դէմ ելլայ ։ Գերմանական կայսերութեն իշխաններնալ ռադիսպօնային ժողովքին մէջը երկան խորհուրդ ընելով շատ դժվարութի գտնալէն ետև՝ ինչպէս որ միշտ սովորութիւն էր, վՃռեցին շրջանակ ըսված գաւառներէն 100 հազար զօրք հանեցին, վրանին զօրագլուխ դնելով Հիլտպուրկավսէն սաքսօնեան իշխանը ։ Իսկ կայսրուհւոյն զօրքը 220 հազար էին երեք բաժնըված ․ կարոլոս լօռէնային դուքսը պօէմիային մէջը պռօվնին հետ մէկ տեղ զօրագլուխ էր, մնացած զօրքին վրայ տաուն և պադդիանի զօրագլուխ էին ։ Անկլիզը Ֆրանսզին դէմ զօրք հանեց հաննօվէրցիներէն, ու հասսիացիներէն, և ուրիշ զօրքեր ըստըրկով բռնըված. Ինկլիզին հոգը չէր որ՝ գերմանիայի մէջ եղած իր տեղվանքը ամէնեննալ կորսըվին, իր միտքը ան էր որ՝ Ֆրանսզը իր զօրքը իր ըստակը եւրոպայի մէջ բաժնէ, ցամաքի վրայի եղած ծեծին մէջը բանեցընէ, որ-

պէս զի ծովու վրայի ծեծին մէջը տկար
ելնայ։

Պրուշը դօքսա կըլլայ, նեմցէրու հետ ծեծկըռտու-
ըն կըլլայ։

1757։

Սոչափ մեծ մեծ թագաւորներու պատ-
րաստութիւնը տեսնալով ամէն եւրոպացիք
կեցեր կընայէին, որ պրուշը ինչպէս պի-
տոր կործանի տեսնանք, որովհետեւ խելքը
կըցըլցընէր որ՝ ասչափ ուժի դէմ չկրկընայ
պիտոր դնել, անտարակոյս բոլորովին պի-
տոր ընջըրի պրուշը կըսէին։ բայց աշխար-
հիս դիպուածը խաղմը նէ թավլուի խաղի
նման, որ խելքէ մըրկէ չանցածները ընել
կուտայ։ աշխըրհիս զարկին դառնալովը ինչ
դառնալներ, ինչ պըրտըրտիլներ կընէ մարդ-
կային գործքերու վրայ, ան զարկին պար-
տելովը մարդկային գործքը կըյաջողի ու-
ռաջ կերթայ, մարդկային խելքը չկյաջո-
ղիր, վար կիյնայ։

Սանց պատրաստութիւնը տեսնալով Ֆետե-
րիքոս պրուշին թագաւորը՝ վախնալուն տե-
ղը ալ աւելի զօրացընել սկսաւ զինքը, հան-
նովէրէն ու հասսիայէն զօրք ժողվելով որ
ինկիլըզին տեղվանքը էին, ինքնալ խիստ
տեղեակ ըլլալով պատերազմական արուես-
տի մէջ, նաեւ շատ լոյս ունենալով պատ-
մութիւներ կարդալէն՝ կըմտածէր որ՝ քա-
նի անգամ թագաւորները դաշնակցութի

ընելով իրարու հետ կապվերէն, մէջերնին չէին միաբանած, տարաձայնութիւն շատ եղեր է. Հիմակվան ամմէն մէկ թշնամիներուն վիճակը՝ բնութիւնինալ գիտնալով կիմանար որ ասոնք իրարու վրայ նախանձելէն՝ չիկրնան պիտոր ամմէնքը մէկէն իր վրայ վազել, անոր համար որոշեց մտքին մէջը դրաւ որ՝ մէկիկ մէկիկ թշնամիներուն հետ ծեծկըվի, սկսելով պինտ առաջ աւելի մօտիկ դրացիէն՝ որ էր աւտդրիայի տունը՝ ըսել է նեմցէն, առոր յաղթելէն ետև՝ մէկալին վրայ վազէ։

Ասանկ որոշելով ապրիլին առջի օրերը՝ որ ատէն դեռ ձիւները նստած էին, ինքը Ֆետրիքոս չորս դիրայէն վազեց պօէմիային վրայ. նեմցէին զօրքը որ դեռ ձմերանոցները (խշլաները) նստերէին, պրուշին մէկէն յարձըկիլը տեսնալով վախցան բռակին դին քաշվեցան, որ պօէմիային մայր քաղաքն է. պռօշն մաուէշալնալ դէպ ՚ի ան քաղաքը քաշվեցաւ, որպէս զի զօրքերը շատցընելով անանկ պրուշին դէմը ելլայ, որ կամաց կամաց կուգար կըմօտիկնար բռակային։ Աս պատրաստութեանս մէջ ըլլալով, մէյմնալ տեսան որ վէնետայէն կարոլոս լօռէնայի իշխանը եկավ մեծ զօրագլուխ ըլլալու ամմէն զօրաց վրայ (1).

---

(1) Աս բանիս պատճառ եղաւ ու Ֆրանչիսկոս կայսրը, որուն կողակիցը ըլլալով կայսրուհին, ուզեց իրմէ որ զօրագլխութեան իշխանութիւնը տայ աս կարոլոսի։

ոս եղավ մեծ սխալմունք նեմցեյին դիւացէն, վասն զի կարօղըս թէպէտ աղէկ իշխան էր խաղաղութեն ատենը՝ բայց չունէր ան զինուորական արուեստը՝ որ կարենար անանկ վարպետի դէմ դնել, ինչպէս էր պրուշին թագաւորը, իսկ պաօճը աւելի աղէկ գիտէր:

Պրուշին թագաւորը Ֆետերիքոս կըմտածէր որ՝ նեմցեյին վրայ վաղէ քանի որ Ֆրանսզը ու մոսկովը գերմանիայի մէջ չեն մտած, ու նեմցեյին զօրքը անոնց հետ մէկ տեղ չիմիացընէ, անոր համար մայիսի 5 մօլտավա գետը անցաւ, բարձր տեղէ մը փրնտռեց տեսաւ նեմցեյին բանակին (օւտուրին) դիրքը, որոշեց որ նեմցէյին զօրապետը Տավուն հոն չեկած, ձակտէն յարձըկի նեմցեի բանակին (օւտուրին) վրայ, բայց Ը վէրին իր ծեր ու վարպետ զօրապետը իր կարծիքէն չըլլալով, Ֆետերիքոս թող տըվավ որ՝ բանակին աջ թեւէն զարնէ, ինչպէս որ շվէրինը կուզէր: Աս ընելու՝ պէտք եղավ մենծ պտոյտ մը ընել, լճերուն (կէօլէրուն) քովէրէն անցնիլ, անկէց խեղճ զինուորները ինչվան ծնկվընին ցեխոտեցան (չամուռոտեցան), աւդրիացիք որ է նեմցէները ատեն գտան զիրենք ուժովցընելու, և զանազան բլուրներու (թէփէնէրու) վրայ ելլալու: Պրուշի զօրքին ապսպրըված էր որ՝ կրակ չընեն նեմցեյին վրայ, հապա սուրը թիւֆէնկին ծայրը տնկած անանկով ձամիայ բանան. բայց ասանկ ընելով շատ զինուոր մեռան

նեմցեի թօփերէն՝ որ անձրեւի պէս պրուշ-
ներուն վրայ կը թափէին. վինդերֆելտ
պրուշին մէկ զօրապետը խոցուեցաւ. Փուք-
վէ Փրանսզը՝ որ շատոնցմընէ պրուշին ծա-
ռայութենը մէջն էր, եւ քաշուեցաւ շատ
մարդ կորսնցընելով։

Այս բաներէս Ֆետերիքոս կատղեցաւ, վե-
րջիշեալ շվէրինը շատ նախատեց գէշ խոր-
հուրդ տալուն համար. շվէրինը աս խօս-
քերս լսելով, ու տեսնալով որ իր զօրքը
տարակուսի մէջ են ընկած, մէկ պայրախ-
տարի մը ձեռքէն յափշտակելով պայրախը՝
վազել սկսաւ նեմցեի ճակատին վրայ կան-
չելով. Ով որ վախկոտ չէ, ինծի ետեւէս գայ։
Բայց հազիւ թէ 12 քայլ առաջ գնաց՝
շվէրինը նեմցեներէն զարնուեցաւ, ընկաւ
մեռաւ. պրուշները ասովալ իրենց քաջա-
սրտութիւնը չկորսնցուցին, Հենրիկոս իշ-
խանը ու ծիէդեն զօրապետը շատ քաջու-
թիւն ըրին։ Բայց ինչպէս որ Ֆետերիքոսալ
զուրցեց, թէ որ նեմցեին խումպարաճի-
ները (որ պրուշին ստանսաւոր զօրքին ետե-
ւէն ընկեր կը հալածէին), խիստ արտորա-
լէն չէին հեռցած 200 քայլի չափ իրենց
տեղէն, իրենց կեցած կարգէն, պրուշին
բանը լմնցած էր, լման կը յաղթուէր. բայց
իրենց հեռընալովը՝ բանակին աջ թեւը բո-
լորովին բաժնըված մնաց ձախ թեւէն, պա-
րապ տեղ մնաց հոն. աս բանս տեսաւ պռօվն
նեմցեին զօրապետը, շուտ մը հրամմեց որ
ձիաւոր զօրք երթայ կենայ անոնց ելած
տեղը, որպէս զի ան տեղը պարապ չմնայ.

բայց ինչ օգուտ, անկէց առաջ վերոյիշեալ կարոլոս իշխանը բոլորովին ներհակը հրամերէր, անոր համար պարապ մնաց։ Ան տեսնալով Փետերիքոս Թագաւորը՝ ինքը վազեց մտաւ իր ձիաւոր զօրքով ան պարապ տեղը, ասանկով Նեմցեին ալ Թեւին կռնակէն բռնեց, ան ատենը շատ արիւն եղաւ, Նեմցեին բանակին ալ Թեւը՝ որ ինչվան ան ատենը յաղթօղ էր, չորս դիհացէն տկարացաւ, վասն զի հոն եղօղ պրուշին զօրքը 10 հազարի չափ. մը աւելի էր։ Շատ հեղ պարտուիլը յաղթելու, ինչպէս պարտածը յաղթելը։

Մէկ շփոթութիւն մը մտաւ ան Նեմցեին ալ Թեւին զօրացը մէջ, չիկրցան դիրենք կարգի դնել, փախան մտան բռակա, իրենց հետ բերելով լատըրկին սնտուկը ու թօփերը, բանակին ուրիշ բաները պրուշին ձեռքը թողլով. մնացած զօրքը փախան տաունի զօրացը քով որ մօտիկցերէր։ Ան օրվան ծեծին մէջ Նեմցէները 14 հազար մարդ կորսնցուցին մեռած ու խոցված, 5 հազար գերի ու 60 թօփ պրուշին ձեռքը ընկան. պրուշները 12 հազարէն աւելի կորսնցուցին. ասկից առաջ աս դարուս մէջը ինչ պատերազմէր որ եղան, ասանկ մեծ ջարդ չէր եղած։ Պրուշին մեծ բան եղաւ շվերին զօրապետին մեռնիլը՝ որ աշկերտ էր եղած անուանի Եւգինեոս իշխանին, ու վարպետ Փետերիքոսի. ասանկալ Նեմցեին մեծ ցաւ տըվաւ պռօվն կոմսին մեռնիլը՝ որ խոցված ըլլալով քանի մը օրէն ետև մեռաւ. ասի-

կայ սիրելի էր թէ ժողովրդեան և թէ զօրաց, միշտ հաւատարիմ մնաց. մեռնելու ատենը հարցուց իմանալ պատերազմին վիճակը, ապսպրեց իր տղին որ միշտ քաջասրտութեամբ ծառայէ իր եղբարներով:

Այս ատեն Լավօնը սկսաւ անուն հանել, որ գնդապետ (քօլօնէլ) ըլլալով մէկ ձիաւոր զօրաց գնդի վրայ, միշտ Պրուշին դէմ կեցաւ քիչ մարդ կորսնցընելով, և ամէնէն վերջինը եղաւ բանակը քաշվելու. մէկալ մասը նեմցեի բանակին որ զատվերեր (1), գնաց յարեցաւ ուրիշ նեմցեի բանակի մը՝ որ քանինից իշխանը զանազան դխացէն խրկերէր Պօէմիա, որպէս զի պօմիսպուօտ տեղը միանան Տաուն մառէշալին հրամանքին տակը:

Պրուշին Թագաւորը աս յաղթութեան լուրը (խապարը) սանկ գրեց իր մօրը Թագուհւոյն. “Նեմցէները աս ծեծին մէջ կորսնցուցին իրենց յաղթութիւնը, ես ազատ մնացած 150 հազարով տէր եմ մէկ աղէկ Թագաւորութեան մը (պօէմիայի), որ ինծի կեր, կերակուր, ըստակալ պիտոր տայ. իմ կտրիճ զօրքերէս մէկ մասը պիտոր խրկեմ Ֆրանսազին դէմ, որ անոր ալ ասանկ աղէկ բարև մը տամ, մնացածովը ես դէմ կելլամ անոր՝ ով որ համարձակի իմ վրայ գալու”: Բայց իր մայրը և ու-

---

(1) Այս մասին զօրացը վրայ կիշխէին Պէք ու Նատաշ զօրապետները:

րիշ Թագաւորազունք իրենն ուրախակցուե̃ խրկեցին Կօզէչէի գրագիրը, որ անոնց դիւացէն ըսավ. « Աւելի մեծ պիտոր ըլլար » ուրախութ̃ինս, թէ որ յաղթութ̃է չնոր- » հաւորելը աւելի վէննայի մէջ ընէիք, » քան թէ բռակա, կերեւայ որ ան սխալը » ըրիք դուք, ինչ սխալ որ ըրավ հին ա- » տենը աննիպալ զօրապետը Կաննէ ե- » ղած ծեծէն ետև, հրամանքդ գիտես յաղ- » թել, բայց յաղթութենովդ չես գիտեր » աւելի շահիլ » :

Աս ըսավ վասն զի շատ մարդ կըզրուցէին, թէ որ պրուշին թագաւորը Բ̃ Փետերիքոս աս յաղթութ̃իս ընելէն ետև՝ բռակա կենալուն տեղը շուտ մը վազէր վէննա երթար, ան ատենը ինչպես ուզէր կրնար հըրամմէր կայսերութ̃ե ու ամմէն եւրոպայի վրայ։ Բայց պրուշին թագաւորը քօզէչէյին առջին դրաւ թէ քանի արգելքներ կային որ՝ աս բանս թող չէին իտար ընելու. և թէ անհնար էր աս վտանգաւոր յարձակում մը ընել վէննային վրայ, առանց բռակա առնելու։

Պրուշը Բռակա Պօհէմիայէն մայր քաղաքը կըպաշարէ, նեմչէն պրուշէն կըյաղթէ.

1757։

Պրուշին թագաւորը տեսնալով որ՝ բռակա մինակ մնաց, անմիջապէս սկսաւ պաշարել, բայց պաշարելու արուեստը դեռ ա-

դէմ չէր մտած պրուշին երկիրը, զօրքը քիչ էր քաղաքին մեծութիւնը նայելով, քիչ քիչ կըյառաջանար իրենց աշխատանքը, փոսե-րը խիստ երկան ու խիստ լայն փորեցին, ու սխալմունքներու ատեն կուտային մէջին-ներուն զիրենք ուժովցընելու ։ Նեմցէն լավտոնին ապսպրած էր պահել հաղորդակ-ցութիւնը բռակային ու տաունին բանակին հետ՝ որ օրէօր շատնալու հետ էր. ու մի-ջոցին մէջ անձրևի շատութէն մօլտավա գետին ջուրը գրեթէ ամմէն կամուրջները քակեց տարաւ. բռակային մէջի եղօղ զօրքը որ 40 հազար էին, շատ հեղ դուրս կելլային, պրուշին վրայ կըվազէին ։ Բայց երևելի եղավ յունիսին 2 եղած ծեծը, 12 հազար դուրս ելան յարձըկեցան պրուշին վրայ, երկու թապեա առին 20 թօփով. 300 հոգի գերի ըրին. 450 սպաննեցին. 800էն աւելի անկար ըրին ծեծկըռվելու. ու քաջութիւն տալու է լավտոնին, որ առջինը եղավ պրուշին բանակը վախցընելու, և զատդրօվ զօրապետը զսպելու, որ վազելով եկավ նեմչէին զօրքը հալածելու քաղաքին մէջը խօթելու, ուր որ կերակուրը հատեր-էր, անոր համար մէջի ժողովուրդը կը-բռնադատէին քաղաքը թշնամիին ձեռքը տալու ։

Տաունը տեսնալով որ՝ իր զօրքը քիչ էին պրուշին դէմ, առջի բերանը ետ քաշվիլ սկսաւ ինչվան որ նոր զօրք իրեն հասցընեն, ու քաշվիլը պրուշը վախնալէն սեպելով, զօրք դրաւ անոր դէմ, բայց պաշարմունքը

վեց շաբաթ քշելէն ետեւ՝ տաունին բանա-
կը զօրացաւ 80 հազար զօրքով, ամմէնքն ալ
ընտիր զօրք. այն ատենը կայսրուհէն իրեն
հրամեց որ ինչ որ ըլլայ, երթայ բռական
պաշարմունքէն խալըսցընէ։ Տաուն վարպե-
տութեամբ մը պտըտըտելով գնաց միացաւ նա-
տաշին հետ, որ մէկ կտրիճ զօրապետ մը-
նէր մաճառ, աղէկ տեղմընալ բռնեց քօ-
լին գեղէն քիչ մը հեռու։ Իսկ Փետերի-
քոս յունիսին 18 բռակային պաշարմունքը
յանձնեց քէյթ զօրապետին, ինքը շատ զօր-
քով գնաց տաունին հետ զարնըվելու, վար-
պետ շարժմունքներով ուզեց անոր կռնը-
կէն վրայ հասնիլ, բայց տաուն իմանալով
Փետերիքոսին միտքը, փոխեց իր զօրայ
դիրքը, քանի բարձր բլուրներ կային քօլին
ու բլանիան ըսված տեղերուն մէջ՝ բռնեց։
Հուլսէն պրուշին զօրապետը առջինը ե-
ղավ զարնըվելու. մէկ գեղ մը քանի մը-
նալ պատնէշ (թապեա) առավ, ու նեմ-
ցերին զօրաց առջի կարգը ավրեց. տաուն
նոր զօրք հասցընելով հոն, վռընտեց ան-
կէց հուլսէնը, տեսնալով որ պրուշին բա-
նակին երկու թեւը զատված էին իրարմէ,
նեմցերին ձիաւոր զօրքը մանաւանդ սաքսօ-
նիացիք անոնց կռնըկէն հոն հասնելով,
շատ մարդ սպաննեցին։

Պրուշին թագաւորը Փետերիքոս՝ օխտը
անգամ նեմցերին վրայ վազեց ամմէն ուժով,
հենրիքոս ու Փերտինանտոս իշխաններով
մէկ տեղ, բայց ամմէն անգամուն վռընտը-
վեցաւ. 6 ժամ պատնիկ կռուելէն ետեւ՝

վերջապէս Նեմցէները կատարեալ յաղ-
թութի ըրին քօծէմիծ ու քօլլին տեղը։
Այն օրվան կռուին մէջ պրուշին զօրքէն 7
հազար հոգի թաղեցին Նեմցէները, 5 հա-
զար խոցված մարդ՝ ու 6 հազար ողջ մարդ
գերի ըրին. 9 հազար սաքսօնիացի զօրքալ
Նեմցէի դին անցան. 44 թօփ առին, ու 29
դրօշակ՝ (պայրախ) ու Նշան. Նեմցէները
6700 հոգի կորսնցուցին որը մեռած, որը
խոցված. անոր համար Ֆետերիքոս պրու-
շին թագաւորը իրեն մէկ թղթին մէջը որ
կըգրէ հերցպէրկ կոմսին, ասանկ կըգուր-
ցէ. "Ես կըցաւիմ որ բռակա եղած ծեծէն
„ ետեւ մօրս գրեցի որ՝ աս ծեծով բանը. ո-
„ րոշվեցաւ, ես վերագոյն եղայ քան զիմ
„ թշնամին աս յաղթութեամբ։ Մայրս իրա-
„ ւունք ունի թէ որ ինծի պարծենկոտ զրա-
„ խօս ըսէ, բայց ասիկայ մէկ հիւանդութիւն
„ մըն է՝ որ շատ հեղ կըհանդիպի յաղթօղ
„ զօրապետներու, աւելի քամահրել մը
„ թշնամին, երբեմն կըլլայ վնասակար ան-
„ բժշկելի"։ Իսկ որ լավտօն կըպատերազ-
մէր հաղորդակցութիւնը պահելու համար բա-
նակին ու բռակային մէջ, առջինը եղավ
աս յաղթութիւնը ծանուցանելու կարօլոս
իշխանին, որ շուտ մը բռակայէն դուրս ե-
լավ իր ամմէն զօրքով, ու զարնըվեցաւ
քէյթ պրուշին մառեշալին հետ, 3 հազար
մարդ ջարդեց, ու թօփեր առաւ։

Երբօր աս յաղթութեան ու բռակային ազա-
տութեան լուրը (խապարը) վեննա հասաւ,
կայսրուհին մարիամ թերեզինան ուրախու-

Թէ՛ն անձամբ գնաց տասունին Ճնկանը շնոր-
հաւորելու , շատ ըստակ սրվավ բաժնելու
գինուորներուն որ անչափ քաջութի ծեծ-
կռվերէին . ու ան երեւելի օրվան յիշատա-
կը միշտ մնալու համար՝ մէկ գինուորական
կարգ մը սահմանեց իր անունովը , նուէ-
րելով քաջութեն ու արդեանց ։ Աս կարգին
գլուխը պիտոր ըլլայ կայսրը, ամմէն հազա-
րապետ (ուֆֆիցիալ) որ աւելի քաջութի
ըրին ան պատերազմին մէջը , շնորհեց որ
մոնան ան կարգը առանց փնտռելու իրենց
ցեղին ազնուութիւնը, ասկէց զատ առատ թօշակ
կապեց անոնց մինչվան իրենց մահը ։

Միայն ցաւալի բօթը մահուան սաքսօնիայի
կայսրընտրուհւոյն մարիամու , որ և լեհի
Թագուհի էր, մոռմեցուց աւստրիոյ տանը
կամ Նեմցէին ուրախութիւնը . ասիկայ ան-
չափ կըսիրէր սաքսօնիացինէրը , որ սաքսօ-
նիայէն դուրս չուզեց ելլալու, թէպէտև
շատ նեղութի քաշեց պրուշին հոն մոնա-
լէն ետև . իրեն աղջիկներէն մէկը Ֆրան-
սայի Թագաւորին առջինեկ զաւկին կնիկն
էր , մէկալըն ալ նաբօլիի Թագուհի էր ։ Ա-
տոնք երկուքն ալ մօրերնուն ըստակ կըխըր-
կէին իր նեղութե ատենը , բայց դանուցչէր
նաբօլիին վէզիրը՝ խիստ թշնամի ըլլալով
աւստրիոյ ցեղին հետ, անանկ կընէր որ՝ նա-
բօլիի Թագուհւոյն խրկած ըստակը իր մօ-
րը համար , պրուշի Թագաւորին ձեռքը
կանցնէր ։

## Պրուշը պօէմիայէն դուրս ելլալը.

## 1757:

Սա ծեծէս ետև պրուշները պօէմիայէն դուրս ելլալ քաշվիլ սկսան, որպէս զի շլէզիան ու սաքսօնիան պաշտպանեն, որոնց ետևէն լավտօնը կը հալածէր իր խրվաթ զօրքով. աստով ըլլալուց որ՝ սա անկանոն զօրքը խրվաթներու, թէպէտ միայն աւազակելու աղէկ են և ոչ կարգաւ պատերազմելու, բայց երբոր վարպետ գլուխ ունենան ինչպէս որ լավտօնն էր, շատ մեծ քաջութիւներ կրնան ընել: Այսու օրվան մէջ որ լավտօնը հալածող եղավ պրուշներուն, 130 առապայ բռնեցին, 10 թօփ, և 2 հազար հոգիէն աւելի գերի ըրին. ասոնք ալ մէնը պրուշի թագաւորին եղբօրը ձեռքէն առին, որուն անունն էր կուլիելմօս. ասիկայ ծիդդաւ քաղքին մօտիկ անանկ ավըրվեցաւ որ՝ իր մնացած զօրքը անօթիութէ կոտորուէին, թէ որ վինդերֆէլտ զօրապետը շատ դժվարութեամբ հաց չի խրկէր անոնց. ան երկիրն ալ անանկ ավրեցին մաճառ զօրքը՝ որ կայսրուհին վրանին ցաւելով 50 հազար ֆիօռին խրկեց անոնց՝ որպէս զի իրենց խրճիթները (խօլիվաները) շինեն, ասանկ թշուառութեան մէջ իյնալով կուլիելմօս, շուտ մը քաշվեցաւ Պաւծէն ըսված տեղը, որ տրեզտաէն գտնայ իր ապրուստը:

Ասանկ ետ քաշվելուն վրայ շատ կատղեցաւ

Փետերիքոս պրուշին Թագաւորը, անչափ
որ՝ երբոր Կուլիելմոս իր եղբայրը յուլիսին
ետքերը իր քովը եկաւ, Փետերիքոս ձին
դարձուց. անանկ ցուցնելով որ իբր թէ
չտեսաւ զինքը. ետքը կոյց զօրապետը կան-
չեց ըսաւ։ Հասկըցո՞ւ իմ եղբօրս՝ ու ամ-
մէն զօրապետներուն որ իր տակն են, թէ
մէկ բարեգործութի՛ւն մը ըրած կըլլայի, թէ
որ ամմէնուդ գլուխը կըտրէի։ Կուլիելմոս
իր եղբայրը խիստ տաքնալով աս խօսքիս
վրայ՝ գրեց Փետերիքոսին. „ Աս իմ խեղ-
„ քէս բան մը չըրի, ամմէն կերպով նայե-
„ ցայ խալըսցընելու զօրքը որ ինծի յանձ-
„ նեցիր, մէկ զօրք մը՝ որ արդէն յոքնած՝
„ ու սրտերնին կոտրած էին. աս բանիս
„ ամմէն զօրապետներ կրնան վկայել, մենծ
„ շնորհք կընէիր թէ որ աս բանիս վրայ
„ քննութի՛ւն ընէիր։ “ Աս խօսքիս վրայ Փե-
տերիքոս իր եղբայրը մխիթարելուն տեղը
ասանկ պատասխան գրեց։ „ Իմ բանիս ձա-
„ խորդ երթալու պատճառը թշնամիները
„ չեղան, հապա քուկին չիգիտնալդ ու ան-
„ կարգ վարվիլդ. ես չեմ ճշգոհար քուկին
„ սրտիդ համար, գիտեմ որ սիրտդ բարի
„ է, բայց քուկին անընդունակ ըլլալուդ
„ վրայ կըճշգոհամ. ես քեզի համար աւելի
„ բարեբաղդութի՛ւն կըցանկամ քան թէ ին-
„ ծի համար, բայց ինչ թշուառութի՛ւն որ
„ պիտոր գան իմ վրայ, քենէ պիտոր գան,
„ ինչպէս որ նախատես ըլլալով կիմանամ.
„ անոր համար դուն ու քուկին զաւկըներդ
„ ինծմէն դատապարտան պիտոր տեսնան “ ։

Ասանկ խիստ խօսքերու չկրնալով կու- լիելմոս իշխանը դիմանալու, որ մէկ քաղց- րաբարոյ հեզահոգի մարդ մըն էր, սրտանց խորունկ խոցվելով քաշվեցաւ գնաց իր տունը պէռլին քաղաքը. ալ բնաւ չիտե- սաւ Թագաւորին երեսը. իր քովնալ մէկը չէր համարձակեր երթալու, Ֆետերիքոս Թագաւորէն վախնալով, միայն Ֆէրտինան- տոս պրունսվիքին իշխանը կերթար. կու- լիելմոս հոն քանի մը ամսէն ետև մեռաւ։ Ամմէն իր եղբայրները ժողովուրդը կըսի- րէին աս կուլիելմոս իշխանը, անոր համար սրտանց կըմեղադրէին Ֆետերիքոս Թագա- ւորը. ան ալ մեռնելէն ետև շատ ցաւեցաւ իր եղբօրը կուլիելմոսին վրայ, իր փորձովը իմացաւ ետքէն որ՝ լավտօնի պէս մարդու հետ խաղալը իրեն Ֆետերիքոսին ալ դժար էր, ո՞ւր մնաց կուլիելմոսի։ Բայց աշխըր- հիս մէջ շատ մարդու հարկինք (խըզմէթ) իրենց կորսըվելէն ետև կըգիտցըվի, երբոր ալ օգուտ չըկայ։

[illegible]

1757.

Դանք որ պրուշին թանակը (օրտուն) քիչ մը կոտրըվելով, քիչ մը հիվընտնալով, քիչ- մընալ փախչելով, կէսէն աւելի քիչցերեր. հազիւ 80 հազար մնացեր էր, որոնց մէկ մասն- ալ պէտք էր պահպանն գնել բերդերու

մէջ . իսկ պրուշի դէմ եղօղ տէրուէնց զօրքը օրէօր կըշատնար ։ Տաուն նեմցէին մարէ-շալը տեսնալով որ՝ պրուշին բանակը լու-սացիա էր նստած , ետևնին սկսաւ երթալ , որպէս զի անկէց երթայ վաղէ շլէզիայէն վրայ ։ Վինդէրֆէլտ պրուշին զօրապետը աս բանս արգելելու համար՝ հերցպէրկ լե-ռան վրայ նախ գետին ձախ կողմը նստե-

րէր իր զօրքովը .

Լավտօնը՝ որ իր քաջագործութէնը համար մէկ տարուան մէջ մեծ զօրապետ եղավ նեմցէի (1) , մտածեց 'ի կարգի դրաւ վին-դէրֆէլտը զարնելու համար , և նաստաշ զօ-րապետին յանձնեց . ասոր հետ ուրիշ զօ-րապետներնալ միանալով , սեպտ . 7 . վրայ յարձըկեցան . իրեք ժամ կռուելէն ետև՝ վինդէրֆէլտ անուանի զօրապետը ընկաւ մեռաւ , իրեն հետ ալ շատ հազարապետներ (ուֆֆիցիալներ) . նեմցէն առաւ 15 թօփ . 7 դրօշակ (պայրախ) . լիկնից ու լանտըս-հուդ ըսված քաղքները՝ իրենց դռները բացին նեմցէներուն , շվէյտնից բերդնալ որ նաստաշը պաշարեց , նոյեմ . 12 ինքիր զինքը տըվավ , ուր նեմցէները գտան 350 հազար ֆռանքի , շատ ալ պաշար (զահրէ) կերակուրի ու ձէպխանէի ։ Ան ատենը տա-վուն զօրագլուխը (2) համարձակ մտաւ շլէ-

---

(1) Ուրիշները զօրապետ ըլլալու՝ իրենց կեանքին մեծ մասը կըսպասեն , անանկ կըհասնին ան իշխա-նութեան ։

(2) Տավունին եղբէնալ կարոլոս իշխանը կուգար ։

զխա, պէտքերն պրոնովիքին իշխանը որ ան գաւառը կըպահէր, վախնալէն պըէզըլավին պատին տակը գնաց բանակեցաւ։

Կորիճ զօրապետներուն մեծ վարպետութին է՝ թշնամին չըկարծած բաները ընել, ատ ատեններուս մէջ նեմցէին կորիճ զօրապետը Հատտիկ անունով մաճառ ազգէն մէկ մեծ քաջութի մը ըրաւ չըկարծած. Հոկտ. 18 (1). 4000 կամ 3400 ձիաւոր մաճառ զօրքով յարձըկելով պրանտէնպուրկ գաւառը, յանկարծ եկաւ պէռլին պրուշին մայր քաղքին առջին, որ քիչ մը պահապան զօրքէն զատ՝ ուրիշ մէկ ամրութի մը չունէր, հրաման խրկեց քաղքին դատաւորներուն որ շուտ մը 300 հազար ֆիօռին վճարեն. բայց երբոր անոնք մերժեցին, թօփով կոտրեց կամուրջին վրայ կապած շղթայները (զինճիրները), կոտրեց նաև շլէզիայի ըսված դուռը. քաղքին մէջը մտածին պէս՝ ծանուցում ըրաւ որ քաղքըցիք թող չըվախնան, հապա իր ուզած ըստակը տան, անկեց զատ 100 հազար ֆիօռինալ տան զինուորներուն, որ չըթալլեն քաղաքը, ինչպէս որ ըստ կարգի պատերազմի կընային թալլել։

Էրկու թագուհինները հատտիկին ներս մտնալէն առաջ՝ վախնալով արտորնօք պէռլինէն ելան փախան գայլին ըսբանտաւ. հոն փախաւ նաև քաղքին կառավարը· ծա

---

(1) Ոմանք կըդնեն հոկտեմբերի 16։

նուաճանելով Հատտիկին՝ որ քու խղճմտան քիդ կըյանձնեմ քաղաքը․ Հատտիկը քանի որ հոն կեցաւ՝ վնաս մը թալլել մը չի-տըվաւ իր զօրաց այն քաղաքը՝ որ ընաւ մէկ ամբոխ մը չունէր․ մէջիններնալ 120 տարիէն վեր թշնամիի երես պէտալընի քով տեսած չըլլալով, սաստիկ վախնալէն ուրիշ բան չյտէին, շուտ մը 185 հազար ռիալը ժողվեցին, Հատտիկին առջին բերին․ անիկայ առչափս հերիք սեպելով ետ դարձաւ, վասն զի լսեց որ պրուսին թագաւորը ու մօրիկ իշխանը արտորնօք կուգային պէտալընը խալսցընելու․ բայց Հատտիկը ուրիշ ճամփաներէն պտըտելով ողջ ամբողջ առած ըստըրկներովը եկաւ հասաւ տավրունին քով, ուր էր նեմցէին բանակը (օատուն)։

Փրանսըզը պրուսին դէմ կըզարնուի, սաստկութեամբ դուրսը կըփախչին․

1757։

Ըս տարիներս Փրանսըզին զօրքը երկու բանակ կապած մտած գերմանիոյ կայսերութե մէջ տեղը, մէկին վրայ կիշխէր Սուպիզ մառէշալը, որպէս զի մտնայ Հաննովէր ըսված կայսրընտրին երկիրը [1], մէկալ բանակին

---

(1) Հաննովէր ինչպէս որ վերը ըսերենք, ինկիլիզին ձեռքն է։

վրայ կ՚իշխէր իշխանն ռօան սուպիզ , որպէս զի միանայ շրջանակներուն բանակին հետ , սաքսօնիանալ խալսցընէ պրուսիին ձեռքէն ։ Նոյնը քանի երկիր որ պրուսիին ձեռքէն առին , որ վէստ-ֆալիայի մէջ էին ու ռէնօ գետին քովերը , ամմէննալ նեմցեի կայսրուհւոյն տրվին , ինչպէս նեմցեի կայսրուհինալ խօսք տրվէրէր ֆրանսզի թագաւորին՝ թէ իր զօրքով պաշտպանէ պիտոր ինկիլիզի ձեռքէն օստէնտային ու նիւ բօռդին նաւահանգիստները՝ որ ֆլանտրայի մէջ էին ։

Պրուսիին թագաւորը Բ ֆետերիքոս որովհետև յայտնի ծեծ չէր բացած ֆրանսզին դէմ , կաղաղակէր բողոքում կընէր որ՝ աս տեղերս առնելը բռնութի է , և ազգաց օրէնքին դէմ , կըգանկտէր աւելի ան բանին համար որ՝ ուր տեղվանք պրանտէմպուրկին նշանները դրած կային՝ կըվերցընէին , անոնց տեղը ավստրիոյ այսինքն նեմցեի կայսրուհւոյն նշանը կըդնէին , եկամուտները կառնէին , ու ըստրկներուն սընտուկները կըտանէին ։ Աս գանկատներու դէմ ամմէնը կըպատասխանէին որ, ֆրանսըզը պրուսիին ըրածէն սորվեցաւ ։ Ուր որ եռ-տէր շատ է ու զօրաւոր , հոն իրաւունքը պակաս է ։ Սարիլը կեսին եդուէն վարպետ ըլլալով անցաւ վէսէր (1) , ու պատերազմիլ սկսաւ ։

---

(1) Եդուէն սաքսօնիացի անուանի մառէշալէն սորվէրէր դժուարին արուեստը բանակ ( օռտու ) նըստեցընելու , բանակ շարժելու ։

իսկ Գումպէռլանտին դուքսը (պէյը) (1) թէպէտ քիչ մը տեղեկութիւն ունէր պատերազմական արուեստի, բայց յանդուգն յարձակօղ էր, և ուրիշի խօսքին մտիկ չէր ըներ. ասիկայ հոն ունէր իրեն մէկ բանակ մը 50 հազարի չափ, հաննօվէրի ու հասսիայի զօրքերէն՝ նաև Ինկիլիզի զօրքերէն, որպէս զի այն երկիրները պաշտպանէ։ Երկու ամիս իրարու քովերէն պտըտելէն քաշվելէն ետև՝ հարկ եղաւ օսդէնպէք ըսված տեղը ծեծկըրվելու, ուր Փրանսզը բոլորովին զինքը ավրեց, և մինտէն ու հաննօվէրը առաւ. թէպէտ և երկու գունդ Փրանսըզներու չիդիմանալով սխալմամբ իրենց զօրացը վրայ կրակ ըրին։

Բայց բանը առաջ երթալու մինակ զօրապետին վարպետութիւնը խելքը հերիք չէ, պէտք է նաև կառավարօղներնալ խելացի ըլլան, երբոր էդուէ մառէշալը այս ծեծն վաստըկելէն ետև՝ կըվաղէր նոր նոր յաղթութիւններ ընելու, մէյմնալ նայիս որ՝ փարէզին մէջը էդուէն փոխեցին, իրեն տեղը Ռիշլիէն զօրապետ դրին։ Աս Ռիշլիէ դուքսը շատ բանսարկութիւն ընելով ժէ լուիզին թագաւորին (2) ականջը լեցուցերէր ըսե-

---

(1) Քումպէռլանտին դուքսը երկրորդ զաւակն է Ինկիլիզի թագաւորին։

(2) Ռիշլիէ դուքսին պաշտպանը բոմբատուր խաթունն էր, որ ինչպէս վէրը ըսերենք, ան ատենը Փրանսայի թագաւորին սիրտը բոլորովին իր ձեռքը առած ըլլալով, ասիկայ էր որ կըկառավարէր Փրանսան։

լով թէ՝ եղուէն մէկ կամկար մամածակ մարդ մընէ, ինչվան հիմա համնօվէրնալ առած պիտոր ըլլար, մակտէմպուրկնալ պաշարած պիտոր ըլլար որ պիտվակամ քերդ մընէ։ Ասանկ քաննարկութինով լեցուած ըլլալով՝ թագաւորը եղուէն փոխեց, ծեծի վրայ եղօղ դատաւորնէրնալ եղուէին յանդիմանութիւն գրեցին իր ուշանալուն համար. եղուէն պատասխանեց որ մէկ վարպետ զօրապետ մը՝ չէ թէ միմակ գերմանիայի մէջ մտնալը ու առաջ երթալը պիտոր մտածէ, հապա նաև անկեց դուրս ելալու միջոցնէրը։

Ա՛ս պատասխանին զօրութիւը ետքէն իմացան, երբոր ալ ատեն չիկար շտկելու, իսկ ուրիշնէրը որ կըզարմանային Ֆրանսզին ասանկ սխալելուն համար, աս մեկնութիւնս կուտային ըսելով, իբր թէ Ֆրանսզը ասոր համար փոխեց եղուէ վարպետ զօրապետին տեղը ուիշ լիւն դրաւ որ՝ պրուշը շատ չիտըկարանայ, աւստրիոյ կամ նեմցէի կայսրուհւոյն տունը շատ չիզօրանայ, այլ երկուքը հաւասարակշիռ մնան։

Գումպէռլանտ դուքսը ասանկ յաղթըվելէն ետև՝ քաշվեցաւ ըսդատէն, որ գերմանիոյ ծովուն վրայ է. ասիկայ մէկ տեղմընէր որ՝ ուսկից չէր կրնար իր զօրաց ապրուստը հոգալ, յարմարալ չէր թշնամին զարնելու. թէ որ նոր եկօղ Ֆրանսզ մառէշալը ռիշլիւ՝ սաքսօնիացոց պէս իր զօրքովը վրան վազէր չորս դիացէն սխմելով, քումպէռլանտին դուքսը կամ գերի պիտոր ըլնար

իր զօրքովը, կամ Էլպա գետին մէջը պիտոր կենար, անանկով աս տարի կըլմննար պատերազմը։ Բայց ուրիշլիւն օգոստ. 28 յանձն առաւ մէկ դաշնադրութին մը բրավ Քլօսդերսէվլէն տեղը, ուր Քումպէռլանտին դուքսը կըխոստանար թէ՝ ինչ զօրք կայ քովը հասսիայէն, պրունսվիքեն, ու սաքսեան կոդաէն, որ ինկիլիզը իրեն թոշակովը կըպահէր, ամմէնուն արձըկէ, քովէն դուրս հանէ, ինքը Քումպէռլանտի դուքսնալ էլպա գետին ան դին անցնի, ու հոն չեզոք մնայ, իսկ ինկիլիզ զօրքը ըստ ատենի ձմերոցը նատի առանց շարժելու, և Ֆրանսզին տայ պրէմայի ու վէրտէնի դըքսութինները։

Աս դաշնադրութիւնս ահա եղաւ մէկ մեծ սխալ մը Ֆրանսզի դիհացէն, որ քիչ ատենէն ետև մեծ կորուստ բերաւ. բայց անանկ ձան եղաւ որ՝ աս դաշնադրութիւնս յանձն առնելու համար՝ ուրիշլիւն թշնամիէն գաղտուկ պարգև առաւ երկու միլիոն ֆիօռին, անոր համար երբոր ետքը մէկ ակում օր մը ուրիշլիւն Ֆրանսզի թագաւորին քովը եկերեր խօսակցելու, խիստ աղվոր բանված լաթեր հագնելով, նօալեան մառէշալն ալ հոն վրայ եկաւ. Թագաւորը լուիզ ԺԵ հարցուց ասոր, դունալ ասանկ աղվոր բանված հագուստ ունիս. պատասխան տըվաւ նօալեան մառէշալը. խիստ աղվոր է, բայց մեղք որ գերմանիայի (նեմցէի) արծըթով բանված է։ Գերմանիայի արծաթ ըսելը Ֆրանսայի մէջ կընշանակէ

ցած արծաթ, բայց Նօալեան մառեշալին միտքը աս էր որ՝ Ռիշլիւն գերմանիայի մէջ արծաթ կաշառ (սուպսիտիէթ) առաւ թըշնամիէն, անանկ մէկ դաշնադրութիւն մը ըրաւ որ՝ թշնամիին օգտակար էր, Փրանսային վնասակար, աս մատնութիւս ուզեց հասկըցընել։ Թագաւորն ալ հասկըցաւ իր միտքը, և որովհետև իրեն խիստ սիրելի էր Ռիշլիւն, երեսը թթուեցընելով խոժոռելով մը ըսաւ Նօալեան մառեշալին։ Ե՛րբ պիտոր գեղ երթաս, որովհետև ատենը հասերէ երթալու։ Նօալեանը հասկընալով թագաւորին միտքը՝ որ զինքը վռնտել քշել կուզէ, երեսը մէկ այլայլութի մը չիցըցընելով պատասխանեց. Այսօր պիտոր երթամ թագաւոր, առաջս պատրաստ կեցերէ։ Այս օրը էր անչին փոխանաւ չեշըշնէր։

Մոսկովը պրուսային դէմ կելլայ, Մեմելը կառնէ.

1757։

Մոսկովին մառեշալը Ափրաքսին ըսված 60 հազարով վազեց Մեմել ըսված բերդին վրայ, որ աղէկ նաւահանգիստ մը ունէր պալդիկ ծովին քով. առջի բերանը մոսկովները շփոթութեան մէջ ընկան, ու պիտոր յաղթըւէին, բայց Ռոմանցով որ ետքը շատ անուանի զօրապետ եղաւ, ան ատենը թէպէտ պզտիկ էր, բայց քաջութեան վրայ հանելով մոսկովները ուժովցուց. անան-

կով մոսկովը յուլիսի 6 մէմէլ քաղաքը ա-
ռավ, ու ետեւէ ետեւ պրուշին զօրքը հալա-
ծեց. 2 հազար պրուշի զօրք կոտրեց, հազար
հոգի գերի ըրավ, ու 28 թօփ առավ:
Աս յաղթութէս ետեւ ամմէննալ կըսպա-
սէին որ՝ մոսկովը քէնիգզպերկին վրայ կը-
վազէ, որ բրուսիա գաւառին մայր քա-
ղաքն է, բայց ասոր դէմ տեսան որ՝ մոս-
կովները ընաւ չիծեծկըվեցան պրուշին հետ,
այլ մանաւանդ հոկտեմբեր ամսին առաջ-
ները արտորնօք քաշվեցան եկան քուռլան-
տիային սահմանակցութէր քով. ասկեց ա-
նանկ ձան ելավ որ՝ ֆետերիքոս պրուշին
թագաւորը ըստակ տալով մոսկովլի ըէխս
էֆէնտիին՝ որ կըսվէր կոմս Պէստուժէվ,
սիրտը վաստըկերէր որ աբրաքսին զօրապե-
տը ետ կանչէ, ինչպես որ քաջ թագաւոր-
ներուն սովորութի է, որոնց որ երկըթով
չեն կընար յաղթել, կընային որ ոսկիով
յաղթեն: Ետքը իմացվեցաւ որ՝ թէպէտ
իրաւ պէստուժէվ չէր ուզեր որ պրուշին
թագաւորը բոլորովին վէրնայ, բայց ֆրան-
սըզէն ու նեմչեէն ըստակ առնելով ծեծ
բացաւ պրուշին վրայ. իսկ ետքը զօրքը ետ
քաշելուն պատճառը եղավ մեծ դուքսը
պետրոս հօլշտէյնեան, որ մէկ հատիկ ժա-
ռանգն էր մոսկովլի թագաւորութն: Ասեկ
կայ անանկ կըսէրեր պրուշին թագաւորը
իր քաջութէր ու զօրացը կըթութէր հա-
մար, որ ինքնալ լման անոր պէս կուզէր
ձեւանալ. անոր համար մոսկովները մանա-
ւանդ պէստուժէվը որպէս զի պետրոսին

որոնց դէմ բան չըներ, ծեծկըռտուքը վերջա-
ցընել նայեցաւ։

Ան ատենը Նեմցերին ու Ֆրանսըզին դեսպան-ները (էլչիները) որ Թէդրուօպալըք կընըս-տէին, կըջանային որ պեստուժէվը ձգել-տան իր պաշտօնէ (մանսուպէ)։ Թէպետև Ինկիլիզին դեսպանն ալ մէկալ դիհացէն շատ ըստակ կըկերցընէր որ՝ մոսկովը պրուշին հետ ծեծկըռվելը վերջացընէ։ Բայց մէկալ երկու դեսպանները Նեմցերին ու Ֆրանսըզին՝ անչափ փչեցին, անչափ տարաձայնութիւն ձգե-ցին Թագուհւոյն ու պեստուժէվին մէջը, որ Թագուհին ալ չէր կանչէր պեստուժէվը իր խորհուրդին մէջը. որ մընաւ հրապարակաւ իր պաշտօնէն վար ձգել տըլվաւ, ու սիպե-րիա քշեց։

Շվէտը պրուշին վրայ ելաւ, պրուշը խափանե-լուն մէջ նեղցաւ.

1757։

Շվէտը որովհետև պաշտպան էր եղած վեսդֆալիայի դաշնադրութեան, սա բանս իրաւունքի բերելով ծեծ բացաւ պրուշին վրայ. սեպտեմբերի մէջ 24 հազարով մտաւ Բօմերանիայի ան մասը՝ որ պրուշին ձեռքն էր. Թէ որ հոն Ինկիլիզի քանի մը նաւ ըլ-լային, կընային Թող չտալ, բայց շվէտը ամենևին դէմ դնօղ մը չգտնալով իր զօր-քը ցամաքը հանեց, առաւ անքլամ քաղա-քը, տեմմին, և ուրիշ քաղքըներ. Միայն

տեղ մը պարուսպին քիչ մը զօրքը առջեւնին ելածին պէս, Թողուցին արտորնոք փախան, վասն զի իրենց զօրապետ ունէին Մօնդալամպերտ մարքեզը՝ որ Փրանսայի դեսպան էր, զինուորական արուեստը քիչ գիտէր ։ Ասկէց կերեւայ որ՝ շվէտին մեծերնալ երկու գի բաժնըւած ըլլալով, ոմանք Փրանսըզին դին՝ ոմանք պրուսին դին՝ ամմէնն ալ միաբան չպատերազմեցան. Շվէտին արքունիքը ու ազգը ա՛ս ծեծին դէմ էին. Թագաւորը որ կ'ուզէր Ադոլֆոս Փետերիքոս, եւ մանաւանդ Թագուհին Լուիզիա Ուլրիքա, անոր համար ակամայ (զօռաքի) բացին ծեծը, որովհետեւ Թագուհին՝ պրուսի Թագաւորին քոյրն էր ։ Իսկ Թէպէտ շվէտները Թուլութեամբ ծեծկըռվեցան, բայց անանկովալ քիչ մը առաջ կըցան երթալ, ինչվան Ըսդէդդին եկան որպէս զի միանան մոսկովի զօրացը հետ պրանտէմպուրկի մէջ, բայց տեսնալով որ մոսկովները անկէց քաշված էին, ամենեւին պարապ ելան ։

Չորս տէրութեան ասանկ պրուսին վրայ ելլալով ամմէնուն կերեւար որ՝ պրուսը պիտոր վերջանայ, ընջըվի. գերմանական կայսերուհէ ժողովնալ զպրուսը դատապարտեր էր, դուրս հանելով զինքը գերմանական անդամէ, զրկելով ամմէն իր երկիրներէն, եկամուտներէն, եւ արտօնութենէն ։ Պրուսի Թագաւորնալ Փետերիքոս սաստիկ վախի մէջ ընկաւ, կերեւար որ ուրիշ բան չէր մտածէր, բայց եթէ փառաւորապէս մեռնիլ, անոր համար կտակի պէս ըրավ, իր

վրանաւ միշտ ՚իւլիւմէնի պէս հայեր կը-պահէր , որ երբոր Թշնամին ձեռք գերի կը-նայ՝ անոնցմէ կըլլելով ինքիր զինքը մեռ-ցընէ ։ Մեռնիլը իր աչքին բան մը չէր երեւնար , անոր համար իր քրօջը կըգրէ ։
„ Երբոր մէկ տնէ մը մուխ կելլայ , ինծի
;, կերենայ ան տնէն դուրս ելլալու . անանկ-
„ էնէ ինչո՞ւ պիտոր չիվայլէ իմ հոգիիս
„ դուրս ելլալ իմ մարմինէս , երբոր չու-
„ զէր ալ հոն բնակելու . աշխարհ եկայ ա-
„ ռանց մէկէմը հաւանութեն առնելու, հի-
„ մաալ անանկէնէ ով կրնայ զիս արգելել
„ դուրս ելլալու ։ " Ըն առենները ուրիշ Թուղթ մընաւ գրեց Մըձէնսի մառքէզին ոտանաւոր գրված մեռնելու վրայ ։ Բայց ասոնք ընդդէմ բնութեն բաներ են ։

Նու Թէպէտ ասանկ վախի մէջ էր , բայց ոչ երբէք կըյուսահատէր , հապա անշփոթ մտքով սկսաւ կարգաւորել իր զօրքը որ 60 հազարի չափ կար . մեծ մասը զօրաց յանձնեց իր եղբօրը , որ տրէզտան ու սաքսոնիային ուրիշ քաղքընները պահպանէ . ինքն հետ առաւ 25 հազար ընտիր զօրքերէն , քէյդ մառէշալին հետ մէկէն վազեց Ֆրանսըզին հետ ծեծկըվելու , որ դօրկաւ ու լիբսիան առէր նստերէին . գիտէր որ ան ատենը Ֆրանսզները դեռ չէին սորված զօրաց արագութիր ու չուստ շարժմունքները , որ պրուշը իր զօրացը սորվեցուցերէր , հոն կային նաեւ գերմանիոյ կայսերութեն իշխաններուն զօրքը , որպէս զի Ֆրանսզին հետ մէկ տեղ պատերազմին պրուշին դէմ ։ Բայց

Ֆետերիքոս պրուսին Թագաւորը քանի տեղ չէր սեպեր անոնց զօրքը, գիտէր որ շարժմունքնին կամաց էր, կրակիալ չէին սորված. Թող տուր որ իրենց մէջնալ բաժնըված էին իրենց շահուն ու զանազան հաւատքով ըլլալնուն համար։

Պրուսը Ֆրանսըզին ու Գերմանական զօրաց վրայ կըզարնէ, մեծ յաղթութիւն կընէ Ռօսպախ։

1757։

Թ՛շնամիներուն բանակին վրայ Սուպիզ Ֆրանսըզն էր զօրապետ, որոնց բանակին մէջը մէկ շփոթ բազմութիւն մը կար Թօփճիներու, ուրիշ բան չէին խօսէր որ՝ ծաղր ընել պրուսին պզտըլտիկ բանակը (օւտուն), իրենք ամէննալ խաղալու հետ զբաղէրէին, սոյգ դնելով որ յաղթութիւնը իրենց ձեռքն է. Ֆետերիքոս պրուսին Թագաւորը տանիկ վտանգի մէջ ըլլալով՝ սկսաւ իր զօրքը յորդորել. „Բարեկամնէր, ըսաւ, եկաւ „ահա ան ժամը՝ որ ինչ սիրական բան ու„նինք, այսինքն հայր մայր, զաւակ, տուն, „ամմէննալ մեր զէնքէն (սիլահէն) մեր „ծեծկըռվելէն կախված են։ Ժամանակ չու„նիմ որ երկան խօսիմ. Մինչվան հիմա չե„ղավ մէկ նեղութիւն մը մէկ վտանգ մը՝ որ „եսալ ձեզի հետ մէկ տեղ քաշած չըլլամ. „Հիմայալ իս կըտեսնաք աքիւնս Թափելու „հայրենեացս համար։ Իմ երախտապար„տութենս նշան աս կըսեմ որ՝ հիմակուցմէ

„ սկսեալ յինչվան որ ձմերոյը (խշլան) նըս-
„ տիք, ձեր թոշակը (էօլէֆէն) կրկին պի-
„ տի՛ տամ“ ։ Աս քիչ խօսքերս բայց աղե-
կտուր սրտով զուրցըված խօսքեր՝ մէկ բան
մը ըրին, որ զօրքը բոլորովին փոխվեցան,
ամմէնքնալ մէյ մէկ առիւծ դարձան ։

Նոյեմբ. 5 Փետերիքոս իր ամմէն վարպե-
տութիւը բանեցընելով իր զօրքը կարգա-
ւորեց, մէկ յորձանքի (սէլի) մը պէս ամ-
մէն ուժով վրայ վազեց, առջի բերանը ա-
նանկ մը երևցաւ որ՝ իբր թէ թշնամիէն
կըփախչի, բայց ետքը անանկ վազելով մը
թշնամիներուն զօրաց մէջը մէկ շփոթութի̃
մը ձգեց որ՝ գերմանական կայսերուն զօր-
քը իրարմէ զատեց, ցիր ու ցան ըրաւ։ Ամ-
մէննալ թիւֆէնկնին ձգեցին, անձնատուր
եղան. Ֆրանսազին հետևակ (եաեան) զօրք-
նալ պրուշին վեց գունդ զօրքէն անանկ
վախցան որ՝ անկարգ փախչելով ետ քաշ-
վեցան. և թէպէտ ջանացին միանալ, բայց
պրուշը նորէն անոնք զարնելով ավըրվե-
ցան ։

Ասիկայ եղավ մէկ ցուցանքաւոր բան մը,
չեղավ պատերազմ՝ հապա մէկ փախչիլ մը
շփոթութէ̃, որուն նման պատմութէ̃ց մէջը
չենք գտնար. ամմէն զօրքը պիտոր ջարդըր-
վէին, թէ որ լավտօնը ու վօկեր բրէմծն-
դացի ասպետը ձիաւոր զօրքերով դէմ չիդը-
նէին անանկ ատեն որ մէկալընոնք անկար-
գաբար փախչող փախչողի կըլլային ։ Սու-
պիս Ֆրանսազ զօրապետը ու իլտպուրկավ-
զէն իշխանը՝ որ ծեծէն առաջ կըպարծե-

նայլին թէ իրենց երրորդ մասը զօրաց հերիք էր պրուշին ամէն զօրքը վռնտելու, երկուքնալ ձիերնին վազցընելով փախչելով վախէն չխալըսեցան, ինչվան որ չիհասան էկրա՛ բերդը, իսկ գերմանիայի իշխաններուն զօրքը բոլորովին ցրուեցան։ Պրուշը աս ծեծիս մէջը 700 հոգիի չափ կորսնցուց, իսկ Ֆրանսզը ու կայսերականքը 10 հազար մարդէն աւելի կորսնցուցին, որոնցմէ 6 հազարը գերի ընկան. 63 թօփ կորսնցուցին, 15 դրօշակ, 7 նշան. Ֆետերիքոս տեսնալով որ առջևը ձգած 200 հազարապետ (ոֆֆիցիալ) գերի կըբերէին, ամէննալ երևելի անձինքներ, հեգնելով մը ըսաւ անոնց։ Պարոններ ես ձեր Ֆրանսզ ազգին վրայ դեռ չեմ կրնար նայիլ իբր ինծի թշնամի եղօղներու վրայ։ Ետքը հացի կանչելով երևելի հազարապետները ըսաւ։ Պարոններ, որչափ որ քիչ ըլլայ կերակուրս, պէտք է որ ներէք. վասն զի իրաւցընէ չէի սպասեր որ՝ ասչափ երևելի անձինքներ իմ սեղանս պիտոր գան. և թէ որ ան սատանայ լավտօնը իր անիծեալ կրակովը դէմ չիդնէր, ամէն Ֆրանսզին բանակը իմ սեղանս պիտոր ունենայի։

Պատմութեց մէջ շատ երևելի եղավ աս օրվան ծեծս, որ տեղին անուանովը Ռօսպախ պատերազմ կըսուի. Աս յաղթութենովնալ յայտնի եղավ ինչու ըրերէին դաշնադրութիւը, որ շուտ մը տասնկ ավրեցին, նորէն գէնք առին համնօվէրցիք դաշնադրութենը դէմ։

՝Լեմյէն Պրեշլաւ շլէզիայէն մայր քաղաքը կառնէ.

1757:

Աս ռուսպաք տեղը եղած ջարդը բոլոր եւրոպա զարմացուց, ու բոլորովին փոխեց պատերազմին երեսը, շատ դէշ հետեւութիւներ հետեւեցան. փարէզին մէջը շատ ձշգոհանք եղան, ինչու մեծերը ասանկ զօրապետներ ընտրեցին ըսելով որ ֆրանսզին անունը կորեցին: Ու որովհետեւ թօմբատուք խալթումն էր որ սուպիս զօրապետը առաջ բերեր, անոր դէմ շատ կըձշգոհային. երբոր դուրս կելլար թօմբատուրը՝ ծաղր կընէին. պարսաւանքի կամ քամահրանքի գրուածներ հանեցին տպեցին իրեն դէմ, ու իր կողմը եղօղներուն դէմ:

Պրուշին թագաւորը աս ռուսպաքին յաղթութիւը ընելէն ետեւ՝ միտքը դրաւ նորէն իր տակը առնել սաքսօնիան ու շլեզիան, որ աս ատեններս ամմէնն ալ աւստրիացոց կամ նեմչէին ձեռքն էին ընկած. իսկ պէվէրն իշխան պրուշին զօրապետը նեմչէէն ետ քաշվելով 30 հազարով պռէզլաւին քով նստերեր, որ շլեզիային մայրաքաղաքն է: ՝Լոթեմբերքի կարօլոս լօռէնայի իշխանը ու տավըուն ուզելով պռէզլաւը առնել՝ գիշերանց անցան լօհ ըսված պզտիկ ջուրը, առտըվանց թանձր մշուշը (փուսը) արգելք եղաւ որ չիկրցան վրայ վազել, օհարսըկվան

ատեն սկսան ծեծկըռուիլ պէկլէրն իշխանին հետ։ Երեք ժամ սաստիկ կըռուելէն ետև, որովհետև Նեմցեին զօրքը քիչւոր էին՝ յաղթըւեցան պըռուշները, ետ քաշւեցան կորսընցընելով 48 թօփ, ու 3000 մարդ. ոմանք կըդնեն 10 հազար մարդ. իսկ Նեմ-ցեները կորսընցուցին 6 կամ 7 հազար մարդ։

Էն ատենը պէկլէրն յաղթըւելով քաշւե-ցաւ Ռը Նիկողոս ըսւած արուարձանին դին, հետևեալ օրը անցաւ օտեր գետը. եղաւ մէյմը քալելու տեսնալու Նեմցեին բանա-կը, բայց անոնք տեսնալնինի՝ ինքը Նեմցեին ձեռքը գերի ընկաւ. ան օրնալ Նոյ. 22 պրեզ-լաւ քաղաքը անձնատուր եղաւ Նեմցեին, որովհետև պէկլէրն թողուցեր գացերեր, և մէջի եղօղ պըռուշի պահապան զօրքը մի-նակ 3 հազար էին, անանկով ամբողջ շլէ-զիան Նեմցեին ձեռքը անցաւ, որ մէկ աղէկ դքսութին մընէ։

Դանք որ վերոյիշեալ պէկլէրն զօրապետը տեսնալով որ իր թագաւորը Ֆրետերիքոս հօգ. չիտանիր զինքը գերութէ խալըսցընե-լու բանակ տալով, կամ փոխելով ուրիշ գերի ընկած Նեմցէ զօրապետի մը հետ՝ ինչ-պէս որ սովորութին է, աղաչանք խրկեց Նեմցեի կայսրուհւոյն զինքը ազատելու հա-մար, խոստանալով որ ետքը ինքը բանակը վճարէ, բայց կայսրուհին առանց մէկ բա-նակ մը ուզելու՝ ձրի ազատեց զինքը։ Պէ-կլէրն ազատւելով վեննա գնաց որ իր շնոր-հակալութինը ընէ, զարմանալով որ՝ իրեն

թշնամի եղած զօրապետին առանց աղէկու-
թեն ըրած կայսրուհին. երբոր ինքը ասանկ
իր շնորհակալութիւնը կընէր, պատասխան
տրվեցաւ իրեն կայսրուհւոյն դիւանէն։
„Մարիամ Թերեզինան ինչպէս որ գիտէր
„ թշնամիին վրայ զէնքով յաղթել, անանկ
„ ալ գիտէ քաղցրութեամբ ու մարդասիրութեամբ
„ սրտերնուն վրայ յաղթել"։

Բօլլօվրադ կոմսը Նեմցէին շլէզիա մտնա-
լէն ետև՝ շլէզացիներէն երդումն հաւատար-
մութեան պահանջեց, որ շատը ուրախութեամբ
ըրին իրենց առջի տիրոջը Նեմցէին, որուն
ատենը իքր մէկ հասարակապետութիւն մը
կըկառավարվէին։ Ըսկաֆկօչ կոմսը որ ե-
պիսկոպոսն էր՝ առջիններէն մէկը եղաւ
զինքը անձնատուր ընել Նեմցէին, որուն
համար ետքը շատ բարկացաւ անոր պրու-
շին Թագաւորը, ինչպէս որ ետքը պիտոր
պատմենք։

Պրուշը Նեմցէին վրայ մեծ յաղթութիւն կընէ Լէօ-
տօ փէլը, ու Պրեսլաւ կառնէ.

1757։

Այս միջոցիս մէջ պրուշին Թագաւորը Փե-
տերիքոս կամաց կամաց առաջ կուգար,
միտքը դնելով կամ մեռնիլ, և կամ Նորէն
ձեռք ձգել շլէզիան. ասիկայ թէպէտ պա-
տերազմելու և տեղ մը պաշարելու ատեն-
նալ շատ հնարքներ ունէր, բայց իրեն զօր-
քին չուսաւ ճամփայ ընել տալ, շատ մը

քալցընել, մէկ տեղէն մէկալ տեղ հասցը-
նել՝ մէկ գաղտուկ հնարք մը ունէր, որ աշ-
խարհս ամմէն կըզարմացընէր։ Հոկտ. ու
Նոյեմբ. ամիսներուն կարճ օրերուն մէջ,
52 օրը՝ 700 աշխարհագրական մղոն (միլ)
ընել տըվավ իր զօրացը, առանց համրե-
լու կերպ կերպ շարժմունքները՝ որ աս դիս
ան դին կընէին։ Դեկտ. 4 եկաւ հասաւ
Լիսսա որ պրէզլյաւին քովն է, իրեն հետ
միացընելով նաև պէմերն զօրապետին մնա-
ցած զօրքը, բայց ամմէն իր զօրքը խիստ
յոգնած էին, կերակուրալ չունէին, ցուր-
տէն խիստ կընեղէին, անոր համար երբոր
իր առջին թերին մէկ զինուոր մը կապած
փախչիլ ուզելուն համար, հարցուց անոր
Ֆետերիկոս. Ինչո՞ւ ես կուզէիր թողուլ։ Պա-
տասխանեց զինուորը. Վասն զի յոգնած եմ ծեծ-
կըվելէն անանկ ատեն մը, որ քու բաներդ խիստ ձա-
խորդ կերթայ։ Թագաւորը առանց բարկա-
նալու կամաց ձայնով մը պատասխանեց։
Դարձիր նորէն քու տեղդ, ես քեզի կըներեմ. վա-
ղը կըծեծկըվինք, թէ որ բաներնիս գէշ երթայ,
ան ատենը երկուքնիս ալ մէկ տեղ կըթողունք կըփախ-
չինք։

Աս զուրցելով՝ սիրտ տալու համար իր զօ-
րացը՝ առատ կեր կերակուր տըվավ անոնց,
ու ըրախի, ետքը ձիով մէջերնին պտըտե-
լով ասանկ կըյորդորէր զօրքը. « Ո՛ր-
» դեակներ, ան կացութիւն հասանք որ՝ ալ
» ճար չըկայ, կամ պէտք է յաղթել, և
» կամ փառաւորապէս մեռնիլ. ով որ ձեր
» մէջէն սիրտ չըկրնար ընել, թող երթայ

«ուր որ ուզէ, ես մէկ խօսք մը չեմ ըսեր,
«չեմ քամահրեր»: Այսչափ քիչ խօսքը՝ բայց կտրուկ զուրցըրված խօսք՝ հերիք եղաւ ամէնուն սիրտը մէկ կրակ մը վառելու: Մեկ մեծ հազարապետ (ոփֆիցիալ) մը ամենուն բերնէն պատասխանեց: «Պատրաստ ենք մեր արիւնը Թափե-
«լու քեզի ծառայելու համար, և մեր հայ-
«րենիքը պաշտպանելու համար: Կեցցէ
«մեր հայրը»: Այս զուրցելնին՝ սրտերնին փղձկելէն արցունք կըԹափէին:

Այսանկ յուսահատված՝ ասանկ միաբանած զօրք՝ անանկալ վարպետ մարդ իրենց գլուխ ունենալով, յայտնի էր որ անյաղԹելի զօրք մը պիտոր ըլլար. անոր համար իմանալով Նեմչէին մառեշալը տաուն, շատ կըյորդորեր խորհուրդ կուտար իր մեծին կարոլոս իշխանին՝ Թէ հիմա չիպատերազմինք հետը, բայց կարոլոս պրուշին զօրաց քիչվորուԹիւը տեսնալով, հեգնելով քամահրելով մը ծաղր կընէր կըհանչէր: Ինչ զօրք, քանի մը զօրք պէտուլէն քաղքին պահապաններէն ժողվըրված բանակ էն եղեր: Այս ըսելով գոռոզնալով դաշտը Լինջէյըննել հրամեց իր զօրքը, որպէս զի ծեծկըվին. բայց յանձնապաստանուԹիւը ամբարտաւանուԹիւը շատ տարբեր բան է քաջասրտուԹէ, յանձնապաստանը հպարտ ըլլալով անըզգոյշ կըլլայ, ճշմարիտ քաջասիրտը հպարտուԹիւն չունենալով միշտ զգուշանալու հետ կըլլայ. ասկէց եղաւ որ՝ ինչ որ ամիս մը առաջ հանդիպեցաւ ռօսպաք Փրանսըզ-

ներուն վրայ, հիմակ նոյնը հանդիպե-
ցաւ հոս լեհաստ Նեմցէներուն վրայ:

Ասոր երկու դիհացէն զարնըվելու սկսան, պրուսիաները գերի ըլլին Նօսդից զօրապե-տը, որ Նեմցէին առաջապահ զօրացը կը-հրամմէր. անկից անմանկ երեւցաւ կարօլո-ոսին՝ որ պրուսը կուզէ իր բանակին աջ թեւին հետ ծեծկըվիլ, անոր համար շատ զօրքը հոն բերել տըվավ, բայց Փետերի-քօսին միտքը ձախ թեւին հետ ծեծկըվիլ էր, ուր որ վիդդեմպերկին զօրքը կային՝ որ օգնութիւն եկերէին Նեմցէին: Անոնք որովհետեւ ակամայ կըպատերազմէին պրու-չին դէմ, մէյմը Թիւֆէնկնին պարպելէն ետեւ գետինը ձգեցին, փախչիլ սկսան, ա-սանկով մեծ շփոթութին ձգեցին Նեմցէի զօրացը մէջ: Նեմցէները նորէն կարգաւո-րեցին զօրքերնին Լէվթէն գեղին քով, հոն մէկ սաստիկ պատերազմ եղավ երկու դիհացէն անորոշ մնաց յաղթութիւնը, բայց պինտ ետքը Տրիէզէն պրուսչին զօրապետը մէկ յարձըկիլ մը յարձըկեցաւ մտաւ Նեմ-ցէին զօրաց մէջ տեղը, որ Նեմցէին զօրքը ցիրուցան եղան, 4 ժամ կռուելէն ետեւ բոլորովին յաղթըվեցան: Աս բանս տես-նալով տաուն, մնացած Նեմցէին բանակը խալըսցընելու համար՝ քաշվեցաւ Նախը ե-կավ, կորսնցընելով 75 թօփ, և 20 հազար հոգիէն աւելի, որոնցմէ 13 հազարը գերի
ընկան, 7 հազարը ջարդըվեցան:

Բան հասկըցօղներուն ամմէննալ աս յաղ-թութիւնը պրուսչին՝ գլուխ գործոց պատերազ-

մականն արուեստի սեպեցին, ու շատ զարմա-
ցան Փետերիքոսին վրայ. ասկեց ետեւ պրու-
շը Լինից քաղաքը առաւ, ու տեսնալով
որ Նեմցէները պրեզլաւ մայր քաղաքը Թու-
ղուցեր գացերէին, (աս էր երկրորդ սխալը
որ Նեմցէները ըրին,) շուտ մը վրան գնաց
մեծ Թօփով սկսաւ զարնել, որ պրիէկ ու
քօսէլ քաղքէն բերել տըվաւ. Թէպէտեւ
ժամանակը խիստ ձմըռվան ատենն էր,
բայց Փետերիքոսին համար ամմէնը մէկ էր,
ձմեռն ու ամառը, ցուրտն ու տաքը. ան
Թօփին մէկ գնտակը յանկարծ բռընկցուց
պարուԹին մահզէնը. մէջի զօրքը որ 17
հազարի չափ կային՝ անձնատուր եղան պը-
րուշին. ասանկ ըրին նաեւ իրեք զօրապետ-
ները, միայն մէկ մաճառ զօրապետը յանձ
չառաւ: Ասանկով պրէզլաւը առաւ պրու-
շը. մէջիններէն ով որ սէր ցըցուցերէր
նեմցէներուն՝ շատը պատժեց. աս քաղաքս
առնըվելէն ետեւ նեմցէները ամմէն շլէ-
զիան Թողուցին դուրս ելան:

Կարոլոս իշխանը վիէննա կանչեցին որ ձմե-
ռը հոն անցընէ, բայց տեսնալով որ վիէն-
նային մէջի ամմէն ժողովուրդը ուսկից որ
կանցնէր՝ զինքը ծաղր կընէին, ինքիրմէ
խնդրեց որ պաշտօնէն ելլայ, ինքը չելլայ
ասկից ետքը զօրաց վրայ հրամմօղ. երբոր
կեցիք բարեւ կըսէր արշիդուքսին (1), ան ա-

---

(1) Ասիկայ է որ ետքը կայսր եղաւ, յովսէփ բ անուանելով:

տենը քնար (չալղը) զարնելու հետ էր, և իբր թէ երգ մը երգելով աս բանս սկսաւ իր առջին երգել։ «Ռուքին գինիի շիշներդ,
տուքին ծնծղէլմըդ մէջ նործանեց։

Սոր դէմ Փէտերիքոս աս պատերազմով երկու բան շահեցաւ, մէյմը նորէն պատերազմը բորբոքել տըվավ գերմանիայի մէջ, մէյմընալ սիրտ տըվավ իր դաշնակցին որ էր ինկիլիզը, վասն զի իմացաւ որ ինկիլիզին թագաւորը Ը գէորգ՝ իր տղին քումպէռլանտի դքսին (1) կոտրըվիլը լսածին պէս՝ կըմտածէր թողուլ պատերազմը, անոր համար յորդորանքի թուղթ գրեց թագաւորին, չյուսահատիլ մէկ անգամ մը կոտրըվելով. յաղթութիւնը նորէն կընայ դառնալ ըսելով, ինչպէս որ իր վրայ կընար տեսնալ։ Փէտերիքոսին ասանկ գրած թուղթը՝ ու իր ըրած յաղթութիւնները լսելով ինկիլիզները խիստ ուրախացան թէ տէրութիւնը՝ և թէ առանձին մարդիկները, որ իրենց երախտագիտութիւնը ցըցընելու համար շատ ոսկի խրկեցին Փէտերիքոսին։

---

(1) Աւիկայ օգնէպէք ըսված տըղը կոտրըվեցաւ էգրէ ֆրանսըզ զօրապետէն, ինչպէս որ վերը պատմեցինք։

Հաննովէրցւոց նորէն պատերազմ ըսկըսիլն Փրանսըզին հետ.

1757:

Գիտենք որ Փրանսըզին ու Հաննովէրցւոց մէջ տարաձայնութիւն ( խըռխըռ ) ընկաւ. իբր թէ չիպահպէցաւ ան դաշնադրութիւնը որ օգոստոսի 28 քլօստէրսեվէնի տեղը ըրավ Ինկիլիզի Թագաւորին տղան, որ էր դուքս քումպէռլանտի, ու ուրիշ լու Փրանսըզին զօրապետը. և որովհետև փարէզալ քիչմը տարակուսերեր ան դաշնադրութիւնը հաստատելու, ասկէց Ինկիլիզներնալ նորէն պատերազմ սկսան, տեսնալով որ պրուշին բանը առաջ կերթայ: Սէկալ դիւացէն պրուշնալ զանոնք կըգրգռէր, գիտնալով որ իրենալ շատ աղէկ կըլլար թէ որ հոն տեղվանքները ծեծ ըլլար, որպէս զի ինքը քիչ մը թեթևնար. անոր համար իր եղբայրը Հէնրիքոս իշխանը ղրկեց որ՝ ռուճէնսօն մառաքէզը դուրս հանէ Հալպերշդատ իշխանութէն երկրէն. սանկալ Ֆերտինանտոս պրունսվիքին իշխանը ղրկեց որ՝ Ինկիլիզի Թագաւորին տղին տեղը ասիկայ ըլլայ գլուխ նոր զօրաց Ինկիլիզի ու Հաննովէրի:

Աշխըրհիս մէջ շատ քիչ մարդ եկերէ Ֆետերիքոսի նման, որ միս մինակ ըլլալով ասանկ նորէն նորոգէ յուսահատված բաները. աղէկ ընտրութիւն ըրավ Ֆերտինան-

տոսը գլուխ դնելով, որ կատարեալ գիտէր պատերազմական արուեստը, մէկէն չէր տաքնար, շրջահայեաց էր. մէկ անգամ միայն նայելով կըտեսնար կիմանար ինչ բանը իրեն շահաւոր էր, ոչ երբէք սխալ մը գործերէր պատերազմի մէջ: Լսիկայ հրամանը առածին պէս Ճամփայ ելավ ծիւնի ու սառուցի (պուզի) վրայէն քալելով. մէկիկ մէկիկ ջարդել սկսաւ ան պզտիկ խումբերը զօրաց, որ ուրիշլիւ Փրանսացին զօրապետը երկան բարակ գծով տեղ տեղ կեցուցերէր, առով ցըցընել ուզելով իբր թէ շատ երկիր իր տակը առերէ. ինքը ուրիշլինուալ զուարճութեան ետևէ էր ընկած. ասանկ ընելով՝ դեկտեմբեր ամիսը չիլմնցած՝ Հաննօվէրին կայսրընտրին սահմանին մէջը մէկ Փրանսըզ մը չիմնաց. պրուշը ինչվան ուէնօ գետին քով հալածեց Փրանսացնէրը:

Լուիզ ԺԵ Փրանսացին Թագաւորը շատ կըցաւէր որ՝ իր սիրելի ուրիշլիւն ասանկ կըյաղթըվէր, անչափ մարդ կորսնցուց, որ չորս անգամ պատերազմելով հազիւ անչափ մարդ կըկորսնցընէին:

## Պրուսը Օլմուց Մօռավիայի մայր քաղաքը կըպաշարէ. Նեմցէէն յաղթըւելով դարձ կելլայ Մօռավիայէն.

1758.

Պրուշին Թագաւորը առաջ Շվէյտնից բերդը պաշարեց, բայց ինչվան որ առավ, 57 օր կորսնցուց, ետքը ապրիլի 16 վրան յարձըկելով առաւ. քիչ մը հանգչելէն ետև մէկ դաշտի մը մէջ որ մօտիկ էր դռօբավլին, միտքը դրաւ պաշարելու Մօռավիայի մառքեզութեան մայր քաղաքը, որ էր Օլմուց զօրաւոր քաղաք, մտածելով որ երբոր անիկայ առնէ, Ճամփայ մը կըբանայ իրեն աւստրիային մէջը մտնալ, զարնել, ավրել, ինչպէս որ առաջ աւստրիացիք այսինքն նեմցէները իր երկիրները ըրին. մանաւանդ որ՝ ան ատենը տաուն նեմցէին մեծ զօրագլուխը Թողուցերեր մօռավիան, որպէս զի վէննան պաշտպանէ, ու մաճառաստան երթալու կապանները (պօղազները) բռնէ, ուր տեղվանք որ պրուշը կրնար վազել:

Իսկ պրուշին Թագաւորը Ֆետերիքոս շատ զօրք Թողուցերեր սաքսօնիայի մէջ վէրոյիշեալ հէնրիքոս իշխանին տակը՝ որպէս զի կայսերութեան իշխաններուն նոր զօրացը դէմը առնէ, որ Ճամփայ ելած կուգային, իրենց զօրագլուխ ունենալով Ֆետերիքոս տիւ բօնդին իշխանը. ասիկայ շատ զգու-

շուլթ՛ը կամաց կամաց կուգար, որպէս զի չընէ՛ այն սխալները՝ ինչ որ իրմէ առջինը ըրավ։ Մէ՛կ ուրիշ զօրապետ մընալ Ֆուքվէթ անուն խրկերէր Կլաց ըսված կոմսութեան մէջը, որպէս զի մէկ գունդ մը նեմցէի զօրքին որ կուգար՝ արգելէ, թող չիտայ միանալու տավունին հետ, որ միշտ ֆետերիքոսին կըհետևէր։

Պրուշը մայիսի 4 սկսաւ երկու դիւայէն Օլմուց քերդը զարնել, բայց այն տեներըը չորս դիւացէն փոսեր պատնէշներ կըտրելով պաշարել, աղէկ մը չխտէին պրուշները այս պաշարման արուեստը։ Օլմուցի մէջի եղած նեմցէին զօրապետը մառշալ անունով՝ իր 6 հազար զօրքով աղէկ մը դէմ դրաւ պրուշին յարձակմանը. մէկ դնտակ մընալ ձգեց պրուշին մէկ թապեային վրայ, ուր որ պարութ պահված կար. պարութը բռնկեցաւ, և 300ի չափ թօփ որ լեցուն կեցած էին՝ նետվեցան. անոնցմէ 11 մեծ թօփ ավըրվեցան. 30 թօփճի, 2 հազարապետ մեռան. 350 զինուոր յաւագար եղան։

Այս միջոցիս մէջ տաուն 60 հազար մարդով կըպըտըտէր պրուշին բանակին բոլորտիքը, որ անօթութենով նեղէ, երբեմն առաջ կերթար, երբեմն ետ կըքաշվէր, չիհասկըցընելով իր միտքը. այն ատեննները Պօւլաւ գնդապետը յաղթութի՛ գտաւ, երկու հազար զօրք օգնութի՛ բերաւ, օլմուցին մէջը խօթեց մօռավիայի մէջէն անցնելով։ Տաուն լսեց որ՝ շլեզիային դիւա-

ցէն պրուշին պաշար (զահրէ) պիտոր գայ, ինչ ընէ որ անոնք արգելէ առանց իմանալու Ֆետերիքոսին, ձիաւոր զօրք խրկեց Րուօնիցին դին, պատուիրելով իրենց որ պրուշը տաքի վրայ հանեցէք ծեծկըրվելու, պատրաստըվածին պէս ետ եկէք. աս ընելով պրուշի թագաւորին միտքը կարծիք ձգել տըվավ՝ որ տաւունը կուզէ իր վրայ յարձըկիլ, անոր համար ան դին կըսպասէր, բայց տաւունը 10 հազար մարդով խրկեց լավտոնը որ պաշար բերօղները արգելէ: Լավտոնին մեծ վարպետութիւնը աս եղավ որ՝ փնտռեց մէկ նեղ տեղ մը ասոնց սպասեց, որ կըսվէր Տօմշդատի նեղ կապան (պօղազ, տէրպէնտ.) հոն յունիսի 30. առտըվանց ինքը լավտոն մէկ դիացէն, չիցքօվից իր զօրապետը մէկալ դիացէն՝ պրուշին բազմութեան զօրացը վրայ հասան որ Զէպխանէ ու կերակուր կըբերէին ընդ ամէնը 4 հազար առապայ, անոնցմէ 2 հազար Զէպխանէի՝ առապայ բռնկեցան, որչափ կերակրեղէն կար ու բոտակ՝ ամբողջ առին, 1500ալ ձի. մէկալ չիցքօվից զօրապետնալ 6 թօփ առաւ, երկու պունդ խումպարաձիի գերի ըրաւ. 813 թիւֆէնկձի, ու 23 հազարապետ (ուֆֆիցիալ), մնացածը սպաննեց կամ ցրուեց լավտոն, բութամէր անուն պրուշին զօրապետը գերի ըրավ, 46 հազարապետ, 900 մարդ ու 7 թօփ առավ, իսկ նեմցէներէն քիչ մարդ կոյան:

Աս բանս լսելով Ֆետերիքոս պրուշին թա-

դաւորը , շատ ցաւեցաւ , և շուտ մը յուլիսի 2 օլմուցը պաշարելէն ետ կեցաւ , ամըըշտըրկելով իր շինած թապեաները , մօռավլխայենալ դուրս ելավ լեռդավկին դին գնաց , փախնալով նեմցէին սապատակօղ ( չարխա ) զօրքէն , միայն խոշոր թօփերը թողուց ու 1416 հիւանդներ ։ Պրուշը երթալէն ետև՝ մառշալ նեմցէին զօրապետը շուտ մը դուրս ելավ օլմուցէն , ու պրուշին մնացած շինածները ավրեց ։

Ասանկով տավունը շատ անուն հանեց , որ իր ծեծկըռվիլը ուշացընելովը աւելի շուտով յաղթեց պրուշին , ու ասով քռնադատեց որ՝ թողու դուրս ելլայ աւստրիոյ երկրէն , ասանկալ լավտոնը շատ անուանի եղավ ։ Կայսրուհին ուրախանալով ամմէն հազարապետներուն առատ վարձք տըվավ , իսկ զինուորներուն կրկին թոշակ ( էօլէֆէ ) , ինչչափալ ըստակ քռներ առերէին թշնամիէն ան ծեծին մէջ , հրամմեց որ ամմէննալ մէջերնին բաժնեն ։ Բայց ան ըստակին այարը խիստ ցած ըլլալով , երբոր զինուորները կերթային քան ծախու առնելու , մէկ արուեստաւոր մը չէր առներ , անոր համար ան ըստակը ամմէննալ վէննա բերել տըվին , որ նորէն աղէկ ըստակ թափեն ։

Ասանկ ցած ըստակ կոխելու՝ ֆետերիքոս պրուշին թագաւորը ապսպրեր էր եֆրայիմ անուն հրեային , որ պէռլինի զարպխանեի վերակացուն էր ․ ինչ որ աղէկ ըստակ առավ ֆետերիքոս ինկիլիզէն 8 միլիոն ֆիօ-

ուին համպուրկին վրայէն , տալսպրեց աս հրէային որ հալէ , 18 միլլիոն ըսէ . անան-կով անչափ քիչ արծաթ խառնեց մէջը՝ որ քիչ մը թանեցընելէն ետև շուտ մը կը-կարմըրնար , մէջի պղինձը դուրս կելլար ։ Ասկէց զատ ան հրէան սուտ ( խալըպ ) ու-կի սկսաւ կոխել , որ ոսկի ըստըկին կէս ա-ժողչէքը չունէին , ասով թէ դուրսի՝ թէ ներսի վաճառականութիւնը ավրեց , շատ տուն աղքըտցուց . վասն զի ատանկ ցած ըստըկով կըվճարէր ամմէն զինուորներու և հազարապետներուն , ամմէն արուեստա-ւորներուն պատուէր դրած էր որ՝ հարկա-ւորապէս առնեն ան ըստակը ։ Որ մը [1] Ֆետերիքոս պրէզլավլին քովէն անցնելով մեծ կուխ մը լսեց , հարցուց իմացաւ որ գեղացի մը ցորեն ծախերեր հացագոր-ծին , ինչ ըստակ որ կուտար անոր հացա-գործը , չէր ուզէր առնել կըկռուէր . Ֆետերիքոս գեղացին իր քովը կանչեց , հարցուց , ինչո՞ւ համար դուն աս ըստակը չես առներ . գեղացին վերէն 'ի վար վրան նայելով ճանչցաւ որ պրուշին թագաւորն է , սիրտը երած ըլլալով համարձակ դուր-ցեց . Ասոր համար չեմ առներ որ ըսաւ , եաքը դունալ մինէ չես առներ աս ըստա-կը , երբոր տեղվանք վաստըկելու թաղ-ձանքդ կատարելու համար ծանր ծանր

---

(1) Ասիկայ գրված է Ֆետերիքոսին վարքին մէջը . հատոր Գ . Թղթ , 210 ։

տուրքեր կառնես մեր դեղէն ։ Թագաւորը աս լսելով, առանց մէկ բան մը ըսելու՝ ելաւ գնաց ։

Նման սուտ (խալդ) ըստակ տպելով շատ անունը ամրեց Փետերբուրգու. շատ մարդիկ ալ մեղադրեցին իր սխալը որ ըրաւ մօտավիա մտնալով, շվէյտնիցը ու օլմուցը պաշարելով, որոնց վրայ երկան բարակ ատեն կորսնցուց, տալուն զօրապետին ժամանակ տըված իր Նեմցէի զօրքը ուժովցընելու. աս բերդերը պաշարելուն տեղը՝ թէ որ մէկէն վազէր յոքնած Նեմցէի բանակին (օռտուին) վրայ, կատարեալ յաղթութիւն կընէր ։

## Մոսկովը պատերազմին հետ Զօռնտօռֆին, Պռուսիացւոց և ռուսաց յաղթանակ հաւանէ.

### 1758 ։

Աս ատենները մոսկովը մտաւ պռուսիոյ երկիրը, իրենց զօրապետ ունենալով Փէրմէօր. յունվ. 22, քէօնիկսպէրկ որ բռուսսիա դուքսութին մայր քաղաքն է, մոսկովին անձնատուր եղաւ. ետեւէ ետեւ փետրվ. 11 առաւ մանէվէլտոռ քաղաքը, էլպինկան, ու Թօռն, որ լեհերուն ըլլալով շատ դանկտեցան լեհերը. տանձքաւի մէջալ ուզեցին մոսկով զօրք պահապան թողուլ, բայց տանձքացիք դէմ կեցան ։ Ետքը քուսդըրին բերդը պաշարեցին. աս բերդս օտէր գետին վրայ շինված է, ուր որ վարդա գե-

տին հետ կըխառնըվի․ անչափ զօրաւոր ամուր բերդ մըն է, որ գերմանիայի մէջ հազիւ անոր նմանը կայ, աս բերդս ատենօք կըցաւ դէմ կենալ կուստավոս ադոլֆոս շվէտի թագաւորին դէմ: Հիմա օգոստ․ 15 թօփերով կրակ ձգեցին, քաղքին մեծ մասը երեցին․ մէջինները հազիւ կըցան խալըսիլ փախչելով երկու գետին ան դի դին: Պրուսները բարբարոս ու կրակ ձգող կըկանչէին մոսկովներուն, բայց իրենք պրուսները նոյնը ըրեր էին բուտկա, օլմուց, ու տրէզտա: Վորդոսս էր ըրածը էրեն չերենար, Երբոր նոյնը ուրիշ մը ընէ, մեծ պակասութիւն կերևնայ աչքին: Գիտնալով Ֆետերիքոս թէ որ ան բերդը կորսնցընէ, մոսկովներուն դուռ մը պիտոր բացվի իր երկրին սիրտը մտնալու, միտքը դրաւ վրայ երթալ պաշարմանէ ազատել: Երբոր Ֆետերիքոս մօտիկցաւ, Ֆեռմէռ մոսկովին զօրապետը պաշարումը վերցուց․ օգոստ․ 25 ծօրնտօրֆ ըսված տեղը զարնըվեցաւ պրուսներուն հետ, մեծ պատերազմ եղավ, մոսկովները խիստ ջարդըվեցան․ 20 հազար մարդ կորսնցուցին, 104 թօփ, իսկ պրուսներէն 4 հազար մեռան․ 6 հազարէն աւելի վիրաւորվեցան․ իբր 3 հազար գերի ինկան: Կըզարմանար Ֆետերիքոս մոսկովին զօրացը վրայ, ասանք կըսէր կընան ըսվիլ պղնձէ շինված զօրք, ինչպէս որ էին իրենց առջինները հին սկիւթացիք, աւելի հեշտ (խօլայ) է ասանք սպաննել, քան թէ յաղթել: Պոլշէրը վրայ գալով երկու դիացէնալ դա-

դրեցան ծեծկըռվելէն, նոյն տեղը կենա-լով, ու զէնքը ձըռվընին բռնելով ինչվան առաւտու :

Տաուն նեմցէին զօրապետը գրերէր առաջ Ֆէռմէռին մոսկովի զօրապետին, որ մի արտորար ծեծկըռվիլ ան խորամանկ պատե-րազմողին հետ ինչպես էր Ֆետերիքոս, սպասէ ինչվան որ ատենը գայ. վասն զի տավրուն աս ատեններս օտեր գետը անցաւ 60 հազարով, գնաց սաքսօնիային վրայ, լավտօնը խրկեց որ՝ թշնամիին նեղութիւն տայ իր ճամփուն մէջը. անալ օգոստ. 25 Րւէից սուսաւ, որ վարի լուսացիային մէջն է, հոն գտաւ 36 թօփ. 4 հաւան թօփու, շատ ճէպխանէ ու կերակուր. ետքը թո-ղուց ան տեղը, որովհետեւ անանկ խօսք դըրած էին որ տավունին հետ երթայ միա-նայ : Ուէ որ Ֆէռմէռը սպասած ըլլալով ան ատենը՝ հեռըվանց պաշարել նայէր թշնամին, յաղթըվելուն տեղը ինքը կըյաղ-թէր, բայց աս աղէկութիւը Ֆետերիքոսին եղավ որ՝ աս պատերազմով արգելվեցաւ մոսկովին, շվէտին, նեմցէին միանալը, ո-րոնք խօսք դըրերէին մէկ տեղ միանալու : Մոսկովը ետքը գնաց քօլպէրկը պաշարեց, բայց միշտ պակսութիւն քաշելով ապրուստի համար, արտորընօք լէհաստան գնաց ձմե-րելու :

## Հօքքիրքէն գեղին քով մեծ ծեծ կըլլայ. Նեմցեն պրուսացին կըյաղթէ.

1758 ։

Այս առեններս Հենրիքոս իշխանը՝ որ իր եղբօրը Ֆետերիքոսի չափ խորոխտ չէր, աւելի խոհեմութե̃ շարժելով աղէկ գիտցաւ իր ձեռքը պահել սաքսոնիան թշնամինե-րուն բազմութե̃, այսինքն տաւունին զօր-քէն։ Իսկ Ֆետերիքոս արտորնօք եկաւ որ օգնութիւն հասնի իր եղբօրը Հենրիքոսի, տա-ւունը զարնէ, ետքը շլէզիա վազէ, ուր որ հարշ նեմցէ զօրապետը 22 հազար մարդով պաշարերէր Նէյս բերդը. Ճամփան (որով-հետեւ լուսացիա գաւառին մէջէն պիտոր անցնէր), գտաւ նեմցէին բանակը՝ որ իրեն համար կըսպասէր, աղէկ բարձր տեղ մը նստած ըլլալով Հօքքիրքէն գեղին քով։ Կարծելով Ֆետերիքոս որ՝ տաւունը շատ մտածող ու կամաց շարժող մարդ մըն է, անոր համար սիրտ չիկրնար ընել իրեն հետ ծեծկըռուելու, որոշեց որ իր բանակը ուր էր՝ հոն կեցընել տայ, բայց աս ընելով սխա-լեցաւ, վասն զի անանկ տեղ մըն էր որ՝ ինչ բարձր տեղվանք ու անտառներ կային ան կողմերը՝ ամմէնն ալ լաւտօնին ու Նատաշին զօրքը բռներ նստերէին։ Սկսաւ անձամբ քալել որ՝ իմանայ տեղին որպիսութիւնը, քէյթ մառէշալը որ քովէն կերթար՝ ըսաւ Ֆետերիքոսի թագաւորին. Թէ որ Թշնամին

Մեզ հոս խաղաղ եղաւ, ամենեւին արժանի չըլլան
խափանելու : Թագաւորը ինքնիրեն ապաւի-
նած ըլլալով վստահութեամբ մը պատասխա-
նեց . Գիտցէք որ՝ անոնք առելի չըվախնան մէնէ,
քան թէ խաղաղանէ :

Նաւտօնը մէկ ճամփայ մը կերպ մը ցըցուց իր մեծ զօրագլխին, որ պըրուշը իրեն վրան-ներուն (չատըրներուն) մէջ նստած ըլլա-լով հանելին զարնէն, իր ցըցուցած կերպը զօրագլուխը ընդունեց, մէջը մէկ պակսու-թիւն մը չիգտնալով : Սանկով հոկտ . 14 իրեք ժամ լուսնալէն առաջ չորս նեմցեի գունդ չորս դիացէն պըրուշի բանակին (օս-տուին) վրայ վազեցին, որոնք հանգիստ քունի մէջ ըլլալով, չէին կարծեր աս բանս ըլլալու . ոտք ելան զիրենք պաշտպանելու, բայց մէջերնին շփոթութիւն ինկաւ, անանկ որ՝ չիճանչնալով մէկզմէկալ ջարդեցին : Սրեր չիծագած՝ առաջապահ զօրքը նեմ-ցեին՝ որուն հրամայողը Լավտօնն էր, շատ մարդ կոտրելով հօչքիրքէն գեղը առին հոկտ . 14, որ պըրուշի բանակին մէջ տեղն էր, ինչպէս որ արդէն առած էին ան բլուր-ները (թէփէները) որ ան գեղին կռնակը կիյնային : Քիչ մը անցաւ, Սրեմպերկ դուքսը ու Նատաշ շատ տեղ բռնեցին, և թէպէտ պըրուշները շատ դէմ կեցան, բայց անտանելի էր նեմցէներուն հետեւակ (եա-եան) զօրքին յարձակումը, որ թօփէ վախ-չունենալով սուրը տնկած իրենց թիւֆէնկ-ներուն վրայ, ձիաւոր զօրքնաւ Թուրերը ձեռվընին բռնած, պըրուշին զօրացը մէջ

Թուր 'ի վեր Թուր 'ի վար անանկ ջարդ մը տըվէին որ ցիր ու ցան եղան :

Ասանկ վտանգաւոր ատենմնալ Ֆետերիքոս անշփոթ մնալով ժամանակ գտաւ, կարգաւորեց իր զօրքը, ու ետ հրեց նեմցեւին զօրքը, շուտմընալ յարձըկիլ սկսաւ հօչքիրքէն գեղին վրայ. Թօփերով զարնելով, երեք անգամ վրայէ վր յարձըկելով, պրուշները մէկ քանի տներուն ետեւը մտան : Տաուն գիտնալով որ՝ ան տեղէն կըկախվէր յաղթութիւնը՝ շատ օգնութիւն խրկեց լավտօնին՝ որ մէջէն շատ քաջութեամբ կըպատերազմէր դիմադէմ կռուելով նոյն իսկ Ֆետերիքոսին հետ. ասիկայ վարպետութիւն չիթողուց որ չիքանեցընէ, կերպ կերպ զօրաց շարժմունքներ ընելով որ ան տեղէն հանէ լավտօնը: Հոն ընկաւ մեռաւ Թօփով քէյդ պրուշին մաւեշալը՝ որ Ֆետերիքոսին խիստ թարեկամն էր ու խորհրդականն. անոր հետ մեռաւ Ֆրանչիսքոս պրունսվիքեան իշխանը, իսկ քէյիտ զօրապետը 'ի մահ խոցվեցաւ. ասանկալ անհալդ տեսաւ իշխանը՝ որ առջի զօրապետներէն մէկն էր, ու 1745ին եղած ծեծին մէջ շատ արդիւնք ունէր՝ խոցվեցաւ, երբոր Պավդզէն կըտաւնէին թժշկելու համար՝ նեմցէին գերի ընկաւ :

Վեց ժամ չարաչար պատերազմելէն ետեւ՝ տեսնալով պրուշին Թագաւորը Ֆետերիքոս որ ամմէնը պիտոր ջարդըվէին, ետ քաշվեցաւ. կորսնցընելով 10 հազար մարդ մեռած ու խոցված. 157 Թօփ. 18 դրօշակ

(պայրախ), 5 նշան, և ամէն վրանները ու աղխամաղխը (չատըրները ու աղըրլըխը)։ Փետերիքոս Թէպէտ կուզէր որ իրեն խիստ արդար ու խիստ մարդավար ըսեն, բայց երբոր ետ քաշվէր կերթար, հրաման տրվաւ իր ամէն զօրացը՝ որ ինչ գեղերէն կանցնին, ուզածնին առնեն, անանկով խեղճ գեղացոց ինչվան շապիկնին՝ մահիճնին (տէօշէկնին), ալ ուրիշ ինչ բան որ կընային՝ կըյափշտակէին կառնէին անանկ կերթային, ըսելով որ պիտանաւորութիւն ունինք։ Նեմցէները 2500 մարդէն աւելի կորսնցուցին. 28 հազարապետ մեռան. ու 200էն աւելի վիրաւորվեցան. շատ պատուով Թաղեցին նեմցէները պրուշին քէյթ զօրապետը, իսկ անհալդ իշխանը աղէկ հոգալով նայեցան, անանկ որ պրուշին Թագաւորը Փետերիքոս յատուկ շնորհակալութիւն Թուղթ գրեց տավուն զօրապետին։

Ամէն պատմագիր կըգրէ որ՝ ինչ կարգաւորէրէին լավտօնը, նատաշը, ու տավունը, Թէ որ ճիշդ կատարէին գործքով, պրուշին բանը կըլմննար, բոլորովին անձնատուր կըլլար նեմցէին, բայց նեմցէին հազարապետներուն (օֆիցիալներուն) մէջ շատ նախանձ ու տարաձայնութիւն կար, կարելի է որ նաև ոսկի կըքալէր պրուշի դիհացէն։ Ուր Թողունք որ՝ Փետերիքոս շատ լրտեսներ (չաշուտներ) ունէր գաղտուկ նեմցէին զօրայը մէջ, նաև արքունեացը մէջ. ասանց մէ մէկը՝ որ նեմցէ իշխան էր, իմաց տրվաւ

Ֆէտէրիքոսի պրուշի թագաւորին, թէ կայսրուհիէն հրաման եկաւ տավունին մառէշալին՝ որ ինքը ծեծկռվելէն զգուշանայ, միայն երբոր պրուշը վրան վազէ՝ ան ատենը ծեծկռվի պաշտպանելու համար։ Ասկէց Ֆէտէրիքոս ապահովութիւն առաւ, երբոր իր զօրապետները մանաւանդ Ընձէլէլի պօլօնիացին կըսէր Ֆէտէրիքոսի, թէ տավունին կերպը յայտնի կըցըցընէ որ պրուշին վրայ պիտոր վազէ, Ֆէտէրիքոս ծիծաղելով կըպատասխանէր թէ, պէտք է որ ես քանի մը բան աւելի գիտնամ քան զձեզ, ան տավունին կերպերը ամմէննալ դուրսէն ցոյց մընեն, վրանիս յարձըկիլ չունի․ ասանկ ըսելով աղէկ վարպետութեամբ ու քաջութեամբ զինքը կըպաշտպանէր, և զօրապետները կըզարմացընէր որ ինչպէս իր խօսքը կելլար, չիյտէին որ ոսկին էր որ Ֆէտէրիքոսին աս գուշակութիւնը կըսորվեցընէր։ Բայց վերոյիշեալ կատորածը շատ ցաւ տըվաւ Ֆէտէրիքոսին, ան օրնալ իր քոյրը Պարաիթին մառկռավիան մեռաւ, որ բարեբարոյ ու խելացի ըլլալով Ֆէտէրիքոս շատ հեղ իրեն հետ կըխորհրդակցէր։

Աս տարի 1758 պրուշն ու ինկիլիզը նոր դաշինք ըրին մէջերնին․ ինկիլիզը խոստացաւ 4 միլիոն ռիալի տալ պրուշին, որպէս զի գերմանական կայսերութիւնը պաշտպանէ, որուն վրայ վազել կըսպառնար Ֆրանսան․ խօսք դըրին որ խաղաղութիւն չընեն աս պատերազմիս մէջ առանց իրարմէ հաւանութիւն առնելու։ Փրանսօզնալ մէկ յայ-

տարար Թուղթ մը հանեց իր ըրածը ար-
դարացընելու համար. ցըցուց որ կողմը
բռնութիւն կընէր կայսերութեան վրայ, և թէ
ով կոտրեց քլօսդէրսէվէն տեղը եղած դաշ-
նադրութիւնը, որ վերը յիշերենք։

## Տէկլոս Քաղէին Յաղթութիւնը, ու Հաննովէրցւոց ԾՆԾՂԱԼԻՒԸ.

## 1758։

Նեմցեներուն ըրած յաղթութիւնը երբոր
վեննա. իմացան, շատ ուրախութիւն ու հան-
դէս ըրին. կղեմէս ժգ. սրբազան քահա-
նայապետնալ լսելով աս յաղթութիւնը, մէկ
Թուր մը խրկեց մառէշալ տավունին։ Իսկ
պրուսին Թագաւորը լսելով որ պաշարված
քաղաքը Նայս մօտիկ էր թշնամիին ձեռքը
իյնելու, վազելով գնաց ազատելու, ան
ատենը տեմնալով տավունն որ Ֆետերիքոս
հեռըցաւ լուսացիայէն, նոյեմբ. 10 էլպա
գետը անցաւ, տրէզտայէն վրայ գնաց որպէս
զի ազատէ երկու տարվան գերութէ որ
պրուսին տակը կըքաշէր. քիչ մը զօրք քաղ-
քին պարտէզներուն մէջը կեցուց, քիչմը-
նալ քաղքին արուարձանին (վարըշին)
մէջ։

Ան ատենը հոն եղող պրուսին զօրապետը
Սմէդդան՝ ամմէն արուարձանի տներուն
դիշերանց կրակ տըվավ. երբոր ողորմելի
մէջինները դուրս կըփախչէին, զինուորնե-
րը Թիւֆէնկով Թրով կըմեռցընէին, ա-

նանկով շատ մարդ մեռաւ, ինչվան մէկ պրուշ մը՝ տղայ մը մէկին գիրկը տեսնալով, վազեց ձեռքէն յափշտակելով կրակին մէջը ձգեց ։ Տավունը կրնար Թօփէրով զարնելով քաղաքը կամ առնել կամ պաշարել, բայց որովհետեւ կայսրուհին ապսպրեր էր որ մէկ վնաս մը չիտայ ան քաղքին, ետ քաշեց իր զօրքը, պօէմիայի մէջ ձմերել տալով. մանաւանդ որ լսեր էրաւ որ պրուշին Թագաւորը նէխս քաղքին պաշարումը մէկ դի ձգելով, իր ամէն զօրքով տավունին վրայ կուգար ։ Անքը տավունինալ վեննա գնաց ձմերելու, ուր մեծ պատիւ ունեցաւ, ու պարգեւ 300 հազար ֆիօրինի։ Լավտօննալ վեննա գնաց բժըշկըվելու իր հիւանդութէ. երբօր ըռընտցաւ, մէկ երկիր մը պարգեւեց անոր կայսրուհին, ու 18 հազար զօրք, որպէս զի աս զօրքով մոսկովին հետ միանալով անանկ պատերազմի ։

Գերմանական կայսերութէ զօրքը ձմերեցին ֆռանքօնիա, իսկ շվէտները երկիր առնելու տեղը՝ ետ քաշվեցան. իրենց բօմէռանիային երկիրը բաց Թողուցին պրուշին հրոսակ ( չարխա ) զօրացը. վասն զի ըստօքօլմի մէջ [1] շատ կային ֆետերիքօսին դին իրենց Թագուհիին պատճառովը, որովհետեւ ֆետերիքօսին քոյրն էր, անանկով շվէտները ինչ տեղվանք որ առեր

---

(1) Ըստօքօլմ, շվէտին մայր քաղաքն է ։

էին՝ աս տարւոյս ետքերը կորսնցուցին, պրուշին Տօհնա անուն զօրապետը եկաւ առաւ կուխսավալտ ու տամկարդէն նաև ուրիշ տեղեր, բայց ետքը տամկարդէնը թողուց, չվէտին ամմէն զօրքնալ իրենց ձմերանոցը (խշլան) քաշվեցան ։

Այսորուհին մարիամ թերեզինան որովհետև շատ կըզանկտէր Փրանսայի թագաւորին իր ուիշլիւ զօրապետին համար, անոր համար Փրանսզները ուիշլիւն փոխեցին զօրապետուէ, բայց անոր տեղը քլեռմօնդ կոմնը՝ թագաւորին մօտիկը դրին, որ էր եկեղեցական, ու չէր հասկընար զինուորութէ ։ Նոիկայ լիեճի դաւառը նստաւ, հոն տպասեց որ թշնամին իր վրայ գայ, և իրաւ եկաւ Ֆէրտինանտոս պրունսվիքեան իշխանը Փրանսզներուն վրայ, բայց հօեա տեղը առաւ, Փրանսզներըն նեղը ձգեց, որ պրէմէն ու վէռտէն քաղքընէրը թողուցին, օննապրուք փախան, իրենց բանէրնալ գերինէրնալ թողուցին, հոն միացան քլեռմօնդին զօրացը հետ ։ Մարտի 14 մինտօն քաղաքը որ հաննօվէրցիք պաշարէրէին, անձնատուր եղաւ անոնց. մէջինները 3600 զօրք գերի ընկան. քլեռմօնդ մտածեց որ մէկ դին քաշվի ինչվան որ իրեն օգնութի գայ, բայց յունիսի 23 ասոր վրայ վաղեց վերոյիշեալ պրունսվիքեան իշխանը քրեվելդ ըսված տեղը, 10 հազար Փրանսզ ջարդեց, և թէ որ ձիսօրս կոմնը չըլլար՝ որ մէկ հատիկ զաւակն էր պելիլ մառէշալին՝ Փրանսզին ամմէն բանակը պիտոր կորսվէր ։

Անկլիացին զօրքն ալ հաննօվէրցոց հետ մէկ տեղ Մուռւէմօնտան առջին, որ աւստրիական կելտրիային մայր քաղաքն է. անկէց ետև փագեցին մօտիկցան պրուսաել քաղաքին, որով խիստ վախ կար որ՝ աւստրիոյ ստորին նահանգները վտանգի մէջ իյնան, բայց պռօկլիօյի դուքսը որ գլուխ էր ուրիշ Ֆրանսզներուն զօրքին՝ յուլիսի 23 (1) զարկաւ հասսիացիները սունտերշավսէն ըսված տեղը քասսելին մօտիկ. ասանկալ սուպիս մառեշալը քաջութեամբ պատերազմեցաւ մտաւ հասսիա քասսելին լանտկռաւվիօյին մէջը. զարկաւ հասսիայի զօրապետը իսէնպերկ անուն, դուրս հանեց իր երկրէն՝ ուր որ ձմերեցին Ֆրանսզները. և 1759. յունվ. 2. սուպիս կրցաւ Ֆռանքֆօռդի մէջ իր զօրքերէն պահապան դնել: Սօնտէյին իշխաննալ որ է Ֆրանսզ, Ֆռանքֆօռդէն քիչ մը հեռու զարկաւ պրուսսավիքեան իշխանին զօրքը.

Անգլէն Ֆրանսային հետ նորէն դաշինք կընեն. Լեհաստանը Մոսկովէն հետ կըմիանայ.

1759:

Անգլիէն ու Ֆրանսային աւելի կապվելու համար նորէն դաշնադրութիւն ըրին իրար յաւելուած ան դաշնադրութիւնը՝ որ 1756ին

---

(1) Ոմանք կըսեն հոկտեմբ. 10:

ըրերէին մէջերնին, ըսելով որ՝ ինչպէս չկը-
զապըլվլի ան վստահակար պրուշիին տէրութիւնը՝ չիհանդստանար գերմանիան, անոր համար կըմիաբանինք անիկայ խորտակելու։ Աս դաշնադրութիւնս ընելով՝ որոշեցին որ երբոր մոսկովները պրանտէպուրկին երկիրը վազեն, տաւուն նեմցէին զօրագլուխը տրէզտային վրայ վազէ, ուր խիստ քիչ մնացեր էր պրուշիին զօրքը։ Աս ատենները հենրիքոս իշխանը ֆռանքօնիա վազելով շատ տուրք էր առած, ով որ դէմ կըդնէր՝ կը մեռցրնէր, բայց երբոր աւստրիացիք միացան կայսերութեան զօրացը հետ՝ որ նորէն սաքսօնիա վազեն, հարկ եղաւ հենրիքոսի դառնալ։

Եղիսաբեթ մոսկովի թագուհին ֆէռմէռ զօրագլխին չիհաւնելով որ թշնամիի երկրին մէջ նստելուն տեղը՝ ինչպէս որ իրեն ապսպրըված էր, լեհին երկիրը քաշվեցաւ, հոն եկավ ձմերելու, փոխեց անիկայ, իրեն տեղը Սօլթիքօֆը զօրագլուխ դրավ։ Իսկ ֆետերիքոս պրուշիին թագաւորը իր թշնամեաց գործքը տեսնալով կըծիծաղէր, անոր համար ասանկ կըզրուցէ իրեն թղթին մէջը ֆուքվէդին գրելով, որ քէյթ զօրապետին տեղը անցեր էր։ „Ես շատ կըզարմանամ
„ քիչ հասկըցողութեան ու քիչ միաբանութեան
„ վրայ այնչափ տէրութեան զօրաց. թէ որ
„ մտածէին ընդհանուր զարնել մը ընել,
„ կրնային բոլորովին կործանել պզտորաիկ
„ պրուշիին տէրութիւնը. բայց որչափ թու-
„ լութիւն, որչափ կամաց շարժիլ մը կայ ի-

„ րենց մէջը, անով մեզի յաջողու̃ն տըվին
„ մտածածնիս 'ի գործ դնելու. ո՛րչափ ա-
„ ռիթներ (ֆռսանտներ) ձեռքէ փախու-
„ ցին, մէկ խօսքով ըսեմ, ո՛րչափ կոշտ սխալ-
„ ներ ըրին, որոնցմով մեզի ճար եղավ ազ-
„ ըրվելու, խալըսելու": Ուրիշն ալ կը-
սէր, թէ քանի՛ հեղ մեծ մեծ թագաւորներ
մէկ տեղ միաբանվերեն մէկ տեղ կապվե-
րեն, ոչ երբէք մէկ աղէկ բան մը առաջ
բերերեն:

Այս բաները տեսնալով Ֆետերիքոս՝ որոշեց
որ առաջ մինակ ինքը մոսկովներուն հետ
զարնըվի դեռ օգնու̃ն չեկած անոնց. անոր
համար Տօնհա զօրապետին հրամեց որ՝ եր-
թայ ծեծկըվի. ասիկայ անցնելով օտեր
գետը՝ լեհ մտաւ, բօզնանիայի պալատա-
կանութե̃ն ամէն երկիրները երեց, տուրք
առավ, պատճառ բերելով որ մոկովնե-
րուն համբարները (մահզէնները) կերեմ,
բայց ասով մոսկովներուն քիչ վնաս եղավ,
լեհցոց շատ վնաս. ետքը յարձըկեցաւ ան
բերդին վրայ, ուր իր ընտանեօքը կըբնա-
կէր ան երկրին լեհ իշխանը Սուլքովսքի,
որ մէկ անձնական ներհակութի̃ն մը ունէր
պրուսի թագաւորին դէմ, և որուն շատ
բարերարութի̃ն կընէր մոսկովին թագու-
հին, բռնեց աս իշխանը, տարավ կռօսկլա-
կավ բերդը դըրավ: Սուլքովսքին կաղա-
ղակէր կըբողոքէր ցըցընելով որ լեհին հա-
սարակապետութի̃նը չէզոք ըլլալով, իրա-
ւունք չունէր Տօնհան իրեն երկիրը զար-
նելու:

Բայց իրաւունքը իր երկրէն առաջ կորսըւած ըլլալով Տօնհայլին առջին, օգուտ մը չէր ըներ աս բողոքը. օգուտ ռօմանցով կոմսին զօրութիւնը ըրաւ, որ մօսկովլի զօրքով շատ հեղ Տօնհայլին վերջապահ զօրքը զարկաւ, իրեն թալլած կողոպտած աւարները առաւ, անկէց հարկ եղաւ Տօնհայլին մէկ դի քաշվիլ: Փետերիքոս պրուշին թագաւորը խիստ սրդողելով Տօնհայլին վրայ, Աէտել երիտասարդ զօրապետը իր տեղը խրկեց, հրամելով որ աստը հնազանդին. պրուշին ուրիշ զօրքը միքլէնպուրկին երկիրը վազեցին, յանկարծ Շվէրին քաղաքը պաշարեցին. որուն դուքսը առաջուցմէ լըսելով փախերէր: Նմանկ ապստամբութիւն (չարխայութիւն) բռնութիւն ընելու պատճառը՝ ըստրկի ու զօրաց պակսութիւնն էր, որովհետև աս պատերազմիս ատենը՝ պրուշին ու սաքսօնիայի մէջի եղածները հատերէին. անոր համար պրուշը ձեռ որ կընար կըմոնար կըկողոպտէր, ամմէնան կըբռնադատէր պրուշի զօրք գրըվիլ. ինչ աղէկ ըստակ որ կառնէր բարեկամէն, թշնամիէն, չէզոքէն, ինքը ամմէնան կըհալէր, սուտ ըստակ կըկտրէր, առուտուրի մէջ կըբաժնէր. անանկ եղաւ որ լեհաստան աս սուտ ըստակներով լեցվեցաւ, որովհետև պրուշները հոն շատ ձի առին, աս սուտ ըստակէն վճարեցին:

Մոսկովլին զօրապետը երբոր ոտք կոխեց մտաւ խալէզիայի մէջ, խոշոր թօփեր շարեց մեծ ճամփուն վրայ որ քռօսսէն կըհանէ

ծովլիճային մօտիկ, հոն սպասեց որ առաջ պրուշը սկսի ծեծկըվիլ։ Յուլիսի 22 վետել պրուշին զօրապետը իրեք դիւացէն յարձըկեցաւ մոսկովին վրայ. առջի բերանը ինքը յաղթող երևցաւ, բայց մոսկովին հետևակ (եաեան) զօրքը իրեք ժամ պատի պէս ամենևին անշարժ կենալով հարկադրեցին պրուշները ետ քաշվելու. ան ատենը մոսկովները ետևնին հալածելով շատ շփոթութի ձգեցին մէջերնին. 2 հազար հոգի սպաննեցին, անչափ գերի ըրին, 20 թօփ 12 դրօշակ (պայրախ) առին. իսկ մոսկովները 4 հազար հոգի կորսնցուցին. անանկով Փռանքֆօրդ որ օտեր գետին վրայ է, քռօսէն իշխանութիը, և ուրիշ երկիրներ՝ մոսկով խազախներուն ձեռքը անցան ինչվան մօտիկցան պեռլինի։

Ան ատենը Փետերիքոս թողուց լուսացիան, վաղեց շլեզիան, որ պեռլին իր աըքայանիստ քաղաքը խալըսցընէ. խելքը միտքը ան էր որ՝ չիթողու լավտօնին մէկ ըլլալ մոսկովներուն հետ, որոնց զօրքը իրենինէն քիչ էր, որովհետև գունդ մը զօրաց ետևնին թողուցերէին, որ վիրենք կռնակէն պահեն։ Բայց լավտօնին պատերազմական խորամանկութիը հնարագիտութիը աւելի էր քան Փետերիքոսին. յուլիսի 28 լավտօն ելավ տավունին բանակէն գնաց մարգ լիսսան, հոն եկավ նաև հատտիկ զօրապետը Սօրաւ ըսված տեղը, անոր տըվավ ընտըրված միաձաւին զօրքը. ասկեց պրուշները անանկ կարծեցին որ՝ լավտօնը իրենց ե-

տեղէն կուգայ, ու Հաստատիկին հետ՝ է ամմէն իր զօրքը. աս մտքով Փետերիքոս յանկարծ Հաստատիկին վրայ յարձըկեցաւ որ Լավտօնը զարնէ, կարծելով որ հոն է. բայց Հաստատիկ աղէկ տեղ մը բռնած ըլլալով, 6 ժամ կըտ-րիճութեամբ դիմացաւ պրուսի յարձակմանը դէմ, միայն 850 մարդ կորսնցընելով։ Ին միջոցին մէջ Լավտօնը ատեն ունեցաւ, ըն-դարցէտէլ գնաց, ու օտէր գետին դին եր-թալով, քիչ օրվան մէջ վերոյիշեալ Փռանք-ֆօռդ քաղքին տակը հասաւ, առանց մէկ թշնամի մը գտնալու ճամփան, առանց մէկ հոգի մը կորսնցընելու, իր մտքին հասաւ, որ էր մոսկովներուն հետ միանալ։ Հոն ու-րախութեամբ առջին եկավ վազեց սօլդիքօֆ մոսկովին զօրապետը, ընելով ամմէնուն առջին որ՝ աս միանալէս կախված էր մեր յաղթութիւնը։

Երբոր Փետերիքոս լսեց Լավտօնին միա-նալը՝ ինքնալ զարմացաւ մնաց, գնաց վե-տելին մնացած զօրացը հետ միացաւ. Փինք զօրապետէն օգնութիւն առնելով օտէր գե-տը անցաւ, 50 հազար ընտրըված զօրքով մոսկովներուն առջին բանակ կանգնեց ծեծ-կըվելու, որոնց մէջը մէկ պզտիկ ջուր մը կանցնէր. թշնամին խաբելու համար օտէր գետին ան դի դին արուեստաշէն կրակի (Փիշէնկի) խաղէր ընել տըվավ, իբր թէ մինտէն ըրած յաղթութեն համդէսը կընէ, բայց միտքը ան էր որ՝ մոսկովները զինքը խաղի մէջ զբաղեալ կարծեն, իրեն յար-ձըկիլը չիմանան։ Նանկալ կըցընէր որ՝

ծեծկըռվելու ալ ըլլայ, այլ թեւէն պիտոր սկսի ծեծկըռվիլ, բայց իր միտքը էր տեսնալ իմանալ թշնամիին կեցուածը, ու ան ատենը գացել անոնցմէ մէկ մարտկոց (թապեա) մը՝ որ 20 թօփով շարել կուտար, ինչպէս որ երբեմն ֆրանսզներուն ըրաւ ռօսպաք։ Բայց լավտօն ու սօլդիքօֆ շատ տարբեր զօրապետներ էին ռօսպաք եղած ֆրանսզի զօրապետներէն։

## Քունէռսդօրֆ եղած ծեծը, պրուշին յաղթըւիլը·

## 1759։

Օգոստոսի 12 առտըվանց վիդդէմպէրկ իշխանը յարձըկեցաւ թօփերով, մոսկովին պատնէշը (մէթէրիզը) ավրեց, անոնք նեղը ձգեց, ան ատենը ֆետերիքօս թագաւորնալ յարձըկեցաւ ավրեց մոսկովին բանակին ձախ թեւը, որ քաշվեցաւ քունէռսդօրֆ գեղին ետեւը, պրուշին ձեռքը ձգելով իրենց թօփերը։ Անանկ երեւցաւ որ պրուշները յաղթեցին մոսկովին վրայ, բայց բանը շուտով փոխվեցաւ, վասն զի պրուշը ան սխալի մէջը ընկաւ՝ ինչ սխալի մէջ որ ընկան նեմցէները 1757 բռակային տակը։ Պրուշին զօրքը սաստիկ հալածելով մոսկովները, խումբ խումբ ցրուած մնացին, մէջերնին պարապ տեղվանք թողուցին, ու թը հեղ մոսկովին վրայ յարձըկեցան իրենց թօփերը՝ բանի տեղ չիսեպե-

լով, որ աղէկ շարելով շատ Ջարդ տալին պրուշլին. Լավտոնը որ իր ձիաւոր զօրքով կեցած կըդիտէր ծեծին առաջ երթալը, աղէկ ատեն գտաւ, ձիաւորներով վազեց մտաւ պրուշլին ոտանաւոր (եաեան) զօրացը մէջ: Երբոր ձիաւոր զօրք մը կըմըտնայ ոտանաւոր զօրացը մէջ, որուն գիծը կցած չէ կամ թէ միացած չէ, հարկաւորապէս կըյաղթէ: Լավտոնին ձիաւոր զօրքը սաստիկ ձեռվընին թուրերը բռնած վազելով չփոթութիւն ձգեցին պրուշլին ոտանաւոր զօրացը մէջ, անկարգաբար ետ քաշվիլ սկսան. մոսկոֆեալ ատեն ունեցաւ զէնքը շտկելու: Լավտոնը նորէն տեսաւ որ պրուշլին խումպարաճիները 150 քայլի չափ մօտիկցերէին մէկ մեծ մարտկոցի (թապեայի) մը քով, որ մոսկոֆները թողուցերէին երբոր ծեծը սկսաւ, աս սխալը շըտկելու համար շուտ մը հասաւ, ինքը առավ ան մարտկոցը, թօփերը սկսաւ պարպել պրուշլին վրայ, որով չփոթութիւն ձգեց անոնց մէջը:

Պրուշլին զօրքը կըմանի մէկ շարժական մեքենայի (տօլապի) մը միացած, ինչպէս էր հին ատենը մակեդոնացւոց փաղանգը, բայց մէկ անգամ մը ավըրվածին պէս շատ դժար էր 'ի կարգի դնել, ան վախը ու շըփոթութիւնը քիչ մը ատենի մէջ ընդհանուր եղավ: Ֆեդերիկոս պրուշլին թագաւորը իր ամէնէն ուժը թափեց, որ ինքը առնէ յաղթութիւնը. մէկ հասարակ զինուորի մը պէս զինքը առաջ նետեց, առջի գծին

մէջը կեցաւ, իր լաւթերը ծակ ծակ եղան, երվեցան, երկու ձի իր տակը սատկեցան. քիչ մնաց որ խեղճնալ գերի պիտոր ինար, թէ որ կօեց հարիւրապետը իր ձին անոր չիտար, բայց իր ամմէն ջանքը պատճառ եղան որ աւելի ջարդ կերան. հազարապետաներուն (ոֆֆիցիաններուն) մեծ մասը կամ մեռան, և կամ մահացու խոցվեցան. Բուդդքամէր զօրապետը որ քիչ մը հեռու կեցերէր թագաւորէն, բանտվեցաւ, քիչ մը անցնելէն ետև մեռաւ: Որչափ անըստոյգ է պատերազմին վերջը. պրուշը իր աւելի ընտիր զօրքը աս օրս կորսնցուց, օխտը կամ ութը հազար պրուշ մեռան. հինգ կամ վեց հազար գերի ընկան, այնչափ մնալ խոցվեցան. 85 թօփ կորսնցուցին, 16 հաւան թօփու, 29 դրօշակ: Ոսկովին ու նեմցէլին համար անանկ ըսվեցաւ որ՝ 24 հազար մարդէն աւելի կորսնցուցին, բայց այնչափ չիհասնիր իրենց կորուստը. ամենք 3 հազար կրդնեն մեռածներն, 9 հազար խոցվածներ: աս ստոյգ է որ՝ երկու դիացէն մէկ տեղ [illegible]ն օրը 35 հազար մարդու չափ կորսվեցան:

Ըս պատերազմով լավտօնին անունը շատ ելաւ ամմէն տեղ հռչակվեցաւ, նաև բէդրօպուրկին մէջ. եղիսաբեթ մոսկովի թագուհին իր ձեռքով լավտօնին մէկ թուր մը խրկեց ոսկիով զարդարված, և մէկ թուղթ մը շնորհակալութէ, իր զօրքը մեծ կոտորածէ խալըսելուն համար. և իրաւ որ՝ լավտօնը վերօգրեալ ըրած քաջութէն զատ՝

փախչօղ պրուշներուն ետևէն հալածելով, նորէն 16 թօփ առավ, 5 դրօշակ, 1252 հոգի գերի ըրավ, իրեն դին անցնօղ պրուշները՝ իրեն զինուոր դրեց . անչափ երևելի եղավ իր վարպետութիւը՝ որ պրուշին թագաւորնալ իր գրուածքին մէջը կըգովէ լավտօնը . մէկհատիկ պատճառ ան օրվան եղած իր կոտորածին լավտօնը կըդնէ : Մնացած պրուշին հետևակ զօրքը 60 մղոնի չափ փախան եկան քուադրինիին տակը . վունոչ զօրապետնալ որ Ջարդին ատենը նորէն մտերէր Փռանքֆօրդ , հոնալ կենալու վախնալով, ինքնալ մէկալ փախչօղներուն հետ գնաց :

Այս քօթը (սև խապարը) շատ վախ ձգեց պէռլինի մէջ, մանաւանդ որ պէռլինցիք առջի բերանը միայն պրուշներուն ըրած յաղթութիը լսերէին, անոր համար ուրախութեան մէջն էին, մէյմնալ երբոր քօթը լսեցին՝ ճղակոտոր մնացին, փախչելու պատրաստըվեցան . Փետերիքոս թագաւորնալ գրերէր թագուհիին որ դուրս ելլայ պէռլինէն . թագուհինալ գանձը ու տէֆթերները առնելով գնաց մակտէպուրկ : Փետերիքոս եկաւ պէռլինին քովը նստաւ, բայց առանց շփոթելու նորէն զօրք ժողվել սկըսաւ ամմէնմնալ ընտիր , որոնք թագաւորին ու հայրենեացը համար կեանքերնին դրերէին . սաքսօնիայի մէջի եղած ընտիր զօրքերնալ իրեն կանչեց : Սանկով անշփոթ սկսաւ պատրաստըվիլ իր թշնամեացը դէմ, չիվախնալով ամենևին անձնացմընէ՝ որ չորս

դին առեր էին. այլ ինչպէս որ կը վայլէ մէկ վեհանձն մարդու՝ քիչ օրվան մէջ ամմէն բան մտածեց, ամմէն բան 'ի կարգի դրաւ. չէր անցներ ամիս մը, որ չերթար լուսացիայէն շլէզիա, շլէզիայէն սաքսօնիա, զարմանալի արագութ̃ իբր օդու մէջ մէկ թռչուն մը։

## Մոսկովը կ'ուզէր պրուշին դէմ ծեծկռտելու.

1759։

Գ՝անք որ սօլթիքօֆ մոսկովին զօրապետը փոխանակ պրուշին վրայ վազելու, նստեր էր բան մը չէր ըներ, լավտօնը շատ յորդորեց անիկայ, բայց չիշարժեցաւ. տավտուն նեմցէին զօրագլուխնալ իմանալավ մոսկովին անշարժ նստիլը, եկավ կուպէն որ իր բերնով յորդորէ. մէկ հարկինք մը ընելէն ետև սօլթիքօֆին՝ սկսաւ խրատ տալ գոնէ կլօկաւը պաշարելու առնելու, որով կըրնար ձմերել պրուշին երկրին մէջը. կայսրուհւոյն դիպցէնալ մէկ ծանր մատնի մը ու ոսկի տուփ (խութի) մը պռիլլանդիով զարդարված իրեն ընծայ տըվավ աս բանիս համար. բայց սօլթիքօֆ պատրուակ (մահանայ) բերելով որ՝ պաշարի (զահիրէի) պակսութի ունիմ, անհոգ եղավ մտիկ դընելու։

Ասանկ ետ կենալուն պատճառը՝ կարելի է որ պետրոսն էր ժառանգը մոսկովի թագաւորութեն, որուն վրայ վարը երկան ու-

նմինք գրելու, ասիկայ որովհետև խենթի
պէս յարեալ էր պրուշի թագաւորին, գաղ-
տուկ մենծերուն միտքը կըդարձընէր, որ
դոնէ եաքի չարիքը չի հասցընեն Փետերի-
քասի իր սիրականին. կամ թէ բէդրօպուր-
կին մենծերը կըմտածէին որ պրուշը քիչ մը
նեղութի քաշէ խոնարհի, բայց բոլորովին
չավըրվի, որպէս զի աւստրիային տունը որ
է նեմցէն՝ շատ չի մենծնայ. ասանկ կուզէ
կըսէին նաև Փրանսզի տէրուէրը, որ պրուշը
չի կործանելով միշտ մէկ վախմը (թօքուզ)
մը ըլլայ նեմցէի վրայ։ Իսկ պրուշին թա-
գաւորը ասոնց ասանկ կենալը տեսնալով
զարմանալով մը կըգրէր Փուքվէդ զօրա-
պետին։ „Իմ թշնամիներէս կախված էր
„վերջ տալ պատերազմին, բայց փոխանակ
„առաջ երթալու՝ պէռլինին վրայ վազե-
„լու՝ որ չորս դիհացէն բաց կեցերէ, անոնք
„թմրած կեցերեն։ Մեր բարեբաղդութը
„անոնց աչքը մըթընցուցերէ, ու գէշ խոր-
„հուրդները զանոնք շփաթերէ, որ է սովո-
„րական չարիքը՝ երբոր քանի մը տէրութի
„մէկ տեղ կըմիաբանին“։
Սօլթիքօֆ կրնար պէռլինի վրայ վազել,
անոր ետևէն մակտէպուրկին վրայ, որ ուժ
չունէր դէմ դնելու, բայց երկու ամսըվան
մէջ ուրիշ բան չըրաւ որ՝ աս դիս ան դինք
իր զօրքը շարժել, ետքը հոկտեմբերի մէջ
լեհին երկիրը մտաւ, լավտօնէնալ զատվե-
ցաւ, գնաց կեցաւ վարդային ու վիսդուլային
մէջ, ամմէն տեղ երելով ավըրշորկելով
լեհի իշխաններուն երկիրները ու բերդե-

րը, ինչու Փետերիքոսին դէմ էին ըսելով։ Ոմանք նաև տաւունին դանդաղութեր վրայ կըգանկտին ու նախանձուն վրայ, կըվախնար՝ չըլլայ թէ լավտոնը նեղը ձգելով պրուշին թագաւորը, հաշտութի ուզել տայ, ունով յաղթութեն փառքը լավտոնը առնէ։ Ինչ և իցէ, լավտոնը մինակ մնացած ըլլալով, վտանգի մէջ էր, կրնար պրուշէն զարնըվիլ բոլորովին, բայց լավտոննալ Փետերիքոսի պէս մեծասիրտ ու անշփոթ ըլլալով, շուտ մը առաւ իրեն զօրքը որ 15 հազարի չափ կային՝ ամմէն թօփէրով ճամփայ ելավ. 22 օրվան մէջ լեհին դաշտերուն ու անտառներուն մէջ քալելով, ետքը քռաքօվիայի վրայէն անցնելով՝ ողջ առողջ հասաւ Տէշէն, որ աւստրիական շլէզիային մէջն է։ Աս թէպէտ պրուշին թագաւորը անոր վրայ խրկեց իր Փուքվէդ զօրապետը շատ զօրքով, որպէս զի լավտոնին ճամփան կտրէ, բայց բան մը չիկրցաւ ընել. ամմէննալ զարմացան մնացին աստանկ անփնաս հասնելուն վրայ. ինչվան Փրանսզներէն գովասանք էկավ լավտոնին։

Ռէյխէնէրը Տրէզտա կառնեն, պրուշին Ֆինք զօրապետը իր ամէն զօրքով գերի ըլնէն.

1759։

Տաուն մտածեց ինքիրեն սաքսոնիայի վըրայ երթալու, որ ըստ մեծի մասին արդէն առերէին կայսերութեան շրջանակներուն

կամ գաւառներուն զօրքը, որոնց զօրավարն էր Ֆետերիքոս տիւքօնդին իշխանը, և սէրպէլլօնի իդալացի մառէշալը՝ որ իւր առաջին խորհրդականն էր անոր․ բայց դժար բան էր դալիանի մը և նեմցեի մը մէջ միաբանութիւն ըլլալ, անոր համար իրարու հետ համաձայն չէին, որտանց մէկըզմէկ կատէին։ Սոյնք օգոստ․ 5 մտան լիփսիա, 14ին մտան դօրկաւ, ուր շատ պաշար (պահրէ) կար․ 22ին մտան վիդդենպերկ, որ սաքսօնիային հին մայրաքաղաքն է, ան ատենը մաքիր զօրապետը մօտիկցաւ տրէզտայի, որ հիմակվան մայր քաղաքն է․ մէջի եղած պրուշին զօրապետը ըսմէռդան՝ որ 10 հազար զօրք ունէր, թէպէտ նորէն կրակ տալ սկսաւ տներուն, բայց հարկադրեցաւ սեպտ․ 4 քաղաքը յանձնել դաշինք դնելով։

Սանկով սաքսօնիան իրեք տարի շատ բան քաշելէն ետև ազատեցաւ պրուշին ձեռքէն․ սաքսօնիայի կայսրընտրին տունը՝ որ ինչվան ան ատենը գերիի մը պէս էր, մէյմնալ պրուշին ձեռքը չիյնալուն համար մէջէն ելավ, գնաց բրակա բնակեցաւ, ցեռնինի կոմսին դարպասին մէջ․ նեմցեի կայսրուհին սաքսօնիայի կառավարութիւնը յանձնեց ծեր մառէշալին, որ անուանի էր եղած օլմուցը պաշտպանելու համար։

Ու իրաւի որ՝ Ֆետերիքոս պրուշին թագաւորը իր չուստ վազելուն վրայ ապաւինելով, անցաւ օտեր գետը կլօկաւին քովէն, (որ էր չորրորդ անցնելը)․ իրմէ առաջ սաքսօնիա խրկեց հուլսէն զօրապետ․

տը. իսկ Հենրիկոս իշխանը ու Վունաք զօրապետը զարկին կայսերութեն բանակը, որոնց վրայ երկու զօրապետը իրարու կռնախանձէին ինչպէս որ վերը ըսինք: Աս նախանձը որ փոքր անձանց սրտին մէջը կը բուսանի, մեծ հիւանդութեան մ'ընէ՝ որուն դեղը ինչուան հիմա չէ գտնըված: Աս երկու գլխաւորները իրարու ասանկ նախանձ ընելու ատենը՝ պրուշը միջոց գտաւ, նորէն ձեռք ձգեց առաւ Լիբսիան, Վիրդեմպերկը ու Տօրկաւ. Փետերիքոս Թագաւորնալ 18 հազար զօրք իրեն ժողվելով տրէզդտայի մօտիկցաւ սեպտ. 29 Մէյսսէն տեղի մօտիկ ծեծկըռվեցաւ, բայց չիկրցաւ կայսերական զօրքը տրէզդտայէն քովէն հալածել:

Տեսնալով Փետերիքոս որ տաւուն շատ զօրք ունի, վրան վազել չիհամարձակելով, Փինք զօրապետը 18 հազար մարդով խրկեց որ պօհեմիայի Ճամփաները ամէնէնալ գոցէ, որպէս զի պաշար (զահրէ) չիգայ՝ ոչ տրէզտայէն, և ոչ աւստրիոյ կամ նեմցէի բանակէն. անկէց տաւունը նեղը ինայ, որ տեղէն սաքսօնիայէն ելլայ. Քլէյստ գնդապետնալ պօհեմիայի վրայ խրկեց, որ համ պատտակութի (չարխա) ընելով շատ ավըրշտըկեց: Պօհեմիայի դիէրը ավըրշտըկելուն միտքը ան էր որ, տաւունը պօհեմիան պաշտպանելու երթայ, աս մտածելով Փետերիքոս պօհեմիայի վրայ աս դին ան դին զօրք խրկեց: Աս հնարքները աղէկ են՝ թէ որ թշնամին չիմանայ. Փինքը ուզեց ամէն կերպով գոցել իր միտքը, բայց մէկ Փապրիս

անտունով Նեմցէ հարիւրապետ մը ամէն բանը իմանալով, գիշերանց գնաց տավրունին պատմեց. Ճամփանալ ցըցուց թէ ինչ պէս յանկարծ կրնար զարնել անիկայ: Տավրունը գիտնալով որ պրուշը շատ լոտեա (չաշուտ) ունի, մահ սպառնալով ապսպրեց անոր՝ որ մարդու մը չիզուրցէ. աս ընելով շուտ մը Ճամփայ ելավ տավրուն. և թէպէտ շատ ցուրտ օր էր, լեռներու վրայի ձիւննալ աղէկ մը սառած (պուզ կտրած) ըլլալով դժար էր թօփեր հանել, բայց վարպետ Ճամփով մը հանելով երկու ժամու մէջ. պրուշներուն չորս դին պաշարեց. երկու դիրացէն առանք զարնելով հալածելով մէկ տեղ մը խօթեց, որ մէկ դինին լեռ մը կար անելանելի, մէկալ դինին էլպա գետը:
Նոյեմբ. 17 առտըվանց լաւչի Նեմցէ զօրապետը՝ եկավ Ֆինք զօրապետին ըսաւ որ՝ կամ անձնատուր պիտոր ըլլաք, և կամ գետին մէջը պիտոր իյնաք ամէնքնիդ. տեսնալով Ֆինք որ կըպակսէր իրեն կերակուր ու Ճէպխանէ, մէկալ դիրացէնալ տեսնալով վտանգը, Նոյեմբ. 21, իրեն զօրքով գերի ընկաւ, որ էին 17 հազար հոգի, 8 հազարապետ (ուֆֆիցիալ), 66 թօփ, 120 դրօշակ. շատ Ճէպխանէ, ըստըկին մնտուկը, ու ինչ առապայ որ կար, որոնք մաՃառստան խրկեցին ձմերելու. իսկ աւադրիացիք կամ Նեմցէները հազիւ 2 հազար հոգի կորսնցուցին: Ասիկայ մէկ մեծ պատերազմէն աւելի յաղթութին բերաւ Նեմցէներուն. տավրուննալ շատ փառաւորվեց

ցաւ, մանաւանդ որ Փինքը շատ ոսկի խըլ-
կեց ըսին իրեն, որպէս զի Թող տայ որ
փախչի, բայց տալուն ոսկին քամահրեց
չառաւ. Երախտագէտ սիրտ ալ ունենալով
Փարիսը մեծցուց, գնդապետ (քօլօնէլ-
լօ) ըրաւ, կայսրուհիինալ աղաչանք խրկեց
որ՝ ալ աւելի մեծուն հասցընէ անիկայ։
Այս յաղթութեն հետեւեալ օրը Պէք զօրա-
պետը՝ գերի ըրաւ պրուշին վռնաք զօրա-
պետը 1500 մարդով։

Այսոնք Փետերիքոս լսելով Թէպէտ իրեն
շատ մեծ վիշտ եղաւ, բայց նոր օգնութի
առնելով պռուսակիք իշխանէն՝ մտքին վրայ
հաստատուն կենալով ձմերանոցը չիգնաց,
հապա աւելի կըփնտռէր զարնելու նեմ-
ցեին բանակը, որ տրէզտային տակը նստեր-
էր. իսկ տաուն նեմցեին զօրապետը որով-
հետեւ խիստ աղէկ տեղ նստեցուցերէր բա-
նակը, ամենեւին չիշարժեցաւ իր տեղէն,
այլ կըսպասէր որ Փետերիքոս իր վրայ վա-
զէ։ Այս տարվան ձմեռը խիստ ցուրտ ըլլա-
լով, երկու բանակինալ ձիեր մարդիկներ
կըփատնային կըմեռնէին, բայց երկու բա-
նակինալ պատերազմելու վրայ սիրտ ունե-
նալով, վրանները (չատըրները) Թողուցին,
հողէ իրձիթներ (խօլիվաներ) շինեցին,
վրանին յարդով (սամանով) գոցելով։
Սկսան քիչ մը հաշտութե վրայ խօսաթել,
բայց Փետերիքոս դաշնակցեալ Թագաւոր-
ներուն ուզածնին պէս չէր ընդունէր, ա-
նոր համար Թագաւորներնալ չուզեցին հաշ-
տութի ընել անոր հետ, որ քիչ շահաւոր

կըլլար իրենց. որովհետեւ ասանկ չարաչար պատերազմը իրենց գիւացեն կէս միլիոն մարդ կորսնցուցեր էր, ու անհատնում ըստակ:

Աս միջոցին մէջն ալ Փետերիքոս չէր դադրեր տուրքը պահանջել որչափ տեղվանք որ ունէր սաքսոնիային մէջ, անչափ որ առած տուրքը երկու միլիոն ռիալին անցաւ. 10 հազար գեղացի կորիճներալ բռնի (զօռաքի) քաշեց զինուոր ըրաւ, եւ ոմանց ըսածին պէս՝ միայն անցած տարւան 1758ին առած տուրքը սաքսոնիայէն՝ 6 միլիոն ռիալին անցաւ, Թող տուր սովորական եկամուտը որ քառապատկեց. աղվոր անտառները որ կային՝ Ջարդեց, անոնցմէ առած փայտը ծախեց. լիբսիա քաղքին վրայ 800 հազար ռիալի տուրք ձգեց, թէ ինչու դուք ուրախութիւններս առիք կայսերութեան զօրքը. աս քանիս համար քաղքին ամմէն գատաւորները բանտը դնել տըվաւ. հոնալ անանկ ցուրտ ատեն կրակ չիտըվաւ անոնց տաքնալու համար, եւ ոչ մահիճ (տէօշէկ) պառկելու համար, ինչվան որ գոնէ ան տուրքին կէսը չիտըվին:

Ինչ աւելի կընային ընել բարբարոս ազգերը ասանկ անմեղներուն վրայ, գերմանիային ուրիշ դի մընալ իր հենրիքոս եղբայրը ասանկ կընէր. վասն զի երբոր Փետերիքոս 40 հազարով խրկեց հենրիքոս իշխանը կայսերութեան զօրաց վրայ, (որոնց զօրագլուխ տիւքօնդին իշխանն էր, որ Փռանքօնիա կընստէր,) տիւքօնդին իշ-

խանը Լինչվան Նօռիմպերկ փախչելով քաշ-վեցաւ. Հէնրիքոս Հան ուրիշ օգուտ մը չու-նենալով, ամմէն Փռանքօնիային շրջանակը կամ գաւառը ծծել սկսաւ. ըստակ առավ, զօրք առավ, մէկ ասպատակի մը նման ե-կավ:

Փրանսացիները առաջ յաղթեն Հաննօվերցոց, ետ-քը յաղթուեցան.

1759:

Սյս ամռւանս մէջ Փրանսաց պռօկլիօ դուք-սը վարպետ ըլլալով մեծ յաղթութի ըրավ Ֆերտինանտոս իշխանին վրայ, որ իրմէ շատ զօրք ունէր. ամմէն Հասսիա առավ, Հաննօ-վէրին մէջինալ մտաւ. Լուիզ ԺԵ Փրանսային թագաւորը բարերարութի ընելով ասանկ առաջ երթալուն համար զինքը մառէշալ ըրավ, բայց շատալ նախանձօղ ունենալով իրեն փարէզին մէջը, շատ նեղութիւներու մէջ ընկաւ: Պռօկլիօն գրերէր փարէզ որ իրեն օգնութի խրկեն որպէս զի առաջ եր-թայ, երբոր իր ուզածին պէս զօրք կըպատ-րաստէին որ խրկեն, մէյմնալ Բօմբատուր խաթունը (որուն խօսքը ինչպէս որ զուր-ցերենք ամմէն բանի մէջ առաջ կերթար,) գաղտուկ կերպով մը Գօնդատէս մէյմը մառէշալ ըրավ ամմէն բանակին վրայ. աս բանէս թէպէտ պռօկլիօն խիստ խռովե-ցաւ, բայց հնազանդելով անոր հրամանքին տակը մտաւ:

Քօնդատէս կըպարծէր որ ես ծածուկ խորհ-
հուրդներ ունիմ, բայց ան ծածուկ ըսած-
նալ բերնէն դուրս հանելով անխոհեմա-
բար կըզրուցէր, որ թէպէտ պէտք է պրու-
շին ու իր դաշնակցին դէմ դնել, բայց ոչ
բոլորովին յաղթել. վասն զի Նեմցէի զօ-
րանալը աղէկ չէ Փրանսային. չըլլայ թէ
պրուշին իյնալովը Նեմցէն զօրանայ, որ մը
ետ առնել ուզէ ան գաւառները՝ որոնք
առաջ տըվավ:

Շատ վարպետ պատերազմօղ ըլլալով
Ֆէրտինանտոս, կեղծաւորութ̅ մը սուտ-
մըտընէ քաշվիլ ցըցուց քօնդատէսի առ-
ջին, իր կեցած երկիրները թողուց դուրս
ելավ. քօնդատէս տեսնալով ասոր քաշվի-
լը՝ ետևէն վազեց, իր կեցած տեղէն ելավ,
որ աղէկ տեղ էր, եկաւ հասաւ մէկ գէշ
տեղ մը՝ որ լճէրու (կէօլէրու) մէջ էր իբր
80 հազար մարդով: Ֆրանսզները քանի
մը տեղ առին, քասսէլ, մունստէր, իսկ
պուօկլիօն մինտէնը առաւ (1) գրեթէ ա-
ռանց ծեծի. դաշնակիցներնալ իբր բարե-
կամի անունով միայն պրէմա ազատ քա-
ղաքը, իրեն զինարանին մէջ որչափ թօփ
ու զէնք կային 300 հազար ռիալի աժողջէ-
քով, ամմէննալ թալլեցին. անանկ եղավ
որ՝ Ֆէրտինանտոս իշխանին չիմնաց մէկ
տեղ ետ քաշվելու. ամմէն դիհացէն նեղու-

---

(1) Ոմանք Մինտէնին առնըվիլը կըդնեն 1758. հոկտեմբ. 10:

թէ մէջը ընկաւ, հարկ եղաւ ծեծկըվե-
լու ։ Բայց պատերազմին ելքը չիգիտցը-
վեր, շատ հեղ անանկ կըփոխվի որ չիկար-
ծըվէր. նոյն իսկ յուսահատութիը շատ ան-
գամ յաղթութի բերել կուտայ՝ հինէրուն
ըսածին պէս ։ Յաղթըվածներուն մէկ հա-
տիկ գեղ փրկութէ ան ատենն է, երբոր
ալ չեն յուսար փրկութէ ։

Օգոստ. 1 առտըվանց մինտէնին առջին
մէկ մեծ ծեծ մը սկսաւ. տասն անգամ
մը մէկմէկու հետ զարնըվեցան, բայց յաղ-
թութիը չորոշվեցաւ որ դին ըլլալը. ետքը
10 հազար ինկիլիզի հետեւակ (եաեան)
զօրք ամմէննալ ընտրըված՝ մտան յարձըկե-
ցան Թօփերով Ֆրանսզին բանակին մէջ
տեղը. Ֆրանսզը ձիաւոր զօրք իրկեց վրա-
նին, բայց պարապ ելաւ. առտըվանց ինչ-
վան օհարսակ ծեծկըվելէն ետեւ՝ ամմէն
Ֆրանսզ փախչիլ սկսան կոտրըվելէն, ի-
րենց հետ փախան նաեւ մնացած զօրքը՝ որ
դեռ չէին ծեծկըված ։ Ֆրանսզները Ձէհ-
ֆէլտ տեղը կեցուցերէին պրիսաք դուքսը
3, 4 հազար զօրքով, որ իրենց համբարնե-
րը պահէ, ու վէռռա ջուրին վրայի եղած
կամուրջը պաշտպանէ, որպէս զի երբոր ետ
քաշվելու ըլլան՝ կարենան փախչիլ. բայց
թշնամին եկեր առեր էր համբարներնալ ու
կամուրջնալ ։ Աս բանս ամմէնէն աւելի
վնասակար եղաւ. Ֆրանսզները առանց
ապրուստի մնացած ըլլալով՝ հարկադրեցան
հաստիայի մէջէն փախչիլ վէսսերին վրայէն
երթալով. ութը օր անանկ շարունակ փախ-

չելու հետ ըլլալով մէկ դին՝ մէկալ դին՝
Փրանսզները ամմէն Թօփերնին, վրաննին
(չատըրնին,) ըստըկի մտուկը, նաև տէֆ-
Թէրխանէն Թշնամւոյն ձեռքը Թողուցին,
որ էին հաննօվէրցիք ինկիլիզի զօրացը հետ
մէկ տեղ։

Նեմցէ գեղացինէրը որովհետև բնական
մէկ ներհակութի մը ունին Փրանսզնէրուն
հետ, հիմա աւելի կատղած ըլլալով անանց
դէմ շատ տուրք առնելուն համար իրենց-
մէ, ան փախչօղ Փրանսզնէրուն մէջէն ու-
նոր կրնային՝ երկուք մէկ դին, իրեք մէ-
կալ դին կըսպաննէին։ Փրանսզին աս ծե-
ծին մէջի կորսըված զօրքը 10 հազար ե-
ղան. իսկ ամմէն կորսըված զօրքը առա-
ջուցմէ սկսեալ 40 հազարի չափ եղան, որ
է ըսել, իրենց բանակին կէսը. և ինչ եր-
կիր որ կայ՝ մինտէնին ու քասսէլին մէջը,
որ Փրանսզները առերէին, նաև Հանաւ-
ըսված կոմսութիւը, և ուրիշ շատ տեղէր,
ամմէննալ վերոյիշեալ Փերտինանտոսի պը-
րունսվիքեան իշխանին ձեռքը Թողուցին.
անալ ասկեց ետքը 12 հազար զօրք խրկեց
սաքսօնիա, որ պրուշին օգնութի հասանին։

Գօնդատէս խիստ տրտմելէն՝ վեց օր մը
մնաց անանկ առանց մէկ բան մը գրելու
փարէզ, անոր տեղը պռօկլիօն Թաթար
խրկեց ժէ լուիզ Թագաւորին. երբոր փա-
րէզ հասաւ աս բօԹը՝ փարէզցիք ամմէնը
չփոթեցան. Թագաւորը ան ատենը որս
(ավի) երթալու պատրաստութի կըտես-
նար, երբոր լսեց՝ շուտ մը ամմէն բանը

ձգեց , մեծերը խորհուրդ կանչեցին ։ Շատ մտածելէն ետև՝ որոշեցին որ՝ նորէն խրկեն Մուդրէ մաւեշալը , որուն անիրաւութիւն ըրեր էին վար ձգելով իշխանութենէ երբոր յաղթութիւն կընէր ։ ան ատենը իմացան թէ ինչ դէշ վնասակար բան է , երբոր կառավարութեան մէջ կնիկ մարդ կը խառնուի ։ Պռօկլիօյին հրաման եկաւ շուտ մը բօտայով երթալ շտկել զօրքը ։ երբոր յոգնած ծեծած զօրքը ասիկայ տեսան , նոր հոգի առին , ալ ետ չփախան ։ քասսէլ տեղը կեցան պատրաստ թշնամիին դէմ զարնըվելու , թէ որ վրանին յարձըկելու ըլլար ։

[illegible]

1760 ։

Այս տարվանս մէջ տեղ տեղ շարժ եղավ , արտառոց փոթորիկներ ։ սաստիկ կարկուտ , չարաչար ալէկոծութիւն ու նաւակոծութիւն , վեսուվ կրակ հանօղ լեռնալ նորէն բռընկեցաւ , հինգ բերնով կրակ փչելով , կրակէ գետեր վազցընելով , որ շատ վախի մէջ ձգեց նաբօլի քաղաքը ։ Ձմեռնալ խիստ կծու ցուրտ ըրավ եւրոպային հիւսիսային դիերը ։ Սունտ նեղուցը՝ որ պալցիկ ծովուն պօղազն է՝ սառեցաւ ։ Բայց սաստիկ ձմեռվան մէջնալ պատերազմօղ տէրութիւները նորէն իրենց զօրք պատրաստելու հետ

եղան. 100 հազար մոսկովը, այնչափ ալ Ֆրանսազը, այնչափ ալ տավուն մառեշալը. իսկ լավտօն պօէմիայի մէջ մեծ հրամանատար եղավ 40 հազար զօրքով։ Ասիկայ իր դիմացը ունենալով Ֆուքվէդ զօրապետը (որ պրուշին մնացած զօրապետներուն մէջ աւելի վարպետն էր), ասոր հետ մարտադուլ (միւթարքէքէ) ըրած ունէր։ Մարտի 13ին կռօստհէռուլից տեղը ըլլալով որ վերի շլէզլիային մէջն է, իր հազարապետներուն հետ խորհուրդ ըրավ որ՝ երբոր մարտադուլը մարտի կէսին լմննայ, ինքը պրուշին վրայ վազէ որ կրնատէր նեվշդատ ու լէօպօշից. բայց որովհետեւ պրուշը շատ լրտես (կէօզձիւ) ունէր նեմցեին մէջը, աս միտքս իմանալով՝ շուտ մը ան տեղերէն ելավ. լավտօննալ ռատիպօռ քաղքին վրայ գնաց առավ. 500 հոգի գերի ըրավ, 30 հազար ոխալի առավ, զինուորներուն բաժնեց սիրտ տալու համար։ Յունիս ամիսը չիմնոած Կլաց ըսված կոմսութենը մէջ մտաւ. որ 1742էն ետեւ պրուշին ձեռքն էր անցած, անկէց անցաւ մտաւ շլէզիա երկու թեւ բաժնելով իր զօրքը. առավ անանկ երեւցաւ Ֆուքվէդին՝ որ լավտօնը կուզէ պրէզլաւ կամ նաիս քաղաքը զարնել, անոր համար ինքնալ ելավ գնաց Ֆրէիպուրկին մօտիկները։

Ան ատենը լավտօն պարպըված գտնալով պրուշի զօրքէն՝ լանտշուդ քաղաքը առավ, անկէց նորէն ետ դառնալով լավտօն անցաւ գնաց Կլաց գլխաւոր քաղաքը պաշա-

րեց հեռըվանց. Ֆուքվէդնալ իր ամմէն զօրքը առնելով շուտ մը վրան գնաց որ՝ անկէց հեռացընէ Լավտօնը. տասը ապառաժ լեռնեւրու վրայ հանեց իր զօրքը՝ որ բոլորովին սխմէ Լավտօնը, բայց ասանկ ընելով իր զօրքը շատ ցրուեց. Լավտօնին աւելի հեշտ (խօլայ) եղավ յունիսի 23 առտըվանց Ֆուքվէթին վրայ վազեց, ամմէն զօրքը կերեց, նաև Ֆուքվէթը ու երկու տեղէն խոցվերեր, ընդ ամմէնը 18 հազար հոգի առավ. 2216 ձի. 46 թօփ. 9 հավան թօփու. իսկ Լավտօնին զօրքէն 2500 հոգի ծըր մեռան, ծըր խոցվեցան, ու 31 հազարապետ։ Ասով աւելի անուանի եղավ Լավտօնը, կայսրուհին իր ձեռքովը թուղթ գրեց իրեն գովասանքի, ու թօփձի պաշի ըրավ զինքը. բայց քանի որ անունը կավերնար, այնչափալ իր ներքին թշնամիները կըշատնային աւելի վեննայի մէջ քան թէ պրուշին մէջ։

Լավտօնը աս քաջութիւնը գործելէն ետև՝ կլացին քովը գնաց, մօտիկանց պաշարեց, հինգ օր աշխատելէն ետև մտաւ բերդին մէջը, որ իր ամրութենը համար երկու ամիս կրնար յոքնեցընել իր թշնամին. մէջի զօրապետը որ վարի քաղաքն էր, վազեց տեսաւ որ բերդը առնըված էր, անձնատուր ըլլալով գերի ընկաւ ամմէն զօրքովը որ 3 հազարի չափ կերլային. Լավտօնին ձեռքը ընկաւ 203 թօփ, որ պատին վրայ կային. 22 մենծ հավան թօփու, 70 պղտիկ. ու շատ պաշար կերակուրի ու ձէպխանէի, մա-

նաւանդ ալիւր խիստ շատ, որովհետեւ հան էր համբարը պրուշի զօրացը որ շլէզիայի մէջն էին. Լաւտոնը չթողուց իր զօրացը քաղաքը թալլելու ինչպէս որ օրէն էր, այլ չափաւոր տուրք առնելով իրենց մէջը բաժնել տալով, իրեն բան մը չառնելով:

Պրուշին թագաւորը Ֆետերիքոս Լաւտոնին ըրածները լսելով մէկ դիհացէն կըզարմանար իր քաջութենը վրայ, մէկալ դիհացէնալ ցաւելով իրեն դպած կորուստներուն վրայ՝ ատեն ատեն խիստ անարգանք կու տար անոր բերնով ու գրչով: Աշխարհիս վրայ որչափ վեհանձն մարդիկ ըլլան, ատեն ատեն չեն կրնար զիրենք զսպել: Ինքը Ֆետերիքոսալ ոտք ելաւ հատուցում ընելու նեմցիներուն. յուլիսին առջի օրերը ճամփայ ելաւ ցրցընելով իբր թէ շլէզիա կուզէ երթալ որ պաշտպանէ, բայց տաունը իմանալով Ֆետերիքոսին միտքը, շուտ մը 10 հազար զօրք տրէզտա քաղաքը խօթեց օգնութի մաքիէռ զօրապետին՝ որ հոն կըպահպանէր, առջի զօրապետը մեռած ըլլալով որ կը սվէր մառշալ: Վասքօ զօրապետնալ շատ զօրքով խրկեց տրէզտային նոր քաղաքը. վասն զի երկու բաժնըված է քաղաքը էլպա գետով, մէկ կամուրջով մը միայն կըմիանայ 15 կամարի վրայ: Ինկավ Ֆետերիքոս հին քաղաքը պաշարեց իբր աւելի տկար. առաջ մաքիէռին իմաց ըրավ որ անձնատուր ըլլայ, անիկայ երբոր մերժեց, սկսաւ թօփով զարնել. երկու հեղ հին

քաղքին վրայ յարձըկեցաւ, բայց մէջինինե-
րը աղէկ պաշտպանեցին, ան ատենը մտա-
ծեց կատարեալ պաշարել նոր քաղաքը.
տեսնալով որ չկյաջողիր, ուզեց երելով իր
վրէժը առնել, հավան թօփու ձգելով շատ
տեղ երեց: Տավուն ամսոյն 21ին գիշե-
րանց անցաւ էլպա գետը, պրուշին թօփէ-
րը գամեց, ու շատ թօփճի գերի ըրավ.
երբոր իմացաւ ֆետէրիքոս, որչափ կրցաւ՝
իր ամմէն բանը ժողվեց, ան ատենը իրաւ
ելավ գնաց շըեզիրային վրայ:

Ֆերբոր ֆետէրիքոսը թողուց տրէղտա քա-
ղաքը, լավտօնը մօտիկցաւ պրեզլավին,
սկսաւ 60 թօփով ու 45 հավան թօփիով
զարնել, մոսկովնէրնալ կանչեց որ իրեն հետ
միանան, անանկ մէկ տեղ առնեն պրեզլաւ
քաղաքը, բայց անոնք խիստ կամաց կըշար-
ժէին. ամմէն տարի մեծ զօրագլուխնին
կըփոխէին, անկէց մէկ բան մը չէին կրնար
որոշելու. պատճառ ասանկ ընելուն՝ ինչ-
պէս որ կըսէր, էր պետրոս մեծ դուքսը
մոսկովի թագաւորութեան ժառանգը, որ
չէր ուզեր որ պրուշը զարնըվի: Տեսնալով
լավտօն որ մոսկովնէրը օգնութին չեկան,
օգոստոսի 3 պաշարումը թողուց, գնաց
մոսկովնէրուն մօտիկնալու, որոնց առաջա-
պահ զօրքը սկսաւ առաջ քալել ինչվան
հունսֆէլտ, որոնց զօրապետը ցերնիչէֆն
էր. իսկ սօլթիքօֆ ծեր զօրապետը լէհին
մէջը նստելով, աս տարի քիչ ծեծ ըրավ:

Լավտօն շատ արտորցուց մոսկովնէրը որ
միանան, բայց անոնք դժվարութին կըգըրւ

նայքն կերակրու պակսուէ համար, անոնցմէ միայն Պոզլեպէն զօրապետը եկաւ 10 հազար հոգիով, ան ատենը որ՝ պրուշին Թագաւորը սաքսօնիան մէկ դի ձգելով, չորրորդ անգամ էր որ շլէզիա կուգար ար-տորնօք իր թշնամիներէն խալըսընելու, իր եղբայրնալ մէկ տեղ, բայց երկուքնալ շը-լէզիա գաւառին մէկ քունձը (քէօշէն) սղմըված նստան, հոն եղօղ նեմցէններու և մոսկովներու դէմ դնելու։ Ուէ որ աս եր-կու տէրութիւնը միաբան ըլլային, պրուշին վրայ յարձըկէին, պրուշը բոլորովին ջարդ ու բուրդ կըլլար, ինչպէս որ ինքը ֆետե-րիքոսնալ կըզգուցեր. անոր համար անչափ յուսահատված էր՝ որ ինչպէս երկու տարի առաջ՝ ասանկալ հիմա պատրաստըվերեր փառաւորապէս մեռնելու։

*Լավտօնին թշնամիները որոգայթ կըլլարեն, պրուշին ջէօրը կոտորին մարտնել.*

1760։

Լավտօն մօտիկցած ըլլալով Լանչի ու Գլէչ զօրապետներուն, մէկ խորհուրդմը ինքիրմէ մտածեց գրեց, ու տավլուն զօ-րագլխին ձեռքը խրկեց, ասով Ճամփայ կը-ցըցըներ թէ ամմէնը մէկէն մէկ ատենի մէջ ֆետերիքոսին վրայ յարձըկլին, որ գէշ տեղ մը կեցած էր լիկնիցին մօտիկ, անով ամմէն պատերազմը լմնցընեն։ Լավտօնը գիտէր որ աս երկու նեմցէ զօրապետները

լաւշին ու պէչը՝ իր ծածուկ թշնամիները էին, բայց չէր կարծեր անոնց վրայ անչափ ցածութիւն որ՝ իրենց նախանձը առաջ տանելու համար՝ ամբողջ նեմցէ ազգի մը խորտակվիլ յանձն առնեն, ու կայսրուհւոյն թշնամութիւն ընեն, որուն ընտրկօղը կապրէին. անոր համար իր խորհուրդը անոնց բանալէն ետև՝ իր զօրքէն 4 հազար լաւչիին օգնութիւն խրկեց, 4 հազարալ պէչ զօրապետին։ Բայց նախանձու կիրքը անանկ մէկ չար գազան մընէ, որ ունեցողին երկու աչքնալ կըկուրցընէ։ Ասոնք երկուքը աղէկ առիթ (փուսանտ) սպասելով աս բանս՝ որ լավտօնէն վրէժնին առնեն, որուն անունը խաւարել կուտար իրենց անունը, ալ չէին կրնար ներսի դինին պահել, ահա ժամը ըսելով՝ տես թէ ինչ անիրաւութիւն կընեն։

Օգոստ. 15. գիշերը երբոր Ֆետերիքոս պրուշին թագաւորը առանց մէկ բան մը ապսպրելու իրեն զօրացը պառկեր քնացերէր, լավտօնին զօրքերէն մէկ ձիաւոր մը վազելով եկավ մօտիկցաւ Ֆետերիքոսին վրանին (չատըրին) քով, ուզեց որ ներս մտնայ իրեն հետ խօսրաթէ։ Շուլէմպուրկ զօրապետը պատասխան տըվավ որ՝ Ֆետերիքոս թագաւորը կըքնանայ, չըլլար արթնցընել, աս զինուորը պատասխանեց որ՝ պէտք է թագաւորին ձայն տալ, թէ չէ՝ համար ունիք տալու, և այլն. որովհետև մէկ արտառոց ձանով մը կըխօսէր, ասիկայ գինով սեպելով պաղ պաղ ջուր լեցուցին.

գլխուն վրայ, բայց Շուլէմպուրկ լաւ սե-պեց, գնաց Թագաւորին պատմեց։ Շուտ մը ներս կանչել տըվաւ Թագաւորը, ա̀սի-կայալ մէկիկ մէկիկ պատմեց թէ առտուն կանուխ նեմցէն մոսկովլին հետ մէկ տեղ խօսք դրին, յանկարծ վրադ պիտոր վազեն, տավրունը քովէն ու աջ դիհացէն, լավտօնը ետևէն ու ձախ դիհացէն, լառշէն ու պէչ զօ-րապետը կռնըկէն։ Թագաւորը կանչ ա-ռաւ, զարմանալով մը հարցուց։ Ի՞նչ պի-տոր ըլլայ պատճառը որ՝ դու նեմցէի ծա-ռայութեն մէջ մարդ մը ըլլալով, հիմա աս մատնութիս կընես ինծի։ Նաւլ պատաս-խան տըվաւ։ Ես մէկ խուլանտացի մընեմ, ետքը նեմցէին անցայ, օտօնէլլ զօրապե-տին քովը եկայ, որ անալ խուլանտացի է. քիչմընալ բանէ մը նեղած եմ, կուզեմ վրէժս առնել. հրամանոցնիդ վրայալ մեծ համարում մը ունենալով, չեմ ուզեր որ փնաս ըլլայ։

Նոյն առտուն Ֆետէրիքոս Թագաւորը շուտ մը ոտք ելլալ, զօրքը կարգաւորեց, հոն մէկ քանի գեղացի մը թողուց կրակները վա-ռած, որ թշնամին չիմանայ իր ճամբայ ել-լալը։ Հասկընալով որ լավտօն ամմէնէն մօտիկ էր իրեն, ու քիչ զօրք ունէր, անոր վրայ քալեց մութուն, իր հետևակ (եաեան) զօրքը ձախ թեւը շարեց, իսկ ձիաւոր զօր-քը՝ իր քովը։ Խեղճ լավտօննալ բանէմը տեղեակ չըլլալով իր զօրքը համարձակ մօ-տիկցուց Րըլադէն ըսված տեղը որ մօտիկ է լըկնիցի. երբոր լուսցաւ՝ նոր տեսիլք տե-

սաւ, զարմացաւ մնաց, տեսաւ որ ամէն բլուրներուն (Թէփէներուն) վրայ պրուշի զօրք լեցուերէին. բայց քաջ մարդիկներուն մէկ յատկութինալ չիշփոթիլն է նեղութե մէջ. ատեն չիկար որ ետ քաշուի, ինչ ընէ, իր ամէն զօրքը եռանկիւնի ձեւով մը շարեց, ծեծկըռուելով փախուց բլրոյն վրայէն իր առջեւի եղած զօրքը. բայց աշխարհիս մէկ ձախորդութիւնը մէկալ ձախորդութիւնը կըկանչէ, մշուշ (փուս) փաթթեց ան ատենը չորս դին, չիտեսաւ որ իր առջին կեցերէին պրուշին 50 հազարի չափ զօրքը, երբոր արտորնօք կերթար՝ որ տավունին հետ միանայ, մէյմընալ տեսավ որ ամէն պրուշին զօրքը իր դէմը կուգային, ան ատենը հասկըցաւ որ՝ կամ պիտոր գերի իյնար, կամ պիտոր ամէն զօրութը ծեծկըռուէր, դարձաւ իր զօրացը կանչեց. „Բարեկամ-
„նէր կըտեսնամ որ մինակ մնացինք, չու-
„նինք ուրիշ օգնական որ՝ բայց միայն մեր
„քաջասրտութիւնը, ետեւէս եկէք մի վախ-
„նաք“:

Տեսնալով որ իր զօրքը հազիւ 20 հազարի կըհասնէին, չէին կրնար պրուշի բազմութեը դէմ դնել, աղէկ մը իր զօրքը շարելով սկսաւ ետ ետ քաշուիլ. Ինննօվից ըսված բարձր տեղ մը թօփէր շարված ունենալով, որ պրուշին զօրքը քովընտի կըզարնէին, անանկ դիրք մը ձգեց, որ Ֆետերիքոս թողուց անոր ետեւէ վազելը, անանկով հանգիստ ետ քաշուեցաւ, ջարդըռուելէն խալըսեցաւ: Ֆետերիքոս որ իր թշնամինե-

րուն քաջութիւնը միշտ կըգովէր իր զօրապետներուն առջին, զարմանալով աս բանիս վրայ ըսաւ իրենց ։ „Պէտք է երթալ
„ Լավտօնէն սորվիլ ետ քաշվելուն կերպը,
„ որ հեռընալովնալ կըվախցընէ իր թշնա-
„ մին ․ ան օրը որ դըրերէինք թէ մեզի գերի
„ պիտոր ըլլէնք, անիկայ մեր ամէն ջանքը
„ պարապ հանեց տըվաւ“ ։ Լավտօնը 6 հազար հոգի կորսնցուց, 68 թօփ․ իսկ պըրուշը 2 հազար հոգի կորսնցուց ։

Լավտօնը խալըսելէն ետեւ գանկատեցաւ զօրապետներուն ըսելով որ՝ 4 ժամ սաստիկ պատերազմեցայ պրուշներուն հետ, ձեզի մարդ խրկեցի, կըսպասէի որ կամ տավունը կամ ուրիշ զօրապետ մը ինծի օգնութիւն հասնէր, ինչու չեկաք ։ Մենք պատասխանեցինք որ՝ հովը դէմ ըլլալով չիլսեցինք թօփերուն ձայնը ։ Բայց քանի մը օրվան մէջ ձայնը դուրս ելավ, ամէն զօրք կըպատմէին ինչպէս յատուկ դիտմամբ ուզեցին Լավտօնը մինակ թողուլ որ՝ պրուշին գերի ըլլայ ։ Աս նենգութիւնը իմանալով Լավտօն, սիրտը կոտրեցաւ, հրաժարական թուղթ գրեց վիէննա, բայց կայսրուհին մարիամ թերեզիանան չթողուց, այլ մանաւանդ ինքիր ձեռքովը գովասանքի թուղթ գրեց Լավտօնին օգոստ․ 28․ գովելով իրեն ու իր զօրաց կտրըճութիւնը․ ամէն բանը գիտեմ ըսելով, բայց հիմակվան պարագայիս մէջ ինծի չիգիտնալ կըլլայ ։

Մոսկովը ու Նեմչէն պէտութեան քաղաքը Բէռլինան, առնուլ կառնեն.

1760:

Թէպէտ վերոգրեալ դիպուածը՝ խալըս-
ցուց Փետերիքոսը բոլորովին ջարդըլվելէն,
բայց իր բանը խիստ դէշի գնաց. վասն զի
պէտք էր որ իժիր ինքը պատրաստ կենայ
տավունին դէմ դնելու համար որ կրնար
վրան վազել. մէկալ դիհացէնալ չէր կըր-
նար իր երկիրները պաշտպանելու թշնա-
միներուն ձեռքէն: Տիւ բօնդին զօրքը
հուլսէն զօրապետին վրայ վազեց, որ Փե-
տերիքոս սաքսոնիայի մէջ թողուցերէր,
զարկաւ հալածեց անիկայ, վիրդըէմպէրկ
իշխանէնալ օգնութին առնելով դուռկաւ
քաղաքը ները ձգեց, որ սեպտ. 27 անձնա-
տուր եղավ, մէջի զօրքնալ 1500 հոգի գե-
րի եղան. սաանկալ վիրդըէմպէրկ քաղաքը
ու լըբսիա առնըրվեցան. հուլսէն զօրապետը
մակտէմպուրկին դին քաշվեցաւ, պէռլին
երթալու ճամփան բաց թողաց կայսերական-
նաց առջին:

Շվէտը բօմէրանիայի մէջ մտած շարու-
նակ տուրք կառնէր: Պոզլէպէն մոսկովին
զօրապետնալ պէռլին եկաւ մտաւ, տուրք
կըպահանջէր, որուն յորդորող եղավ մօտ
դալամպէրդ մառքեզը՝ Փրանսային պաշտօ-
նակալը՝ որ մոսկովին զօրացը հետ կերթար:
Պէռլինին մէջէն փախէր գացերէին թէ

Թագաւորական մարդիկ, և Թէ ազնուականք ու հարուստ վաճառականք, մէջի եղող զօրքնալ որ քիչվոր էին՝ դուռը չիբացին մոսկովներուն, վասն զի կըսպասէին քանի մը օրէն ետև օգնութի գալու իրենց։ Եւ իրաւ քանի մը օրէն եկաւ իրենց օգնութի հէնրիքոս վիրդըէմպէրկին իշխանը 5 հազար զօրքով, բայց երբոր լաւչի զօրապետնալ մոսկովներուն օգնութի եկավ 14 հազար նեմցէ զօրքով, ան ատենը ամմէն պրուշին զօրքը գիշերանց ելան փախան ըւ-
բանտավ։

Բայց ինչպէս ուրիշ դաշնակցեալ տէրութեցը մէջ՝ նոյնպէս իրենց զօրացը մէջ անպակաս էր տարաձայնութիը. մոսկովները չէին ուզէր որ՝ նեմցէին զօրքը պէռլին քաղաքը մտնան, որպէս զի իրենք միայն առնեն ան տուրքը՝ որ պէռլինցոց վրայ ձըգեր էին մէկ միլիոն ու 600 հազար ռուպլի, նեմցէնէրնալ անկէց բաժին չունենան։ Լաչին նեմցէին զօրապետը մտիկ չընելով մոսկովներուն, բռնադատելով դրանը մէկէն պէռլին մտաւ, իր բաժիննալ ուզեց, երկու ազգին զօրացնալ արգելեց որ չիթալլեն քաղաքը. աս բանիս վրայ պէռլինցիք շնորհակալ ըլլալով, իրեն յատուկ պարգև տըվին 10 հազար ռուպլի. բայց լաւչին չառավ ըսելով. „Քաղաքը չիթալ-
„լելու համար՝ շնորհակալութիը կայսրուհ-
„ւոյն պարտրկան էք ընելու, որ ապսպրեր-
„էր. իսկ ինծի համար հերիք է ան փառքը՝
„որ ունիմ հրամայելով Ֆետերիքոս Թա-

„ գաւառին արքայանիստ քաղաքին մէջը, և
„ ազատելով Նեմցէի զօրքը գերութենէ որ
„ հոս կըգտնըվէին ":

Բայց բոլորովին անվնաս Թողուլ Պէռլինը չեղաւ, վասն զի խալմուխները երկու դարպաս (սէրայ) Թալլեցին, ու ինչ արձաններ կային՝ որ Բօլինեաք անուն քարտինալէն ծախու առնըված էին, ամէննալ կոտորտելով ջարդ ու բուրդ ըրին, պարութի մընալ մահսէն բըռընկցուցին, անով քովի հիւանդանոցնալ փլուցին։ Բայց որ՝ աս միւսները սաքսոնիացի հազարապետները ընել տըվին, որովհետև պրուշներնալ ասանկ ըրերէին սաքսոնիայի կայսըրնտրին գեղին դարպասները։ Նեմցէները մոսկովները երեք օր պէռլինի մէջ, 20 օրալ պրանտեմպուրկ գաւառին մէջ կենալէն ետև՝ հօկտեմ. 12 ելան գացին ձմեռելու. վասն զի լսեցին որ՝ պրուշին Թագաւորը պէռլինի վրայ կուգար ազատելու։

Նեմցէն ու պրուշը Թօրկաույէն քովը կըծեծկըվին.

1760։

Հոկտեմբ. Ետքերը երկու դիհացի զօրքնալ՝ տաւլունին զօրքը ու Ֆետերիքոսինը շատ ճամփայ ընելէն ետև՝ անձրևներու մէջէն եկան սաքսոնիա նստան, իրենց առած երկիրներու մէջ, իսկ լավտօն շլեզիա նըստաւ։ Պրուշին Թագաւորը Ֆետերիքոս ո-

րոշեց որ՝ սաքսօնիան նորէն առնէ, ելավ իր ամմէն զօրքով դօրկաուին դէմ գնաց. Ճամփան մանտրը մունտրը ծեծկռվըլներ ընելով՝ միշտ տավունին քովէն երթալով՝ տիւ բօնդին դուքսը (պէյը) եւ քաշվեցաւ. իսկ Ֆետերիքոս լիբսիան առավ, նոյեմբ. 2 կանչեց իր զօրապետները ըսաւ որ, ալ յոգներեմ ասանկ երկան ծեծկռվելէն, կըմտածեմ որ վաղը ամմէն բանակով զարնըրվելով վերջացընեմ աս տանջանքը: Ասանկով նոյեմ. 3 շատ մեծ կռիւ եղավ կէս օրէն ինչվան իրիկուն տավունին հետ, որ էլպա գետը անցերէր. Ֆետերիքոս իր ամմէն վարպետութիւնը բանեցուց, բայց մէկ բան մը չիվաստըկեցաւ, ինքը կուրծքին վրայ խոցվեցաւ թեպէտ թեթեւ, իսկ նեմցէներուն մեծ վնաս ան եղավ որ՝ տավունին ոտքը ծանր խոցվեցաւ ան ատենը՝ երբոր խիստ նեղը խօթերէր զպրուսը: Իրկուքին զինուորներնալ յոգնած ըլլալով՝ Ճէպխանէն պակսած՝ կըմտածէին ծեծը դադրեցընելու, մէյմնալ նայիս որ՝ մարդ եկավ պատմեց Ֆետերիքոսին թէ "Ցիէթէն անունով իր զօրապետը՝ շիլտա ու սիպլից լեռները ձեռք ձգելով, կըպատրաստըվէր նեմցէին բանակը բոլորովին Ճղակըտոր ընելու:

Ֆետերիքոս թէպէտ յոգնած ծերացած էր, բայց իր արիւնը պատերազմասէր արիւն ըլլալով, լռածին պէս եռալ սկսաւ, շուտ մը հոն վազեց, անխկայ զօրացընելով նորէն ծեծկռվիլ սկսաւ. տավունը խոցված ըլլա-

լով իր վրանին մէջը նստերէր բժշկըվելու , իր տեղը ( )տօնէլլ զօրապետը կըհրամմէր , տեսնալով որ անհնարին էր ան տեղէն պըրուշնէրը դուրս հանելու , էլլա գետը անցաւ իր զօրքով , ու տրէզտա քաղքին քովը եկաւ՝ որ նեմցեին ձեռքն էր ։

Ա՛ս ծեծիս մէջ պրուշը Գորկաւ առաւ . 13 հազար հոգի կորսընցուց , որոնցմէ 5 հազարը գերի ընկան . 40 դըրօշակ ( պայրախ ) . 8 Թօփ . Նեմցէն կորմնցուց 15 հազար հոգի . 28 Թօփ . վասն զի ձի չիկար որ տանէին ։ Ֆետերիքոս շուտ մը գնաց տրէզտան առնելու , ուր Թէ որ տասը ժամ առաջ գար՝ կարելի է որ կարենար առնել , բայց իր մօտիկնալուն ատենը՝ տաւուն զօրապետը որ զինքը պատգարակով ( Թէխկէրէով ) աս դիս ան դին տանիլ կուտար , աղէկ մը զօրացընելով ապահովցուցերէր ան քաղաքը՝ որ էր երրորդ անգամ զօրացընելը ։

Ա՛ս ծեծը վերջինը եղաւ որուն Ֆետերիքոս անձամբ հրամայօղ ըլլայ , ասկէց ետքը մէկ պատերազմի մը մէջ անձամբ չիմըտաւ ինչվան իր մահը . վասն զի ինչպէս ինքնալ կըգրէ իր մէկ բարեկամի մը՝ զզուած էր իր քաշած նեղութիւներէն՝ որ շան պէս կըքաշեմ կըսէր , և մէկ օգուտ մը չեմ տեսնար ։

Ա՛ս ատեններսաւ պրուշին վէռնէր զօրապետը հասաւ ազատեց քօլպէրկա բերդը , որ պալթիկ ծովուն վրայ ըլլալով մոսկովները պաշարերէին . ասանկաւ պրուշը փախուց

շվէտին զօրքը ինչպէս ըողրգալուստտա, պր֊րուշին բանակներ (օուտում) լիբախայի գաղ֊տին մէջը նստաւ ձմեռը։

Փրանսուզը հաննօվէրցիները նեղորէն, ըմէրը հանէ մը փնդ հասնէ պրուսիյին.

1760։

Լոդուէ մառէշալը դալէն ետև՝ որ միա֊
ցաւ պռօկլիօյին հետ՝ Փրանսզներուն զօր֊
քը ամմէն հասսիա առին. աս պռօկլիօ զա֊
րապետը յունիսի մէջ յանկարծ ծեծկըր֊
վիլ սկսաւ. իսկ Փէրտինանտոս պրունսվի֊
քին իշխանը ետ քաշվեցաւ ծեծկըրվելէն,
պռօկլիօն վազեց յուլիսի 10 մինտէնը ու
քասսէլը առաւ. քօրպախ տեղը մէկ տեղ
ծեծկըրվելով Փէրտինանտոսին զօրքը կոտ֊
րեց. 3 հազար հոգիի չափ մըը մեռան, մըը
կոտըրվեցան. 1100 հոգի գերի ինկան. 18
Թօփ կորսնցուցին։ Հոկտ. 16. ուրիշ
Փրանսզ զօրապետ մը քաստրի մառքեզ
ըսված՝ զարկաւ վէրոյիշեալ պրունսվիք իշ֊
խանը Փէրտինանտոս, առավ քլէվէս ու
ռինպէռկ. Փէրտինանտոս փախաւ քասսէ֊
լին ու տիմմէլ գետին դին հաննօվէրին մէ֊
ջէն դուրս հանելու համար Փրանսզները,
վարի ռէնօ գնաց, ու յանկարծ վէսէլ քաղ֊
քին վրայ վազեց։ Փրանսզները 10 հազար
զօրքով գիշեր ցորեկ քալելով եկան հոկ֊
տեմ. 15 մէկմէկու հետ զարնըրվեցան. 3

հազար հոգի երկու դիայցէն ընկան. աս
եղաւ վերջի երեւելի զարնըվիլը:

Շվէտը աս տարի քիչ մը աւելի ծեծկըվե-ցաւ. անքլամ քաղքին քովը զարկաւ պրու-չը, մտաւ քաղքին մէջը, գերի ըրաւ պրու-շին զօրագլուխը մանդէվֆել. ասկէց ետքը առաւ տէմմին, բռէզլօվ, որ ռօսդօքին դքսութեն մէջն է:

1 [illegible] եւ ռուսը [illegible] հետ. շվէտացոց [illegible] պրուսիային [illegible]. պրուսը հաշտութիւն ընել կուզէ.

1761:

Պրուսը ձմրուվանը մէջ ինչ ըստակ ու մարդ մնացերէր սաքսօնիայի երկիրը՝ ամմէննալ քաշեց առաւ ծեծի պատրաստըվելու համար, իսկ ան գեղերը որ ալ բան մը չունէին տալու, կըրակը տըվաւ երեց. սաքսօնիան ասանկ հատցընելէն ետեւ՝ միքլէնպուրկ վազեց, հոն ալ սկսաւ մարդ ու ըստակ ժողվել. անանկ բռնաւորութիւն ըրաւ իրենց ըստակը ու ըռզակը տալու համար որ՝ հազարաւոր մարդ ժամերուն մէջը ժողվել խօթել կուտար, հոն ասանկ անօթի ծարաւ շատ օր կըթողուր, դուրսէն մէկի մը թող չէր իտար բան տանելու. անանկով ժամերը մէյ մէկ բանտ դարձուց, մէջինները շունչ չըկրնալով առնել՝ հոն կըխողդըվէին. թող տուր ուրիշ ըրած անգթութիւնին որ պրուշները կընէին: Պետե-

րիքոս երբոր ծեծի ատենը եկավ, իր եղբա-
րը Հենրիքոս սաքսոնիայի մէջ թողուց, որ
կայսերական զօրացը ու տավուն մառեշա-
լին դէմ դնէ. իսկ ինքը Փետերիքոս իր
զօրքով շվեցիա գնաց, որ լավտօնին չիթո-
ղու մասկովլին հետ միանալ:

Լավտօն զօրապետը ձմռվանը մէջ ամմէն
շվեցիայէն տուրք առնելու հետ էր, կլաց
կոմսութէնալ ապրուստ առնելու հետ էր
իր զօրացը համար. վէննայէն անանկ ա-
պրապրված էր իրեն՝ որ գլխաւոր բերդերը
պաշարէ առնէ, օգնական ունենալով մաս-
կովները, որ իր ետեւէն պիտոր գային. ա-
նոնց զօրագլուխ էր պուդդուրլին կոմսը՝
ասիկայ եղավ վեցերորդ զօրագլուխը որ
մասկովները փոխեցին: Երբոր ամռվան
դուռը բացվեցաւ՝ լավտօն գնաց մասկովնե-
րուն հետ միանալու. Փետերիքոսնալ ամ-
մէնէն աւելի լավտօնէն վախնալով վազե-
լով եկավ շվէյտնից շվեցիային զօրաւոր
բերդին տակը նստաւ որ պաշտպանէ, ինչ-
պէս որ իրաւ լավտօնին միտքնալ ան բեր-
դը առնել էր: Երկուքնալ շատ-ընկան
իրարու ետեւէ. վարպետ շարժմունքներով
պատերազմական խորամանկութենով հը-
նարքով պտոյտներ ընելով մէկըզմէկ կը-
նայէին որ կապեն, իրարու յաղթեն. լավ-
տօնը կընայեր որ՝ անկէց հեռըցընէ Փե-
տերիքոսը, երթայ միանայ մասկովներուն
հետ՝ ինչպէս որ իրեն ապսպրված էր.
Փետերիքոսը կընայեր որ՝ քանցէռատօփ ըռ-
ված տեղը համբարնէր կայէն՝ իրեն առնէ.

վրան զի անոնք առաջին պէս՝ ան ատենը Մոսկովցիները անօթի մնալով իրենք իրենցմէ կըհեռանային, Լավտոնին մտքի դըրածն ալ պարապ կելլար:

Լավտոնը Փետերիքոսին միտքը իմանալով օգոստոսի 20. առտուընոք վազելով եկաւ Մոսկովլին հետ միացաւ, անանկով 80 հազարէն աւելի զօրք եղան. բայց Մոսկովցիները մովընին դըրերէին պըտուղը շատ չիսխմեր: Սեպտ. 1. երկու զօրագլուխը մէկ տեղ դաշտաւկ խորհուրդ մը ըրին որ՝ ա՛ռ տեղ որ գտնուան պըտուղը՝ զարնեն, իրենք դիպացէն վրան վազելով, թէ ինչպէս պիտոր ընենէ՝ գիր անցուցին ու իրենց երեւելի հազարապետներու խրկեցին, որ ան օրինակին պէս շարժին: Բայց հետեւեալ գիշերը Պուդդուրլին Մոսկովլին զօրապետը իր միտքը փոխեց, իրեն տակի եղօղներուն ուրիշ հրաման մը խրկեց. ինքը Մոսկովը առջինը պիտոր ըլլար ծեծը սկսելու, ծեծ սկսելուն տեղը՝ քանի մը հավան Թօփու ձգեց պըռուշին բանակին (ուստուին) վրայ. Լավտոն շատ բարկացաւ ատանկ փոխվելուն վրայ. մարդ խրկեց վէննա ու կայսեր դեսպանին (էլչին) որ Պետրօպուրկ կընստէր, անկեց պաղուլթի ընկաւ երկուքին մէջը: Պուդդուրլին մէկ պատճառ մը չիբերելով, արդարելով մը օտեր գետը նորէն անցաւ գնաց. Միայն Չերնիչէֆ կոմսը չուզեց անոր հետեւիլ. նեմցէին հետ միացաւ իր 16 հազար զօրքով:

Իսկ Փետերիքոս պըռուշին թագաւորը իր

զօրքը սփռեց պրանտէմպուրկ գաւառին մէջը․ վասն զի ուրիշ երկու գունդ մոսկովի զօրաց կուգային դէպ 'ի պէռլին․ ան ատենը լավտօն միջոց գտաւ շվէյտնից բերդին վրայ վազելու։ Հազարներավ սանդուխք (նէրտովկէն) շինել տուաւ, սեպտ․ 30 առտուանց արտորնօք քալցընելով իր զօրքը շվէյտնիցին պատին մօտիկ եկաւ, հոն հանգիստ առաւ․ չորս դին մարդ ուղեց հեռուանց բոլորտիքը կենալու, որ մարդ չիթողուն ոչ ներսէն դուրս գալու, և ոչ դրսէն ներս մտնալու, որպէս զի ոչ ներսինները իմանան, և ոչ Ֆետերիքոս։ Ամէն զօրքը նեմցէրնը ու մոսկովլըները չորս բաժնեց՝ որովհետև չորս բերդ էին որոնց հետ պիտոր ձեձկըրվէր․ կէս գիշերը ժամ մը անցածին պէս սանդուխքները դըրին սպըտան վեր ելլալ․ ներսէն թօփերը սկսան վըրանին պարպել թափել, բայց ասոնք բանի տեղ չիսեպելով բազմութե անհնարին արագութե ամէնն դիւացէն վեր ելան, թուրերը ձեռվընին բռնած բռնադատեցին պահապան զօրքերը անձնատուր ըլլալու, անչափ չուտ շարժեցան որ՝ զատդրօվ մէջը զօրապետը առնին չունեցաւ դաշնադրութե մը ընելու։ Առնալէն ետև երկու զօրապետները թող չտուվին որ՝ զինուորները քաղաքը թալլեն, այլ 200 հազար ֆիօրին առին քաղքէն ու իր գաւառէն, ամէնն առաձնին բաժնեցին զինուորներուն․ 200 թօփ գտան ու շատ հարստութիւն ամէնն բանի․ գերի ընկած զինուորները 5 հազարը անցան։

Աս տուռմը աշխարհ զարմացուց. կայսրուհին Մարիամ Թերեզինան՝ խոշոր քարերով զարդարված պատկեր խրկեց լաւտօնին, ու մէկ երկիր մը պարգեւեց պօէմիայի Չասլաւ շրջանակին մէջը՝ որ 40 հազար ֆիօրին կաժէր։ Մոսկովի կայսրուհին ալ ոսկի թուր մը խրկեց քարերով զարդարված. վեց ալ տանիմառքայի ձի. խոստացաւ ալ որ՝ թէ որ իր ծառայութեը մէջ անցնի, իրեն ֆէլտ մառէշալութե. պատիւը տայ, բայց լաւտօնը հրաժարեցաւ։

Տաւունը աս տարի ուրիշ բան չըրաւ որ՝ Հէնրիքոս իշխանին դիմացը կեցաւ, որպէս զի պօէմիա չերթայ չինեղէ. Երբոր շվէյտնից բերդին առնըվիլը իմացվեցաւ իր բանակին մէջը, լաւտօնին նախանձօղներէն մէկ երեւելի մը չիկրնալով իր նախանձը գոցել, ամէնուն առջին ըսաւ։ Ասանկ կերպ բերդ առնելը՝ խրվաթի կերպ բաներ են. (իբր թէ համալձա, խապա թարզ)։ Տօն լօվէնտօդէյլ իշխանն ալ չիգիմանալով պատասխանեց անոր։ Ա՜ծ տար որ՝ ամէն մէկ բանակի մէջ իրեք հոգի գտնըվէր ասանկ խրվաթներէն։ Պրուշին թագաւորը լսելով շատ զարմացաւ աս կերպ առնըվելուն վրայ ու ըսաւ. Թէ որ լաւտօնը շվէյտնից առնելէն ետեւ անմիջապէս պրէզլավին վրայ վազէր, ան մայր քաղաքը կառնէր մէջը եղած անչափ պաշարներովը (զահըրէներովը), անով կըլմնցընէր ամէն պատերազմը։ Ու իրաւ որ ասանկ էր լաւտօնին միտքը, բայց լաւտօնը որչափ որ յորդորեց

ցեռնիջեֆը մոսկովին զօրապետը՝ թէ մէկ տեղ միանալով երթանք, վերջի կոտորածը տանք պրուշին, ցեռնիջեֆը ամենևին չիշարժեցաւ. երբեմն պատճառ բերելով իր զինուորներուն հիվընդութիւնը ու յոգնութիւնը, երբեմնալ ըսելով թէ պէտք էր աս բանիս վրայ բեղրօպուրկ գրել, անկէց հրաման սպասել, անանկով պարապ կեցան ։

Ռուսաց ասանկ պարապ կենալը պրուշին խիստ շահաւոր եղաւ, բայց նեմցեկին վնասակար. վասն զի պրուշին բանը ամենէն դիւացէն դէշ կացութեան մէջ էր. վերոյիշեալ ճախորդութեան զատ՝ ռուսմանցով մոսկովին զօրապետնալ քօլպերկ բերդը չորս ամիս պաշարելէն ետև նոյեմբ. 15. առերեր պրուշէն, որ պալդիկ ծովուն բալլըքն է. յանով մոսկովները շվետներուն հետ միանալով, ամենէն բօմերանիայի դքսութիւնը իրենց առնելով, հոն նստերէին ձմերելու. թէ որ ատոնք պարապ չիկենային՝ եաքի դէշը պիտոր ըլլար պրուշին ։ Ինքը Ֆետերիքոս ասանկ կըպատմէ իրեն նեղութիւնը. „ Մ-
„ մենևին արգելք մը չիկար մոսկովներուն,
„ շվետներուն գարնան ատեն քուստըրինը
„ պաշարելու, պէտալին մայր քաղաքնալ
„ առնելու ամենէն պրանտեպուրկ գաւա-
„ ռովը. վասն զի շէպերայէն մէջը 22 հա-
„ զար պրուշ միայն մնացերէին. հեռիքու
„ իշխանը անչափ զօրքալ չունէր, բօմերա-
„ նիայի մէջ մէկ քանի պրուշ միայն մնա-
„ ցերէին. գաւառներուն մեծ մասը կայմ

« կորսըւած էին և կամ աւրըշտըւած . չկայ-
» տէր՝ որ գաւառէն զինուոր ժողվեմ, ուր
» տեղաց ձի գտնամ, պաշար ու ձէպխանէ
» գտնամ . վերջապէս չկայ տէր ինչպէս շա-
» րունակեմ պատերազմը » :

Ասանկ ալ մէկալ տէրութիւնները յոգնած էին այսչափ երկան ծեծկըռվելէն, չէին կըր-նար ըստակ գտնալ՝ վասն զի ժողովուրդը ալ չէր կրնար տուրք տալու, արուեստնե-րը խափանված ըլլալով, վաճառականու-թիւր գոցված, երկիրները պարապ կեցած, բանօղ չիգտնըվելուն համար : Հաննօվե-րին դլինալ ծեծկըռվեցան երկու Ֆրանսզ զօրապետները սուպիս ու պռօկլիօն, զա-նազան քաղքըները առին, բայց մէկ երևե-լի օգուտ մը չըլլալով ձանձրացած էին : Պրուշը իր ասանկ դէշ կացութիւնը տեսնա-լով առջինը եղավ հաշտութիւնը ուզելու, տանիմառքան մէջ ձգեց, անցած տարվան խօսք տըրվածը նորոգեց, թէ հաշտութեան նախապատրաստութիւն համար պրուշը նեմ-ցէին տայ շըլէզիային մեծ մասը՝ կըլաց կոմ-սութիւն հետ մէկ տեղ . երկու կայսրուհիք նեմցէին ու մոսկովին չընդունեցան, ըստ որում պրուշը չէր յանձն առնէր սաքսօ-նիային տըրված վնասը հատուցանելու : Նեմցէին վէզիրը քաունից՝ կուզէր որ պրու-շին բանծը ընդունին, պատերազմը վերջա-ցընեն, բայց կայսրուհին մարիամ թերե-զինան աւելի արդարութիւն նայելով քան թէ կենցաղօգտութիւնը ( բօլիդիքան ), ա-ւելի կընայէր սաքսօնիային շահը՝ որ անչափ

բան քաշեց նեմցեւոց պատերազմին պատճա-ռավը՝ քան թէ իրեն յաղթուել շահը :

Պրուսիոյ դաշնադրութիւնը տաճկին հետ. Եղիսաբեթին Մոսկովի թագուհիին մահը. Երրորդ պետրոսին թախտը նստիլը, ու իրեն անկարգութիւնները.

1762 :

Պրուսիոյ Թագաւորը Ֆետերիքոս տեսնելով որ հաշտութիւնալ չեղաւ, պատրաստուեցաւ յուսահատաբար պատերազմիլ, թողլով զինքը բաղդին ձեռքը ինչպէս որ բերէ : Ստածեց յունվարի մէջ մէկ բարեկամական դաշնադրութիւն մը ըրավ օսմանցիներուն հետ (1), յուսալով որ՝ իրեն դին ըլլալով պատերազմելայ մաճառի սահմաներուն դիրացէն, անով նեմցեւոց զօրքը ան դին քաշել տայ . բայց օսմանցիք աւելի բարեկամ ըլլալով Ֆրանսզին՝ որուն խօքովը կըշարժէր, աս դաշնադրութիւնը միայն ստորագրելով լմնցուց առանց մէկ բանի մը մէջ խառնըւելու, որ օսմանցիէն խիստ հեռու բան էր .

Նորէն տարին ուզածին պէս չյաջողեցաւ, բոլորովին յուսահատեցաւ Ֆետերիքոս . կըտեսնար յայտնի որ՝ երկան չդիմանայ

---

(1) Այն ատենուան օսմանեան թագաւորը էր երրորդ սուլթան մուստաֆան, ինչպէս որ ետքը ունինք պատմելու .

պիտոր այնչափ թշնամիներու դէմ. Նոյն յաղթութիւնները որ ինքը կընէր, անոնք պիտոր զինքը կործանէին. վասն զի իր երկիրը ու սաքսոնիան ամմէն բանէն քեղըրթըլած հատած էին. չէին կրնար ասկէց ետքը տալ՝ ինչ որ հարկաւոր էին ասանկ սաստիկ ու երկան ծեծի համար. քովի երկիրներուն կողոպուտները աւարները չէին օգտէր. իր թշնամիները օր մը զինքը բռնի (զօռաքի) հաշտութեան պիտոր բերէին յոգնեցընելով: Բայց աղէկ կըսէ առակը, Ժամանակ, Կանոն, Բոպոն. ու երեք Աչ նըբանան ամէն նշղոն: Ան բանն որ՝ ոչ խելքը, ոչ ճարպիկութիւնը կրնայ լմնցնել, կըլըմնցընէ ժամանակը. աշխարքիս ամմէն բանի մէջ մանաւանդ պատերազմի մէջ՝ շատ հեղ բաղդն է որ կըկառավարէ. աս բաղդը բերելը՝ ժամանակն է որ իր փոփոխութ՟ը բերել կուտայ:

Երբոր ասանկ անճար մնացեր էր Փետերիքոս, ամմէն պարագայներ գիտես թէ խօսք դրած իրեն դէմ կըներհակէին, մէյմնալ նայիս որ՝ տարուայս սկիզբը չիկարծած մէկ դիպուած մը չէ. թէ պրուշին բանը միայն՝ հապա նաև ամմէն եւրոպային կացութ՟իը փոխեց. ինչ որ կըմոռածէին տէրութ՟իները ընելու՝ ամմէննալ պարապ հանել տըվավ: Աս փոփոխութիւնը ընել տըվօղը եղավ անկարծելի մահը բէդդրօմիա եղիսաբեթի մոսկովի թագուհիին, որ մեռաւ 1762. յունվ. 5. 51 տարվան. 20 տարի թագաւորելէն ետև: Երբոր իր հիւանդութիւը

ծանրըցաւ. 14 հազարի չափ թանտարկեալ-ներ խալըցընել հրամնեց, որ արգելված ապրանք փախցընելու համար թանտը դըր-ված էին. 25 հազարաւ պարտըկաններ թանտէն ազատեց, ան պարտըկանները որ 500 ռուպլիէն (1) վար պարտք ունենալով՝ թանտը մտած էին, իր ըստըկէն վճարելով ասոնց պարտքը։ Աղի վրայի տուրքն ալ ապսպըրեց որ քիչցընեն. ասկէց եղաւ որ՝ աղի վրայէն եղած եկամուտը ամմէն մօս-կովստանի մէջ, մէկ միլիոն ու կէս ռուպլիի չափ տարին քիչցաւ։ Աս թագուհիս իր կենդանութեան ատենն ալ մէկ գթութիւն մը ըրաւ որ՝ մոսկովի երկրին նայելով մեծ բան ընել էր. այսինքն ուխտ ըրած ունէր՝ որ իր թագաւորութեան ատենը մարդ մը չիմեռցընէ, և գործքովալ անանկ ըրաւ, անոր համար Գթած անուն ունեցաւ։

Եղիսաբեթին տեղը նստաւ Հօլշտէյն Կօռ-դօրբ դուքսը, ըստ որում հաստատվերէր որ՝ եղիսաբեթին յաջորդը ըլլայ, ինչպէս որ վերը պատմեցինք։ Ասիկայ շվէտի վրայ թագաւոր պիտոր ըլլար, բայց մեռնող ե-ղիսաբեթ թագուհին իր մօրքոյրը ըլլալով, ջանք ըրաւ որ մոսկովի թագաւոր եղաւ։ Շատ հեղ ծորդռուս ատենէն ճախորդութեանը իր ա-տէնն ծօթէնէ ուզողաններուն ձեռուըը եղաւ։ Ասիկայ մոսկովին թախտը նստաւ Երրորդ

(1) Մէկ ռուպլի արծաթ ըստակը մոսկովին՝ հինգ ղուռուշ կընէ։

Պետրոս անուանելով. նստածին պէս դեռ թաղված չըլլալով Եղիսաբեթ Թագուհիին մեռելը՝ համարձակ յայտնի ըրաւ իր մո-լեռան սէրը պրուշի Թագաւորին վրայ Ֆե-տերիքոսի. շուտ մը զինքը ասպետ գրել տըվաւ պրուշին դրած կարգին՝ որ կըսվէր Սև արծուի կարգ. և իրեն հազարապետնե-րէն (ուֆֆիցիալներէն) մէկը գրել տը-վաւ զինքը. իրեն զգեստը հագնելով, և ինչ կերպ հագուստ որ կըբանեցընէր պրու-շին Թագաւորը. աս բանս շատ դէմ եկաւ մոսկով ազգին: Նեմցէին՝ ֆրանսըզին դես-պանները՝ իրեն եկան բարով նստիս ըսելու իրենց տէրութեանց դիացէն, պետրոս ներս չիմտուց չընդունեց պրուշին թշնամի ըլլա-նուն համար, ասով շատ բամբասվեցաւ ամմէնէն: Ռուզի պաշտօնատէրերը ձգեց, նորէն դըրաւ անոնց տեղը. քշված մեծեր կային Լէստօք, ու Մունիք մառէշալ, իր տղաներ մէկ տեղ, անոնք ետ կանչեց. և որպէս զի մեծերուն սիրտը իրեն քաշէ, մեծ մեծ արտօնութիւններ տըվաւ ա-նոնց:

Ռուսանց մէկ խմաց մը տալու միաբանեալ տէրութեանցը՝ մարտաղուլ (միւթարէքէ) ըրաւ պրուշին հետ մարտի 10, ըսդուղ-կաւտ տեղը. շուտմընալ դեսպան (էլչի) խրկեց պէռլին հաշտութեան համար խօսա-թելու. ասկէց շվէտնալ մտածեց, թէ որ ինքնալ պրուշին հետ չիհաշտըվի, կընար իրեն դէմ մոսկովը թշնամացընել, ինքնալ արտօրաց, ապրիլի 16 ուխպուրց տեղը մար-

տաղրուլ ըրավ. Ետքը մայիսի 5. մոսկովլին հետ մէկ տեղ երկուքնալ հաշտութն ըրին. Եւ տալով Փետերբուրգոսի ամմէն առնըված տեղերը, գաւառները, նաեւ միքլեմպուրկ դքսութիը, ու սվէցիան, առանց մէկ թեթութիւն մը ընելու։ Աչքափ տեղվանք ասանկ շուտ մը պրուշին ձեռքը եւ տալը տեսնալով իր մոսկով զօրքը, կըդժգոհային ըսելով. աս տեղվանքներս առնելու՝ թէ որ խաղ մը խաղալու համար էր, շատ էր աաչափ յոգնեցնելնիս. թէ որ իրաւ պատերազմելու համար էր, խիստ քիչ էր ըրածնիս։ Ետքը մայիսի 12 շվէտը Անքլամ տեղը առանձին դաշնադրութն մը ձեռք դրավ. հաստատելով որ՝ ինչպէս են ամմէն բանը անանկ մնան։

Անկէց ետքը պետրոսը գիտնալով որ՝ դաշնակից տէրութիւնները Փրանսզն ու Նեմցէն չէին ուզէր պրուշին հետ հաշտըվիլ, ու նոնք ձգեց, զինքը դաշնակից ու պաշտպան հրատարակեց պրուշին. անոր համար ան զօրքը՝ որ պրուշը պիտոր կռուէին, դարձուց ան դաշնակցեալ տէրութեցը դէմ։ Աս բաներս կընէր առանց մէկ խորհուրդ մը հարցընելու իր խորհրդականացը հետ. և իբր թէ ասչափս հերիք չիսեպելով շուտ մը իր հայրենի ժառանգութիւննալ ձեռք ձգել ուզեց, որ էր աղէկ կըտորը ըսլեսվիկ դքսութեն, չինայելով որ 1732 տանիմառքային ձեռքը անցեր էր հանդիսաւոր դաշնադրութեամբ. անոր համար մոսկովլի զօրք խրկեց տանիմառքայի դէմ, որպէս

զի եա առնէ անոր ձեռքէն ։ Դանիմարքային Թագաւորնալ 60 հազար զօրք ոտք հանեց, անոնց զօրագլուխ դրաւ մը գերմանացի կոմսը անուանի, որ Ֆրանսայէն կանչեց · դաշնակից եղաւ նեմցեւին ու Ֆրանսզին հետ, անանկ եղաւ մոսկովին դէմ երթալու ։

Պետրոսին ըրած բարեկարգութիւնները, ու անկարգութիւնները ·

1762 ։

Պետրոս մէկ քանի բարեկարգութիւնմընալ սկսաւ ընել իր երկրին մէջը · ոչնչացուց գաղտուկ խորհուրդը կամ քննութեան դատաստանը, մեծերուն շատ արտօնութիւնները շնորհները վերցուց, որովհետեւ անոնք արտօնութիւններով շատ կընեղէին, իրենցմէ վար եղողներուն բռնութիւն կընէին · մէկ ճամփայմընալ ցըցուց որ՝ դատաստաններուն մէջը ինչ անկարգութիւներ որ կըլլային՝ վերնան ։ Ըս մէկ քանի աղէկ բաներն՝ անոնք որ պակասամիտ դըրերէին զինքը, անանկ հաւատացին որ՝ անցած ատենները 'ի հարկէ պատճառ ունէր ասիկայ՝ անոր պատճառին համար յատուկ դիտմամբ ինքիր զինքը պակասամիտ կըցըցընէր, բայց հետեւեալ գործքերնալ տեսնալով իմացան ամէնքննալ որ՝ տկարամիտ ու անխոհեմ մէկըմըներ ։ Սատի սկսաւ անոր բաները փոխել, անոր բաները խօթել, որ ամ-

մէն Մոսկով ազգին բնաւորութիւնը ու սովո-
րութիւնը դէմ էին ։

Ամէն եկեղեցականները իրեն դէմ գրգռուեց ապստամբելով որ՝ վանքերուն ու եպիսկոպոսարաններուն ամէն ապրանքները ծախուին, արքունիքը (միրին) առնուին, անոնց տեղը մէկ չափաւոր թոշակ ( եօլէֆէ ) տրուի իրենց, աս ընելով շատ եպիսկոպոսներ ու քահանայներ իրենց եկամուտին մեծ մասը կորսնցուցին ։ Արգելեց որ ոչ կրօնաւոր՝ և ոչ մարապետ՝ 30 տարուընէ առաջ չուխտեն ։ Իրեն ծնած հաւատքը լոթրանի ըլլալով աւելի կուզէր որ շվէտի վրայ թագաւոր ըլլայ, ( որ նոյն հաւատքով էին, և ինքնալ անոնց վրայ թագաւոր ընտրուէրէր, ) քան թէ Մոսկովի թագաւոր. Մոսկովի դաւանանքը ակամայ ( զոռաքի ) ընդունէրէր որպէս զի Մոսկովի թագաւոր ըլլայ. անոր համար թագաւոր ըլլալէն ետև շատ մը սկսաւ ցըցընել իր յօժարութիւնը, քամահրել ան ամէն ծէսերը՝ որ հազար տարիէն վեր Մոսկովները կը պահէին. Նովօկօրօտին արքեպիսկոպոսը՝ որ ամէն Մոսկովի տէրութեան եպիսկոպոսապետ է՝ կանչեց ապսպրեց անոր որ՝ ժամերուն մէջը միայն ք͞նի ու Տր ա͞ծածնայ պատկերը դրուի, ուրիշ պատկերները չիդրուին, ինչպէս որ սովորութի էր լոթրաններու. Մոսկովի քահանայներնալ իրենց երկան մօրուքնին թող կտրեն, ու լոթրաններու պէս հագնին. եպիսկոպոսը որովհետև դէմ կեցաւ աս բաներուս, անոր համար քշեց ։

Իր դարպասին ( սէրային ) քովը մէկ լոթ-րանի ժամ մը շինեց, ասանկալ օրանիէմ-պաում բերդին մէջը մէկ մատուռ մը շի-նեց. շինութեն նաւակատիք ընելուն օրը՝ ինքնալ հոն ներկայ գտնըվեցաւ. ինքիր ձեռքովը երգելու թղթեր բաժնեց իր նեմ-ցէ զինուորներուն՝ որ իր ըստըրկովը հոն կըպահէր, որպէս զի հանդիսին ատենը երգեն։ Աս բանս խիստ խոցեց ամմէն մոս-կովի զօրաց սիրտը, տեսնալով որ նեմցէ զինուորները ու հօլանդէյնէն բերել տըված իր պահապան զօրքերը ( որ նոյնպէս նեմ-ցէքն են եկած ), կընախադասէր քան բուն մոսկովին զօրքը. աւելի եղաւ իրենց բար-կութիւնը՝ երբոր ուզեց պրուշին կրթու-թիւնը ( թալիմը ) ու հագուստը մտցընել մոսկովին մէջը։ Աս հերիք չէ՝ սաստիկ հրա-ման ըրկեց պահապան զօրացը՝ որ բօմէ-ռանիա ելլան երթան, ուր տեղ որ՝ բանակ կըժողվըվէր տանիմարքային դէմ երթա-լու. իսկ աս մոսկով զօրքը եղիսաբեթ թա-գուհիէն արտոնութիւն շնորհ առած էին միշտ բէդըրօպուրկին մէջ նստելու պահպա-նութի ընելու համար։ Ասանկալ մոսկովի մեծերուն սիրտը խոցեց, երբոր իր հօրեղ-բայրը գէորգ իշխանը ( որ նեմցէ էր ) ամ-մէն մոսկովստանի մեծ զօրագլուխ դրաւ։ Իսկ ան որ՝ ամմէն ժողովուրդը իրմէ պա-ղեցուց, ու զինքը ատելի ըրաւ ամմէնուն, եղաւ մէյմը իր ծաղր ընելը ամմէն մոսկո-վին սովորութիւնը՝ ամմէն վարմունքը. մէյմնալ բունաւորական հրամայել մը՝

պրուշէն օրինակ առնելով, որուն դէմ մարդ մը զինքը արդարացընել, կամ պատասխանել, և կամ ուշացընել, չըլլար պիտոր. մի որ զինքը արդարացընել ուզէր, շուտ մը զինուորներուն պէս նշանակը ծեծ կուտէր։ Նմանն կընէր Ա. Ֆետերիքոս պրուշիոյ թագաւորը, որուն ամէն ըրածներուն անչափ մոլութ. սիրահարեալ էր աս Ա. պետրոս մոսկովին թագաւորը՝ որ իր ամէն բանը կուզէր անոր նմանցընել, ու Իմ օրինակս, Իմ փէրս կըկանչէր զանիկայ։ Նա հերիք չէ, մէկ խոնարհութեամբ մը աղաչեց խնդրեց նոյն Ֆետերիքոսէ՝ որ իրեն զօրաց վրայ զինքը մէկ վարի զօրապետ մը գրէ, թուղթը իրեն խրկէ։ Նամակով պետրոսին թախտը նստիլը՝ Ֆետերիքոսին մեծ բաղդ մեծ յաջողութիւն եղաւ, որ իր յուսահատութենէն խալըսեցաւ, ոգի առաւ. ինչ որ չիկըցաւ ընել իր խելքը իր ճարպիկութիւը, ըրաւ ժամանակը։

Ֆետերիքոս բռնաւոր՝ բայց հասուն խոհեմ ըլլալով, երբոր իր ուզած զօրապետութեն թուղթը խրկեց պետրոսին՝ Ֆինչէսդէյն դեսպանին ձեռքովը՝ բարեկամաբար աղէկ խրատներ տըվավ իրեն։ „ Մէկ բանին
„ ետեւէն միյնար ըսաւ անչափ մոլութ̃
„ ( սէվտայով ), մի տաքցըներ անչափ
„ գլուխդ, որ եսքը գլխու պտուտ մը չի-
„ քաշես, քեզի վնաս մը չիբերես. վանքե-
„ րուն երկիրներուն մի դպչիր մառներ.
„ եկեղեցականաց հագուստները մի փոխեր,
„ թող տուր ինչպէս որ առաջ էին “ ։ Տա-

նիմառքային դէմ ծեծ չիբանալու համար շատ յորդորեց . տեսնալով որ մտիկ չըներ, խրատ տըւլավ որ . „ Կխտա սաստկուԹե „ մըսկըսիր . սպասէ որ՝ առաջ մօսքվիայի „ մէջ Թագաւոր պսակվիս . քեզի հետ գեղ „ տանիս դեսպանները՝ ու ան մեծերը՝ ո„ րոնց վրայ մէկ կասկած մը ունիս “ : Ամէն բանէն աւելի խրատ տըվավ որ՝ իր պսակվածին կամ ընկերոջը հետ աղէկ երԹայ : Բայց եկեր հասեր էր ան ատենը որ՝ երիտասարդները ( Ճահիլները ) կընային որ՝ իրենք խրատ տըվօղ ըլլան, հասունները ( քեամիլները ) իրենց խօսքին պաւկեցընեն, չէ Թէ իրենք հնազանդին ծերերուն խօսքին :

Կատարինէ Թագուհիին որպիսուԹիւնը ; ու իր երկրէն փախածները .

1762 :

Պետրոսին պսակված կնիկը առաջ կըսվէր սօֆիա անհալդ զերպեստեան, երբոր կարգըլվեցաւ՝ փոխեց իր անունը, ըսվեցաւ Կատարինէ ալէքսօմնա . Թէպէտ շատ կատարելուԹի ունէր, բայց իր էրիկը պետրոս սէր չունէր վրան, անոր տեղը ուրիշները կըսիրէր, գինովուԹէ մէջ կեյնար : Աս բանս մեծ նեղուԹիւն ու հոգ կըբերէր կատարինէին, և ուպէս զի իր նեղուԹիւը Թեթևցընէ՝ իրեն մեծ միխԹարուԹիւն կըգտնար զբաղելով աղէկ ուսմունքներ

սորվելու, մանաւանդ կոնդակագրութեան ու կենցաղակրթութեան (Տիբլօմադիքա, Բօլիդիքա), որոնց վրայ ինչ աղէկ հեղինակներ որ կան, անոնք ամէնմնալ անձանձրոյթ կըկարդար կըսորվէր, տեսնելով իր բնականը խելացի ըլլալով, կընայէր որ իր խելքը աւելի կատարելագործէ։ Բայց 'ի գեղեցկութ̃է ունէր նաև մէկ անուշ կերպ մը վարվելու. անով ամէնուն սիրելի կըլլար՝ նաև եղիսաբեթ թագուհիին, որ թէպէտ կասկածոտ էր, բայց կատարինէին վրայ միշտ մեծ վարկում ունեցաւ։

Պետրոս կըբռնադատէր եղիսաբեթ թագուհին՝ որ կատարինէն յանդիմանէ, քամահրէ. իսկ երբոր ինքը պետրոս բացարձակ թագաւոր եղաւ, ան ատենը խիստ քամահրելով սկսաւ վարվիլ կատարինէին հետ, ամէն օր առիթ կըփնտռէր որ իրեն սիրտը խոցէ, կսկծցընէ, ամէնուն առջին նախատէ։ Երբոր պրուշին թագաւորին անուան օրը եկաւ, պետրոս մեծ հարկինք մը ըրաւ իշխանաւորներուն, ան սեղանին վրայ ամէնուն առջին անանկ նախատելով մը պետրոս վրան յարձըկեցաւ, որ կատարինէն չկրդիմանալով սկսաւ ամուր ձանով լաց մը փրցընել, ու անանկ լալով սեղանէն դուրս ելաւ գնաց։ Պետրոսին պատճառը այչափ քամահրելու ամէնուն առջին ան էր որ՝ կուզէր զինքը կատարինէէն զատելու, անոր տեղը իրեն կին առնել՝ Թագուհի պսակել եղիսաբեթ վօրօնցօֆ մէյմը, իսկ կատարինէն մէկ վանքի մը

մէջ խօթել, իր զաւակնալ պօղոս մեծ դուքսը՝ զրկել յաջորդութենէ ու ժառանգութենէ։ Նոր համար կատարինէին վրայ ինչպէս անանկ գէշ ձայներ հանել տըլվալ դուքսը, որ թէև իրաւ ըլլային՝ պէտք էր իր պատիւը պահելու համար գոցել, բայց աս խելքը չընելով, միայն իր վրէժը ուզեց անկեց հանելու։ Զայն հանեց որ՝ կատարինէն դեռ թագուհի չեղած՝ սօլդիքօֆ սենեկապետին հետ՝ որ մէկ գեղեցիկ երիտասարդ մըներ, ծածուկ անպատշաճ սէր ունէր․ անոր համար վերոյիշեալ պօղոսը՝ կատարինէին զաւակը (1) հռչակեց որ՝ ապօրինաւոր զաւակ է, ժառանգ չկրնար ըլլալ իմ թագաւորութեանս։ Իր յոյսն ալ կտրած ըլլալով որ՝ ինքը ալ կատարինէէն զաւակ չկրնայ պիտոր ունենալ, միտքը դրաւ որ՝ ձգած թագաւոր կար յոհաննէս անունով (2) անիկայ կարգելով հօլշտէյնեան իշխանուհւոյն հետ Պէչ անունով (3), իրեն ժառանգ թագաւորութեան ան յոհաննէսը ընէ։ Եւ որպէս զի աս իրեն գէշ կարծիքը կատարինէին վրայ հաստատէ, համպուրկ քաղքէն կանչեց սօլդիքօֆը (4),

---

(1) Անիկայ ետքը մոսկովի թագաւոր եղաւ ու պօղոս ըսվելով։

(2) Անիկայ շլուսսէլպուրկ բերդը դրված էր պզտիկուց։

(3) Ան ատենը բերդօպուրկ էր, որ ետքը իր զաւակը կըտիրէր պետրոս։

(4) Սօլդիքօֆ տասվիրէք տարվընէ վեր դեսպան նստած էր համպուրկ։

շատ սէր պատիւ ցըցուց իրեն՝ որպէս զի
ստորագրել տայ մէկ թղթի մը՝ ուր կա-
տարինեին անհաւատարմութիւնը կը հաւ-
տատուէր, բայց սօլդիքօֆ ոչ խոստմամբ և
ոչ սպառնալեօք ասանկ բան դուրս չիհա-
նեց ։

Ասկեց ետքը պետրոս ծպտեալ (թէպտիլ)
գնաց, վերոյիշեալ յոհաննէսին հետ տես-
նըվեցաւ խօրաթեց. վրան մէկ խենթուէ-
նշան մը չիտեսաւ ինչպէս որ կը հռչակէին,
հրամմեց որ՝ աւելի աղէկ նայիս, ազատ
թողուն որ բերդին մէջը քալէ. ապսպը-
րեց որ՝ ան բերդին մէջը արտորնօք քարէ
տուն մը շինվի կրկնայարկ (երկու խաթ)
տաս տաս խցերով, ու մէկ պարտէզ մը չա-
փաւոր, դրսէն ցըցընելով որ՝ յոհաննէսը
հոն պիտոր դնէ, բայց յայտնի կերևցընէր
իր միտքը՝ որ երբոր զատվելու վճիռը հա-
նել տար, հոն պիտոր խօթէր կատարի-
նէն ։

Կատարինէին դին եղող իշխանները աս
ամմէն բանը հասկընալով թէպէտ քիչ
վոր, բայց նստան խորհուրդ ընելու բե-
դրօպուրկին մէջ, որոնց գլխաւորները ա-
սոնք էին ։ Պանին ըսված կոմսը՝ որ իր
զաւկին պօղոսի դաստիարակն էր, ռազու-
մօվսքի՝ որ ուքրանիայի կառավարն էր,
ու վօլքօնսքի իշխանը ։ Ասոնք առաջ խոր-
հուրդ ըրին որ՝ կատարինէին զաւակը պօ-
ղոսը թագաւոր դնեն, իսկ կատարինէն
իր մայրը կառավար դնեն ինչվան որ տղան
մեծնայ, բայց մտածելով որ՝ ասկեց շատ

անտեղութիւններ կընային հետևիլ, միա-
բան որոշեցին ինքը կատարինէն Թախտը
նստեցընելու, և որովհետև պետրոս ան
օրերը հօլշտէյն պիտոր երթար, խօսք
դրին որ՝ անոր երթալէն ետև աս փոփո-
խութիւնս ընեն ։

Մս ծածուկ խորհուրդը իմացողներ եղան, պետրոսին ականջը ձգեցին, բայց անիկայ անչափ ապահով կեցերեր իր Թագաւորելուն վրայ՝ որ ամենևին մտիկ չիդըրաւ. իր հօրեղբայրը վերոյիշեալ գէորգ իշխանը շատ հեղ կերԹար օրանիենպաում բերդը, իրեն խրատ կուտար աչքը բանալու, ու ինչ որ պէտք է ընելու. բայց պետրոս հոն սարդանաբաղոսի պէս իր անառակ զուարճութեանց մէջը ընկղմեր կեցերեր ։

Լսէլ կործանեցողներուն յատկութիւն է՝ իրենց խել-քին հաւնիլ, յանձնապաստան ըլլալ, ու ուրիշը իմանալ երբոր փորձանքը գլխընին հասնի ։

Կատարինէին Թախտը Նստիլը .

1762 ։

Ո՛վ որ կուզէ աշխարհիս մէջ օրինակ մը տեսնալ՝ Թէ ինչպէս կըյառաջացընէ բաղդը որուն որ մտիկնայ, Թող կարդայ աս կատարինէին Թագաւորելուն պատմուԹիւնը. ինչպէս վտանգներէ անցուց, ինչպէս շուտ մը ամբողջ ազգի մը միտք փոխեց, ամէնը կըզարմացընէ ։ Կատարինէին դին եղողները հասկըցան որ՝ իրենց

խորհուրդը իմացվերէ, մանաւանդ թէ իրենցմէ Պասսէք անունով մէյմը բռնըվերէ, որ պահապան զօրաց մէջէն էր, խիստ վախի մէջ ընկան. անոր համար աղտարցան մտածածնին շուտով առաջ տանելու։

Կատարինէն ան ատենը կընստէր գեղետունը Բէդէրհօֆ, որ 15 մղոն (միլ) հեռու է Բէդրօպուրկէն, իրեն իմացուցին մատնութիւնը, իրեն կեանքին վտանգը. երբոր լսեց որ շուտով 'ի գործ դնելու է իրենց մտածած խորհուրդը, ոտքը ձեռքը դող ելավ, մարելու պէս եղավ. բայց իրեն ըսին որ՝ քիչ մը ուշանալը մեծ վնասէր կըրնար բերել, անոր համար չիլուսցած յունիսի 29 ոտք ելավ, քալելով ճամփայ ըրավ ինչվան անցաւ եկաւ երկան պարտէզին ծարը. հասաւ ան տեղը՝ ուր որ իրեն համար առապայ կըսպասէր ·զինքը Բէդրօպուրկ տանելու, որուն առաջնորդ էր Ալէքսի Օռլօֆ կոմսը (1)։ Ասանկ կարգաւորերէին՝ որ Պանինն անուն կոմսը հոգ ունենայ թագաւորին զաւակը պօղոսը պահելու. Գրիգոր Օռլօֆը վերոյիշեալին եղբայրը հոգ տանի պահապան զօրքը ապստամբեցընելու. իսկ Ռոսօմօվսքի կոմսը իր զօրաց գունդին վրայ կենայ՝ որ կատարինէին ընդունի պաշտպանէ։

---

(1) Աս ան Օռլօֆն է որ՝ ետքը տաճկաց պատերազմին մէջը ծովու վրայ զօրագլուխ եղավ։

Երբոր Կատարինէն Պետրօպուրկ հասաւ, անմիջապէս մտաւ պալատին (սէրային) պահապան զօրաց ձմերոցին մէջը, որուն կը հրամէր Խամայիլովսքի գնդապետը (քօլօնէլը), բայց խիստ կանուխ ըլլալով անիկայ դեռ չէր եկած, որով խիստ վախնալու տեղ եղաւ։ Կատարինէին բաղդը բաց ըլլալով սիրտը առնուր՝ առանց մէկ վախ մը ցուցընելու՝ կանչել տուաւ զանիկայ. և ինչվան որ գար Խամայիլօֆսքին, իր առջին կանչեց ան տեղին ամմէն հազարապետները ու զինուորները, որոնց շատը շինված էին Կատարինէին դիմացէն. ասոնց մէկիկ մէկիկ սկսաւ պատմել Պետրոսին գէշ վարմունքը, թէ ինչպէս կատէր մոսկովները, ինչպէս կը քամահրէր մոսկով ազգին սովորութիւնները, բոլորովին յարեալ էր օտարներուն. ինքը Կատարինէնալ ու իր զաւակը խիստ մեծ վտանգի մէջ էին կորսուելու, նաև երևելի ատենականները ու մեծերը, որոնք Պետրոս ամմէննալ կուզէր մեռցընելու։ վտանգի մէջ էր նաև մոսկովին հաւատքը՝ ու մեծին Պետրոսին դրած կառավարութիւնը, որովհետև աս Գ. Պետրոսը ասոնք ալ կուզէր վերցընել փոխել։

Ես թագուհիս մէկ արտաքոյ ճարտասան լեզու մը ունենալով սկսաւ յորդորել զօրքը ըսելով, որովհետև աս ասանկ է, ով որ կուզէ որ անվտանգ պահէ հաւատքը, կառավարութիւնը, մեռնելէն խալսցընէ իս ալ, իմ զաւակս ալ, որ է ժառանգ թագաւորութեան, ինծի թող հետևի. աս խօսքերուն

մէջ լալ ու հառաչել, Ճարտասանական ձևեր բանեցընել աղէկ գիտէր ։ Ասոնք լսելով անչափ զօրքը՝ ու իրենց գլխաւորները՝ տեսնալովալ իր ցաւագին դէմքը, սրտին փղձկիլը, ամէնուն սիրտը շարժեցաւ. ամէնքնալ մէկէն մէկ բերան երդվըլեցան ըսելով. քեզի համար ամէնքսալ պատրաստ ենք մեռնելու. և շուտ մը կանչեցին։

Այսպէս մեր հայրապետին և Տիգրանին հարցընէ ։

Իրաւ աշխարհս պտըտցընօղը բաղդն է, բայց ամէն մարդուն վարմունքնալ գլխաւոր գործակիցն է բաղդին ։ Այսպէս կանչելէն ետև իրենք մէկտեղվեցան, կատարինէն առին բերին ածամօր եկեղեցին քաղաքնու. Ճամփան միացան նաև ուրիշ գունդք պահապան զօրաց. հոն էին ժողվըրված առաջուց Նափօկորոս արքեպիսկոպոսը ու ատենականները ։ Հանդիսաւոր պատարագը ընելէն ետև՝ կատարինէն ըստ օրինաց երդում ըրաւ որ անարատ պահէ մոսկով ազգին կրօնքը, սովորութիւնը, ու արտօնութիւնը. ան ատենը ժողովրդեան մէջ մարդիկներ դրերէին որ գրգռեն զժողովուրդը, սուտ ձան հանելով աս գիս ան գին՝ թէ պետրոս թագաւորը յանկարծ ձիէն վար իյնալով մեռերէր ։ Աս խորամանկութիւնս՝ աս ձայնս՝ շատ հեշտ ըրաւ (խօլայցուց) բանը. ամէնքը մէկէն սկսան կանչել թէ՝ ասկէց ետքը կեցցէ թագաւոր ոչ Գ. պետրոս, այլ Բ. կատարինէ. ու ամէնքնալ մէկտեղ վազեցին իրենց հաւատարմութիւն երդվընալու. ետևէ ետև

կը շատնային Կատարինէին դէմ եղողները , ամէն հրապարակներէն՝ պատուհաններէն՝ ուրախութեան նշաններ ձայներ կըլսուէր նոր

Թագուհի նստելուն համար ։

Ռուսմընալ թղթեր կպուցին Ճամփայնե-րու վրայ , ուր նոր կայսրուհին Բ կատարի-նէն իր ժողովրդեանը 1762 . յունիսի 20 կըգրէ պատճառը աս փոփոխութեան ասանկ հրատարակելով ։ „ Մեծ վտանգի մէջ ընկաւ „ Մոսկովին հաւատքը կորսըվելու , ծէսը „ վերցըվելու , ներքին կարգը կառավարու-„ թիւները փոխվելու . ան պատերազմները՝ „ յաղթութիւները որ անչափ արիւն թա-„ փելով ըրավ Մոսկով ազգը , ամէննալ „ գետինը ընկան ոչնչացան , քամահրելի „ հաշտութիւն մը ընելով մեր մեծ թշնամիին „ հետ՝ որ է պրուշը ։ Աս ամէն վտանգը „ տեսնալով , յոյսալ Այ վրայ դնելով , չէ „ չիկրցայ ըսել իշխաններուն անչափ աղա-„ չանքին՝ ուրով իս ատիպեցին թախտը նստե-„ ցընելու , երդում հաւատարմութեան առ-

„ նելով ամէն իշխաններէն “ ։

## Երրորդ պետրոսին բանտըւիլը ու մեռնիլը .

1762 ։

Ան գիշերն որ սկսաւ աս ամբոխութիւնը ու փոփոխութիւնը , պետրոս իր անհոգութեանը շատ կեր ու խում ըրերէր , ու կաքաւել պար բռնել ինչվան մօտիկ առաւու . ասանկ իր անկարգ զուարճութեանցը հետ ըլլալով ,

առտըվանց հագվեցաւ պրուշի կերպ հագուստը, մատը դրաւ ան մատնին՝ որուն վրայ Բ Փետերիքոսին պատկերն էր քաշված, պատրաստըվեցաւ որ Տր. Պետրոսին հանդէսը ընէ, որ իր անուանին տօնն էր, միյմինալ յանկարծ մէկ հազարապետ մը վազելով եկաւ բեդըրօպուրկէն, իմաց տալով որ ալ ինքը Թագաւոր չէ. ժողովուրդը կատարինէն դրին Թախտը: Անչափ Թմբած էր որ՝ շատ ատեն չիհաւատաց աս բանին, բայց երբոր մէկիկ մէկիկ պատմեցին պարագաները, վախը անչափ առաւ զինքը, որ մարելու պէս եղաւ. ետքը իբր Թէ սիրտ առնելով հոն եղող իրեք խումբ պահապան զօրացը հրամմեց որ՝ իրեն հետ մէկ տեղ գան բեդերհօֆ, որպէս զի Թագուհին բռնեն, կարծելով Թէ հոն է:

Զօրս դին ջուր կտըրված՝ չէր գիտեր որ ինչ ընէ, ան ատենը մունիխ իր մառէշալը(1) իրեն խորհուրդ տըվաւ որ՝ հօլանդէյնէն եկած զօրքդ առ, գլուխ եղիր անոնց որ շատ յարեալ են քեզի, անոնցմով շուտ մը գնա բեդըրօպուրկ. ես առջևէդ կերԹամ ըսաւ՝ մէկ ձեռքովս խաչելուԹիը բռնած, մէկալ ձեռքովս սուրը, ես կըճանչնամ մոսկով ազգին բնաւորուԹիը, Թէ որ մեռնելու ըլլանք՝ առաջ ես կըմեռնիմ: Ասիկայ աղէկ խորհուրդ էր իրեն համար, բայց կործանման

---

(1) Ասիկայ ան ատենվան ամենա երևելի զօրապետներէն մէկն էր, սիպիրէն նոր դարձերէր, ուր 20 տարվընէ վեր քշված էր:

առջի նշանն է իրատի մտիկ չիդնելը, իր-
րատ տըվօղը մերժելը. ինքնալ շփոթած
ըլլալով չէր գիտեր ինչ ընէ, ո՛րը ընէ. քո-
վինները պատրաստ էնք կըսէին քեզի հա-
մար մեռնելու, մէկը աս խորհուրդս կու-
տար, մէկալը ան խորհուրդը. կատարի-
նէին դիւացինները շատդէտ ըլլալով յա-
տուկ մարդիկներ դրած ունէին հոն, եր-
բոր մէկը իրեն աղէկ խորհուրդ կուտար,
շուտ մը անոր դէմ առարկութի կըհանէին
կըհակաճառէին, ու դիտմամբ խըժըլթուք,
շըշընկոց, շփոթութի կըձգէին որ խափա-
նեն, սաստիկ ուշանալով ատենը կանցնէր։
Պետրոս տեսնալով որ՝ քանի մարդ խըրկեց
բեդըրօպուրկ, ամենուն մէկնալ չիդարձավ
չեկավ, իրեն իրատ տըվին որ՝ քուօնշդատ
բերդը երթայ, որ նեվա գետին բերանն է,
Փինլանտիային ծոցին մէջ, հոն կըկենան
հասարակօրէն մոսկովին տօնանմանս. բայց
երբոր ուզեց նաւը մտնալ, չիթողուցին ը-
սելով, քու գալէդ ժամ մը առաջ խափու-
տանեան բեդըրօպուրկէն եկավ արտօրնօք,
բռնեց (զափթ ըրավ)։ Նօկեց ետքը ի-
րեն մէկ ճամփայ մը կըմնար խալըսելու,
թէ որ ինչ և իցէ մէկ նաւ մը ըլլայ՝ մըտ-
նար, պօլթնիային ծոցը երթալով շվէտ եր-
լար, և օրովհետև թօմէռամնիայի մէջն էին
իր զօրքը, կրնար անոնց մէջ ապահով մը-
նալ. բայց իր սիրտը պզտիկ՝ միտքը շփո-
թած՝ մանաւանդ ան կնիկներուն լալէն՝
որ իրեն հետ բերեր էր, չիգիտնալով որ բա-
նը ընէ, որոշեցին պինտ ետքը որ կատարի-

նէին հետ սիրով երթայ, հաշտըլլի. աս մտքով դարձաւ նորէն եկաւ օրանիէն պատում բերդը, քաշվեցաւ մտաւ ան տունը՝ որ բերդին ներսի դին էր. մունիք մաւէշալը ու ամէնն իր մարդիկնէրը դարպասին մէջը թողուց:

Կեցած տեղէն մէկ թուղթ մը գրեց, խամայիլով զօրապետին ձեռքովը խրկեց կատարինէին. խոստանալով հրաժարիլ թագաւորութէն, միայն թէ իրեն թող տայ իր դքսուհի երկիրը երթալու՝ որ էր հօլանտէյն, իրեն հետ առնելով եղիսաբեթ վօրօնցօֆը, և իր սիրական սենեկապետը կոտօվից անուն: Խամայիլով եկաւ կատարինէ կայսրուհին գտաւ ըսդրէլնային վանքը, որ իմացածին պէս իր առջին կանչեց, հասկընալէն ետև որպէս զի մէկ խռովութիւն մը չէծագի, բարեկամի պէս սիրով փոսեցաւ որ ձեռք ձգէ պետրոսը. իրեն աղէկ բան աս կըլլայ որ ըսաւ, շուտ մը հրաժարի թագաւորութէն՝ որպէս զի արիւն չըլլայ: Պետրոս աս լսելէն ետև՝ մէկ ժամու մը չափ խորհրդակցելով վերոյիշեալ եղիսաբեթին ու սենեկապետին հետ, երկուքը առաւ ու ռապան, բէդէրհօֆ եկաւ. ուրիշ մարդ մը հետը չառաւ ոչ զօրքերէն, ոչ բարեկամներէն. հոն հասնելուն պէս հետի եղօդները իրմէ զատեցին, ու ներքի խուցերը տարին:

Կատարինէն հոն եկաւ, բայց ներս չմտաւ, պետրոսին հետ չուզեց ինքը խօսաթելու, իր տեղը Պանինին ըսված կոմսը ներս խրկեց

մինակ. Հոն արդեօք երկու հոգիին մէջ ինչ անցաւ, ինչ խօրաթեցին, ամենուն յայտնի չեղաւ. միայն մէկ ժամէն աւելի ներսը կենալէն ետեւ վերոյիշեալ քահանան դուրս ելաւ ձեռքը թուղթ ունենալով՝ որ շուտ մը տպվեցաւ. այն թղթին մէջը պետրոս անանկ կըգրէ: „Ես տեսնալով իմ „կարողութիւնս իմ խելքս, որ ընդունակ „չեմ կառավարելու անանկ մէկ մեծ տէ- „րութեան մը մոսկովին. ճանչնալովալ որ ես „պատճառ եղայ այն ամէն խռովութեան որոնք „շարունակելու ըլլային նէ, ամէն մոսկո- „վին տէրութիւնը պիտոր կործանէին, կըվը- „կայեմ ամէն ժողովրդեան առջին՝ որ ես „ինքիրմէս ազատ կամքովս կըհրաժարիմ „ամէն թագաւորութենէ ու իշխանութենէ, „և կերդնում ա̃յ առջին որ իմ ձեռքովս „գրեցի ու ստորագրեցի աս թուղթս 1762. „յունիսի 30“: Նոյն գիշերը պետրոսը խըր- կեցին Ռոպշա տեղը՝ որ իբր 20 մղոն հե- ռու է բէդէրհօֆէն, հոն մէկ թագաւորա- կան պզտիկ տան մը մէջ բանտարկեալ դրին:

Կատարինէն շուտ մը դարձաւ եկաւ բեդ- րօպուրկ, իր թագաւորութեան հանդէսը փառաւորապէս ըրաւ. ճերմակ ձիու վրայ նստելով, մերկ (չըպլախ) թուր իր ձեռքը բռնելով, ամէն ժողովուրդը ուրախութի ցըցընելով: Բայց իրեք օր անցաւ չանցաւ՝ շատ մարդու մէջ կըլլովէր որ կըցաւէին ի- րենց առջի օրինաւոր թագաւորը թողլու համար. զինուորներուն մէջ ոմանք յայտնի

կըդժգոհային որ քիչ ըստակ վճարեց ի-
րենց կատարինէն, ոմանք չհաւնիլ կը-
ցըցընէին, պետրոսին խեղճ մնալուն վրայ
կըմեղքընային ։

Աս ձաները լսելով կատարինէին դէն ե-
ղօղները՝ վախցան որ յայտնի ապստամբու-
թի մը կրնար ըլլալ ասկից ․ յուլիսի 5 ամ
բողջ օրը խորհուրդ ընելու հետ եղան․ վաղ-
վան օրը առտըվանց լսվեցաւ որ՝ պետրոս
Գ․ յանկարծ ինջուածով մեռեր է 34 տար-
ւան, իր բանտարկութեան եօթներորդ
օրը ։ Մեռելը բերին դը աղէքսանդրու ե-
կեղեցին, հրապարակաւ դրին որ՝ ամմէնը
տեսնան, առանց մէկ հանդէս մը ընելու
թաղեցին ։ Անանկ լսվեցաւ որ՝ աղէքսի-
օռլօֆը շատ ուժով մարդ ըլլալով առաջ
թիւնը խմցուցերէ բռնութեամբ, ետքը
շուտով մեռցընելու համար ինքիր ձեռքո-
վը խղդերէ ։ Իր մեռնելէն ետև կատարի-
նէն խոհեմութի բանեցընելով մէկ վրէժ-
խնդրութի մը չըրաւ պետրոսի դէն եղօղ-
ներուն ։

Աս փոփոխութիս լսելով պրուսին թագա-
ւորը Ֆետերիքոս, առաջ չհաւատաց․ ետ-
քը տեսնալով որ ցեռնիշէֆ մոսկովին զօ-
րապետը նորէն թշնամի դարձաւ իրեն, ա-
ղաղակեց ըսելով, ինչպէս կրնայ ըլլալ որ
մէկ կնիկ մը մինակ իր բարեկամներով մի-
նակ ժողովրդեան կանչելովը առանց մէկ
թիւֆէնկմը պարպելու՝ կարենայ թախ-
տէն վար ձգել թագաւոր մը՝ որ աշխար-
հիս մեծ թագաւորներէն մէկն է․ իրաւ-

ցընէ աս բանս մէկ պէրբընակյան բան մը կը-
պարունակէ խելքէ մտքէ դուրս (1) ։ Բայց
ուրիշներնալ Ֆետերիքոսին վրայ կըդար-
ձընեն աս խօսքս ըսելով՝ թէ իր վրայի
եղածնալ բնականէն դուրս բաղդ մընէր,
որ պետրոս եկաւ, թագաւոր նստաւ, ան-
չափ ապրեցաւ՝ որչափ որ պէտք էր Ֆե-
տերիքոս վտանգներէն խալսելու ։

## Մոսկովին ըրած իշխանութիւնը՝ խառնըւելը Լէհի Վրայ .

## 1757 — 1763 ։

Մոսկովին զօրքը 1757 մտաւ Լիթուանիա ;
որ Լեհին մէկ կտորն է . Լեհցիք չունեին
կարողութիւն որ դէմ դնեն, ակամայ ( զօ-
րաքի ) լուռ կեցան . Թէպէտ բարեկամու-
թիւն ու խաղաղութիւն մտան, բայց երբոր մըտ-
նօղները զօրք են՝ միշտ վնաս կուտան, Լե-
հի իշխանները շատ բողոք վերուցին ատոնց
տըված վնասին վրայ . խիստ շփոթեցան՝
երբոր տեսան որ Թօռն քաղաք ու Էլպին-
կա մոսկովը առաւ . պրուշին Թագաւորնալ
աս բանիս համար սրդողեցաւ, սպառնա-
լիք ըրաւ ։ Լեհի իշխանները բողոք վերու-
ցին մոսկովի Թագուհիին եղիսաբեթի, ու
Լեհի Թագաւորին օգոստոսի՝ որ սաքսո-

---

(1) Ամուռնայէ չիւնքի հէր պիր դէվլէթին հէյպէթ-
աէ Ֆրըքաթ վար,
Կէօնիւլ կէօրմէզ սէն քիմ պիր սէֆաաէ պին մէ-
շաքաթ վար ։

նիայի կայսրընտիրն էր. լսելով թէ սաք-
սոնիայի կուռւյն հետ լեհաստան ամենեւին
մասնակցութիւն չունի. ինչ պէտք էր որ ա-
սանկ կոխվի դրացի տէրութիւնները. լեհե-
րը արդէն դէմ ըլլալով իրենց թագաւո-
րին, հիմաալ օտար զօրաց կոխվիլը տես-
նալով իր պատճառովը՝ սկսան մէջերնին
դաշնադրութիւն ընել, իրարու հետ միաբա-
նիլ գլուխ քաշելու համար թագաւորին
դէմ: Բայց մոսկովը աւելի համարձակե-
լով 1758 տանձքայի վրայ փազեց առնելու,
տանձքացիք դէմ դրին, ցօրուտորփ եղած
ծեծին ետեւէն մոսկովը ետ քաշվեցաւ, ա-
սանկով խալըսեցան աս նեղութէ:

Մոսկովին քաշվիլը պրուսին ճամփայ բա-
ցաւ 1759 փետրվ. մէջ լեհաստան մտա-
յայտարար թուղթ մը հանելով որ խաղա-
ղութիւն կըցըցընէր, բայց գործքով ուրիշ
կերպ ցըցուց: Ասանկով պրուսին զօրքը
բօզնանիա լեհի նահանգին մէջը ցրուե-
ցան, կնեզնա ու քռաքովիա անցան, սուլ-
քօվքի իշխանը գերի ըրին, կռօսկլօկաւ
բերդին մէջը գոցեցին մինակ աս պատճա-
ռիս համար՝ որ մոսկովին բարեկամ էր ու
պրուսի կարծիքին դէմ էր: Աս բանիս
վրայ լեհաստան զօրք հանեց, մոսկովը ար-
տօրնօք առաջ եկավ, պրուսին հարկ եղավ
լեհէն դուրս ելլալ, անանկ որ մարտին մէ-
ջը լեհաստան խալըսեցաւ, միայն պրուսը
մէկ քանի մոսկովի մահօսէնները թալլեց,
լեհերէն տուրք առավ մարդալ առավ, ի-
րեն զինուոր ընելու համար:

Քուռլանտիա ըսուած դքսութիւն մը կայ Լեհի երկրին մէջը, ասոր վրայ շատ առաջ դուքս եղած էր Պիռօն անուն մէյմը՝ Մոսկովի Թագուհւոյն պաշտպանուէը (որ Աննա կըսուէր), ասիկայ սիպիր քշուած էր, անոր տեղը 1740 էռնէստոս վօլֆէնպիւդդէլը եղած էր դուքս քուռլանտիայի. երբոր Աննայ ձգուեցաւ, Մոսկովը ալ Թող չըտըւաւ որ նոր դուքս մը դնեն. Լեհը ուրովհետև Մոսկովին տակը ինկալու պէս էր եղած՝ հարկ եղաւ որ լուռ կենայ. բայց 1759 Մոսկովը մարդ մը խրկեց քուռլանտիա. ասիկայ եկաւ Լեհի Թագաւորին երրորդ զաւակը կարոլոս անունով 26 տարուան քուռլանտիայի վրայ դուքս դրաւ. Վարշով քաղքին մէջը մեծ հանդէս ընել տըւին ասոր վրայ. մարտին մէջնալ նոր դուքսը կարոլոս գնաց քուռլանտիա նստելու: Մէկ պատճառ մընալ Լեհին կործանմանը եղաւ աս դքսութիւնը, ինչպէս որ վարը ունինք պատմելու:

Երբոր 1762 կատարինէ Թագուհին նստաւ Մոսկովին Թախտը, բերել տըւաւ սիպիրէն վերոյիշեալ պիռօն կամ պիռէն դուքսը, Թուղթ մընալ գրեց՝ Լեհի Թագաւորին, որ աս յօվհաննէս պիռօնը դուքս նստեցընէ քուռլանտիայի վրայ, իբր Թէ կարոլոս իր տղան դուքս եղած չըլլար, որ նոյնպէս Մոսկովը դնել տըւեր էր. Թող տուր որ քուռլանտիայի իշխաններն ալ ամենևին չէին ուզեր աս պիռօնը տեսնալու՝ խիստ չարագործ սեպելով. Օգոստոս Լեհին

Թագաւորը շատ տակնուվրայ եղաւ աս բանիս վրայ, ինքը հայր ըլլալով ինչպէս իր զաւակը որ էր կարօլոս՝ զրկէ դքսութենէ, դուքս հանէ, որ նոյնպէս ինքը մոսկովը օրինաւորապէս դրեր էր, անոր տեղը օտար մը դնէ. ասոր դէմ շատ պատճառներ բերաւ նոյն օգոստոս, շատ պտըտեցաւ որ մոսկովլին սիրտը վաստըկի, բայց չկրցաւ։ Մէկ մոսկովլի հազարապետ մը եկաւ քուռլանտիա, սկսաւ ինչվան բռնութիւն ընել. կարօլոս դուքսին կերակուրը արգելել, իրեն եկամուտները կապել. շատ թղթեր երթալ գալէն ետև մէկ դիէն մէկալ դիէն՝ վերջապէս 1763 յունվ. 22 պիռօն մոսկովի զօրքովը եկաւ, քուռլանտիային վրայ դուքս նստաւ, լեհին թագաւորը որ ան ատենը ծանր հիւանդ էր՝ իր զաւակը կարօլոսը ետ կանչեց. լեհին դեսպաննալ՝ որ աս բանիս համար մոսկով խրկեր էր, մոսկովը անարգ կերպով մը դուրս հանեց։

Շատ զգուշութիւններ բանեցուց աս լեհին թագաւորը օգոստոս 1761. որպէս զի իր երկիրը չիմտնան ան սուտ ըստակները՝ որ պրուսը խօթերեր սաքսօնիային մէջ, անկէց լեհին մէջնալ սկսաւ քալել առուտուրի պատճառով, ձի և ուրիշ բաներ ծախու առնելու համար՝ ինչպէս որ վերը գրեցինք։

Պրուսը Շվէյտնից բերդը կառնէ, Փրանսուզներու հասսիացոց վրայ յաղթութիւն կընէ.

1762.

Գրանք պատերազմի վրայ, յունիսի 7 քօնիկսպէրկ բերդը անցերէր պրուսին ձեռքը, յուլիսի 15, երրորդ անգամ տըլված մօսկովին. անոր ձեռքնալ ինչվան յուլիսի 20 կեցաւ, ետքը նորէն տըլվավ պրուսին. վասն զի կատարինէ թագուհին հաստատեց իր երկանը Գ. պետրոս թագաւորին ըրած հաշտութիւնը, և ուզեց որ միջնորդ ըլլայ՝ ամէն թագաւորներու հետ ընդհանուր հաշտութին ընէ: Այս միջոցին մէջ պրուսը կըջանար շվէյտնից բերդը նորէն ձեռք ձգել, որ իբր բալլիքն էր ամէն շլէզիայի. կտրեց անոր հաղորդակցութիւնը նեմցէի բանակին հետ, եկաւ աղէկ մը պաշարեց:

Լավտօնը աս ատեններս հիւանդ պառկած էր, տավունը չէր կրնար օգնութիւն հասնիլ՝ վասն զի անանկ հրաման եկերէր իրեն, որ զօրքը պզտիկ բաներու համար վտանգի մէջ չինձգէ. կըմտածէր որ շատ ջարդըվէին պիտոր, և ան պարապ տեղը՝ որովհետև առանց շվէյտնից բերդի դեռ կրնար պատերազմ առաջ երթալ, բայց առանց զօրաց ծեծ մը չէր կրնար ըլլըվէր:

Գվասքօ նեմցէ զօրապետը 3 ամիս ու կէս աղէկ դէմ դրաւ ներսէն, բայց հոկտեմ. 9

մէկ հավան Թօփու մը ընկաւ պարութի համբարին վրայ. ան ատենը կվաքօն դաշինք գնելով պրուշին ձեռքը տըվավ շվէյանից բերդը շլէզկիային: Երբոր պրուշի Թագաւորին առջին ելավ կվաքօն, Թագաւորը զինքը գովելով իր ամէն հազարապետներուն առջին՝ զուրցեց իրեն: Պատ աղէկ օրինակ տըւիր ամենուն թէ ինչպէս պէտք է բերդ մը պաշտպանելու. Վասն զի ձեր դէմ կենալը՝ տասը հազար մարդ կորսնցընել տըւաւ ինծի: Նեմցերի կայսրուհինալ իր արդիւնքը (էմէկը) ճանչնալով, պատիւ տըվավ կվաքօին, ամէն զինուորներուն Թօշակնալ 6 ամիս կրկին վճարեց:

Սաքսոնիայի մէջ երեւելի բան մը չեղավ, բայց եթէ հէնրիքոս իշխանը ծեծկըռվեցաւ կայսերութեան շրջանակներուն զօրացը հետ. (որոնց վրայ աս տարի զօրագլուխ էր ըսդօլպերկ,) 3 հազար մարդէն աւելի ջարդեց, 24 Թօփ առաւ. բայց տրէզտան ու պօհէմիային սահմանները նեմցերին ձեռքը մնացին, մէկ ծեծ մը չիքաշեցին:

Հաննօվէրի դիերը պռօկլիօ ֆրանսզներուն մառէշալը մարտի 24, ֆերտինանտոսի պրունսվիքեան դուքսին վրայ յարձըկեցաւ, որ պատնէշներ (մեթերիզներ) կըշինէր քասէլ քաղաքը պաշարելու համար. 2 հազար մարդէն աւելի ջարդեց. 1500 հօգի գերեց. 9 Թօփ առաւ, ու 19 նշան, անանկով պաշարումը վերցընել տըվավ: Յուլիսի 17. ֆլիկաւզեն տեղը ծեծկըռվելէն ետեւ ֆերտինանտոս իշխանին հետ,

վօլֆեմպուդել քաղաքը առին Ֆրանսացինե-
րը, ուր կընստեր պրունսվիկք իշխանին գըլ-
խաւոր ցեղը, հաննօվեր քաղքին մօտիկ-
ցան։ Օգոստ. 30. 1762. Եօհաննիսպերկ
անցնալ նոր յաղթութիւն ըրին, որ վերջի
պատերազմ եղաւ ան դիերը, վասն զի
հոկտեմ. կեսին մարտադուլ (միւթարե-
քե) ըրին, որ կարապետ եղաւ ընդհա-
նուր հաշտութե, որուն վրայ ետքը պատ-
մենք։

## Ֆրանսըզին ծովուն վրայ կորուստները.

## 1759։

Ծովու վրայ Ֆրանսացը կըսպառնար որ՝
ինկլիզեռռայի վրայ նաւերով զօրք պիտոր
խրկե, ինկիլիզին մանաւանդ իռլանտային
ցամաքը հանե, բայց սասանկ ընելով Ֆը-
րանսացը ինքիրեն շատ վնաս տըվաւ. վասն
զի երբոր իր նաւերը դուրս ելան հօռ տե
կռաս տեղեն՝ մեկ մասը ցրուեցան, մեկ
մասնալ վիլեն գետին բերանը աւազին մե-
ջը նստան. անոր համար ձարը կտրելով
մանիքա նեղուցին մեջը լեցուց իր մեծ ու
պզտիկ նաւերը՝ սպասելով որ ինկլիզեռ-
ռային ցամաքը զօրք թափե։ Աս բանս ա-
ռաջ երթալու բան չեր, միայն աոչափ օ-
գուտ ըրաւ իրեն Ֆրանսացը՝ որ ինկիլիզին
նաւերը արգելեց. որոնք Ֆրանսացին դեմ
դնելու համար՝ հարկ եղաւ ամմեն ինկիլ-
դեռռային ծովեզերքը շարված գամված

կենալ. անանկով չէին կրնար դուրս ելլալ, աւելի վնաս տալ Ֆրանսզներուն :

Վինտ եօքը Ինկլիզը շատ պատրաստուն տեմնալով մենծ նաւատորմիղ (տօնանմա) մը հանեց դօռւպայի նաւահանգստէն 22 հատ երկու խափախլը նաւով, ՚ամք անուն խափուտանա վրանին դնելով. ասիկայ եկավ Ֆրանսզին նաւատորմղին վրայ՝ որոնց երկու խափախլը նաւերը 21 էին. վրանին գլուխ քօնֆլանս մառէշալը: Սանք 1759. նոյեմ. 20. գեղեցիկ կղզիին քովերը իրարու հետ զարնըվեցան. Ֆրանսզներուն 5 հատ երկու խափախլը նաւը կորսնցուցին, Ֆրանսզին խափուտանային նաւը ցամաքը նստեցուցին, երկու մենծ նաւը ընկղմեցին, երկու նաւալ թռնեցին գերի ըրին, մնացածները կոտրըտրված Ֆրանսային նաւահանգիստները փախան :

Քանի նաւահանգիստալ ունէր Ֆրանսզը, հեռըվանց պաշարված թռներեր Ինկլիզը, որ մէկմէկու հետ հաղորդակցութիւն չունենան, մանաւանդ Ճիպրալթառին նեղուցը ամմէնէն աւելի կըպահէին : Քանի նաւալ որ Ֆրանսզները կըշինէին պրեստ ու ռօշֆօռտ նաւահանգիստներուն մէջ, գրեթէ ամմէննալ Ինկլիզին ձեռքը կիյնային :

Աս ամմէն ձախորդութէ պատճառ՝ քանի մը կառավարներուն ու մենծերուն անկարգութիւն էր որ փարեզ կընստէին. ասոնք կառավար եղերեին ոչ ընտրութե՝ հապա ատոր անոր միջնորդութե. Ինկլիզի դխա-

ցենալ բերդը խլած կըգրգռեր՝ որպէս զի Փրանսզին ծովային ուժը բոլորովին կորսնցընել տայ, ու անոր նաւահանգիստները գոցէ խափանէ։

Պէրրիէ Փրանսզը տեսնալով որ՝ ինչ վնաս եղավ ծովու վրայ նէ, չիկար բան մը որ նարէն չինէ, անանկ միտքը դրաւ որ՝ Փրանսզին ծովային զօրութիւնը ալ չիկրնար շտկըվիլ, անոր համար ամէնէն բանը ծախու հանեց, անանկով որչափ համբարներ կային պըեստ՝ պարպըվեցան։ Անկէց ինկլիզները համարձակելով գնացին առին ինչ տեղվանք որ ունէին Փրանսզները աֆրիկէին սենէկալ գետին վրայ, որ է վտակ կամ մեծ ճիւղ մը նեկրօ գետին, ուր մեծ առուտուր կըլլար ոսկիի, փղոսկրի, ու գերինէրու, որոնք ամերիկա կըտանէին հանքերը (մատէնները) բանեցընելու համար. առած տեղվանքներուն ամէնէն երևելին էր Սէ̃ լուիզ բերդը։

Ինկլիզին ՔՀէ եղածները. Ինկլիզներուն ձեռքա առնելը Ամերիկայի ՔՀ. Ինկլիզի Թագաւորին Մեռնիլը.

1759 — 1760։

Ինկլիզի Թագաւորին առջինեկը՝ կալլէսի իշխան կըսվի, ըստ որում կալլէս գաւառին վրայ կիշխէ. աս կալլէսի իշխանը 1751 մեռած ըլլալով 44 տարվան, Թողլով 5 մանչ ու 3 աղջիկ։ Մեծ մանչը գէորգ

կուլիէլմոս 14 տարվան ըլլալով խիստ մեծ հակառակութիւն ելավ թէ ով ըլլայ տղին կառավար կամ թագաւորահայր, մանաւանդ որ թագաւորը ծերացած էր ու տկարութիւն ունէր. Ետքը որոշվեցաւ որ տղին մայրը ըլլայ կառավար, հետևեալ մէկ ժողով մը խորհրդականներու, մինչվան որ տղան 18 տարվան ըլլայ. անոր համար 1759 տղան մէնծութեն տարին հասած ըլլալով բառլամէնդը կալլէսի իշխան ընդունեց զինքը.

Ս. տարվանս մէջ սուտ ձայն մը ելավ որ իռլանտային կառավարութիւնը ինկիլդերային հետ պիտոր միացընեն, իրեն բառլամէնդը ու արտօնութիւնները պիտոր վերցընեն. աս խօսքէս տուպլին քաղքին մէջը սաստիկ խռովութիւն մը ելավ, բառլամէնդին մարդիկներուն և ուրիշ իշխաններուն շատ նեղութիւն տըվին, մինչվան մօտիկ մեռցընելու եղան, բայց իռլանտայի մէջ նըստող փոխարքային խելքովը աղէկ մը վարվելով առանց արեան շուտով խաղաղցուցին:

Ս. տարի 1759 ինկիլիզները մարդինիքա կղզին վրայ գացին չիկրցան առնելու. Ետքը ապրիլի մէջ կվատալուբա կղզին առին, անոր հետ պզտիկ կղզիներնալ առին որք են նը մարիամ, նը բարթուղիմէոս, ու նը մարտինոս: Ֆրանսզները նորէն ուժ առնելով ամերիկայի մէջ ջանացին քանատան առնելու. ինկիլիզները նեղը մտնալով քվէպէք քաղքին մէջը փախան. Ֆրանսզը ե-

կամ քվէպէք պաշարեց, բայց Ինկիլիզնե-
րուն նոր օգնութի̅ գալով նաւերով, Ֆրանսը-
զը ան առենը իր Թօփերը ձգելով արտօր-
նօք փախաւ, մօնռէալ բերդնալ Ինկիլիզ-
ներուն տրվավ։

Անուանի բերդը որոշէրէր որ քանատա առ-
նըվէր (1), Ամհէրստ Ինկիլիզ զօրապետը 12
հազար մարդով մօտաւ քանատային երկի-
րը, ուր նիակարա բերդ կար երեւելի տեղ
Ֆրանսըզներուն ձեռքը. առաջ աս բերդը
պաշարել ուզելով բրիտօ զօրապետը վրան
խրկեց, բայց բրիտօն սպանվելով անոր
տեղը եօհնսօն եղաւ զօրապետ, ջարդեց
մէկ գունդ մը Ֆրանսըզներու՝ որ կուգային
նիակարա ազատելու, անոր համար նիա-
կարային պահապան զօրքնալ՝ անձնատուր
եղան. ամհէրստնալ առաւ քռօյն ու գի-
քօնտէրակօ տեղվանքը՝ որ Թողուցած
էին։

Ասկէց ետքը Ինկիլիզները եկան քվէպէք
պաշարեցին, որ աղէկ քաղաք է ու մարդա-
շատ. Սանուտէրս զօրապետը ծովուն դիա-
ցէն պաշարեց, վօլֆ զօրապետը ցամաքի
դիացէն, կտրիճ երիտասարդ՝ որ շատ քա-
ջութի̅ ընելով իր արդեանցը համար զօրա-
պետ ըրերէին։ Անիկայ գիշեր առեն զօրք

---

(1) Քանատան ամերիկայի մէջ մէկ մեծ աշխարհ մընէ, 4 հազար մղոնէն (միլէն) աւելի տարածված, լեցուն լճերով, ու ձիւնապատ անապատներով, որ 1530ին գտաւ Ֆրանչիսքոս վէրրազան Ֆիօռէնցացի, ու տրվաւ Ֆրանսըզներուն. բայց ով որ առաւ, շատ վնասներ քաշեց։

Հանեց մէկ բլրի մը գլուխ որ քաղքին վրայ կը նայէր. տակեց մէկ սաստիկ կռիւ մը սկսաւ. մէջի եղօղ Ֆրանսզ զօրապետը Մօնդքալմ անուն՝ միտքը դրեր էր, թէ որ քաղաքը տալու ըլլայ՝ մեռնի անանկ տայ. վօլֆ Ինկիլիզնալ դրեր էր կամ առնել քաղաքը, և կամ մեռնիլ: Ասոնց երկուքին խօսքնալ կատարեցաւ, երկուքնալ մեռան. վօլֆին ձեռքը վիրաւորվեցաւ, բանի տեղ չիսեպելով ինքերեն փաթթեց անանկ կըպատերազմէր. ետքը մէկ թիւֆէնկ մը կուրծքին գալով՝ ոտքի վրայ չկրցաւ կենալ, մէկ զինուորի մը կռնակ կըթընելով հոգեվարք ըլլալուն ատենը ձայն մը լսեց թէ Թշնամիները կը փախչին, ան ատենը հոգի առնելով ըսավ, հիմա հանգիստ կըմեռնիմ: Ինկիլիզները յաղթեցին, մէկ քանի օրէն ետև սեպտեմ. 18. 1759 քվէպէք առին. բայց սանկ մարդուն կորուստը աւելի կարժէր քան ամբողջ քանատա աշխարհը, միայն թէ մարդկային վիճակնալ անանկ բան մընէ որ՝ մէկ մարդ մը կորսնցընելէն ետև կիմանայ իր յարգը: Ինկիլիզները անչափ զօրացան որ՝ 1760. սեպտեմբ. 8 ամմէն քանատա առին, որուն համար էր գրեթէ աս պատերազմիս սկսիլը.

ափրիկէի մէջնալ կօրէա կղզին առին:

Քանի մը տարի կար որ՝ գէորգ Ինկիլիզի թագաւորը խիստ տկարացած էր, մէկ պըզտիկ ձախորդութիւն մը մեծ վիշտ կըբերէր իրեն.. 1760. հոկտեմբ. 25 գրեթէ յանկարծ մեռաւ, 77 տարվան, 33 տարի

թագաւորելէն ետև. մէկ Ինկիլիզի թագաւոր մը չէր եղած որ՝ աս ծերութեան տարիքը հասած ըլլայ ։ Իր մեռելը բացին, սըրտին աջ փորոքը ճղքըված գտան, ու սըրտակրանքը լեցուն արիւնով. իր թաղման հանդէսին համար մէկ միլիոն մը ոսկի գընաց. ասկից կիմացուի ազգին սէրը որ ունէր իր վրայ, բնութիւնը անուշ ու ծանր ըլլալուն համար, խելքով որոշող ու թափանցող, աղէկ գիտէր ժուժկալութիւն ու տնտեսութիւն, որով խիստ աղէկ կարգի մէջ դըրաւ իր տանը կառավարութիւնը՝ ամէն բանը չափաւորելով, իրեն ատենը արուեստները ու վաճառականութիւնը շատ ծաղկեցան Ինկիլթերայի մէջ. և թէպէտ ինքն ալ նեղութիւն քաշեց, բայց կրնայ ըսուիլ որ՝ ամէն թագաւորէն քիչը քաշեց։

Գէորգ Գ. իր պզտիկ տղան իրեն յաջորդեց, որուն ցեղը թէպէտ Նեմցէն եկած էր, բայց ինքը Ինկիլիզի մէջ ծնած ըլլալովը աղէկ Ինկիլիզի արտաբերութիւն կատենաբանէր բառլամենդին մէջը, որ իրմէ առջինները չէին կրնար ընել. ասով ու իր անուշ բարեբարոյ բնութիւնը խիստ հաճոյ եղաւ Ինկիլիզներուն. 1761 կարգըլվեցաւ, Քառլօդդա իշխանուհին առաւ, որուն ցեղը Մէքլէնպուրկ Ըստըրելիցեան կըսուէր։ Աս ատենները Ինկիլիզները երկու բանի մէջ էին. մէկ դիհացէն նոր նոր տեղվանք ու նաւեր առնելով Ֆրանսզէն կուրախանային. մէկալ դիհացէն յոգնած էին պատերազմելէն ու տուրք տալէն, ժողովրդեան. մէկ

մասը պատերազմին պատճառովը անհաւա-
նում հարստութենէ վատըրկած էին, մէկալ
մասը վնաս քաշելէն մօտիկ էին բացը ել-
լալու. իսկ արքունեացը մէջ անանկ մար-
դիկ լեցուած էին՝ որ մինակ իրենց շահը
կընայէին ։

Ինկլիզները Հնտստանի մէջ զանազան տեղեր կառնեն,
մանաւանդ Փոնտիշերի, որ Ֆրանսզներուն աթոռանիստ
քաղաքն էր.

1761 ։

Ցամաքին վրայ Ֆրանսզներուն բանը փո-
փոխ կերթար աս ծեծիս մէջ ինչպես որ
վերը պատմեցինք, առաջները յաղթըվե-
լով, ետքերը յաղթելով, բայց ծովու վրայ
շատ վնաս եղաւ իրենց ։ Մեծի դիպուած-
ները ըլլալէն ետև 1756, երբոր ինկլիզին
խորհրդանոցը անուանի բիդը կանչեց, ի-
մաստուն կառավարութիւնը աս մարդուն ա-
նանկ ըրաւ որ՝ ամմէն բանը ինկլիզին դին
դարձաւ, մանաւանդ Հնտստանի մէջ, ո-
րուն նապապները, այսինքն փաշաները՝ իր-
րև մէյ մէկ պզտիկ թագաւոր ըլլալով՝ որին
վրայ ինկլիզը կըխառնըվէր, որին վրայ
Ֆրանսզը ։ Բայց եղաւ որ՝ պէնկալային
նապապը ինկլիզի մէնծերուն վրայ դժա-
րը գալով՝ ինկլիզին հետ ավըրվեցաւ,
Ֆրանսզին հետ միաբանեցաւ, ծեծկըվելու
ելաւ ու կալկաթային բերդը պաշարեց. աս
բերդս տկար ըլլալով առաւ, մէջի ինկլիզ

պաշտպան զօրքը 146 հոգի մէկ նեղ բանտի մը մէջ դրաւ, որուն լայնքը ու երկայնքը 20 ոտնաչափ. երկու պզտիկ պատուհան միայն ունէր օդ (հավա) բանելու. հոն խիստ տաք երկիր ըլլալով հիվընտցան մեռան, միայն 23 հոգի մնացին. ասոնքալ երբոր խալըսեցան՝ կէսէն աւելի տկրացաւով (հումմայով) մեռան։ Աս ձայնս երբոր Ինկիլիզներուն ականջը հասաւ, ամէն մէնեալ կատղեցան, վառւեցան վրէժ առնելու։

Կանք որ՝ աս ատեններս լօրտ Քլիվ Ինկիզը Ինդոս ու Գանգէս գետին վրայ շատ քաղաքներ կրնէր, օգնական իրեն ունենալով ծովուն վրայ վաստօն խափուտանեան, վերցուց Ընջէյ նաև Անկրիա անուն երևելի ծովապատակը (խուրսանտը) որ պօմպայէն դիէրը շատոնցմէնէ վեր խիստ նեղութի կուտար Ինկիլիզի տեղերուն։ Աս ծովապատակս շատ չէքտիրներ ունենալով անոնցմով կըյարձըկէր մէնծ նաւերու վըրայ, ասանկով իշխէր տիրերէր ան տեղացի ծովուն մէջը, ամմէն Փռենկի տէրութիներէ տուրք ու պարգև կըպահանջէր, թէ չէ՝ թող չէր իտար առուտուր ընելու։ Կլիվ զօրապետը ուրիշներուն հետ միաբանելով բռնութի մտաւ իրեն նաւահանգիստը՝ որ Ճերիահ կըսվէր, և թէպէտ իրեն զօրացը վրայ ցամաքէն անդադար թօփեր կընետէին, բայց զօրքը մտիկ չընելով ներս մտան, ան ամմէն հնտստանի նաւերը նաև Ճերիահ բերդը երեցին, որ հետևեալ

ծրը անձնատուր եղաւ. հոն գտան անհամա-
նուամ գանձ :

Այս յաղթութիւն ընելէն ետև՝ քլիվը գնաց
կալկաթայի վրայ, թօփեր նետելով մէկ
քանի ժամու մէջ առաւ. անկէց գնաց
Հուկլի քաղաքը առաւ, աւրեց երեց նաւ-
պապին ամմէն համբարները ու ցորենը.
նապապը կատղելով 40 հազար ձիաւորով,
25 հազար ոտանաւոր (ետեան) զօրքով
եկաւ քլիվլին վրայ, որ 2 հազար զօրք ու-
նէր մինակ; բայց քլիվը նապապին ամմէն
զօրքը ցրուեց, կոտրեց, կատարեալ յաղ-
թութիւն ըրաւ վրան : Չութվա քաղաքը-
նալ առաւ. ինչ իշխաններ կային՝ որ Ֆը-
րանսզին հետ դաշնակցեալ ըլլալով ինկի-
լիզին դէմ կըդնէին, ամմէննալ կոտրեց.
օգնութի առնելով վաղսօն ու բօքօք խա-
փուտաննաներէն գնաց խանտէրնակօրին վը-
րայ, որ պէնկալայի մէջ պինտ աղէկ տեղն
էր Ֆրանսզներուն, մէջը շատ ըստակ ու
ապրանք գտաւ, բայց ըստըրկէն աւելի՝ աս
մէկ ծեծով տէր եղաւ անչափ ու անանկ
գետնի՝ որ տարածութը, հարստութը, ու
մարդաշատութը աւելի էր քան եւրոպային
մէկ մեծ տէրութիը. միայն աս վնասուն
համար որ քաշեց ինկիլիզը, վճարք առաւ
տեղացոցմէ երկու միլիոն կինեէ ոսկի (1).
600 հազար կինեէալ առաւ զինուորներուն
ու նաւավարներուն բաժնեց :

---

(1) Մէկ կինեէ ինկիլիզի ոսկին՝ որ կըսվի նաև ըօզեուլին լիրաե, երկու ճալտըղ կընե :

Աս բանս շատ նախանձ ձգեց Փլէմէնկնե-րուն ու Ֆրանսզներուն մէջ, անոր համար Ֆրանսզը օգնութիւն խրկեց իրեններուն, ու մէկ խալանտացի զօրապետ մը վրանին Լաւէ-լի անունով. բայց Ֆրանսըզ զօրաց սիրտը կոտրըված էր, Լաւլի զօրապետնալ թէ-պէտ կտրիճ պատերազմող էր, բայց խե-տուրուկ մարդ մընէր, ասիկայ եկաւ նը դաւիթ բերդը ու կոնտալուրը առաւ. բայց գէշ ըրաւ որ՝ մատրասը չառաւ, որ զօրա-մանտէլ ծովեզերքին վրայ գլխաւոր տեղն է ինկլիզներուն ։ Ասկէց ետքը Ֆրանսզին բանը ձախող գնաց թէ ծովու և թէ ցա-մաքի վրայ ։

Քլիվ ինկլիզ զօրապետը ապսպրեց քուդ-զօրապետին՝ որ Ֆրանսզին նոր եկած զօր-քին դէմ երթայ ծեծկըվի. ասիկայ ալ նոյն-պէս խալանտացի էր՝ Ճամփայ ելաւ, վան-տերվաշ, քօնճիվերամ, ու ջարանկօլի բեր-դերը առաւ Ճամփան, Լաւլի Ֆրանսզի զօ-րապետին հասաւ. սաստիկ ծեծկըվելէն ետև՝ Ֆրանսզները յաղթըվեցան, ամէն թօփերնին կորսնցուցին, ու Արքօդ ըսված երևելի տեղը թողուցին գացին ։ Ամէն հնտստանի մէջ միայն փունդիշէրի մնաց Ֆրանսզներուն ձեռքը, որ իրենց գլխաւոր տեղն էր, ու իրենց հարստութիւնը իբր համ-բարանոց, նաև ուրիշ ամէն եւրոպացւոց տեղերուն մէջ որ հնտստան ունէին՝ ասի-կայ կըգերազանցէր հարստութեամբ ու գեղեց-կութեամբ. մէջի մարդիկը ճերմակ ու սև մէկ տեղ առնելով՝ 100 հազար կային ։

Սոր վրայ եկաւ Պուդ Ինկիլիզը, ցամա-քէն պաշարեց. իսկ Ստեվէնս Ինկիլիզը իր նաւահանգիստը պաշարեց, բայց ամուր բերդեր ունենալուն համար՝ չկրցան հեշտ (խօլայ) առնելու. երկար քշեց, մէջիննե-րուն կերակուրը հատաւ, զօրքը շուն ու կատու կուտէին, անալ սուղ սուղ ծախու առնելով. մէջի Ֆրանսզները կուզէին քա-ղաքը Ինկիլիզին տալ, բայց իրենց զօրա-պետը վերոյիշեալ Լալլին կտրիճ ըլլալով՝ ամենեւին չէր ուզեր տալ այն քաղաքը՝ որ պարծանք էր Ֆրանսզին: Ու իրաւ որ՝ շատ հեղ մէկ բան մը ուշացընելը՝ մէկ ուրիշ յաջողութիւն մը բերել կուտայ. իրեն ասանկ ուշացընելովը օր մը յանկարծ սաստիկ փո-թորիկ մը ելաւ, այն փոթորիկը՝ որ հին-դուստանի ծովին մէջը միայն կըլլայ, մեր երկրին ծովերուն մէջը չըլլար, անկից քա-նի Ինկիլիզի նաւեր կային՝ որ փունդիշերի պաշարերէին, կոտրտըվեցան ցրուեցան: Լալլին շունչ առաւ, շուտ մը թղթեր գրեց, յուսալով որ Ֆիլէմէնկներէն պա-շար (զահրէ) գայ. սիրտ տալ սկսաւ իր զօ-րացը՝ որ անօթութէ, աշխատանքէ, հի-ւանդութէ կըմեռնէին, բայց իրեն յոյսը պարապ ելաւ, մէկ տեղէն մէկ բան մը չե-կաւ. անանկով հարկ եղաւ, 1761. յունվ. 15 քաղաքը տըվաւ, թէպէտեւ ինքը ստո-րագրել չէր ուզեր, բիւր հազար անէծք կուտար յաղթօղներուն ալ, յաղթըվօղնե-րուն ալ:

Ինկիլիզները փունդիշերի առին, Լալլին զօ-

րապետը լօնտռա տարին. հոն իրենց գերի ընկած զօրապետի մը հետ փոխելով լօնտռայէն Փրանսա խրկեցին. Փրանսզներն ալ Լալլին իրենց ձեռքը հասածին պէս բանտը դրին, ամբաստանելով որ՝ փունդիչերին ըստըկով Ինկիլիզներուն էր ծախեր. Խեղճը 15 ամսէն աւելի հոն կեցաւ, վրան մէկ քննութիւն մը չեղաւ. վասն զի մէկ վըկայութիւն մը չիգտան իրեն դէմ. պինտ ետքը մէկ մարդու դրուածոցը մէջ մէկ յիշատակարան մը գտան ամմէն պարագայներով գրված, անիկայ բաւական սեպեցին Լալլիին Թշնամիները, սկսան դատաստանը տեսնալու. աս քննութեն մէջնալ յայտնի չեղաւ ամբաստանութիւնը, միայն շատ անգթութի գտան իր ըրածներուն մէջը. բայց ինքն Լալլին՝ արդարութեն համար եմ ըրած կըսեր, չէ թէ անգթութեն համար. ասանկ ըսելով հնտստանի առեւտրին ամմէն հազարապետները ու պաշտօնատէրերը կըհայհոյէր կանարգէր:

Այս անխոհեմութիւնը դատաւորները գութ շարժելուն տեղը՝ աւելի խստացուց, ամմէննալ իրեն դէմ շարժեց. չիմտածեց որ՝ իրեն Թշնամիները շատ բարեկամ ունեին իրենց, իսկ ինքը դրսեցի ըլլալով մէկ բարեկամմընալ չունէր: Հասարակաց խօսքը երբեմն ապացուցի (խպալթի) տեղ կառնըվի, կամ գոնէ ապացոյցները կըզօրացընէ. Լալլին անոր համար մահապարտ դատապարտըվեցաւ՝ իբր թէ մատնիչ է թագաւորին ու թագաւորութեն ապրանքին.

Երբոր իր առջին կարդացին իր վրայ եղած վճիռը՝ ձեռքը փէրկէլ մը կար որ գործ կածէր քօրօմանտէլին աշխարհացոյցը քաշելու՝ ուզեց կուրծքը խօթելու, բայց չթողուցին ։ Երբոր մեռցընելու կըտանէին՝ բերանը երկաթ զարկին, վասն զի միշտ կըհայհոյէր իր դատաւորները. ամէն փարէզ կըցաւէր առոր մահուանը վրայ, գիտնալով որ՝ ան մարդիկներուն չարութիւնը ասիկայ կըմեռցընէ, որոնք աւելի մահապարտ էին կաշառք (ուպօտրիէթ) ուտելնուն համար ։

Մտածելու բան է թէ ինչ զարմանալի կըլլայ աշխըրհիս մէջը ոմանց կացութիւնը ու բաղդը. իռլանտացի մը որ է Լալլին՝ կըքշվի իռլանտայէն տարբեր կարծիք ունենալուն համար, անկէց 6 հազար փասախ հեռու տեղ կըխրկըվի Ֆրանսայի Թագաւորին դիրացէն ծեծկըվելու համար, ետքը կուգայ Ֆրանսայի Թագաւորին հրամանովը դահճի ձեռքով կըմեռնի Ֆրանսա փարէզի մէջ, միայն առոր համար որ՝ թէ դուն ի՞նչու համար Ինկիլիզներէն բռնըվեցար. մինակ ատեն՝ որ խեղճ Լալլին մէկ բան մը չունէր պաշտպանելու, անչափալ հեռու տեղ՝ որչափ որ փարէզը հեռու է Գանգէս գետին բերնէն՝ ուր էր ան ատենը դժբաղդ Լալլին ։

Ու փոնդիշէրիին կորսնցընելը վերջի ձախորդութիւնը բերաւ Ֆրանսայի առուտուրին, անոնց տէրութիւնը հինտիստանի մէջէն վերաջացուց. իսկ Ինկիլիզներուն մեծ յաջողու-

թի բերաւ, ու իրենց տէրութիւնը Հնդկաստանին մէջը սկսաւ ծաւալիլ, ինչպէս որ Անկլիացւոց կուզէր նաեւ կենար ու բանիս, այսինքն օրէօր տարածել իր տէրութիւնը Հնդկաստին մէջը։

Անկլիացիները Պոնտիշերին կղզինալ առին ան տարի 1761. որ պրեզայնային ծովեզերքը մէկ կողմ մինչ, մէջը բերդմընալ ունի.

Սպանիան Փրանսային դաշնակցելը մեծ վնասով Ինկլիզին դէմ, Փորթուգալին երկիրը վնասոյ հանէ.

1761 — 1762։

Ասանկ ձախորդութիւնները տեսնալով Փրանսըզը որ վերը յիշեցինք, իրենց անհատնում խարջը ու ներսի խռովութիւնները, հաշտըվիլ ուզեց. որովհետեւ պրուշնալ ինկլիզնալ ընդհանրապէս առաջարկներէն հաշտութեան։ Փրանսըզը լօնտրա խրկեց իր երեսփոխանը (մուրախխասը), ինկլիզնալ իր երեսփոխանը փարէզ խրկեց. ավկուստա քաղքին մէջնալ առաջարկեցին որ ալբաշը ու նեմցեն հաշտութեան վրայ խօսին։ Փրանսային ուզած առաջարկութիւնները արդար ու չափաւոր էին. որոնք ինկլիզին երեսփոխանը դըրսըվանց ընդունիլ կըցըլընէր, բայց ինկլիզը նաեւ նաեւ նոր նոր արտառոց առաջարկութիւններ ընելով կըցըցընէր որ չէր ուզեր հաշտութիւն. իսկ եր-

թոր Ֆրանսզը մէկ քանի բան մը կառաջարկէր Ինկիլիզին, ու սպանիային մէջէն եղած բաներու համար՝ ան ատենը մէկ պըլայէլով մը մէկ սաստնութ̃ի մը պատասխան կուտար. անոր համար միտքը իմանալով խօսքը վերջացուցին. երեսփոխանները ելան տեղերնին գացին, պատերազմը չիկտրըվեցաւ:

Տեսնալով Ֆրանսզը Ինկիլիզին ըրածը, յոյսը դրաւ սպանիային վրայ, իրեն վէզիրը շուազէօլ դուքսը՝ որ մէկ ճարտար մարդ մընէր, սկսաւ յորդորել սպանիային Թագաւորը̃ կարոլոսը, որ միանայ Ֆրանսզի Թագաւորին հետ, Ինկիլիզին դէմ ելլայ. մէկիկ մէկիկ առջևը դնելով որ՝ Ինկիլիզը ամերիկայի մէջ ընդարձակելով իր տէրութիը, մէկ օր մը սպանիային ունեցած տեղերնալ բեռու, մեքսիքօ, իրեն կառնէ. մանաւանդ որ արդէն սկսերէին ցըցընել իրենց իշխողութիը ծովու վրայ. Ինչ սպանիայի նաւ որ գտնային, ամմէնուն մէջը կըմըտնային Ինկիլիզները կըփնտռէին, շատնալ կառնէին կըգերէին:

Սպանիան հասկընալով որ՝ Ֆրանսզը հաշտութի կուզէ ընել, Ինկիլիզը կըմերժէ, Ինքը յաղթօղ ըլլալով ամերիկային ու ծովուն մէջ՝ վախցաւ. չըլլայ թէ իր մեծութիը ապաւինելով Ինկիլիզը ամերիկային վրայ տիրէ, անոր համար մտիկ դրաւ Ֆըրանսզին յորդորանքին, 1761. օգոստ. 15 մատրիտ քաղաքը դաշնադրութի մը ըրաւ Ֆրանսզին հետ, որ ըսվեցաւ Դաշնադրութ̃

ընդունելով, մեկըզմեկու երկիրները պաշտ-
պանելու համար. և թէ որ թշնամի մը
վրանին ելլայ՝ իրարու օգնելու համար ծո-
վով, ցամաքով, զօրք, նաւ, ռոճիկ տալով
մեկմեկու։ Այս դաշնադրութիւնը որ 28 թէու-
թ̃ լմնցաւ, տարածեցին նաև Նապօլիի Թա-
գաւորին՝ ու Պառմայի դուքսին վրայ։
Անկլիզները ասիկայ լսածնին պէս կրակ
կտրեցան, կրկնապատիկ շատցուցին իրենց
ծովային ուժը. իրենց պառլամէնդն ալ թէ
պէտ կը տեսնար որ ազգը պարտքի տակ
ընկած էր, բայց անուն պահելու համար
մեծ գումար ըստակի որոշեց տալու Թագա-
ւորին. և արովհետև ծերունի Պիդը որ դի-
ւանադպիր էր՝ դէմ կեցաւ սպանիային
վրայ ծեծ բանալու, Թագաւորը ձգեց պաշ-
տօնէն. 1762. յունվ. 2 յայտարար թուղթ
հանելով պատերազմ ելաւ սպանիային վը-
րայ։ Սպանիան ալ յունվ. 16 հանեց իր յայ-
տարար թուղթը, փորթուկալի տէրութեան
պատգամ խրկեց որ զինքը յայտնի ընէ,
մրդեօք սպանիային դին է, թէ ինկիլիզին
դին, վասն զի գիտէր որ փորթուկալը խիստ
բարեկամութ̃ կապված էր ինկիլիզին հետ
աս դարուս սկզբնէն սկսեալ։ Փորթուկա-
լին Թագաւորը յովսէփ ա̃ պատասխան
խրկեց՝ որ իր միտքը չէզոք մնալ էր. բայց
սպանիան ասով չի հանդարտեցաւ, վասն
զի կը տեսնար որ ինկիլիզը շատ կը շահէր
փորթուկալի մէջ, իբր թէ իրեն մէկ գա-
ւառը եղած ըլլար, անհնարին էր որ թող
չտար ինկիլիզի նաւերուն մտնալու իր նա-

ւահանգիստները, ու զօրք հանելու ցամա-
քը՝ որ սպանիային հետ ծեծկըվին. անոր
համար սպանիան ստիպեց փորթուգալը ի-
րեն ու Փրանսըզին հետ դաշնակցութ̄ի ընե-
լու. ան ատենը պատասխանեց փորթուգա-
լին թագաւորը՝ թէ ինկիլիզին հետ իժիր
միաբան ըլլալով չէր ուզեր որ հիմա ալ-
ըրվի իրմէ զատվի.

Աս լամծին պէս սպանիան քանը հասկըցաւ,
Փրանսըզին խըրատին կեօրէ հրամեց իր զօ-
րացը որ փորթուգալին երկիրը մտնան, որ-
պէս զի թէ որ ինկիլիզը հօն զօրք հանէ
սպանիային վրայ վազելու համար, դէմ
կենան, փորթուգալին դէմ ամենեւին զէնք
չիվերցընեն, բայց եթէ երբոր փորթուգա-
ները սպանիացոց վրայ զէնք վերցընեն,
կամ երբոր թող չիտան սպանիացոց փոր-
թուգալին երկիրը մտնալու.

Պատերազմը ըման կըլլանի մէկ կրակի մը՝
որ չիկարծած տեղվանք կայծէր կըցաթկե-
ցընէ, նոր նոր տեղէր կըբըռընկցընէ կը-
ծաւալի. ան պատերազմը որ սաքսօնիա ցա-
բուսկա կըլլար, ցաթկեց անցաւ եկաւ ինչ-
վան սպանիա, ինչվան փորթուգալ. վասն
զի սպանիացիք փորթուգալին միրանտա քա-
ղաքը առին, անկէց ուրիշ գաւառ մտան
որ կըսվի լեռնամէջ. փորթուգալները ա-
ռաջ հնազանդեցան սպանիային, ետքը ա-
պըստամբեցան. ան ատենը փորթուգալին
թագաւորը պատերազմ հրատարակեց ըս-
պանիային վրայ, իր զօրքը սպանիայի մէջ
վազելով վալէնցան ու ալքանտարան թա-

լեց. փորթուգալըն դէմալ սպանիան ֆըր-
րանսայըն հետ մէկ տեղ ծեծ հրատարակե-
ցին, շատ անգթութի բանեցուցին հոն ըս-
պանիացիք. մրը թուրով մրը թիւֆէնկով
կոտորտեցին սպաննեցին, փորթուգալցոց
բանէրնալ երեցին, բայց երբոր տաքը կո-
խեց, փորթուգալըն երկիրը խիստ տաք ըլ-
լալով, դադրեցան առաջ երթալէն:

Փորթուգալցիք պետրոս թագաւորը մեռ-
նելէն ետեւ պղխութեան մէջ ընկած էին,
շատոնցմէն չէին պատերազմած. անոր հա-
մար ինկիլիզէն ուզեցին որ՝ իրենց թոշա-
կովը նեմցէի զօրք խրկէ իրենց, ու մէկ
վարպետ զօրապլուխ մը. ինկիլիզնալ 12
հազար մարդ խրկեց անոնց: Նոյն ատենը
սպանիացիք վիլլաֆլօր տեղը 5 հազար զօրք
մրը կոտորեցին, մրը ցրուեցին, մօնֆօռ-
քօ ու ալմէյտա քաղաքը առին օգոստ. 25.
Ֆրանսըզնալ զօրք խրկեց սպանիային օգնու-
թի, ասոնք մէկտեղելով կամաց կամաց ա-
ռաջ կուգային լիզպօն փորթուգալըն մայր
քաղաքը առնելու. բայց փորթուգալցիք
որովհետեւ ինչ պաշար (զահրէ) որ կար՝
ամէնընալ լիզպօն առեր տարերէին, ան-
կից սպանիացոց կերակուրը սկսաւ պակ-
սիլ. վասն զի աղէկ հոգ չէին տարած ի-
րենց մատրիտէն կերակուր խրկելու. անոր
համար որչափ պզտիկ խումբ զօրաց դուրս
կելլային աս դին ան դին կերակուր գըտ-
նալու, նոր եկօղ նեմցէ զօրացը հէշտ
(խօլայ) կըլլար անոնք կոտրելու փախցը-
նելու:

Աս կերպ ծեծկըռվելով, արգելվեցան սպա-նիացիք առաջ երթալու, այլ մինաւանդ-ռուած տեղերնին թողուցին, իրենց երկի-րը դարձան. Ետքը հաշտութեան վրայ խօ-րալթա ընել սկսան Ֆօնդենեպլօ քաղաքը 1762. օգոստ. 25, որ լմնցաւ Նոյեմբ. 2. իսկ հաշտութիւնը 1763 լմնցուցին, որ վա-րը պատմենք:

Ինկիլիզը վարի աշխարհն Հավանա քաղաքը կառնէ սպանիոյի ձեռքէն. Հինտիստանու Մանիլան ալ եղլէն կառնէ.

1762:

Ծովու վրայ Ինկիլիզները շատ վնաս տը-վին սպանիացւոց. Հավանա քաղաք կար քուպա կղզին հիւսիսային ծովեզերքը, որ անդիլլեան կղզիներէն մէկն է, Մեքսիքոյին ծոցին բերանը. ասիկայ վարի աշխարհի մէջ սպանիացոց ձեռքը մէկ համբար մընէ ամմէն ազնիւ ապրանքներուն ու գանձին (խազնային). մեծ Նաւահանգիստ ունի, ուր կրնան հազար Նաւէն աւելի սղմիլ. ի-րեք բերդով բաժնըված է, որոնք աս դիէն ան դիէն թօփերը նետելով անհնարին է թող չեն իտար թշնամին ներս մտնալ: Ասիկայ Ինկիլիզը ուզելով առնել, հեռու տեղ մը ծովեզերքին վրայ զօրք հանեց, ուր կըկարծէին թէ անմատոյց տեղ մընէ. Ետքը քաղքին վրայ յարձըկելով, թօփ ու խումպարա նետելով մէկ քանի դրսի բեր-

դէրը առաւ. մէջի սպանիացիք նեղը լինելով, 1762. օգոստ. 31. դաշինք դրին, Հավանա քաղաքը ու ամբողջ քուպա կղզին Ինկիլիզին ձեռքը տըվին. Ինչ գանձալ որ հոն կըպահվէր սպանիա տանելու համար, ամէննալ անոնց յանձնեցին։

Ինկիլիզները հոն գտան 9 նաւ երկու խափախը, ամէն մէկը 70 թօփ քաշօղ. 3 ֆըռխաթա. 27 ուրիշ պզտիկ նաւեր, մէջը լեցուն սիւպիւքէ ոսկի ու արծաթ, խըրմըզ, չիվիթ, ու շէքեր. Նաղտ ըստակալ 3. միլիոն կինեէի աժողչէքէն աւելի, որ ամէննալ յաղթօղներուն մէջ բաժնըվեցաւ. միայն տամնըվեցերորդ բաժինը պահեցին աղքատաց համար, և անոնց համար որ՝ պատերազմի մէջ շատ բան քաշեցին. պէյլիկ նաւերը թագաւորին տըվեցան, իսկ վաճառականի նաւերը՝ երկու զօրապետներու տըվին ցամաքին ու ծովու, և իրենց հազարապետներու։ Ամէն առածնին 8 միլիոն կինեէի բան եղաւ. որ 16 միլիոն եալտըզ կընէ. մէկ եալտըզը հիմա 16 ղուռուշ սեպելով, 512 հազար քէսէ կընէ։

Ասանկով սպանիան մինակ աս առջի պատերազմի մէջ աւելի բան կորսնցուց, քան որ տասը տարվան մէջ կընար վաստըկէր ամերիկայէն նաղտ ըստըկով։ Աս վնասներուն պատճառը աս էր որ՝ սպանիան ուշ միացաւ Ֆրանսզի հետ, և երբոր Ինկիլիզին հետ ավըրվեցաւ՝ Ինկիլիզը ամէն դիւացէն պատրաստ էր ծեծի մէջ ըլլալով, իսկ

սպանիան անպատրաստ. Նոր պիտոր Հրա-
մանն երթար պատրաստուելու անանկ հե-
ռու տեղ վարի աշխարհ. հոն եղօղ փոխ-
արքայն ու գաւառապետները իբր մէյ
մէկ անկախ թագաւոր ըլլալով կամաց կը-
շարժին. չիկարծեցինալ որ ինկիլիզը ա-
սանկ արտորնօք վրանին հասնի։

Ինկիլիզները աս յաղթութեն սիրտ առնե-
լով վազեցին հնտստան եղած փիլիպպեան
կղզիներուն վրայ. ասոնք անչափ հեռու
են վերոյիշեալ քուպա կղզիէն, որ իբր թէ
անոր հականեայն են, անոր տակն են.
աս կղզիները ամմէնը մէկ տեղ առնելով
գրեթէ ինկիլղէռայի՝ ըսկովտիայի՝ ու
իռլանտայի չափ կան. իրենց ծովեզերքը
մարգրիտ կելլայ, և մէկ կղզիին մէջը ա-
դէկ հանք կայ ոսկիի. մէջերնին գլխաւորն
է Մանիլլա կղզին՝ որ յարձըկելով առին.
իր նաւահանգստին մէջը նաւ մը կար քա-
ղաքուլքօէն եկած, մէջը 3 միլիոնի ապ-
րանք կար, անալ առին։

Ինկիլիզին նաւերը կըվախցընէին սպա-
նիային ծովեզերքնալ վազելու. անոր հա-
մար սպանիային ազնուականները թագա-
ւորին աղաչանքի թուղթ գրեցին, որ իրենց
հրամանն տայ պաշտպանելու, ամմէն գա-
ւառ ոտք ելլան ինկիլիզին յարձակման
դէմ դնելու։ Բայց խօսքը հեշտ (խօլայ),
գործքը դժար։

Անցած տարի 1761. յունիսի 6. ինկիլիզը
առերէր Ֆրանսզի ձեռքէն Տօմինիքա պըզ-
տիկ կղզին, իսկ 1762 փետրվ. մէջ մառ-

դոմինիքա կղզին առաւ, ինչպէս որ առեր էր
նաև կուանադա կղզին ։

Սպանիան Փրանսան ինկիլիզին հետ հաշտութիւն կընեն ․

1762 ։

Սպանիան աս պատերազմը բացաւ Փրանսըզին ապաւինելով, բայց տեսաւ որ Փըրանսան իրմէ աւելի օրէօր թշուառութեն մէջը կիյնար, ըստըկի դիտացէն ան կարօտութեան մէջը հասերէր, որ Փրանսայի Թագաւորէն սկսեալ ամմէնքնալ իրենց արծաթները զարպխանէն խրկերէին ․ Փըրանսըզին 56 նաւը երկու խափախը, 36 Փուխաթան բռնըված էին ինկիլիզէն, մնացածը երված կամ կորսըված էին ․ զանազան գաւառներ նորէն նաւեր շինել տըվին, բայց քաշած վնասը չիկըցան կարկըտելու ․ շատ նաւավար պակսած էին գերի իյնալով, կամ իրենք իրենցմէ ինկիլիզին անցնելով, ուստի նօպլեան մառէշալին ըսածին պէս ( որ կըգրէ ժն լուիզ թագաւորին ․) “ Ըս ծեծը եղաւ իբր թէ ինկի-
„ լիզը մեծցընելու համար ․ վասն զի ան
„ աստիճանը բարձրըցուց ինկիլիզը՝ որ աս
„ կեց ետքը բոլոր եւրոպայի օրէնք պի-
„ տոր տայ առուտուրի համար „ ։

Փրանսըզնալ ինչվան հիմա կըդիմացընէր զինքը ծեծկըվելու՝ իր յոյսը սպանիային վրայ դնելով, հիմա տեսաւ որ՝ անալ բան

մը չկրցաւ ընել, մանաւանդ թէ աւելի
զօրացուց իր թշնամին Խնկիլիզը, իր պա-
տուական տեղվանքները անոր տալով, ու
ամէն բանը մոռածելով տիւք շուազօլ
Ֆրանսային խելացի վեզիրը՝ դեսպան (եւ-
չի) խրկեց Լօնտրա, որ Խնկիլիզին հետ
հաշտութէն վրայ խօրաթէ։ Դեսպանը ա-
ղէկ առեն եկավ, ըստ որում Խնկիլիզին
վեզիրը բիդը տեսնալով որ՝ առելի եղեր-
էր թէ նոր թագաւորին ՟ գերորդին, և
թէ մենծերուն, իրեն քամահրական ընու-
թեանը համար՝ ինքիրմէ հրաժարեր էր վե-
զիրութէ, լօւտ պուդը իր տեղը վեզիր էր
եղած. ամիկայ բիդին քանքարը ու խել-
քին ճարտարութիը չունէր, բայց սրտովը
ու բարքովը անկէց աւելի աղէկ էր։
Աս հաշտութէն միջնորդը եղավ սաւտէ-
նեայի թագաւորը ՟ մանուէլ, որ անուն
ունէր խելացի ու խոհեմ ըլլալուն համար.
Խնկիլիզինալ Ֆրանսզինալ դեսպան խըր-
կեց. Խնկիլիզինալ հաշտութի ուզել սկսաւ
մանաւանդ երկու պատճառի համար, մէյ-
մը որ փօրթուկալին երկիրը Խնչվան լըզպօն-
ալ վտանգի մէջ էր սպանիացւոց ձեռքը
ըյնելու, մէյմընալ որ պետրոսին մոսկո-
վին թագաւորին մեռնելովը պրուշը իր
դաշնակիցը վտանգի մէջ էր մեծ վնաս քա-
շելու, անոր համար Խնկիլիզը իրեն դես-
պանը պետֆօւտ դուքսը Ֆրանսա խրկեց.
սպանիանալ իր երեսփոխանը կռիմալտի
մառքեզը Ֆրանսա խրկեց։ Պետֆօւտ
ըլլալով անուշ հեզ բնութէ մարդ մը, իր

վեզիրենալ տպաւորված ըլլալով որ ամէն կերպով ջանայ հաշտութեան պառկեցընել քանը, շատ ջանք ընելով հազիւ կրցաւ համոզել (խանտըրմիշ ընել) իր Ինկիլիզ ազգը, որ Թողուն Փրանսըզներուն ձկնորսութիւն ընել Նոր երկիր ըսված տեղը Ամերիկայի մէջ. վասն զի Ինկիլիզները խորոխտ ազգ մը ըլլալով կուզէին բացարձակ արգելել զանոնք աս ձկնորսութենէ, որուն պատճառովը ասքի վրայ կրկենար կըսէին Փրանսըզին ծովային զօրութիւնը. իսկ իրենք վերջապէս կուզէին որ՝ Փրանսըզին ուժը ծովու վրայ բոլորովին ջնջեն:

Բոմբատուր խաթունը որ կառավարութեան մէջ շատ կըխառնըվէր ինչպէս որ ըսերենք, Փրանսայի Թագաւորին ծածուկ յանձնարարութիւնը հաշտութիւն ընելու կըյորդորեր շուազօլ վեզիրը ասանկ գրելով իր Թղթին մէջը 1762. յուլիսի 20: „Սա-
„ կովը հաշտութեան ըրած պըռուշին հետ.
„ սպանիան ծոյլ է, ու բան մը որոշելու
„ անկար. իսկ գերմանիայի վրայ նայելով՝
„ բոլորովին յուսահատելու է: Աս փոր-
„ ձըված բան է որ՝ ամէն դարու մէջ՝ ամ
„ մէն ծեծի մէջ՝ երբոր Փրանսըզները յան-
„ դըգնեցան շատ առաջ վազելու, իրենց
„ ամէն զօրքը նաև փառքը կորսնցուցին,
„ ասոր դէմ երբոր ուէնօ գետը չանցան,
„ կամ քիչ հեռըցան անկէց, շատ քաջու-
„ Թիւն գործեցին: Ինկիլիզները աս ծե-
„ ծիս սկիզբն մէնէ վախ ունէին, բայց հի-
„ մա իրաւունք ունին ծաղր ընելու Թէ ի-

» իրենց առջի վախը, և թէ մեր անօտի-
» յոյսը“ ։
» Սանկ ըլլալով ապահով բան մըն է որ՝
» հիմա հաշտութիւն ըլլըվի, բայց հոգ չէ
» որ՝ հաստատուն ըլլայ այն հաշտութիւնը,
» աս բանս անկարելի է, վասն զի Ինկիլի-
» զը ու Ֆրանսզը չեն կրնար երկան ատեն
» մէկ տեղ միաբանեալ մնալ․ մէկմէկու
» վրայի ատելութիւնը, առուտուրին նա-
» խանձը, իրենց շահելու ընդդիմութիւնները
» շուտով նորէն ծեծ բանալ պիտոր տան։
» Ասոր համար կուզէ Թագաւորը որ մէկ
» քանի տեղ մը պահենք մեր ձեռքը Ամե-
» րիկայի ու Հինտին մէջը, ըստ որում ասի-
» կայ մէկհատիկ միջոց կըլլայ մեզի նորէն
» տեղ հանելու շատցընելու մեր ծովային
» ուժը, պահելու մեր ծովեզերեայ առու-
» տուրը, և ամմէն դիւացէն ուժովնալու,
» անանկ որ աւելի յաջողութեամբ աւելի ա-
» պահով կարենանք զարնել Ինկիլիզը եր-
» բոր պէտք ըլլայ։ Ինկիլիզին առնելը մեր
» վաճառականի նաւերը ծեծ հրատարա-
» կելէն առաջ՝ մեծ վատահամբաւութիւն
» բերաւ Ֆրանսային, որ ոչ երբէք պիտոր
» մոռցըվի, ինչվան որ յայտնի վրէժխնդ-
» րութիւն չընէ (1), հիմակու հիմա մենք
» վար ենք, իսկ Ինկիլիզները վեր են, մեզի

---

(1) Աս վրէժխնդրութիւնը 17 տարիէն ետև ըրաւ Ֆրանսզը 1778ին ատենները․ երբոր ամերիկայի պատերազմներուն տեղ կեցաւ Ինկիլիզին դէմ, ինչ-պէս որ վարը մէկիկ մէկիկ պիտոր պատմենք։

„ օրէնսդիր են, բայց կը յուսանք որ աս
„ բանս շատ չի քշեր։ Մենք հիմա ընենք մէկ
„ հաշտութիւն մը բանաւոր թեութիւններով
„ որչափ որ կարելի է, որպէս զի պատրաս-
„ տութիւն տեսնանք աւելի աղէկ պատերազ-
„ մելու“։

Նոյն թօմքատուրը իր մէկ ուրիշ թղթին
մէջը՝ որ Պաաշի կոմսուհիին կը գրէ, ասանկ
կը զրուցէ։ „ Կուգայ ատեն որ՝ Փրանսան
„ ընտրկով լեցընելով ան մարդիկները՝ ո-
„ րոնց ձեռքն է Ինկիլիզին կառավարութիւնը,
„ մէջերնին տարաձայնութիւն (Փախա) ու
„ կռիւ կը ձգէ. վասն զի չիկայ աշխըրհիս
„ մէջ մէկ երկիր մը՝ ուր տեղ հնար ըլլայ
„ ոգի խռովութեան ու երկպառակութեան
„ ձգելու՝ ինչպէս Ինկիլըզեռուա. թէ որ ին-
„ կիլիզները կը պարծին որ ծովու վրայ ա-
„ ւելի զօրաւոր ենք քան Փրանսըզները,
„ Փրանսըզներն ալ աւելի զօրաւոր են քան
„ խառնելու, ու շահաւոր դաշնագրութիւն
„ ընելու“։

Սպանիայի թագաւորն ալ գրեց իր ե-
րեսփոխանին։ „ Թէ որ քանի մը տեղ ալ
„ տալ հարկ ըլլայ՝ տուէք, միայն թէ հաշ-
„ տութիւն ըլլըվի. աւելի աղէկ է ինծի ան-
„ պատուութիւն ըլլայ, քան թէ իմ ժողո-
„ վուրդս տանջըվի. քիչ պատիւ չըլլար ին-
„ ծի երբոր ասանկ ընելովս՝ աւելի գթած
„ հայր կը ըլլամ իմ որդւոցս վրայ“։

Տիւք շուալօլ վէզիրը Փրանսայի թագա-
ւորին միտքը իմանալով, ամէն կերպով
սոթթըվեցաւ հաշտութիւնը առաջ տանե-

լու . Իրեն խելքն ու հաստատութիւնը , բրազլէն դուքսինալ աղէկ վարմունքը ու եղանակը , որ Ֆրանսայի ընէս էֆէնտիին առջի կառավարն էր , ամէն արգելքը խափանեցին , վրայ ելան . Ձկնորսութեան ազատութիը առնելով 1762 . նոյեմբ . 3 հաշտութեան նախապատրաստութիւնը ըրին Ֆօնդէնէպլօ քաղաքը 26 թէութեան վրայ . Նոյն ամսոյն 15 թշնամութիը դադրեցուցին :

## Հաշտութէ Թէութիւնները .

## 1763 :

Վէրսալիայի մէջ ուր է թագաւորական պալատը ( սէրայը ), 1763 . փետրվ . 10 . եղավ հաշտութիւնը Ֆրանսայի՝ սպանիայի՝ Ինկիլէզի՝ ու փօրթուկալի մէջ . Ֆրանսայի թագաւորը լուիզ ժե̃ որսորդութ̃ նոր դարձած էր երբոր ստորագրեց հաշտութեան թղթին՝ որուն թէութիւնները ասոնք են :

Ֆրանսան մինօռքա կղզին կուտայ , անոր տեղը գեղեցիկ կղզին ետ կառնէ . Ինկիլէզին կուտայ աքքատիան , ամէն քանատան , լօվիզպուրկը ու պրէդդօն ըսված հրուանդանը (քիթը), ան ամէն երկիրը՝ որ միւսիսիբի գետին ձախ դին կըյնի , ու կըսվի լուիզիանա : Ասկէց զատ Ինկիլիզին կուտայ պզտիկ կղզիները՝ որ կըսվին տը վին-

չէնցիոս, կռանատղա, դապակօ, ու տօմէնիքա ։

Ինկիլիզնալ Ֆրանսզին ետ կուտայ քաց 'ի վերոյիշեալ գեղեցիկ կղզիէն՝ հետևեալ կղզիները մառդինիքա, կվատալուբա, ՚նք լուչիա, ՚նք մարիամ քարեփառ, կօրէա որ ափրիկէին մէջն է. հնտստանի մէջնալ կուտայ զանազան խաղխաղներ, որք են կղզիներ ծովուն ջրովը գոցված ։ Թող կուտայ նաև որ Նոր երկիր ըսված ծովեզերքը՝ ցամաքէն 3 մղոն (միլ) հեռու, իրաւունք ունենայ Ֆրանսզը ձկնորսութին ընելու. աս բանիս համար Ֆրանսզին կուտայ իրեն պզտիկ կղզիները ՚նք պետրոս ու միքելօն, իրենց բռնած ձուկը չորցընելու համար ։

Սպանիային տըվավ Ինկիլիզը վերոյիշեալ լուիզիանան, անոր տեղը առաւ իրմէ Ֆլորիտան, որպէս զի իր առած երկիրները մէկ տեղ բոլորված ըլլան, նոյնպէս Ինկիլիզը ետ տըվավ հաւանան, ու ֆիլիպպեան կղզիները, որ հաշտութինը ստորագրըվելէն իրեք օր առաջ առերեր Ինկիլիզը. ասոնք ետ տըվավ՝ որպէս զի սպանիանալ փօրթուկալէն առած տեղերը ետ դարձընէ ։

Ինկիլիզը իրեն պահեց որչափ տեղ որ առավ հինտիստան պէնկալային մէջ, ու զանգէս գետին բերնին մէջ. ասանկալ իրեն պահեց ափրիկէի մէջ սէնէկալ գետին վրայի տեղվանքը Ֆրանսզէն առնըված, պարտաւորելով որ՝ Ֆրանսզը քակէ

տօնքէրքէն բերդը ծովուն վրայ ։

Ըսանկով ամերիկան 25 աստիճանէն սկըսեալ գրեթէ մինչվան բեւեռական շրջանակը մինկիլըզին եղաւ, որով մինկիլըզն ու սպանիան երկուքը մէկ տեղ՝ ամերիկային մեծ մասը իրեր երկու բաժնեցին ։ Աս է որ սպանիան ամերիկային ան երկիրները ունեցաւ որ՝ գետնի տակէն ոսկի կըբուսցընեն, ոսկի դուրս կըհանեն, մինկիլըզնալ ան երկիրները ունեցաւ՝ որ իրենց քարի բերքերը ծախելով ոսկին դուրսէն ներս խօթել կուտան ։ մինկիլըզին ունեցած կտորին ծովեզերքը ամերիկայի մէջ 1200 մղոն կըտարածվէր, մէջը լեցուն անանկ մեծ գետեր որ՝ նաւերը իրենց ապրանքը մինչվան 150. 170 մղոն ներսը ցամաքը կըտանէին ։

Ըս հաշտութիւնով աղէկ որոշեցին ամերիկայի մէջի եղած իրենց սահմանները, որ աս ծեծին առջի պատճառը եղեր էր ։ Ֆըրանսան աս ծեծով շատ մարդ կորսնցուց, նաև իր ըստըրկին կէսը՝ որ Ֆրանսային մէջը կըպըտըտի ։ քիչ մը ատենալ իր ծովային ուժը խիստ տկարացած մնաց ։ կորսնցուց նաև գրեթէ իր վաճառականութիւը ու իր վարկումը (իրտիպարը), մինակ մէկ տարվան իր խարճը կանցնէր 400 միլիոն գուռինի լիրէ ։

## Ինկլիզին Ազգի խռովութիւնը.

1763 — 1770:

Թէպէտ այս հաշտութիւնը օգտակար եղաւ Ինկլիզին շատ տեղվանք առնելով, բայց իր պարտքը 3330 միլիոնը հասաւ վերոգրեալ լիրէով, Ինկլիզ ազգին մէկ մասնալ այս կերպ հաշտութենը վրայ չհաւնեցան, աւելի մեծ շահեր ուզելով. անկից շատ խռովութիւն՝ եղաւ Ինկլիդէռային մէկ քանի ժողովրդեանը մէջ, մինչեւ որ պէտֆօրտը կուզէին սպաննել, մանաւանդ անոնք որ՝ պրուշին յարեալ էին. պրուշին դեսպաննալ շատ գանկտեցաւ, իբր թէ Ինկլիզը այս հաշտութինը ընելով երեսէ ձըգեց թող տալով պրուշը, անանկ որ կուզէր ելլալ երթալ, բայց հաշտութինը հաստատվեցաւ:

Չիհաւնօղներուն մէջ ամմէնէն աւելի գլխաւորը եղաւ Ուլքս անուն գնդապետ ( քօլօնէլ ) մը, որ վարի բառլամէնդին մէջէն էր. ասիկայ Պարտաւադէտ գրուած մը տպել տալով, որին մէջը շատ կըքամահրէր կընախատէր արքունիքը ու կառավարութիւնը, անոր համար բռնեցին վրան քննութիւն ըրին, բայց ետքը թողուցին. վասն զի օրէնք ունին որ՝ բառլամէնդին մէջի եղօղները ուրիշ բանի համար չեն կրնար պատժվիլ՝ բայց միայն դաւաճանութեն ու մատնութեն համար: Ժողովուրդը

ուրախացաւ ասոր ազատվելուն համար, վասն զի Ինկիլիզը ազատութիւն սիրող ազգ է. իրեն ազատութիւն կըսեպէ խոնարհեցընել իր կառավարիչները, անպատիժ թողուլ յանցաւորները. Թէպէտ և արքունիքը Վիլքսին վրայ ամբաստանութիւն ըրաւ բառլամէնդին առջին, որպէս զի դուրս հանեն իրենց մէջէն. վերոյիշեալ գիրէն զատ՝ Վիլքսը ուրիշ գրուածներալ ունէր անվայել ամբարիշտ խօսքերով հաւատքի դէմ, որուն համար ուրիշ նոր քննութիւն ուզեցին ընելու:

Վիլքսը տեսնալով որ բանը գէշի կերթայ, պատրուակ (մահանայ) բերելով որ՝ մենամարտութեան մէջ խոցվեցաւ, փախաւ գնաց Ֆրանսա, քանի հեղ որ դատաստան կանչեցին՝ չեկաւ, անոր համար բառլամէնդէն դուրս հանեցին, իրեն ամէն ապրանքը առին: Աս մասնաւոր մարդուն բանը եղաւ ընդհանուր բան, ու շատ նեղութիններ բերաւ. ժողովուրդը Վիլքսը ջատագովելով կառավարութեան դէմ կըհակառակէր, անանկ կըսեպէր որ՝ Վիլքսը յանցանք մը չունի, հապա արքունիքը անոր դէմ ատելութիւն ունի ժողովուրդին ազատութիւնը պաշտպանելու համար. ժողովուրդին ասանկ ընելէն Վիլքսնալ աւելի յանդգնութիւն կառնէր: Ինկիլիզին օրէնքը ու դատաստանը անանկ է որ՝ ասանկ յանցաւորները հոն հեշտ (խօլայ) կրնան խալըսիլ. մէկալ դիհացէն՝ արքունիքը՝ դատաւորները՝ ու բառլամէնդները՝ խիստ կըդժվարէին ժողովուրդին

պաշտպանելուն վրայ ասանկ մարդը, որ կառավարութեան ու հաւատքին դէմ կըկռուէր, ու ազատութեան անունով ուրիշներուն չար օրինակ կուտար. 1766 վիլքսը դարձաւ եկաւ լօնտռա, կարծեց բարեկամներով իր բանը շտկել, բայց ետքը յուսահատելով նորէն դուրս գնաց ինկիլթէռայէն։

Երբոր 1768 պէտք եղաւ նոր բառլամէնդ ընտրելու, վիլքսը նորէն դարձաւ ինկիլթէռա եկաւ. ետեւէ ընկաւ զինքնալ լօնտռայի բառլամէնդին մէջը խօթելու, բայց չյաջողեցաւ. անոր տեղը ժողովուրդը իրեն կռնակ ունենալով միտտէլսէքս քաղքին նուիրակ ընտրուեցաւ. ինքը մոռցըված կըկարծէր իր անօրէնութիւնը, բայց բառլամէնդն ու արքունիքը մոռցած չըլլալով նորէն քննութիւն ըրին, բառլամէնդը դատապարտեց անիկայ որ 10 ամիս բանտը նստի, ու 500 կինեէ վճարէ պարսաւանաց գրին համար՝ որ յանդգնելով նորէն տպերէր. աս լմննալէն ետեւ՝ 12 ամիս բանտը նստի, 500 կինեէ նորէն վճարէ ուրիշ անվայել գրուածներուն համար, միտտէլսէքսին նուիրակ ուրիշ մը ընտրել տըվավ, ու բառլամէնդէնալ դուրս հանել տըվավ. թէպէտեւ ժողովուրդը շատ անկարգութիւն ըրաւ լօնտռային մէջը վիլքսը պաշտպանելու համար, իրեք հեղ բառլամէնդին մէջը խօթել ուզեց, ու շատ աղերսագիր տըվավ թագաւորին՝ կծու խօսքեր խօսելով, իբր թէ ասանկ ընելով բառլամէնդին՝ մարդ ընտրելու ազատութիւնը կըվերցընէր. ժողո

վուրդը չէր նայէր որ՝ Վիլքըսը իր ծանր յանցանքովը ինքզինքը անարժան էր ըրած:

Այս մարդուս պատճառով 1769 մէկ մեծ ապստամբութիւն մը իրար անցում մը եղաւ Լօնտոնայի մէջ, որ 1770ին ամէն թագաւորութեան մէջ նաև Իռլանտայի մէջ ծաւալեցաւ. կալլէսի իշխանուհին երբոր գերմանիա կերթար՝ վրան յարձըկեցան, Իռլանտային փոխարքային երբոր արքունիքը կերթար՝ ուզեցին սպաննելու. բօռդսմութ քաղքին մէջ նաւերու մաշուէնը երեցին: Այս բանիս համար թագաւորին գիր տըվին Լօնտոնային և ուրիշ քաղքըներուն դատաւորները, հասկըցընելով որ՝ իրենք մասնակից չեն ժողովուրդին ապստամբութեանը: Երբոր Վիլքըս պատիժը լմնցուց, ժողովուրդը անիկայ Լօնտոնայի Այլտերմանն, կամ մեծ դատաւոր ընտրեց, որ առաջ մէկ անգամ մը ընտրեր էր, բայց թագաւորը անոր աթոռը թող չէր տըված:

Սաքսէն, պրուսիա, ու աւստրիական հաշտութիւն կնքեն.

1763:

Երբոր վերոգրեալ հաշտութիւնը եղաւ պըրուսին տեղվանքը որ Ֆրանսացիները առեր էին ստորին Ռէնոսին վրայ, ու Վէստֆալիայի մէջ, աւստրիացւոց կամ նեմցէին տըվին. անոնք ատենը նեմցէն ու պրուսը մարտա-

դուլ (մուլթարէքէ) ըրած էին. երկուքնալ ատենալով որ բուն կռուին պատճառը վերցըվեցաւ, որ էր Փրանսային ծեծը ինկիլիզին հետ, կայսերութիւնալ չէզոք էր մնացած, իրենքալ մտածեցին հաշտութիւն ընելու: Սանկով իրեք տէրութեանց մարդիկը, այսինքն նեմցէին՝ պրուշին՝ ու սաքսոնիային ժողվըվեցան հուպերթսպուրկ բերդը որ տրէզտային մօտիկ է. երկու ամիս խօսելէն ետև՝ 1763. փետրվ. 15 ստորագրեցին հաշտութեան կայսրուհին որ և էր թագուհի մաճառստանու և պօհէմիայի կամ՝ չէհի, ու պրուշին թագաւորը. խոստանալով վերցընել ամմէն թշնամութիւնը, թողուլ տեղվանքը ինչպէս որ էին ծեծէն առաջ. գերիները մէկմէկու տալ: Պրուշին թագաւորը խոստացաւ իր հաւանութիւնը տալու որ՝ արշիդուքսը յովսէփ ընտրըվի թագաւոր հռոմայեցւոց, իսկ երրորդ արշիդուքսը ըլլայ յաջորդ մօտէնայի ու ռէճճիօի դքսութեան, որ ռադիսպօնայի ժողովին մէջը պիտոր առաջարկըվէր: Նոյն օրը պրուշը ետ տըվաւ սաքսոնիայի երկիրը իր կայսրընտրին, որ և լեհի թագաւոր էր. բայց ինչ վնաս որ քաշեց սաքսոնիան՝ անհնարին եղաւ վճարել տալ պրուշին, թէպէտև կայսրուհին շատ կըբաղձար աս բանիս:

Այս պատերազմիս պատճառովը նեմցէի կայսրուհին խարճեց 134 միլիոն ֆիօրին, աղէկ կարգ մը դրաւ իր պարտքը կամաց կամաց վճարելու թէ իր ժողովրդեան, և թէ ֆիամինկներուն՝ ու պռապանդներուն,

որոնցմէ 25 միլիոն ֆիօւրինէն աւելի փոխ ըստակ էր առած ։ Պրուշը եօթը տարուան պատերազմի մէջ խարճեց 114 միլիոն ֆիօւրին ․ աս խարճս չէր կրնար ինքը լեցընել իր երկրին եկամուտովը, կըլեցընէր սաքսօնիային եկամուտը յափշտակելով, ու սաքսօնիացոց վրայ ծանր տուրք ձգելով, ինկիլիզին տըւած օգնութիւնով, և ան աւարով որ իրեն ասպատակ (չարխա) զօրքը կըթալլէին կըյափշտակէին ուր որ ոտք կըկոխէին, մանաւանդ դուրինճիա, ֆռանքօնիա, ու մէքլէմպուրկ ։ Բայց ասոնք ամմէնը մէկ տեղ առնելով կարելի է որ չէին լեցըներ իր կորսնցուցած տեղերուն եկամուտները, ինչպէս էր վէստֆալիա՝ որ ֆրանսզները առերէին, ու բրուսիա գաւառը՝ որ մոսկովները առերէին, թող տուր ուրիշ իր ամմէն տեղերը՝ որ թշնամիները ավրերէին ։

Պրուշին թագաւորը ֆետերիքոս թէ որ աս պատերազմով շատ փառք վաստըկեցաւ իրեն վարպետութեանը համար, պէտք էր որ՝ շատ ալ ցաւ ունենայ, տեսնալով որ ամմէն ժողովուրդը՝ որ ետքի աղքատութիր հասերէին, ու անչափ կորիճներ կորսերէին, մարդիկ քիչցերէին, ծերեր ու տղաքներ մնացած էին, իսկ երկրագործ չէր մնացած ։ Ֆետերիքոս 1762 պրէզլաւ քաղաքը քիչ մը տկարութեն մէջ իյնալով, իրեն կանչեց Պայլի անուն ինկիլիզ բժիշկը, որ իր ոտքի ցաւին համար խորհուրդ հարցընէ, տեսնալով որ աս բժիշկը մէկ

կերպով ( քէնխմով , էտայով ) մը ներս
կըմնոնար սև խատուիֆէէ հագուստ հագած,
մենծ բէռուքա մը գլուխը դրած իբր վար-
պետ հնցած գիտուն բժիշկ մը ցըցընելով
զինքը, ծաղր ընելով մը հարցուց իրեն փե-
տերիքէս ։ Սինեօռ տօքթօռ ըսավ, իրաւը
պիտոր զուրցես ինծի . ինչվան հիմա քանի՞
մարդ ան դիի աշխարհը խրկեցիր ։ Բժիշկն-
ալ ծռելով, իր յարգութիը տալով պա-
տասխանեց ։ Թանգաւոր, աս գիտեմ որ՝ իմ
խրկածներս շատ քիչվոր են քան որչափ
կտրիճ որ հրամանքնիդ ան դիի աշխարհը
խրկեցիք ։ Ան ատենը ինքիրեն գալով թա-
գաւորը, Իրաւ է ըսաւ, ես սաթրանճ խա-
ղալնինի՝ խաղին քարերը բանի տեղ չիսե-
պեցի . հիմա ան քարերէն կընայիմ որ քիչ
մնացերեն ։ Սաթրանճ խաղ ըսածը իրեն
ծնծերը էին, խաղի քարեր ըսածը՝ իրեն
խեղճ զինուորները էին ։

Պըրուշյին երկրին մէջը անչափ ողութի կար
կերակուրի համար՝ որ շէզլիային մէջը մէկ
չուալ մը ցորեն՝ 20 ռիալի կըծախվէր ,
բնակիչքը ու զինուորները գետնախնձոր
( եէր էլմասին ) կուտէին, որ քանի մը տա-
րի առաջ Շլանպէնտօռֆ իշխանը անկել
էր տըված ։ Բայց մարդկային մնափառու-
թիը շատ է, աս ամմէն վնասը խեղճութիը
ժողովրդեան բանի մը տեղ չիսեպելով,
միայն իր ըրած քաջութիը մեծ բան սեպե-
լով, Ֆետերիքոս հաշտութիւնը ըմնալէն
ետև ուզեց որ՝ իբր յաղթանակօղ մը պեռ-
լին քաղաքը մտնայ, ամմէննալ փառաւո-

րեն իր ըրած գործքերը. և Թէպէտ փիլի-
սոփայ և հիւսիսային սողոմոն կըսվէր,
բայց իրեն դէմ չեկավ ժողովըրդեան շողո-
քորթութիւնը՝ երբոր իրեն Մ՝ենծ անունը տը-
վավ, Մ՝ենծ Ֆեռտերիկոս կանչելով.

## Փիլէմէնկին մէջ եղածները.

## 1759 — 1775:

Մ՝եռած ըշդատհալըդեռին կողակից իշ-
խանուհին՝ որ կառավար եղերէր Փիլէմէն-
կին, մեռաւ 1759. պատուանաւն Թագաւո-
րահայր ու դայեակ իր տղին ու աղջկանը՝
Թողուց ինկիլիզի Թագաւորը, ու որբեվա-
րի իշխանուհին օռանժ իրենց մամը. իսկ
իրական Թագաւորահայր Թողուց Փիլէ-
մէնկին Փելտ մառեշալը վօլֆէնպուդդել.
իշխաններն ալ ուրիշ ութը Թագաւորահայր
եվելցուցին, ամմէն մէկ գաւառէն մէյ մէկ
հոգի, մէյմնալ Փիլէմէնկին ազնուականնե-
րուն դիբացեն: Ա՛սիկայ քըշեց ինչվան 1766,
ան ատենը մենծութեան տարին հասնելով
տղան, իշխանները մարտի 8 ըշդատհալ-
դեռ դըրին տղան, ու ընդհանուր զօրա-
գլուխ ծովու ցամաքի զօրաց վրայ, ինչպէս
որ իրենց սովորութիւն է, որ ըսվեցաւ Ե
կուլիէլմոս նասսօի իշխան:

Ա՛ս տարվանս մէջ 1766 Փիլէմէնկը խիստ
շատ մենծութիւն ձեռք ձգեց հնտստանի մէջ.
շատոնցմնէ իրեն առած ունէր Փիլէմէնկը
ցէյլան կղզիին շատ ծովեզերքը, որ իրեն

խիստ շահաւոր էին ազնիւ համեմներուն (պահարներուն) համար, բայց կղզիին ներսի դին քանտիի թագաւորը կըթագաւորէր, որուն խիստ դէմ՝ էր եւրոպացոց մօտիկնալը. շատ հեղ ուզերեր դուրս հանել Փիլէմէնկները, բայց չէր յաջողած: Հեմա Վանէք անուն Փիլէմէնկ կառավարը՝ Քանտիին գլխաւոր քաղաքը կոխեց առաւ. թագաւորը որ հոն կընստէր՝ փախաւ, իր հետը տանելով թագը, ու քանի մը թագաւորական նշանները անգիւտ քարերով շինված. բայց շատ ոսկիէ արծըթէ բաներ, շատ ազնիւ կահ կարասիներ (թէձէմիլլէթներ,) ու շատ գանձ (խազնա) հոն թողուց. որոնք ամէնն ալ Փիլէմէնկին ձեռքը անցան. քաղաքը առածին պէս ամըրցուց, շատ զօրք դրաւ հոն պահապան:

Աս տարիները Փիլէմէնկը դրսըվանց խաղաղութեն մէջ մնաց, բայց ներսի տարաձայնութիւնը հակառակութիւնը միշտ կեփէր մէջերնին, ազգը երկուք կըբաժնէր. աս հակառակութիւնը աւելի շատցաւ վերոյիշեալ օխտը տարվան պատերազմէն ետեւ՝ ան յափշտակութենց համար՝ որ Էնկլիզը ըրերէր Փիլէմէնկին նաւերը ու ապրանքները առնելով առանց վճարելու: Փիլէմէնկին հարստութիւնը պատճառ էր եղած որ՝ իր դրացի զօրաւոր տէրութիւնները վրանին կըհառաչէին, աչք տնկած էին, իրենք Փիլէմէնկները հարստնալու ջանք ունէին, բայց ինչ օգուտ որ՝ զօրաւոր ըլլալու ջանք չունէին. ինչվան աս տանն Էնկլիզին հետ

կապված ըլլալով, գրեթէ անոր պաշտպանութ՟ը ոտքի վրայ կեցած էր Ֆիլէմէնկը։

Ծովու դիհացէն Ինկլիզն էր իր ապաւէնը, իսկ ցամաքի դիհացէն աւստրիոյ տունը կամ Նեմցէն, որուն հետալ միշտ կըջանար Ֆիլէմէնկը բարեկամութի պահել, որպէս զի աս երկուքը Ֆրանսզին ձեռքէն զինքը պահէն, որ առաջուցմէ վեր իր մեծ թշնամին էր. հիմաալ եղաւ որ՝ նոյն Ֆրանսզը Նեմցէին հետ դաշնակից ըլլալով՝ իր թշնամին զօրացաւ, ինքը Ֆիլէմէնկը տկարացաւ։ Ասկէց միջէրնին մէկ տարաձայնութի մը մտաւ. Ինկլիզին դէմ եղօզնէրը շատցան. հիմնկվան իր ըրած բաները տեսնալով՝ յիշեցին նաև իր առջի ըրածները. վասն զի աս դարուս սկիզբը՝ Ինկլիզը բռնադատեց ակամայ Ֆիլէմէնկնալ ծեծի մէջ խօթեց սպանիայի թախտին յաջորդութ՟ը համար։ Ետքը երբոր խաղաղութի եղաւ՝ նորէն բռնադատեց Ֆիլէմէնկին ստորագրել տըվալ մէկ հաշտութ՟է մը՝ որ բոլորովին շահաւոր էր Ինկլիզի, իսկ Ֆիլէմէնկին՝ որ անչափ խազնա խարճեց ան ծեծին համար՝ ոչինչ շահ կըբերէր։

Ասոնք մտքերնին բերելով, աս ի՞նչ է, մենք Ինկլիզին գերի ենք եղած ըսելով, միջէրնին մէկ կողմը սկսաւ Ինկլիզը ատել, Ֆրանսզը ուզել, աւելի զօրաւոր հաւատարիմ պաշտպան կընայ կենալ ըսելով. մէկալ կողմը Ֆրանսզը կատէր, Ֆրանսզին հետ կապվիլը աւելի գէշ կըլլայ ըսելով. վասն

զի Ինկիլիզը ինչ ընէ թող ընէ, բայց չիկըր-
նար առնել կըսէին մեր Փիլէմէնկին երկի-
րը, առնելուալ ըլլայ, չիկրնար պահել,
բայց Փռանսըզին հեշտ էր առնել մեր երկի-
րը ։ Ինչ և իցէ, ըշդատհալըդէուին տունը
միշտ կապված մնաց Ինկիլիզին դին. ասկեց
աս ազգը երկու կերպ թշնամիներ ունեցաւ
իրեն Փիլէմէնկին երկրին մէջ. մէյմը անոնք
թշնամի եղան որ՝ Փռանսըզին դին էին,
մէյմնալ անոնք՝ որ չէին ուզեր վրանին ըշ-
դատհալըդէու կամ հրամանատար ունենալ։
Ասանկով տարածվեցաւ ներհակութիւնը Ին-
կիլիզ ազգին դէմ, որ աւելի էվելցաւ եր-
բոր Ինկիլիզը ուզեց բացարձակ տէր ըլլալ
ամմէն ծովուն վրայ։

Թէ որչափ պաղութիւն ընկած էր մէջերնին
Ինկիլիզին դէմ՝ ան դիպուածնալ կըցըցը-
նէ, որ երբոր ամերիկային պատերազմը
բացվեցաւ, Փիլէմէնկը չիտրվավ Ինկիլիզին
ան նաւը՝ որ շատ ուզեց. ասկեց խիստ կը-
ծու խօսքերով գրուածներ հանեց Փիլէ-
մէնկը Ինկիլիզին դէմ։ Երբոր մէկ տէրու-
թեն բարոյականը աղէկ չըլլայ, ան տէրութիւնը
չիկրնար երկան քշել. Փիլէմէնկին մեծ
պակսութիւնը ան եղավ որ՝ մէջինները խել-
վընին մտվընին հարստնալու տըվերէին.
քանիալ որ հարուստ էին, այնչափալ ան-
տանելի ագահութին ու անկշտութի ունէին.
ժզ. ժէ դարուն պատմութիւնը կըցըցընէ ա-
տոնց ըրած վնասները որ ագահութէ շարժ-
վալ ըրին փօրթուկալըներուն և ուրիշնե-
րուն.

Իրենց բաժանորդութեան (քոմբանիային) հարստութիւնը այնչափ շատ էր, այնչափ նմաւէր՝ բերդեր՝ քօնսօլներ՝ ունէին, որ անոնց դրօշակներուն (պայրախներուն) միայն տարեկան խարճը՝ հարիւր հազար ֆիօրինի կըհանէր․ ժողովրդեան մէջնալ այնչափ առանձին հարուստ մարդիկներ կային, որ թագաւորի գանձ (խազնայ) կըգըտնըվէր քովերնին, ինչվան 200 հազար քէսէ, 400 հազար քէսէ ունեցող մարդիկ կային, չէթէ տէֆթէրի մէջ հիսապով, հապա նաղտ ըստակ իրենց մահսէններուն մէջը պահված, ինչ կերպ ըստակ որ ուզէր մէկը, ան կերպ ըստակը կըհանէին կուտային, բայց իրենց թագաւորուն խազնան մասնաւորաց հարստութեան չէր համեմատեր, անհնարին տուրք ձգելով ամմէն բանին վը՞ր, ինչվան պատուհաններուն վը՞ր անանկ մէկ տարեկան եկամուտ մը սահմանեցէին իրենց տէրութեը համար։ Միմտածեցին որ հարստութեան հետ պէտք է ուժնալ շատցընել՝ որ դրացի տէրութիւներէն վախ չունենան, չէնէ գերի կըլլան անոնց․ իրենց անհատնում ըստըկօճնին կըտային ինկիլիզէն ու ֆրանսզէն աւելի զօրք միշտ ոտքի վրայ պահել, իրենք անոնց վրայ վախ ձգել տալ․ ինչպէս որ պրուշը իրենցմէ պզտիկ ու չքաւոր սասանկ ըլնելով քովի թագաւորներուն որ իրմէ շատ մեծ են՝ վախ ձգել տըվեր է։

Բայց աս ըլնելու՝ աղէկ միաբանութիւն ու խելք կուզէ որ աւելի միապետութեան մէջ կըլլայ, ինչպէս որ ըլլաւ պրուշը, բայց հասա-

ռամկապետութեանց մէջ դժար կըլլայ ։ Փիլէ-մէնկները շատվոր ըլլալով չէին միաբաներ իրենք իրենց ընտակը կըմեղքընային ա-սանկ հարկաւոր բանի խարձելու ։ Մէկալ դիպացէնալ տարաձայնութիւնը օրէօր կըշատ-նար, որ ցեց (կիւմէ) մինէ, երբոր մէկ հասարակութեան մը մէջ կըմտնայ, կամաց կամաց կրծելով հարկաւորապէս մէկ օր մը կըմաշէ կըկորսնցընէ, ինչպէս որ եղաւ աս Փիլէմէնկին անուանի հասարակապետու-թեանը՝ որ վարը պատմենք ։

## Պրուշէ, սաքսոնիայէ, ու յոնկէֆ արշէրէն Վը-րայէ եղած դիպուածները ։

## 1757 — 1763 ։

Պրուշի ժողովուրդին մէջէն շատ մարդ-կար որ՝ Ֆետերիքոսին մեծնալէն ձանձրա-ցած էին, իրեն որոգայթ լարեցին որ՝ մեռ-ցընեն, բայց մէկ զարմանալի կերպով մը խալըսեցաւ ։ Մէկ զինուոր մը որ սենեկա-պետի տեղ Ֆետերիքոսին կըծառայէր, 1757ին մէկ առտու մը իրեն չիքօլադ բե-րաւ, որ սովորութիւն ունէր՝ արթնցածին պէս կըխըմէր Ֆետերիքոս ։ Աստոր երեսը նայ-եցաւ՝ տեսաւ բոլորովին այլայլած, ձեռքն-ալ դող եղած, սաստելով մը հարցուց Ֆե-տերիքոս, ինչ ունիս, շուտ մը պիտոր զրու-ցես շիտակը ։ Սենեկապետը ոտքը ընկնելով խոստովանեցաւ որ՝ ան չիքօլադը թիւնա-

ւորած (շէհիրլի) էր. և իրաւ որ՝ փորձեց, մէջը հաց թաթխած փինօ շանը տըվածին պէս, շունը երկու ժամու մէջ տանջըվելով մեռաւ. Ֆետերիքոս խրկեց աս զինուորը Սբանտավ բերդը ուրիշ յանցանք վրան ձգելով, չիթողուցաւ որ վրան քննութին ըլլըվի. բայց տարիէ մը ետքը մեռած գտան անիկայ իր բանտին մէջը.

Ուրիշ հեղմըն ալ Մարքօզ անուն ազնուականն մը շլէզացի՝ շատ ջանք ըրավ որ նեմցէներուն ձեռքը գերի ձգել տայ ֆետերիքոսը, յուսալով որ աս բանիս համար շատ վարձք առնէ նեմցէներէն, անով իր եկամուտները շտկէ, որ խաղի մէջ կորսնցուցեր էր: Երբոր ֆետերիքոս շվէյտնից բերդին մօտիկ քիչվոր զօրքով կընստէր, աս վարքօչնալ իժիր կերթար հոն իր յարգութիը ընելու, տեսնալով հոն իր զօրաց քիչվորութիը, ամմէն բանը մէկ զինուորի մը ձեռքով կըծանուցանէր նեմցէի գնդապետի մը (քօլօնէլլօի), որ էր վալլիս կոմսը. բայց ան զինուորը գիշեր մը գինովցած ըլլալով, ամմէն բանը պատմեց իր կնկանը, ինչ խօսք ու թուղթ որ կըտանէր կըբերէր. Երբոր աս մարդս քուն եղաւ, կնիկը թըղթերը իր երկանը վրայէն առնելով տարաւ ֆետերիքոսի թագաւորին տըվաւ. Ֆետերիքոս կարդաց իմացաւ, կնկանը շատ ըստակ ու վարձք տըվավ, խոստացաւ ալ որ՝ իր երկանը ներումն տայ, ինչպէս որ կնիկը կըխնդրէր. վարքօչը բռնել տըվավ, բանտը դըրավ, որ ետքը շատ ըստակ տալով իր

պահապաններուն, փախաւ եկաւ նեմցէին քով։

Աս ատեններս Ֆետերիքոս մակտէպուրկին մէջ բանտը դրաւ Պուրէնք պարոնը որ իր սիրականն էր. վասն զի կասկած առաւ որ՝ շատ բերդերին օրինակը (ռէսիմը) մոսկովներուն էր խրկած, թէպէտեւ անիկայ շատ թղթեր գրեց իր անմեղութիւնը ցըցընելու համար աս բանիս մէջը։

Սաքսոնիային կայսրընտիրը Ֆետերիքոս օգոստոս Բ, որ և լեհի թագաւոր էր, շատ վիշտ ունեցաւ սաքսոնիային երկիրը աւըրվելուն համար, մէյմընալ իր զաւկին զըրկըվելուն համար քուռլանտիայի դքսութէ, ինչպէս որ վերը պատմեցինք. հաշտութիւնը ըլլըվելէն ետեւ՝ երբոր մտաւ սաքսոնիա իր կայսրընտրութեան երկիրը, ուսկից օխտը տարի փախած էր պատերազմին պատճառովը, հոն յանկարծ մեռաւ 1763. հոկտ. 5. երբոր ասոր մեռելը բացին, մէկ ուռեցք մը գտան սրտին մէջը, ու մէկ թանձր քար մը լեղիին մէջը. անիկայ բարի էր ու առատաձեռն, բայց անհոգ իր երկիրը զօրացընելու, իր զօրաւոր դրացիներուն դէմ դնելու համար. իրեն ընկեր ունեցաւ մարիամ Ճիուզէփփինա, յովսէփ կայսեր աղջիկը, ուսկից շատ զաւակ ունեցաւ. առջինեկ զաւակը Ֆետերիքոս քրիստիանոս լէոպոլտոս՝ իր տեղը սաքսոնիայի կայսրընտիր նստաւ, որ խիստ ողորմած մարդ ըլլալով իրեն բաները սաքսոնիայի մէջի եղած աղքատներուն կուտար, բայց անիկայալ ծաղ-

կէն բռնըլվելով իր երիտասարդութենը մէջ մեռաւ դեկտ. 17: Իր տեղը սաքսօնիայի վրայ կայսրընտիր նստաւ Ֆետերիքոս օ-գոստոս Գ: պզտիկ տղան, որուն կառավար երկան ատեն եղաւ քսավերիոս իր հօրեղ-բարը:

Յովսէփ արշիդուքսը երբոր 18 տարվան ե-ղաւ, բնութիւն ըլլալով կորիճ տաքարիւն, խնդրեց իր մօրմէն կայսրուհմէ՝ որ զօրաց վրայ ինքը գլուխ ըլլայ, որպէս զի աւելի կրթէ անոնք ան կրթութիւնը՝ որով պրուշին թագաւորը կըկրթէր իր զինուորները բայց խորհրդականք աս բանիս չհաւանեցան, այլ մանաւանդ կայսրուհւոյն ըսին որ՝ յորդո-րէ անիկայ կարգըլվելու: Յովսէփալ իր մօ-րը հնազանդելով կարգըլվեցաւ 1760. հոկ-տեմ. 14. առնելով փիլիպպոսի բառմայի դուքսին աղջիկը՝ որ կըսվէր մարիամ եղի-սաբեթ, բայց երբոր երկրորդ աղջիկ զա-ւակը բերելու եղաւ՝ ծաղիկ հանեց, ծաղ-կէն մեռաւ մարիամ 21 տարվան, 1763. նոյեմբ. 27:

Յովսէփ հռոմայեցոց թագաւոր կըլլայ, ու տէրութեան նորոգ աշխատութիւն կարգը կըստահմանէ, եւ զա-քէշ բարեկարգութիւններ.

1764:

Սոյն տարի սաստիկ պատերազմներէն ետեւ՝ երբոր վերոգրեալ հաշտութիւն լմնցաւ, գրեթէ ամմէն եւրոպա հանգչեցաւ, յոր-

նութիւն առաւ մանաւանդ Նեմցէն . ան ատենը Նեմցէի կայսրուհին Մարիամ Թերէզիանան ուզեց որ՝ յաւելէփ իր ամուսնին զաւակը ընտրուի Թագաւոր Հռոմայեցոց ու կայսր գերմանիայու, որպէս զի երբոր մեռնի իր հայրը ա̄ Ֆրանչիսկոս կայսրը, յաւելէփ առանց մէկ կռուի մը իր տեղը կայսր նստի, որուն համար Ֆետերիքոսի պրուշի Թագաւորին հաւանութիւնը առերէին վերոյիշեալ հուպէռտսպուրկ եղած հաշտութեան մէջ, որ ասոր բանին համար իր հաւանութիւնը տըւաւ իբրև կայսրընտիր պրանտէպուրկի, ամմէն ուրիշ կայսրընտիրներուալ իրենց հաւանութիւնը տըվին . անոնց ետևէն գերմանիայի ուրիշ իշխաններն ալ հաւանեցան : Բայց խնդրեցին որ իրենց իրաւունքը պահէ, վասն զի օրէնք էր որ՝ նոր պսակվողը պէտք էր խօսք տալ պահելու ան արտօնութիւնները ու թէութիւնները՝ որ շահաւոր էին կայսերութեան զանազան իշխաններու, բայց աս բանս կամաց կամաց անանկ շատցերեր որ կայսեր իշխանութիւնը գերմանիային վրայ՝ իբր վենետիկի դուքսին իշխանութիւնը դարձերեր (1) :

---

(1) Պէտք է գիտնալ որ՝ Մծին կարոլոսի ցեղը հատնելէն ետև՝ գերմանիայի իշխանները միշտ փընտըռեցին որ՝ իրենց մէկ գլուխ մը կեցընեն զիրենք պաշտպանելու, բայց չունենայ այնչափ զօրութիւն որ՝ զիրենք հպատակի պէս բանէ, ինչպէս էին սկըզբանը . ա լէոպոլտոս կայսրը երդվեցաւ որ՝ ինչ կուզեն կատարէ, որպէս զի զինքը կայսր ընեն, ժդ լուիզ Ֆրանսային Թագաւորը կայսր չընեն, որ ետևէ ընկերէր ինքը կայսր ըլլալու .

Գլխաւոր Թէութիւնները՝ որ նոր պսակված ատենը կայսրը կըխոստանայ, ասոնք են ։ Պաշտպան կենալ քրիստոնէութե̃ ու հռոմայ եկեղեցւոյ, պահէ խաղաղութի̃ը կայսրութե̃ մէջ, և արդարութի̃ ընէ օրինացը կէօրէ առանց բացառութե̃, պաշտպանէ կայսրընտիրները, ու բռօղէսդանդ իշխանները, Թող տալով իրենց դաւանանքը բանեցընելու, առանց կոտրելու մէկ խօսք մը վէսդֆալիա եղած դաշնադրութե̃ խօսքերէն՝ որ եղավ 1640 . ու երբ հիմն եղավ գերմանական սահմանադրութե̃ ։ Ընչխաս պահէ ամէն հասարակապետութի̃ները ու շրջանակները ( գաւառները ), որ վայելեն իրենց յատուկ եղած իրաւունքները ու արտօնութի̃ները . մէկ բան մը չիփոխէ ան բաներէն որ՝ կըվերաբերի կայսերութեան մարմնոյն կամ ժողովքին, առանց բացայայտ հաւանութե̃ ամէն գաւառներուն որ ան մարմինը կամ ժողովքը կըկազմեն . չիպահանջէ կայսր ըլլալու իբր ժառանգ ան պատուոյն, իրաւունք ժառանգութե̃ փընտըռելով . այլ պէտք է անանկ սեպել որ՝ կայսր նստօղը միշտ կայսրընտիրներուն բացարձակ ընտրութի̃ը կըլլայ ։ Բայց աս Թէութի̃ներս ճիշդ պահել տկար եղօղներուն համար է . անոր համար վերոյիշեալ լէօբոլտոսը, և իրեն տղաքը ա̃ յովսէփ, ու Զ̃ կարոլոս մտիկ չընելով աս կանոններուն, շատ մեծ իշխանութի̃ բանեցուցին գերմանիայի վրայ, ասոր դէմ է̃ կարոլոսին ատենը կայսերական իշխանութի̃ը շատ ըն-

կալ, անոր համար ալ Փրանչիսկոս շատ աչ-
խատեցաւ քիչ մը վեր հանելու։

Կայսրընտիրները խօսք առնելէն ետև՝ որ իրենց արտօնութիւնները պահէ, իրենք ալ հաւանութիւննին տուին մարտի 27. Փռանքֆօռդին մէջ Յովսէփը Հռովմայեցւոց Թագաւոր դրին. վճռեցին ալ որ՝ Փրանչիսքոս մեռնելէն ետև՝ ինքը Ե. Յովսէփ կայսր ըլլայ, անուանելով Ռոմանոց [illegible]. [illegible] [illegible], [illegible], [illegible], [illegible]՝ որ է [illegible]. [illegible] ապրիլի 3 իր հանդէսը (ալայը) ըրավ, նստելով ութը ձիով առապայլին մէջ, որ առապան որ կընստեր իր հայրը. իսկ ապրիլի 9 Թագադրութեան հանդէսը ըրավ, ետքը գնաց Վիեննա։

Իր մայրը Մարիամ Թերեզինա կայսրուհին շատ ուրախութիւն ըրավ աս բանիս համար, և ուզելով որ՝ աս Թագաւորութեան յիշատակը միշտ մնայ, նոր կարգ մը սահմանեց ասպետներու, Ս. Ստեփաննոսի անունով (1), որ իրեք դաս կըբաժնըվի։ Առջինը կըսվի դաս Մեծ խաչի, ուր 20 հոգի միայն կրնան գրվիլ. երկրորդը՝ հրամանատարներու, 30 հոգիի, երրորդը՝ սոսկ ասպետնե-

(1) Աս նը Ստեփաննոսը տասներորդ դարուն մէջ առաքելական Թագաւոր էր մաճառստանու, և Սեղբեստրոսէն Հռովմայ քահանայապետէն Թագ առնելով, Մեծաւոր կամ կռան մայէսդրօ էր եղած, որ երբ անբաժան էր մաճառի Թագաւորութենէ, ետքը ան անունը ձգեց, որպէս զի Թագաւոր հռոմայեցոց ըսվի։

րու ; 50 հոգիի, ամէնը մէկէն կըլլան հա-րիւր հոգի, առանց համրելու եկեղեցա-կանքը՝ որոնց մէջ անոնք ալ կրնան դրուիլ։ Ամէն մէկ դասնալ երկերկու ուրիշ դաս ունին իրենց տակը, որ կըտարբերին չէ-թէ միայն հագուստով ու նշանով, հապա նաև տարբեր արտօնութիւնով, ասոնց մէ-ջը կրնան մտնալ ով որ ունենայ այն ար-դիւնքը՝ որ կըպահանջուի։ Աս ատենը տըր-վեցաւ վերջին հաստատութիւնը՝ նաև այն կարգին Մարիամու Թերեզինային, որ 1757ին սահմաներեր յիշատակ այն յաղ-թութեր՝ որ իր զօրագլուխը Տաուն ըրաւ պրուշին վրայ Գօլին ըսուած տեղը պօէ-միայի մէջ։

Կայսրուհին մէկ կալուած մը սահմանեց 50 հազար ֆիօրին եկամուտ բերող, տա-րին 1500 ֆիօրին բաժնելով ամէն մէկ հոգիի Մեծ խաչի դասին, իսկ մնացածը ամէն մէկ հին ասպետներու 600ական ֆիօրին բաժնելով, անոնց կէսը դարձը-նելով որբեվարի մնացողներուն վրայ։ Ինչ հազարապետ (ուֆֆիցիալ) որ ըլլայ՝ կըր-նայ կարգին մէջը մտնալ, միայն թէ վկայ-ներով պիտոր ցըցընէ իր արդիւնքը պա-տերազմի մէջ. չինայվի ամենևին ցեղին ազնուութիւնը, կամ մէկի մը միջնորդութիւնը, հապա միայն քաջութիւնը ու արդիւնքը։ Նոյնէց տեղը կայսրուհին մնձեռուն խաչ-հըրդովը նորէն կարգեց ուզեց յովսէփ, առնելով մաքսիմիլիանոսի պավիէռայի կայսրընտրէին քոյրը, որ էր պզտիկ աղջիկը

է կարօղոս կայսեր. և թէպէտ յովսէփ չէր ուզէր կարգըվելու, բայց մենծերուն խորհրդովը 1765. յունվ. մէջ կարգըվեցաւ անոր հետ. ըստ որում կայսրընտիրը մանչ զաւակ չունենալով, ինքը յովսէփ ժառանգ կըլլար կամ կէս պավլիէռային, և կամ բոլորին՝ երբոր ինքը մանչ զաւակ ունենար։ Աշխարհակալ մարդիկ կընային որ սրով արիւնհեղութեամբ նոր երկիրներ վաստըկին; բայց կենցաղակիրթ (բօլիթիքօ) մարդիկ կընային որ վարպետութի̃ մը վաստըկին, իրաւունք բերելով. բայց վարը պատմենք թէ ինչ խռովութիններ ելան տէրութենց մէջ աս պավլիէռային ժառանգութեր վրայ ։

Կայսրուհին Մարիամ Թերեզինան ուրիշ արուեստներէն զատ՝ սկսաւ նաև վաճառականութիր ծաղկեցընել իր երկրին մէջը՝ մանաւանդ Շլէզիային մէջը՝ որ շատոնցմընէ խափանված էր. պրուշին հետ խօսք գնելով որ՝ նեմցէն կարօղ ըլլայ 3 միլիոն Ֆիօրինի ապրանք խօթելու պրուշին երկիրներուն մէջ չափաւոր տուրք մը տալով, Շլէզիային ձեռագործներնալ իր նեմցէին երկիրը բերելու, մանաւանդ իրեն ազնիւ կտաւները։ Սայխսին սկիզբներնալ թուղթ մը հանեց, թէ ով որ նեմցէի տէրութեն շահու ըստակ տըրված ունի, միշտ հարիւրին չորս շահ առնէ, և ամմէն տուրքէն ազատ ըլլայ։ Դատաստաններու համարալ ուզեց մէկ նոր կանոն մը դնել, որպէս զի շատ չերկնցընեն մէկ դատ (տավա)

մը կտրելու, ասով կըլլերցըն էր կաշառա-
ռութիւնը, խարդախութիւնը, ու անիրաւութիւնը,
որ կըմտնան երկու դատախազներուն (տա-
վաձիններուն) ու դատաւորներուն մէջ։
Բայց ինչպէս որ կըսեն, շատ հեշտ (խօ-
լայ) է աշխարհ ամմէն մէկ տէրութեան մը
տակ ձգել, քան թէ խարդախութիւնները
դատաստանէն վերցընել։

## Լեհին մէջը եղած խառնակութեան ու Թագաւորու-թիւնը.

## 1763 — 1764։

Հաշտութիւնը ըլլալէն ետեւ՝ չէ թէ մինակ
նեմցէին երկիրը ասանկ խաղաղութեան
պտուղը սկսաւ վայելել, հապա գրեթէ
նաեւ ամբողջ Եւրոպիա քօռսիքայէն զատ,
բայց միայմինակ Լեհիս որ՝ մէկ չիկարծած
խռովութիւն մը սկսաւ Լեհին մէջ, ան խռո-
վութիւնը չիլմնցաւ, ինչվան որ Լեհին տէրու-
թիւննալ չիլմնցաւ, տակնուվրայ ընելով
իր հետ նաեւ ուրիշ տէրութիւններալ, որ և
եղավ աս դարուս մէջը մէկ երևելի թուա-
կան մը ամմէն Եւրոպիայի փոփոխութեց։
Աս խռովութեան սկզբնաւորութիւնը եղավ
մէյմը քուռլանտիայի դուքսին փոխվելուն
պատճառովը՝ որուն համար մոսկովլին զօր-
քը Լեհին մէջըն էին մնաց, ծեծի պատրաս-
տութիւն մը կըցըցընէին. միայմինակ եղավ
Լեհի թագաւորին մեռնելովը, որ էր վե-
րըյիշեալ Գ օգոստոս. աս թագաւորիս մեռ-

նելովը՝ գրեթէ մնաւ նաև Լեհին թա-գաւորութիւնը ։ Ասան զի Մոսկովն ու Պրու-շը վախնալով՝ չըլլայ թէ երկու Լեհի թա-գաւոր իրարու ետևէ Սաքսոնիայի կայս-րընտրին տունէն ըլլալով, Լեհին թագաւո-րութիւնը կամաց կամաց անոր տանը վրայ անցնի, անոր համար ՚ի Կատարինէ Մոսկովին Թագուհին՝ իր վէզիրին խորհրդովը՝ որ էր Պանինն ըսուած կոմսը՝ Պրուշին հետ 1764 մէկ յայտնի դաշնադրութիւն մը ըրաւ մար-տապահ, այսինքն իրար պաշտպանելու, ու Լեհին բարեկամութիւնը նորոգելու, բայց տա-կէն ծածուկ միաբան խօսք դրին դէմ կե-նալու, չըլլայ թէ Լեհին թագաւորութիւնը ժառանգութեամբ Սաքսոնիայի ցեղին վրայ մնայ, կամ ուրիշ անանուն ցեղի մը վրայ՝ որ զօրաւոր էր ։ Կարելի էր որ՝ ան առենէն ալ մտքերնին դրին իրենք տիրելու Լեհին վրայ, տեսնալով որ՝ մէջի երկպառակու-թիւնը ( ֆուխան ) ու բաժանմունքը շատ հեշտ կընէր ( կըխօլայցընէր ) վրանին իշ-խելը, անոր համար չըլլայ թէ դուրսի տէ-րութիւններէն մէկը Լեհին պաշտպան կենայ, չէին ուզեր որ դրսեցի տէրութիւններէն մէ-կը Լեհի թագաւոր նստի ։

Աս բաներս կենցաղագէտ ( բօլիդիքօ ) մարդիկներ իրենց խելքովը շօշօրդ մը հասկընալով, աս դիս ան դին կըզրուցէին, որոնց վրայ տաքնալով Ֆետերիքոս Պրու-շին թագաւորը՝ ինչպէս նաև Մոսկովը՝ ի-րենց դեսպաններուն ձեռքովը Վարշով քաղաքին մէջը՝ սուտ հանել կըջանային ան

խօսքը՝ որ Լեհերուն մէջ հռչակւեր էր՝ թէ իրենք երկու տէրութիւն ամմէն Լեհը պիտոր առնեն, իրենց մէջը պիտոր բաժնեն. հաստատելով որ աս բանս ամենեւին մեր միտքէն չէ անցած, ու ամենեւին դէմ է ան բարեկամութեան կապին՝ որ ազգերը իրարու հետ կըկապէ։ Թէպէտեւ իրաւի 1772 գործքով ըրին, ինչպէս որ ետեւէ ետեւ պիտոր պատմենք։

Ասկէց զատ մոսկովը կուզէր պաշտպան կենալ Լեհի մէջ եղող օտարահաւատներուն, մանաւանդ ռուս ռութէններուն, որ իր դաւանանքովը էին ու խիստ գանգատ կըվերցընէին։ Աս պատճառներով մոսկովն ու պրուշը շուտ մը հրատարակեցին որ՝ Լեհի թագաւոր չենք ուզեր որ՝ դրսի տէրութիւններէն մէկը ըլլայ, հապա կուզենք որ՝ Լեհին մէջէն մէկը ըլլայ. աս խօսքիս վրայ շատ զարմացան Լեհերը, վասն զի քիչ մը առաջ՝ թագաւոր ընտրելու ատենը՝ աս վճիռը ըրած էր Լեհին ազգը, բայց մոսկովը ան վճռին դէմ ելլալով արգելեր էր, Լեհին սահմանադրութեանը դէմ է ըսելով. հիմա մոսկովը ինչպէս իր ըսածին ներհակը կըհաստատէ, ու Լեհին սահմանադրութիւնը ազատութիւնը ուրիշ կերպով մը կըկապէ։

Ինչ և իցէ, Լեհերը օրէնք ունէին՝ քանի ատեն որ դուրսի տէրութեանց զօրքը կեցած ըլլան Լեհաստանին մէջը, Լեհերը չկրնան ոչ պզտըլտիկ ժողովք մըն ալ ընել, և ոչ թագաւոր ընտրել, բայց մոսկովը

միշտ զօրք խրկելու հետ էր լեհին մէջը, նոյնպէս պրուսը կըխրկէր սահմանակից տեղվանքը. երբոր ասոր պատճառը կըհարցընէին, կըպատասխանէին որ՝ լիթուանիայի մէջ (1) մէկ միաբանութի մը ըրած կար, անոնք աղաչերէին մոսկովին որ իր զօրքը խրկէ ։

Աս լեհին ազգը դաս դաս բաժնըված ըլլալով՝ ան դասը որ քիչվոր էր, դուրսի տէրութիւններուն կըդիմէր որ զինքը պաշտպանեն, շատ հեղալ դուրսի տէրութեանց ոսկին էր՝ որ ասանկ մարդիկներու՝ ասանկ միաբանութիւններ ոտք հանել կուտար, որոնք ազգին անունը վրանին առնելով իբր ամբողջ ազգ զիրենք կըձևացընէին, ու իբր ճշմարիտ հայրենասէր կիշվէին ։ Քանի հեղ որ լեհերը շընկոց կըվերցընէին մոսկովին զօրքը դուրս հանելու, անոնք ուրիշ բան չէին ըներ որ՝ մէկ տեղէն մէկալ տեղը երթալ, իբր թէ ազատութիւն տան պզտիկ ժողովներ ընելու. թէ որ ան ժողովները մոսկովին ուզածին պէս չէին ըլլար, շուտ մը նորէն հոն կուգային զօրքը, ինչպէս եղավ կուավոտէնց, ուր ժողովքին ատենը յանկարծ դարձան եկան մոսկովին զօրքը, փաթթեցին ժողովքին տեղը, ու մեծերուն վրայէն զէնքը առին ։ Երբոր լեհերը կաղաղակէին թէ ասով իրենց անկախութիւնը՝ ազատութիւնը՝ իրաւունքը՝ ու սահմանադրութիւնը կըկորսըվէր,

(1) Լիթուանիա լեհէն մէկ մեծ կտորն է ։

մոսկովները միշտ կըպատասխանէին որ՝ մենք հոս եկեր ենք ձեր ազատութիւնը ու օրէնքը պաշտպանելու ։

Ըսանկ չհասկըցվելու խորթնաբանութիւներ ( տիլմէճներ ) ըսելով լեհերուն մէկ մասը կըսայեր որ՝ զէնք առնէ իրենց ազատութիւնը պաշտպանելու համար, իրենց ուզածին պէս թագաւոր նստեցընէ. մէկալ մասը ճանչնալով իրենց տկարութիւնը, կը խոնարհէր ուրիշ տէրութիւններուն կամքին տակը, որպէս զի քանը աւելի գէշի չերթայ. մէկ երրորդ մասմըն ալ կըսայեր որ՝ իր առանձին շահին դարձընէ ամմէն բանը ։ Տասնըմէկ ամիս քշեց ինչվան որ թագաւոր նստեցուցին, ան տասնըմէկ ամսըվանը մէջ շատ խռովութիւն մէջ ընկաւ լեհաստան մանաւանդ ազանդաւորներուն պատճառավը ։ Ըսանք ամմէնմնալ շատ կըճշգոհային, ինչու համար մեզ մէկ պաշտօնի մէկ իշխանութիւն մը՝ չեն հաներ ըսելով, մենքալ իրենց պէս լեհ ենք, այս բանս անիրաւութիւն է կըսէին ։

Ըս վէճը տրտունջը շատմնցմնէ դադրած էր, բայց նորէն վառվեցաւ բռնկեցաւ երբոր խռովարար դուքսը էրնէստոս պիռօն դարձաւ, նորէն քուռլանտիայի ու սեմիկալլիայի դուքս եղաւ մոսկովին ձեռքովը՝ ինչպէս որ առաջ պատմեցինք ։ Ըսնոր համար զանազան գաւառներուն մէջ ուղղափառներուն մեծերը աշխարհական ու եկեղեցական բազմութիւն ժողովներ կընէին, դաշնադրութիւն դնելով մէջերնին

որ զսպեն աղանդաւորներուն ու օտարա-
հաւատներուն յանդգնութիւնը, ազատու-
թիւնը, ու ուղղափառներուն ժողովները
ըսկեցան լատիներէն Ռժքէռնէոադի, որ
ըսել է Պռաչիֆիկցէադ, Սէռէճաննէադ, ամմէ-
նուն ծանուցում հանեցին հրապարակա-
սանկ. „Մենք ուրիշ միտք չունինք, բայց
„ եթէ անարատ պահելու մեր առջիննե-
„ րուն հաւատքը, որ էր ուղղափառ հառ-
„ մէական հաւատքը, անխախտ պահելու
„ մեր հայրենեաց հանգստութիւնը, որ չար
„ մարդիկները տակնուվրայ կընէին. ու
„ չար մարդիկները լեհին հին սահմանա-
„ դրութիւնը կըքամահրէին, մէկ նոր կա-
„ ռավարութիւն մը կուզէին խօթել, որով
„ անմեղները կանարգըլվէին, և չարերը ա-
„ ռաջ կերթային, ինչ կուզէին՝ կընէին,
„ ինչպէս որ քիչ մը առաջ լըքացան նաև
„ առանձին տները միտան, դատաւորաց
„ տներուն պատուհանները քարկոծեցին,
„ մէջի մարդիկները սպաննեցին, նաև դա-
„ տաւորները իրենց դատաստանարանին
„ մէջը մեռուցին: Մենք զսպելու՝ մեր
„ օրէնքը, ազատութիւնը, կեանքը ու ստա-
„ ցուածքը պաշտպանելու համար կապված
„ միաբանված ենք, խօսք տալով իրարու
„ օգնելու դէմ կենալու ով որ աս բաները
„ ավրել ուզէ, ու լեհին հիմնական կա-
„ ռավարութիւնը փոխել ուզէ“:
Աս ամմէն հրատարակած խօսքերուն միտ-
քը աս էր որ՝ տակէն կուզէին իմացընել
սպառնալով որ մոսկովին դէմ կելլանք:

## Լեհերը ժողով կընեն իրենց Թագաւոր ընտրելու, Մոսկովին բռնադատելովը Ռուսիացւոց կամքը Թագաւոր կընտրեն.

## 1764.

Ասանկ խռով կացութեան մը մէջ ըլլալով լեհը, Գնեզնայի արքեպիսկոպոսը [1] 1764, մայիսի 7 թուղթ մը հրատարակեց, մէջը հրաւիրելով որ՝ լեհին ամէն գաւառները իրենց նուիրակները խրկեն, որպէս զի ընհանուր ժողով ըլլայ նոր թագաւոր ընտրելու համար, նաեւ ուրիշ թագաւորներուն թուղթ խրկըվեցաւ, բայց թագաւորները՝ մանաւանդ տաճիկը պատասխանեցին որ՝ լեհին թագաւոր ընտրելը՝ ժողովին մէջէ եղօղներուն կիյնայ, ինչպէս որ իրենց սահմանադրութիւնը կըպատուիրէ, մենք չենք խառնըվիր՝

Վօլօ ըսված տեղը՝ որ վարշով քաղքին քովն է, ժողվըվեցաւ մեծ ժողովը, մէյմընալ տեսան որ՝ մոսկովի զօրքը չորս դին փաթթեր պաշարեր էր ժողովին տեղը. լեհերը սկսան դէմ զուրցել ըսելով, որ ասիկայ ժողովականաց ազատութիւնը կըվերցընէ. բայց մոսկովցիները պատասխանեցին որ՝ պէտք է որ մենք պահպանենք որպէս զի ժո-

(1) Ասիկայ է եպիսկոպոսապետ ամէն լեհաստանի ու լիթուանիայի եպիսկոպոսներուն վրայ. Թագաւորէն եւս աս էր լեհին մեծը:

ղովին մէջը մէկ խռովութիւն մը չելլայ ։ Մոս-կովի նման նաև պրուշնալ իր զօրքը խրկե-լով նոյն խօսքը կըզրուցէր, մանաւանդ թէ պատճառաւ կըբերէր որ՝ Կրամլոէնց տե-ղը երբոր պզտիկ ժողով եղաւ, որչափ որ զանազան կարծիք ունեցող նուիրակներ կային, թրով զարկին, եկեղեցնայ պա-տիւնաւ չխնայելով որուն մէջը ժողվըրվեր-էին, արիւնով հայհոյութիւնով պղծեցին եկեղեցինաւ ու հոն եղած գերեզմաններու-ալ ։ Աս խօսքով աշխարհ ամէն զարմա-ցաւ Փետերբուրքոսի պրուշի թագաւորին վրայ, որ անօթ մէյմը դրերէին, իսկ աս բանիս մէջը կըտեսնային ասանկ նախա-ձայոյգ ջերմեռանդութիւն մը նաև եկեղեց-նայ ու գերեզմանի պատուոյն վրայ, և վրէժխնդրութիւն մը հայհոյողներուն վրայ ։ Ասչափ օտար զօրաց բազմութիւնը տեսնա-լով իշխանները խիստ խռովեցան ։ Մալա-խովաքի իշխանը (1) առջի ժողվըվիլը ըրաւ,

---

(1) Աս Մալախովաքի ցեղը որ լիթուանիային մէ-ջը պինտ երևելի ցեղերէն է, հայու ազգէն են ին-ջած, ինչպէս իրենք լեհերնալ կըսեն. աս ցեղս ա-ռաջ կըսվէր Խորխոռունիք, ետքը մեր վաղարշակ թագաւորին օրը Մաղխազունիքալ ըսվեցան, որոնք ետքը լեհ փախչելով, հոն իրենց անունը փոխվե-լով Մալախովաքի ըսվեցան ։ Աս ցեղին մարդիկնե-րը ըլլալով կորիճ ու յաղթանդամ՝ իրենց պաշտօ-նը եղաւ հայու թագաւորին թիկնապահ (սիլէհ-տար) ըլլալ, հիմակվան մալախովաքիներնալ լեհին մէջը նոյնպէս սրտոտ մարդիկներ են, ու ամէննալ զարհուրելի դէմքով, անանկ որ իրենց դէմքովնալ կըճանչցըվին որ օտար ազգէն են եկած, ինչպէս էին

բայց տեսածին պէս որ ան տաճարին (տի-վանխանէին) դուները մոսկովի զօրք պահապան կեցած էին, ու շատ մոսկովներու նստերէին ան նստարաններուն վրայ՝ ուր որ լեհին գաւառներուն նուիրակները պիտոր նստէին, աղաղակեց որ՝ ես քան մը չեմ ըներ՝ ինչվան որ ժողովը չիգտնամ իր ազատութեանը մէջ ինչպէս որ պէտք էր․ մալախօվքիին ըսածը զօրաւոր խօսքերով սկսաւ պաշտպանել Մօքրանօվքի իշխանը, բայց սաստիկ խռովութ ելլալով խօսքը կտրեց․ աս դիէն ան դիէն ոմանք թուրերնին հանեցին, վրան վազեցին սպաննելու․ ան ալ իր թուրը հանեց զինքը պաշտպանելու։ Ժողովը եղաւ թուր խաղցնելու ժողով, չէ թէ խօսելու, ցառդօւինսքի ադամ անուննով իշխանը մէջ մտաւ, երկու անգամ խաղաղցուց։

Ինչ ատենը մալախօվքի մառեշալը ոտք ելաւ ըսաւ, որովհետև քանները կանոնին կեօրէ առաջ չենք կրնար տանիլ, ես մառեշալութեան գաւազանս կըյանձնեմ ազատ ազգին՝ ուսկից որ առեր եմ․ աս ըսելով դուրս ելաւ տաճարէն, իրեն հետ մէկ տեղ ելան բօդօցքի կոմսը, լուպօմիրսքի

---

Մաղխազունի հայու ցեղը։ Աս ցեղս մէյմընալ Սաբեղայ ցեղը լիթուանիայի մէջ որ նոյնպէս հայու ցեղէն են եկած, ըլլալով վաղարշակ թագաւորին տանէնէն, եւրոպայի մէջ ամմէնէն հին ցեղը կըլլան 1960 տարվան, որովհետև եւրոպայի մէջ որչափ որ հին ցեղ կըգտնըվին, մեծին կարօլոսին տանէնէն առաջ չեն, որ 800ին թագաւորեց։

իշխանը, և ուրիշ նուիրակներ։ Եւ Թէ-պէտ ասչափ նուիրակներուն պակսիլը անվաւեր կընէր ամմէն խորհուրդը ժողովոյն, բայց ամմէն անկանոնութիւնը բանի տեղ չը-սեպելով մնացած նուիրակները մառէշալ ընտրեցին ժողովին վրայ ցառդօռինսքի իշխանը, ու օրինաւոր սեպեցին, Թէպէտև ոչ առջի մառէշալին գաւազանը ձեռքը առաւ կանոնին կեօրէ։ Երբոր աս լսեցին պռանիքի զօրապետը՝ և ուրիշ միաբա-նեալքը (քօնֆէտէռատիները՝) իրենց լեհին զօրքը առին քաղքէն դուրս ելան, քօէյլենից տեղը գացին, որոնց Թող տըվին մոսկովին զօրքը. ան ատենը ժողովականք ցարդօռինսքի իշխանը մեծ գնդապետ (քօ-լօնէլ) ըրին Թագաւորութեան, որպէս զի պռանիքիին դէմ դնէ. ասալ միանալով մոսկովի զօրացը հետ՝ պռանիքիին վրայ վազեց, իրարու հետ զարնըվելով արիւն եղաւ, շատ չիքշեց՝ մոսկովի դին եղողները կատարեալ յաղթեցին մէկալնոնց վրայ։ Կարոլոս ռաձիվիլ իշխանը՝ վիլնայի բալա-տինօն՝ մէկ միաբանութի (քօնֆէտէռա-ցիօ) մը ըրած ունէր լիթուանիայի մէջ եղած միաբանութեանը դէմ, ու զօրք խըր-կած ունէր Օլիքա ու Նեսվից երկիրնե-րուն դէմ, բայց լիթուանիայի միաբանու-Թիւը մոսկովին հետ մէկ տեղ միանալով ա-սիկայ քշեցին, փախուցին, ու իրեն երկիր-ները առին բաժնեցին։

Գուրսի տէրութեանց մէջ միայն Փրան-սայի Թագաւորը եղաւ որ աս բանիս չի-

հաւնիլը ցըցուց․ իրեն դեսպանը Լեհի եպիս-
կոպոսապետին գնաց ըսելով , որովհետեւ
Լեհի հասարակապետութիւնը իրենց մէջը
բաժնըված են , վարշով քաղաքը դըսի տե-
րութենց զօրաց ձեռքը թողուցած , Թագա-
ւորս ինծի կըհրամէ ասկէց ելլալու ․ եպիս-
կոպոսապետը որ բոլորովին մոսկովի դին
վաստըկված էր , ասոր խօսքը բանի տեղ
չիսեպելով մէկ քամահրելով մը թողուց
որ երթայ , բայց ետքը իր երթալը չուզե-
լով ապսպըրեց որ՝ ձի չիտան բոստաններուն
մէջ , դեսպանը իր ձիերով ելավ վեննա
գնաց ։ Եպիսկոպոսապետը շուտ մը երկու
թուղթ խրկեց , մէկը Փռանսայի Թագաւո-
րին , մէկալը բըրապըլէն դըքսին , զինքը արդա-
րացընելով , իրեն ըրածները՝ ու ըսածները
ըստ մեծի մասին ուրանալով , բայց Փռան-
սըզի Թագաւորը ամենեւին չիհաւնելով ա-
նոր խօսքին , ետ կանչեց նաեւ դեսպանին
փոխանորդը՝ որ վարշով էր ։ Իսկ մոսկո-
վը նոր յայտարար թուղթ հանելով զինքը
արդարացընել կըճգնայէր , ամբաստանելով
Լեհի մէջ եղած բռնակալութիւնը , և թէ ի-
րեն ըրածները ամմէնը ասոր համար էր որ՝
Լեհաստան հանգստութիւն ու ազատութիւն
գտնայ , իմին դըրացի ըլլալս զիս կըպարտա-
ւորէ կըսէր ասս բաներս ընելու , ինչ որ
ինչվան հիմա ըրի ։ Սա ետքի խօսքը շատ
նոր խօսք մը երեւցաւ իրաւագէտներու ։
Երկու հոգի անուանեցան Լեհի Թագաւոր
ըլլալու , ադամ Ցառդօրինսքի իշխանը ,
ու ստանիսլավոս Պօնիադօվսքի կոմսը , և

որովհետեւ մոսկովն ու պրուսը իրենց դես-
պաններուն ձեռքովը յանձներէին եպիս-
կոպոսապետին ու բոլոր ազգին՝ որ բօնիա-
դօվսքին պիտոր ըլլայ , երբոր օգոստ . 27
ժողովը եղաւ ընտրելու համար , եպիսկո-
պոսապետը առաջարկածին պէս թէ ար-
դեօք կրնայ բօնիադօվսքին թագաւոր ըլ-
լալ , ամմէնը միաբան իրենց հաւանութիւնը
տըվին . վասն զի դէմ եղողները հեռացեր-
էին ։

Պօնիադօվսքին Լեհի վրայ թագաւոր կ'ընտրուի , շատ
ժողովներ ըլլալուն , բայց Լեհին խռովութիւնը
օրէօր կը մեծնայ .

1764 — 1767 .

Ասանկով տասն ամիս առանց թագաւորի
մնալէն ետեւ , 1764 . սեպտ . 6 , լեհի թա-
գաւոր նստաւ Չիօլէք Պօնիադօվսքի կոմ-
սը , որ ըսվեցաւ Ստանիսլավոս օգոստոս
Բ . անկէց սկսաւ ահա լեհին խռովութիւնը
կրկնապատիկ բորբոքել . նոյեմբ . 25 թա-
գը դրաւ քրաքով քաղքին մէջը , երդմն-
նալով իրենց օրէնքին վրայ ։ Ասիկայ էր
երեսունըվերկու տարվան երիտասարդ , գե-
ղեցիկ երեսով , ու աղէկ կրթըված , քաղ-
քարաւոր , անանկ որ՝ որին հետ որ տես-
նըվէր , զինքը սիրեցընել կուտար ։ Ան
պատերազմին ատենը՝ որին վրայ որ առաջ
պատմեցինք , ճամբայ ելաւ պըտըտելու
ծեծկըռվօղ տէրութեանց մէջ , երբոր փա-

ընդ հասա՝ խաղ խաղալով շատ կըթմբեցաւ, չուզենալով վճարելու՝ բանտը դըրվեցաւ, բայց մէկ մենծ մը որուն հետ շատ կըտեսնըվէր, վճարելով խալըսցուց. ասիկայ բէդըրօպուրկալ գնաց եղիսաբեթ թագուհւոյն եաքի ատենները, հոն իր վարմունքովը շատ մարդու սիրելի եղաւ, նաեւ մեծ դուքսին պետրոսի ու կատարինէ թագուհւոյն, որ այն ատենը դեռ թագուհի չէր եղած :

Իրեն անձնական աղէկութիւնները թագաւորելու վայել կընէին, բայց որովհետեւ մենծ իշխաններէն չէր, այլ պզտիկ ազնուականներէն մէկն էր, ու մոսկովի ձեռքովը ակամայ (զօռաքի) դըրվեցաւ, անոր համար շատը չէին ուզեր. աս ակամայ ընտրութիւը եղաւ իրենց քար գայթակղութեան մը, նոր նիւթ խռովութեան, որ վերջապէս մարել տըվաւ այն բարեկից լեհին թագաւորութիւը. ասկից ետքը աւելի ստրուկ (քէօլէ) եղաւ մոսկովին՝ քան թէ թագաւոր : Իր առջի գործքը եղաւ բարեկարգութիւ մոցընել լեհին մէջը, ու դըրսի տէրութիւններէն անկախ ընել, բայց զանազան կարծիքները՝ բաժանմունքները՝ զանազան դաւանանքի վիճմունքները՝ իր ամմէն մտքի դրածները խափանեցին, թէպէտ և ֆետերիքոս պրուշի թագաւորնալ զինքը կըյորդորէր աղէկ կառավարելու համար, գրելով իրեն 1764. Նոյեմ. 12 :
„ Դուն ընտրութիւ թագաւոր ըլլալով և
„ ոչ ցեղի մենծութիւ ունենալով, ամմէն

„ աշխարհ կըսպասէ քու վրադ գերազանց
„ գործքեր տեսնալու. պէտք է որ ըլլաս
„ պատերազմական, օրէնսդիր, հայր հայ-
„ րենեաց, աղէկ քաղաքացի, երկայնամիտ
„ փիլիսոփայ, խաղաղարար բաժնըրվօղնե-
„ րուն ։ Դու գլխաւոր առաքինութիւնդ
„ պիտոր ըլլայ երախտագիտութիւն քու
„ ժողովրդեանդ վրայ, թէ չէ՝ անպատիւ
„ կընես ոչ միայն զքեզ, այլ նաև քուկին
„ ժողովուրդդ, իբր թէ չգիտցան ըն-
„ տրել իրենց աղէկ կառավար ". ։

Նորէն ժողով ըլլալ սկսաւ 1765. մոսկովն ու պրուշը ապահով ըլլալով որ լեհին նոր թագաւորը իրենց ամմէն ուզածը պիտոր ընէ, առաջարկեցին ժողովին որ ազատութին տան բռօդէստանդներուն և հերձուածօղ լեհերուն՝ որպէս զի իրենց պաշտամունքը համարձակ ընեն, ու պաշտօններ (մանսաուպներ) և պատիւներ առնեն, ինչպէս որ ուղղափառները կառնէին, յունադաւան եպիսկոպոսնալ աթեանին (տիվանին) մէջը կարող ըլլայ նստելու։ Անկիլիզնալ մէջ մտաւ աս խնդիրքները ուզելու. սաանկ լուսաւորեալ դարու մէջ շատ տմարդութին է կըսէր, մէկըզմէկ սխմել ճնշել միայն հաւատքի տարբերութեան համար։ Բայց ամմէն լսօղներուն զարմանք կուգար աս իրեն խօսքին վրայ, որովհետև ինքը ինկիլիզն էր որ՝ աս իրեն ըսած տմարդութիները կըբանեցընէր իր երկրին ուղղափառներուն վրայ։ Թագաւորը ու ժողովը աս ամմէն խնդիրները մերժեցին. Աս ժողովը

ուրիշ կարգադրութեան ըրած մաքսի վրայ, նոր մաքս (կէօմրիւք) դնելով ամմէն ապրանքներու վրայ թէ լեհին՝ և թէ դրսեցոց. ասոր դէմ կեցաւ մոսկովը, շատ թըղթեր գրեցին մէկ դիէն մէկալ դիէն, սակեցան շատ տրտունջ ըլլալով։ Կուռլանտիային ազնուականներնալ որովհետև յոհաննէս պիռօն կամ պիռէն դուքսը չէին ուզէր ընդունելու, մոսկովին հրամայելովը լեհին նոր թագաւորը նորէն անիկայ քուռլանտիայի ու սէմիկալլէի վրայ դուքս դնել տըւաւ 1765 (1), դեկտ. 31. ու աս ժողովին մէջը հաստատել տըւաւ։

Հետևեալ տարին 1766 ժողովին մէջ նորէն խօսք բացվեցաւ օտարահաւատներուն վրայ. քրաքովին եպիսկոպոսը հոն ցըցուց որ՝ ուրիշ մէկ արտօնութիւն մը չէր տըրված երբեք օտարահաւատներուն, բայց միայն ան արտօնութիւնները՝ որ ինչվան հիմա կըվայելէին. ժողովականք վկայեցին թէ մէկ բան մը չենք խոստացած ուղղափառ հաւատքի դէմ։ Թագաւորնալ չիկրցաւ բան մը ընել, այլ մանաւանդ եպիսկոպոսներուն գանկատներովը, մեծերուն սպառնալիքներովը, ու ժողովքին բացարձակ վճռովը՝ հաստատեց ինչ օրէնքներ որ եղած էին օտարահաւատներուն վրայ, արգելելով որ՝ ուղղափառ հռոմէական եկեղեցիէն դուրս եղածները ամենևին իշխանութեան կամ պաշտօնի մը վրայ չիհանեն, ինչնալ

(1) Ոմանք կըդնեն 1764։

իր Թախտէն երդվընցաւ որ՝ ուղղափառութեն բաները իր կեանքը դնելով պիտոր ջատագովէ։

Օտարահաւատները նորէն դիմեցին բողոքում ըրին իրենց հաւատակից Թագաւորներուն՝ պրուշին, տանիմառքային, մասկովին ու ինկլիզին, որովհետև պաշտպան էին եղած օլվայի դաշնագրութեանը, ուր տեղ 1660ին սահմանվեցաւ որ՝ հաւատքի համար չինեղեն զանանք, ու չիզրկեն ան արտունութիւններէ ան իշխանութիւններէ (մանսուպէ), որ կըվայլէին ուղղափառները՝ ասոնք քուռլանտիայի դուքսինալ դիմեցին, որոնց շուտ մը մտիկ դրաւ։ Ժողովը ասոնց պատասխանելու վճիռ մը հանեց ան աւելի խիստ քան առջի հանած վճիռները, հրատարակելով որ՝ աս օտարահաւատներուն դիմելը ու գանկտիլը ուրիշ տէրութեանց առջին, քամահրել էր Թագաւորը ու ամբողջ ազգը, վասն զի առջի ազգային ժողովներուն մէջը շատ հեղ վճռըված արգելված էին աս բաները անոնցմէ։ Մանաւանդ մարդու մընալ գրուած մը ելավ լեհին մէջը, ան գրքին մէջը խորունկ քննելով ան ամմէն դաշնադրութիները՝ ուր տեղ հաստատված են կըսէին օտարահաւատներուն արտունութիւնները, կըցըցընէր վկայութիւններով թէ ուրիշ բան մը չնորհած չէր օտարահաւատներուն՝ բայց միայն պարզ թոյլտուութիւն մը՝ որ ինչվան ան ատենը կըպահվէր։

Ժողովին ասանկ մերժելէն օտարահաւատ-

ներսուն բանը՝ կրակը բըռընկեցաւ, Մոսկո-վը՝ պրուշը՝ գանգատանաց Թղթեր գրեցին ժողովքին . դժվարնալով իրենց ասանկ մերժելուն վրայ, ժողովականքալ շատ ա-նարգական խօսքեր խօրաթեցին երկու տէ-րուեց դէմ, Թագաւորը վախնալէն դուրս ելաւ ժողովէն., եպիսկոպոսապետը հրա-ժարեցաւ նախագահ նստելու, ժողովքին մէ-ջի ամմէն մէկնալ մէյ մէկ կերպ շփոթու-թեն մէջը ընկան։ Ան ատենը մոսկովլին զօր-քը քուռլանտիայէն ելաւ՝ լեհին բրուսիա գաւառը մտաւ, ու Թօռն ըսված երեւելի քաղաքը առաւ, ուր ուղղափառաց առջի և երեւելի միաբանութիւնը (քօնֆէտէռա-ցիօնը) ըսկըռսվերեր, անկէց երկրորդ ան-գամ լեհին երկիրը ներս մտաւ։

Անկէց ետքը ներքին խռովութիւնը փոխվե-ցաւ, հաւատքի վրայէն ուրիշ բանի վրայ անցաւ, բարձր ձայնով կաղաղակէին թէ կատարինէ մոսկովլի թագուհին իր ուզածը թագաւոր դնելով լեհին վրայ՝ միտքը աս էր որ՝ լեհին ազատութիւնը վերցընէ, լեհաս-տան իրեն մէկ գաւառ մը ընէ։ Արբօր մոսկովը լեհին մէջը զօրքը շատցուց, օտա-րահաւատները ուժ առնելով սկսան միա-բանութիւներ ընել, առաջ Թօռն քաղաքին մէջը, ետքը լիթուանիային մէջը, պինտ ետ-քը աս դիս ան դին լեհին մէջը . ատանցալ պաշտպան կեցան վերոյիշեալ հաւատակից թագաւորները։

Լեհաստանին աւելի հեշտացնող մէկին դէմը օտարա-
հաւատներուն պաշտպանութիւնը, նոր ծագում
կռուոյ.

1767:

Ինչպէս որ պատմեցինք Լեհերուն վէճը անհասկընալի բան մ'ըներ եղած, միայն օրէօր տարաձայնութիւնը կըշատցընէր, աս խըռթին վէճը շտկելու համար պինտ ետքը վճռեցին որ՝ արտաքոյ կարգի մէկ ժողով մը ընեն, բայց պատրաստութիւնը կըցըցընէր որ աւելի շփոթութիւն պիտոր ելլար. Լիթուանիայի մէջ մէկ մեծ ու ընդհանուր միաբանութիւն մը ըրած ունէին, ան նոր շփոթութիւնները ուրիշ նորէնոր միաբանութիւններ հանել տուած էին, որք ըսկեցան Ռ՛ուսիոյ կառավարութեան դէմ: Ամէն միաբանեաներուն միտքը ան էր որ՝ օտարահաւատներուն դէմ ըլլան, ըլլալու ժողովին դէմ կենան, նոյնպէս և թագաւորին և ուղղափառներուն դէմ դնեն: Մէկ ընդհանուր միաբանութիւն մ'ալ Լեհին մէջը եղաւ. Ռաճիվիլ իշխանը որ 1764 ուրիշ Լեհի իշխաներուն դէմ թշնամութիւն ընելուն համար փախեր էր, ու իր երկիրները կորսնցուցած էր, հիմա յաղթանակելով Վիլնա մտաւ Մոսկովի պրուշի ու սաքսոնիայի զօրքով, և իրեն ապրանքները ձեռք ձգեց, ու Լեհի մեծ միաբանութեան մառէշալ եղաւ:

Լ՝ուպէնս մեռաւ Լեհին եպիսկոպոսապետն

տը, անոր տեղը Մոսկովլին ուզելովը եպիս-կոպոսապետ եղավ քոտապքի կոմսը՝ որ շատ իշխաններու դէմ էր. 60 հազար ռուպլի (պէշլիք) առավ Մոսկովլէն իրեն խարճի համար ։ Նորքոր եկեղեցականք իրմէ խնդ-րեցին որ՝ ուղղափառ հաւատքին շահը նայի, պատասխանեց ։ „Իմ միտքսալ ան է, բայց „ միանգամայն պէտք է որ օտարահաւատ-„ներուն դին բռնեմ, դրսի տէրութենց կամ „ քէրնին կատարելու համար “ ։ Ռաձի-վէլ իշխանը վարշավիա քաղաքը գնաց Թա-գաւորին հետ տեսնըվեցաւ, անկեց ետքը շրջաբերական Թղթեր հանեց գրելով մէ-ջը . Ան որ ընդհանուր դաշնաւորութենց դէմը չէմըտ-նայ, անիկայ ըշնամի հըմարուի ։ Ասանկով ան միաբանութենց դին անցան պռանիք զօրա-պետը և ուրիշ շատ մարդիկ, եպիսկոպոս-ներնալ ստորագրեցին, բայց ասոնցմէ շա-տը՝ օտարահաւատներուն խնդիրքը ժողով-քին ձգեցին որ մօտիկ էր ըլլալու ։ Կրա-քովլին եպիսկոպոսը շրջաբերական Թղթեր գրեց պզտիկ ժողովներու՝ յորդորելով որ ամէնուէին դէմ կենան օտարահաւատներուն խնդիրքներուն՝ որոնց խնդիրքը կարգէ դուրս բաներ էին ։

Մեծ միաբանութիները Թագաւորին մար-դիկ խրկեցին, որոնց առջին գանկտեցաւ Թագաւորը Թէ շատ նեղութի կուտան ան միաբանութիները՝ որ չիտակ դէմ էին ժո-ղովքին գերագոյն իշխանութեը, կուզէին օրէնք տալ՝ որ օրէնքի դէմ էր, ասանկալ ազատութե ազգին՝ ու սահմանադրութեը

դէմ էին ։ Միայն աս է կըսէր իմին մխի-թարութիս, որ միաբանութենց մէջի եղող մարդիկները՝ հայրենեաց աղէկութիր կու-զեն. եսալ օտարահաւատներուն խնդիրք-ները անանկ ընեմ, ինչպէս որ պարագայ-ները բերեն ։

Երբոր լեհին ժողովը մօտիկ էր ըլլալու, 1767ին յունիսի 28. Կղեմէս ԺԳ սրբազան պապը թուղթ մը գրեց լեհի եպիսկոպոսա-պետին՝ որ ժողովքին ցըցընէ. մէջը խիստ կըյորդորէ ուղղափառ լեհերը, որ թող չտան օտարահաւատներուն՝ իրենց կրօնա-քին բաները յայտնի համարձակ կատարել, ինչպէս որ իրենք կուզէին, օտար տէրու-թիւնները իրենց կռնակ ընելով ։ Օտա-րահաւատ ըսածները էին լութեաններ, քալվիններ, ու յունադաւաններ. Բայց լեհին մէջը ժողովը ըլլալէն առաջ մէկ գրուած մը ելաւ, անոր մէջը կըցըցընէր ինչ կերպով որ պիտոր որոշէին օտարահա-ւատներուն խնդիրները, բանը հոս կըլմնցը-ներ որ՝ ինչ կուզեն՝ ամմէննալ պէտք է ընել, ու պէտք է պատիժ տալ անոնց՝ որ կըզըրպարտեն անոնք, կամ թէ լութեան, քալվինեան կըկոչեն, աս բաները դաշնա-դրութեանց ու բնական օրինաց դէմ է կըսէին. Թէպէտ և ինկիլդերռայի մէջ նաև ուրիշ տեղեր նոյն բաները ուղղա-փառներուն վրայ կընէին ։

Ժողովը 1767. հոկտ. 4 սկսաւ վարշով կամ վարշավիա քաղքին մէջը, ուր լեցուած էին մոսկովները ու խազախները. հոն ե-

ղած Մոսկովի դեսպանը կուգէր Պէրլին, ասոր դարպասը չորս դիէն պահապան զօրքի մէջ առնըված էր, առջևնալ 6 թօփ շարված: Ճամբուն մէջ կըժողվէին ժողովականք, բայց շատ հեղ հարկ կըլլար 3 . 4 օր ուշացընել. շատ վէճ ըլլալէն ետև՝ բան մը չիկրցան շուկէ շիտակ որոշել, ու ճարերնին հատնելով ռաձիվին իշխանը առաջարկեց որ՝ 14 երեսփոխան (մուրախ-խասս) ընտրեն, անոնք խօսին մոսկովի դեսպանին հետ: Ասանկով ժողովը ձգեցին 1768. փետրվ. մէջ:

Օտարահաւատներուն արտօնութիւններ կըտրուին, մոսկովին ըրածներուն դէմ լեհական միաբանութիւններ կելլան կենին մէջ. Թաթարը իրենց օգնութիւն կըկանչեն.

1768:

Երեսփոխանները մոսկովի դեսպանին հետ խօրաթելով՝ հինգ թէուլթեց մը լմնցուցին. ինչ որ խնդրերէին օտարահաւատները՝ անկէց աւելի շնորհեցին անոնց, ուղղափառաց հետ հաւասար ըրին, մանաւանդ որ աւելի զարմանալին է՝ ուղղափառներուն երկիրները՝ ժամերը՝ անոնց ձեռքը տըվին: Երբոր ժողովը եղավ՝ երեսփոխանները աս բաները ծանուցին, որուն ամմէնքնալ դէմ կեցան. իրեք շաբաթ հարկ եղավ ուշացընել ժողվըրվելնին, բայց ան միջոցին մէջ ինչ որ պէտք էր հոգացին, ոմ. գի մոսկովին

ուզածը ըլլայ, նոր մոսկովի զօրք մերին վարշով քաղաքը : Մոսկովին դեսպանը բանտարկեալի պէս բռնել տըվավ ատենականները, նուիրակները, ու պաշտօնատէրերը, մանանկ որ վարշավէն դուրս չէին կրնար ելլալ առանց իրենց թղթին (բասսաբօռդին). Հոկտեմ. 16. շատ ատենականներ՝ որ մոսկովին ուզածը չընդունեցան թագաւորին ու ժողովականաց առջին՝ բանտի մէջ. դնել տըվավ, նեղութին պահեց, ինչ ծառայութին որ պէտք էր իրենց տալու՝ չիտըրվավ գըրկեց : Ռուսաքովին եպիսկոպոսին տեֆթէրխանէն բացին, իրեն արծաթները ու ապրանքները թալլեցին, ժողովը՝ վարշով քաղաքը՝ ու ամբողջ լեհին թագաւորութիւնը մոսկովի զօրքով պաշարված էր ազգին ազատութեան ու օրէնքին դէմ :

Երեք շաբաթը լմնալէն ետեւ՝ հարկեղավ որ ժողովը ամմէն բանին ստորագրէ, լըթուանները՝ յունադաւանները՝ խորհուրդի, ժողովի, ու դատաստանի մէջ ընդունելով : Այս արտօնութիւններս տըվին նաեւ ուրիշ չորս հոգիի, այսինքն՝ Պալհաքովին, որ մոսկովի դեսպանին դիւանադպիրն էր, Աբրաքսին կոմսին, Նար գնդապետին, ու Իվէլողուօէմին, որոնք չորսնալ մոսկով ըլլալով՝ բայց իբր թէ բուն լեհ եղած ըլլային, մանանկ աս արտօնութիւններս առին. ապարեցինալ որ՝ ասկեց ետքը ինչ որ որոշվելու ըլլայ ժողովին մէջը, շատին հաւանութիւնը չինայվի ինչպէս առաջ կը-

նայվէր , հապա ամենուն հաւանութեանը , անանկ որ՝ թէ որ մէկ մոսկով մը՝ մէկ յունադաւան մը՝ ժողովին մէջը կանչելու ըլլար , թէ ես Ուղղափառ կոչվելոմ , որ աս բանս ասանկ չըլլայ , նոյն է թէ ամբողջ ազգը չուզէր , բոլոր ազգը արգելէր ։

Աս զանազան արտօնութիւնները չնորհեցին որ՝ մէջերնին մէկ քաղաքական կռիւ մը չելլայ , և վարշավիա քաղաքին մէջ աս թէութիւններուս վրայ մէկ դաշնադրութեան կապ մը ըրին լեհին ու մոսկովին մէջը 1768. փետրվ. 24. անանկով մոսկովին զօրքը սկսաւ քաշվիլ ։ Բայց յայտ էր որ՝ ասանկ խօսքը չիբռնըվէր պիտոր մէկ ազգի մը մէջ՝ որ իր ազատ ծնալուն վրայ մանհուչափ ջանք կընէր ինչպէս էր լեհին ազգը . անոր համար աս բանս դեղ ըլլալուն տեղը՝ աւելի չարիք բերաւ . իշխանները գանկտեցան որ՝ ասով իրենց շահը ուրիշներուն կանցնէր , եպիսկոպոսները ու բալադինները գանկտեցան որ՝ ուղղափառհաւատքը գետինը կիյնար , ժողովուրդը կըգանկտէր որ՝ մոսկովին զօրքը լեհին երկիրը նստած ըլլալով ձանձրացերէին ։ Մէկ մասը մտածելով որ՝ իրենց ուժը ՚ոչինչ էր մոսկովին ուժին քով , հնազանդիլը գլուխ խոնարհեցընելը պզտիկ չար կըսեպէր ։ Մէկալ մասը ասանկ ցածնալը ամէն չարէն գէշ սեպելով զէնքի կապաւինէր , ծեծկըրվելու կըվազէր , բայց խիստ ուշ ատեն ։

Ամէն տէրութիւն որ կործանելու մեռնե-

լու վրայ են, իրենց ետքի ատենը մէկ ար-
թըննալ մը՝ մէկ կորըձութի̃ մը կուգայ
անօգուտ, ան ատենը՝ որ ալ բանի չիգար
կորըձութիւնը. աս ատենվան լեհերուն
սրտոտիլնալ խիստ ուշ ըլլալով, կընմանի
հոգեվարք մարդու՝ որին ետքի օրերը մէկ
ողջութիւն կորըձութիւն մը վրան կու-
գայ, քովի կեցողները կըխաբէ, կըկարծեն
որ ողջընցաւ, բայց գիտցողները աս բանս
տեսածնին պէս կըյուսահատին, գիտեն որ
մեռնելու նշան է, որուն միջնագարուն կամ
հոգեդարձ կըսեն. ասանկ եղաւ լման հի-
մակվան լեհերուն անօգուտ զինուորիլը,
որոնց պէտք էր որ առաջ արթըննային,
առաջ իրենց զօրքը շատցընէին, ինչպէս
որ մեռնող թագաւորը կըկանչէր, կար-
թընցընէր, հիմա կընեն ան բանը, որ ալ
բանի չիգար:

Պոտօլիա նահանգին մէջը մէկ քաղաք մը
կայ Պառ անունով, հոն մէկ միաբանու-
թիւն (քօնֆէտէռացիօ) մը ըրին, որ Պառ-
ու դաշնակցութիւն ըսվեցաւ, որուն գլուխ
եղաւ Լուպօմիրսքի իշխանը, Կրասինսքի
կոմսը, և ուրիշ գլխաւորներ, աս միաբա-
նութի̃ը ըրին մէյմը ազատութե̃ համար,
մէյմընալ հաւատքի համար: Հաւատքին
բանը միշտ զօրաւոր ըլլալով ամմէննալ
առք հանեց, նաև անոնք որ՝ իրենց շահը
փնտռելու համար ելերէին, հաւատքին
պաշտպանութիւնը իրենց պատրուակ (մա-
հանայ) առնելով նշաններ, դրօշակներ
տնկեցին, որոնց վր̃ մէկ արծիւ մը քաշված

կար խոցված, տակը աս խօսքս գրված.
Կամ յաղթութիւն, կամ մահ։ Ոչ թէ միայն
քաղքըցիք՝ այլ նաև գեղացիք ալ ելան
մտնելու մոսկովներու դէմ, որոնց դէմ
միշտ ատելութիւն ունէին Լեհերը, իրենց հին
ատենի յաղթութիւնները պատմելով պար-
ծենալով որ ինչվան մոսքվիա քաղաքը մտեր
առեր էին մոսկովին ձեռքէն։

Պոտոլիայի ու վոլհինիայի մէջ անչափ վառ-
վեցան՝ որ խըրըմին թաթար խանը իրենց
օգնութիւն կանչեցին. թաթարները հին ա-
տելութիւն մը ունէին մոսկովին հետ. միշտ
կը յիշէին որ ատենօք մոսկովը իրենց տակն
էր, հիմա իրենց վրայ յաղթական էր ե-
ղած, անոր համար Լեհերը զիրենք կան-
չածներուն պէս՝ բազմութեամբ յարձըկեցան
քամինից բերդին վրայ, որ պուղտանին
վերի դին կինի, Լեհին մէջն է։ Ան էր զար-
մանալին՝ որ աս տաճիկ թաթարներուն
ուղղափառ եպիսկոպոսները առաջնորդ զօ-
րապետ էին եղած. ասոնք երբոր Լեհ մտան,
շատ ջարդ ըրին, ճամփորդները թալե-
ցին, շատ մարդ իրենց ապրանքը ուրիշ տե-
ղեր փախուցին մանաւանդ մաճառստան։

Վարշավիայի մէջ եղող Լեհերը երկու խոր-
հուրդ ըրին որ կըսվի Սենադուս քօնսուլդում.
ասոնք քռասինսքի կոմսին պատուիրեցին
սպառնալով որ զէնքը ձգէ, թէ չէ՝ իբրև
խռովարար զինքը կըճանչնենք ըսին, բայց
միաբանվողները հնազանդելուն տեղը՝ մէկ
յայտարար թուղթ մը հանեցին, մէջը յի-
շելով ինչ չարիք որ ըրին ան Լեհերը ազա-

տութեան ու հաւատքի դէմ. անոր համար ամէն հայրենասէրները կըհրաւիրէին որ գան իրենց հետ միաբանին, չէ թէ մինակ հաւատքի համար, հապա 1764 տարիէն վեր սրտերնին միշտ վախի մէջ էր որ՝ մոսկովն ու պրուշը միաբան ըլլալով մտքերնին առնել բաժնել էր Լեհաստանին մէկ մասը,
(ինչպէս որ ետքը իրաւ եղաւ)։
Մոսկովի կայսրուհին կատարինէն ան ատենը գիտես թէ վախնալով առանց միաբանութեան մէկ թուղթ մը հանեց ռէփնին դեսպանին ձեռքովը, թէ իր միտքը օտարին երկիրը առնել չէր, հապա աղէկ կառավարել իր ժողովուրդը։ „Իմ կանոնս արդարու-
„թիւն ու մարդասիրութիւն է կըսէր, ամ-
„մէն վախը ձեր սրտէն հանելու համար
„յայտնի կըզրուցեմ որ՝ իմ միտքս կամքս
„է՝ Լեհին հասարակապետութիւնը հիմնակ-
„վան կացութիւնը մէջ պահել. ոչ երբէք
„պիտոր թողում որ Լեհին ազատութիւնը՝ ըռ-
„կըզբունքը՝ ու երկիրները ձեռս քաշեն,
„այլ պահեն ինչպէս որ էին 1686 եղած
„դաշնադրութեանը պէս“։ Աղէկ խոստմունք-
ներ, թէ որ պահվէին։
Նորէն օգնութեան կանչեցին մոսկովին զօրքը միաբանելոց դէմ, սոլթիքով մոսկով զօրապետը եկաւ Լեհաստան, բայց եկաւ միաբանեալները ուժով գտաւ, ամէնն ալ վառված ծեծկըռվելու հաւատքի ու ազատութեան համար, կարգով ու կըրթութեամբ կանոնաւորված, ամէնուն վարձքն ալ տըրված, անանկով ինչվան 20 հազար մարդ

շատցեր էին, մէկմէկու հետ սկսան զարնը-
վիլ, բայց մէկ բան մը չորոշվեցաւ։ Երբոր
կարծեցին թէ լեհի մէջի եղօղ յունադա-
ւանքը պիտոր մոսկովներուն հետ մէկ ըլ-
լային՝ միաբանելոց դէմ դնելու համար,
ատոնք իրենք իրենցմէ 20 հազար հոգի ուղ-
ղափառներուն ու հրէաներուն վրայ վա-
զեցին, էրիկ մարդ՝ կնիկ մարդ՝ տղաք՝ ամ-
մէնը ջարդեցին, տուներնին թալլեցին, ու
ամմէն տեղ երեցին. իբր պտուղ ան ար-
տունութիւններուն՝ որ իրենց շնորհեցին։
Ոմանք ալ միաբանեալներու անուն առ-
նելով ատոնց օրինակին հետեւեցան, ամմէն
լեհաստան արիւնլըվայ ըրին։

Ասոնց ասանկ ընելը կարծիք կըբերեր որ՝
տակէն մոսկովն ու պրուսը կըգրգռէին ա-
սանկ անկարգութն ընելու, որպէս զի տակն
ու վրայ ընեն լեհաստան։ Իրաւ միաբա-
նեալները քամէնից բերդը պաշարեցին,
բայց տեսնալով որ՝ մոսկովը վրանին կու-
գար, թողուցին փախան։

## Օսմանեանց Կայսր.

## 1754 — 1766։

## Սուլթան Օսման Գ։

Սուլթան Մահմուտէն ետեւ թագաւոր նըս-
տաւ իրեն պզտիկ եղբայրը Գ. սուլթան Օս-
ման 1754. (1168 հիճրէթի.) սէֆէր ամ-
սուն 28. 58 տարվան. իրեն մօրը անունը
կըսվէր շէհսուվար սուլթան։ Աս թագաւո-

ըրս առջի անունը սուլդան Հիւսէյին էր, բայց ան ատենվան պարսից Թագաւորին անուննալ շահ Հիւսէյին ըլլալով, իրենց դըժբաղդութենը համար անուննալ դժբաղդ-սեպելով՝ փոխեցին, սուլդան օսման ըրին :

Այս տարին սաստիկ եղաւ ձմեռը, անչափ որ ստանպօլին նաւահանգստին ներսի դիերը սառեցաւ ծովը, հրեաները իրենց մեռելը պալատէն ինչվան խասգեղ պաղած ծովուն վրայ քալելով համարձակ կըտանէին, ինչպէս որ եղած էր նաև Ա սուլդան օսմանին ատենը 1030 հիճրեթին, թէպէտ անոր ատենը աւելի խիստ՝ աւելի երկան քշեց :

Օսմանիէ ճամին որ սուլդան մահմուտը սկսեր էր 1162 հիճրեթին՝ աս սուլդան օսմանը լմնցուց յամին 1755. հիճրեթի 1169. անոր համար իր անունով Նուրի օսմանիէ ըսվեցաւ : Նոյն տարին 1755 յուլիսի 9 կրակ եղաւ սէրայէն մօտիկ, 500 տան չափ էրվեցան ու 200ալ մարդ. իսկ հետևեալ տարին 1756. յունիսի 24 աւելի մեծ կրակ եղաւ ճիւպպալիին դրսէն սկսելով ինչվան եալընըզ էքմէքճին՝ մէկ ծայրնալ ինչվան տավուտ փաշայ գնաց մօտիկ սամաթեայի. վերի դին հասան փաշայ խանը կուլընեցաւ, վարի դին ինչվան ճէռռահ փաշան, ամանց ըստածին պէս 100 ճամի էրվեցան, 40 հազար տուն, 50 հազար խանութ. գետնի տակի եղած ջուրի ճամփայներուն ղուրշիւնները հալեցան. հազար մարդու չափ

կորսուեցան. աս կըսակէն ։ Նոյն տարինալ շատ տիրերէր ժանտախտը ։ Ուրիշ երեւելի քան մը չեղաւ սուլդան օսմանին օրը՝ բայց եթէ առուտուրի դիւացէն սուլդան օսմանը մէկ սէրմը ունենալով արուսեկին վրայ, ուզեց իրեն մէկ խուցին (ծոցին) պատէրը անով պատել, անոր համար շատ առուտուր եղաւ արուսեկի, ով որ ունէր աղէկ վաստակ ըրաւ ։

Երեք տարի թագաւորելէն ետեւ սուլդան օսմանը՝ հիւանդութին եկաւ վրան, ուրբաթ օրը խիստ տկարացած ըլլալով սելամլըխը ելաւ այա սօֆիան, հոն մարելով դարձաւ. 1757. հիճրեթի 1171 մեռաւ. սէֆերին 17. կիրակի օր 61 տարւան, որուն մարմինը թաղեցին վալիտէի եէնի ճամին, որ մօտ է պաղչէ խափուսին ։ Նոր վեզիրները եղան ասոնք ։

Միրախօռ մուսդաֆա փաշայ, ապտիւռահման փաշային տղան, որ սուլդան մահմուտին օրէն վեզիր էր եղած, սուլդան օսմանը աւիկայ վերցուց ։

Հէքիմ պաշի օղլի ալի փաշան, երրորդանգամ վեզիր եղաւ 1754 (1168). ասիկայ վերուց քիւթահիայի վալի ըրաւ, հոն մեռաւ, իր մարմինը ստանպօլ բերին, իրեն շինած ճամիին մէջը թաղեցին, որ կըսվի Եէնի ալի փաշայ ճամիսի, սամաթեայի մօտիկ ։

Տէֆթերտար Նայիլի ապտուլլահ փաշայ, որ տէֆթերտարութէ վեզիր եղաւ, 1754. (1168)։

Սիլէհտար պէյիքլի ալի փաշայ. 1754 (1168) եղաւ վէզիր, 61 օրէն ետեւ սպաննեց անիկայ սուլթան օսման ։

Յիրմի սէքիզ չէլէպի մէհէմէտ սաիտ փաշայ, վէզիր եղաւ 1755 (1169). ասիկայ 159 օր միայն վէզիր նստաւ ։ Ա՛ս է որ փարէզ դեսպան (էլչի) խրկըվեցաւ. ատոր յանձնըվեցաւ ծածուկ խօրաթելու ֆրանսայի թագաւորին հետ՝ որ մալթացիք չիդպչին չիվնասեն տաճկի նաւերուն, որոնք ան ատենը շատ վնաս կուտային. ֆրանսայի թագաւորն ալ ատոր փոխարէն հրաման ուզեց տաճկի թագաւորէն՝ երուսաղէմ եղած իրենց տեղերը շինելու, ու պապի տեղեր առնելու ։ Ա՛սոր ճանապարհորդարանը որ ինքը գրեց, զուարճալի գիրք մըն է, շատ կըգովէ փարէզ ։

Միրախօր մուստաֆայ փաշան վերոյիշեալ, որ մծուայէն եկաւ, նորէն վէզիր եղաւ 1755 (1169). 257 օր վէզիր նստաւ, որուն տեղը նստաւ անուանի րաղըպ փաշան 1756 ։

## Սուլթան մուսթաֆայ Գ ։

Երրորդ սուլթան օսմանէն ետեւ թագաւոր նստաւ անոր հօրեղբօրորդին Գ. սուլթան մուստաֆան, որդի Գ. սուլթան ահմէտի 1757. 1171 հիճրէթի, սէֆէր ամսուն 17. կիրակի օր. իր թագաւորութեան առաջի տարիները պաշտօնները (մանսուպները) փոխելու շատ ետեւէ չինկաւ, խըղճար

աղասին փոխեց, որ ամենուն ատելի էր եղած, միսըր քշել տրվաւ, բայց Ճամփան սպաննեց։ Արապըները որ քեապէ գացող հաճիները զարկեր թալլեր էին, զորք խըրկեց անոնց վրայ պատժելու 1758։ Աս տարվանս մէջ ստանպօլ ժանտախտ եղավ ու շարժ. դեկտ. 4. գիշերը 8 ժամուն։

Հետևեալ տարին 1759. փետրվ. 16 (1). առջինեկ զաւակը եղավ սուլթան Մուստաֆային Հիպէթուլլահ սուլթան. և որովհետև երսուն տարվընէ վեր թագաւորական զաւակ չէր եղած, մեծ ուրախութիւն եղավ ամենուն, անոր համար հրաման եղավ օխտը օր տօնանմա ընելու. գիշեր ցորեկ խանութները զարդարելէն զատ՝ էսնաֆ ալայի եղավ մեծ պաքի մէջ. ամէն արուեստաւորներ կարգով հանդիսով անցան թագաւորին առջևէն տիվան եօլուէն. ամէնմէկ հայ՝ հոռոմ՝ տաճկի հագուստներով հարուստ լաթերով զարդարված, ամէն մէկ արուեստին թահտըրրավանը իրենց ետևէն բերելով, կերպ կերպ մարիֆէթներ ցըցընելով։ Վաղովուրդին ուրախութիւնը տեսնալով թագաւորը՝ ետքէն իրեք օրալ եվելցուց, ամէնը տասն օրվան տօնանմա եղավ, շատալ պառուտուր եղավ. ասոր անունը Մէնծ փօհանմա կըսեն, որուն նման ուրիշ տօնանմա մը եղած չէ կըսեն։

Բայց աս ուրախութենէ ետևէն մէկ դիպուած

---

(1) Ոմանք կըդնեն մարտի 14. ըէճէպի 17. Էշէ օրը, հիճրէթի 1172։

մը եղաւ Ճերմակ ծովը, որ նեղութիւն քե-
րաւ Թագաւորին. երբոր 1760 Մէհէմմէտ
խափուտան փաշան կղզիները կըպըտըտէր
ըստ սովորութեան իրենց տուրքերը առնելու,
տեղ մը ելաւ 400 հոգիով, նաւուն մէջը
մնացին 300 տաճիկ, ու 70 փայզանտ. աս
փայզանտները յուսահատուած մարդիկ ըլ-
լալով, ու սաստիկ բանի վարժած, յանդգ-
նեցան 300 հոգիի վրայ վազեցին, որը
զարկին, որը կապեցին, նաւը առին տարին
Մալթա, Մալթացոց ընծայ տուին։ Սուլ-
թան Մուստաֆան խիստ նեղելով աս բա-
նիս վրայ ուզեց Մալթացոցմէ նաւը, Մալ-
թային ասպետները չուզեցին ետ դարձը-
նել, անոր վրայ տաքնալով պատրաստութիւն
տեսաւ պատերազմելու. բայց Փրանսային
Թագաւորը մէջ մտնալով բանը շտկեց Մալ-
թացոց ուրիշ ընծայներ տալով ծախու ա-
ռաւ նաւը, Սուլթան Մուստաֆային խըր-
կեց։

Երկրորդ աղջիկ զաւակը եղաւ շահ սուլ-
թան անունով 1761. ապրիլի 5 (1). րեմէ-
զանին 16, երբոր րեմէզանը լմնցաւ՝ շէվ-
վալին երկրորդ օրը Պէշի տօնանմա եղաւ
օխտը օր։ Իսկ դեկտ. 13. 1175 հիճրէ-
թին, 27 Ճէմազիւլ էվվէլին, Էշի ծնաւ սուլ-
թան սէլիմ, որուն համար ալ օխտը օր տօ-
նանմա ըրին։ Մէկ աղջիկ մընալ ծնաւ
միհրիմահ սուլթան 1176 հիճրէթին, յա-
մին 1762, 18 րէպիւլ ախըրին, որուն համար

(1) Ոմանք կըդնեն հիճրէթի 1174. (1760)։

չորս օր տօնանմա ըրին ։ Նոյն տարին Ձեմազիլ էվվէլին 24 օրը, Եշր. Հոկտ. 24. ծնաւ դուստրը միհրիշահ սուլթան, որուն տօնանմա չեղաւ ։ Նոյն տարուան մէջ 1762 պէյօղլու տէօրթ եօլ աղզին կրակ եղաւ, որ Անտօն ու Երրորդութեան ժամերը էրվեցան ։

Աղէկ շէնքերալ շինեց սուլթան մուստաֆան. 1762 Եէնի խանը շինեց, որ խաներուն մէջը երեւելի եղաւ, շատ խուցեր (օտայներ) ունենալով, իրեք խաթ, դիրքնալ աղէկ, անոր քովնալ պզտիկ խան մը շինեց, երկուքնալ վալիտէ խանին դիմացը կիյնան, որ սուլթան իպրահիմին մայրը շիներէ ։ Մէկ գեղեցկաշէն ճամիմընալ շինել սկսաւ 1763. Հիճրէթին 1177, լալելի չէշմէն ագսէրային մօտիկ, անկեց ելած հողովը լեցուց ան ծովածոցը՝ որ Եէնի խափուին առջին էր, ուր տեղ ծովին մէջնալ հնուցմէ մնացած աշտարակ մը կար անուանի, որ Մէլէխսարէյոսէ աշտարակ կըսվէր, ան ծոցս լեցուց որ վրան տըներ շինվի, ընակութիւն ըլլայ. բայց քիչ մը անցնելէն ետեւ լման որ լմննալու վրայ էր, լօտոսն որ սաստիկ կըզարնէ հոն, քակեց տարաւ ամմէն հողն ու քարերը որ հոն լեցուցերէին, այնչափ աշխատանքը ու խարճը ամենեւին զուր եղաւ, վասն զի ստանպօլցիք ինչվան ան ատենը աղէկ չէյտէին ծով լեցընելը. Ճարտարապետը (խալֆան) լսածին պէս վախէն պահվըտեցաւ ։ Սուլթան Մուստաֆան ասոր վրայ խիստ նեղեցաւ բարկացաւ,

բայց խելացի մարդուն բարկութիւնը շատ տարբեր կըլլայ, մտածեց որ՝ աս բանս սըխալմունքէն եղաւ, աս սխալս նոյն Ճարտարապետը մէջէն անցած ըլլալով ինքը կրնայ շտկել, անոր համար՝ հասկըցուց որ՝ թող դուրս ելլայ չիպահվի, վնաս մը չեմ իտար իրեն, չիգիտնալովը ավըեց, հիմա սորվելովը չինէ նորէն անանկ որ չավըրվի։ Աս խօսքիս վրայ Ճարտարապետը դուրս ելաւ, և իրաւ իր սխալմունքովը սորվելով առջինին պէս մինակ թող հողը չիձգեց ծովին մէջը, հապա սնտուկներու մէջ լեցընելով հողն ու քարը անանկ մէկմէկու վրայ կարգով ծովին տակը իջեցուց իբր մէյ մէկ մեծ քարեր. ասանկով մէկ ընդարձակ հաստատուն գետին մը եղաւ. իրեն ծովեզերքնալ մեծ մեծ քարեր շարեց կըզզիներէն բերել տալով, որպէս զի լօտոսին զարկուածքին դիմանայ (1)։ Աս գետինը ծա-

(1) Միայն թէ աս ծովածոցը լենալէն ետև եղաւ որ՝ լօտոսը սաստկանալու ատենը շատ տարի ստանպօլին ծովը կուռէր կըկոխէր ցամաքը. Թօփխանային մէյտանը՝ ղալաթիային ու գիմացի իսքէլէնէրը ջուրի տակ կըմնային։ Աշոր պատճառը կըսէին ան է որ՝ աւաշ լօտոսը զարնելով ան ծովուն մեծ ծոցին մէջը կըծաւալէր, իր բռնութիւնը (խեղդը) կըկոտրէր. անոր լեցվելովը չիկրնալով ծաւալիլ անկէց ետև ցամաքը կոխել սկսաւ։ Բայց աս ուռիլը ծովուն. բարձրընալը հիմա շատոնցմէնէ դադրած ըլլալով, յայտնի է որ ան չէ պատճառը, մանաւանդ որ՝ չէ թէ մինակ ստանպօլ, հապա նաև ուրիշ տեղվանքալ ան ատեններ անանկ ծովուն ուռիլը յաՃախ պատահեցաւ, ուր տեղվանք ծովը

խեց բայէններուն, որ ժամանակաւանդ շատը Հայու ազգէն առին, շատ տներ խանութներ շինեցին, ան վելիսարիոսին աշտարականալ մէկ փռանը քով ընկաւ. մէջի բնակիչներուն արտունութիւններ տրվավ, իրենց տները բարձր շինելու որչափ որ ուզեն, պօսթան պաշին դատաւորին տուրք չտալու: Այս գետինսալ վախրֆ ըրավ նոյն լալէլի Ճամիսիին, որուն առաջ մէկ մինարէ մը շիներեր, ետքը երբոր ղազի կարդացվեցաւ, ան ատենը երկրորդ մինարէնալ շինել տըվավ նման ուրիշ Թագաւորաշէն Ճամիներու: Հետեւեալ տարինալ 1764, մէտրէսէն շինեց սուլդան մուսդաֆան:

Այս շինութիւններուն ետևէն 1766. Հիճրէթի 1179. մայիսի 11. զիլհիճճէի 13. Եշի առտըվանց ժամ 11. անանկ սաստիկ շարժ մը եղավ ստամպօլ, որ շատ մինարէներուն գլուխը տարաւ, տուներ փլցուց, խաներ ավրեց, վէզիր խանը փլուց, չարսուին գոցված տանիքները՝ քաղքին պատերը՝ տեղ տեղ խախտեց, քանի մը Ճամի վնասեց, սուլդան մէհէմմէտին զմբեթին կէսը վար ինջավ, աս դիս ան դին մարդիկալ մեռան փլածի տակ մնալով շարժէն, որ 4. 5 վայրկեան քշեց ծաւալելով նաև ստամպօլին բոլորտիքը, բայց ամմէն տեղէն նաև ղալաթիայէն սաստիկ եղավ բուն ստամպօլ քաղքին մէջը, ուր գոռալով ու ցնցելով

---

չէին լեցուցած: Անանկէնէ ուրիշ պատճառներու տալու է, ինչպէս որ կուտան բնաբանք:

սկսաւ. իրեք օր ժողովուրդին մեծ մասը
վրանի (չատըրի) տակ բաց տեղերը նըս-
տանք, ինչու որ գրեթէ ժամ չէր անցներ
որ չերերցըներ, իրեք օրէն ետև ցանցառ
(սէյրէկ) կըշարժէր, ետքը շաբաթը հեղ
մը, ամիսը հեղ մը; ինչվան ութն ամիս ա-
սանկ հանգստութիւն չունեցանք ստամպօլ,
միշտ վախի մէջ էինք։ Աս շարժը տա-
րածված էր անատօլուի դինալ ինչվան
իզնիմիտ, ինչվան էրզիրում. սաանկալ ռու-
մէլիի դին ինչվան բրէզպուրկ որ մաճառի
մէջ է, ինչվան վիէննա, բայց վնաս մը չէ-
ըրվավ։

Հիճրէթին 1179. շապանին 2. նոյեմբ. 28.
սուլթան մուստաֆային դուստր մը ծնաւ
Պէյհան սուլթան, որուն համար իրեք օր
տօնանմա ըրին. իսկ հիճրէթի 1180, շա-
պանին 11. դեկտ. 27. մանչ զաւակ եղավ
սուլթան մէհէմմէտ, որ ետքը 1186 հիճրէ-
թի, րէճէպի մէջ մեռաւ։

Սուլթան մուստաֆան խելացի թագաւոր-
ներէն մէկը եղավ. առաջները ռայէներուն
աղէկութիւնը չէր ճանչնար, բայց ետքը
խիստ աղէկ ճանչնալով շատ բանի մէջ
անոնք գործածեց առաջ քերաւ, միայն թէ
կուզէր որ հաւատարիմ դիրացէն ամմէն մարդ
իրեն վայլածին կեօրէ վարվի. անոր համար
սաստիկ պատուէր (մէասախ) դրաւ ռայէ-
ներուն՝ որ իրենց չիվայլած բան չիհագնին
փարթամութին չիցըցընեն, զեղխութին չը-
նեն. ինքնաւ չափաւոր էր խարճելու.
խիստ հոգ կըտանէր բարեկարգութեանց

վրայ. ինքիրմէ յաճախ ծպտեալ (Թեպտիլ) կելլար կըպըտըտէր, անկէց զատ ծածուկ լրտեսներ (կէօզչիներ) ունէր, անոնցմով ամէն բան կիմանար: Անգամ մը երբոր սէլամլըխէն կըդառնար, հարցուց եէնիչէր աղասիին, ինչպէս վերջացաւ ան կռիւը որ երեկ խասգեղ եղաւ, երկու մարդ զարնըվեցաւ. եէնիչէր աղասին ամենեւին իմացած չըլլալով չիկրցաւ պատասխան տալ: Թագաւորին մինակ ասանկ հարցընելը՝ աղային մէկ մենծ յանդիմանութի մը եղաւ, ամօթով ընկաւ: Թագաւորը դարձաւ զուրցեց իրեն որ՝ ասանկ բաները իմանալու նաեւ առանց աշխատանքի կըլլայ, գիտես որ ամէն տեղին պազար խանըրխին մէջ կըպատմըվին ինչ որ իրենց գեղերը կըլլըվին, մէջերնին երկերկու մարդ դիր, իրիկվան գան քեզի պատմեն ինչ որ կըլսեն, թէ որ քառսուն հոգի դնես, անոնցմով ամէն բան կիմանաս: Աս ըսավ, վասն զի ինքը թագաւորնալ քառսուն հոգի դրած ունէր անոնց մէջը, շատը անոնցմով կիմանար քաղքին ու գեղերուն մէջի եղած դիպուածները: Յետագայ դիպուածնալ լսելու ըլլաս, կիմանաս սուլդան մուստաֆային խելքը ու արթուն ըլլալը կառավարուե վրայ: Մէկ մենծի մը գլուխ կտրելով իրեն ապրանքը միրիի առավ. ան մենծին վրայ առնելիք ունէր մէկ հայ մը, որ միայն ա̃յ արդարութիը իրեն վկայ կանչելով համարձակեցաւ աղերսագիր (արզուհալ) տըվաւ. Թագա-

ւորը կրկին սպառնացաւ գլուխը կախելու, բայց մարդը մտիկ չընելով սիրտը երած ըլլալով երրորդ անգամ նորէն խնդրեց, մէջը գրելով որ՝ իմին իրաւունքս է, պիտանաւորութիւնը զիս կրբանադատէ, կամ տուր, կամ իս կախէ, այլ դատաստանին կը յանձնեմ։ Իմացաւ Թագաւորը, թէ որ աս բանս սուտ ըլլար, աս կերպ համարձակութիւնը չէր կրնար ունենալ, պատուէր խրկեց մարդուն առտըվանց կանուխ սերայէն սօղուք չէշմէին դրան առջին գալ. հոն ինքը մինակ ծպտեալ (թէպտիլ) մէջքը թուր կապած ահռելի կերպարանքով մը երեւցաւ իրեն, հարցուց ինչ որ պէտք էր հարցընելու, ետքը իրեն ապսպրեց պէյլէրպէյիին հացագործէն ասչափ հաց առնելու, խասապէնալ ասչափ միս առնելու, վաղը կանուխ հոն բերել. Երբոր հետեւեալ օրը մարդը հոն բերաւ, Թագաւորը իրեն թուղթ մը տըվաւ որ՝ տէֆթէրտար էֆէնտիին դուռը ցըցընելուն պէս՝ իրեն ըստակը լման վճարեցին, բայց մէյմինալ լսեցին որ՝ հետեւեալ օրը պէյլէրպէյիին հացագործն ու խասապը կախվեցան։ Սով իմացվեցաւ որ՝ անոնց վրայ շատ ամբաստանութիւն լսած ունի եղեր, ստուգելու համար աս անծանօթ մարդուն ձեռքովը բաները առնելով հասկըցաւ որ իրաւ է եղեր անոնց անիրաւութիւնը, անանկով պատժեց։

Մեծ հոգ ունէր սուլթան մուսթաֆան նաեւ պարպըված գանձը (խազնան) լեցը-

նելու, անոր համար հանքերու (մատէննե-րու) վրայալ խիստ հող տարաւ, նս քա-նիս յարմար մարդ գտաւ պեզզեսթենը նրա-տող խօճաքիներէն մէկը՝ որ կըսվէր դա-հիր աղա. աս մարդուն ձեռքովը իմացաւ թէ քանի հանք (մատէն) կան իր տէրու-թէնը մէջ չբացուած (1), և թէ որչափ քիչ կըբանեցընէին բացված հանքերնալ անա-տօլուի մէջ, որ են կապան, արղանայ, ու կիւմիշխանէն, որոնք թէ որ աղէկ բանեցը-վին, շատ ոսկի արծաթ կելլար: Նս քա-նէրս սուլթան մուստաֆան իմանալով, ու իրեն ճարտարութիւը տեսնալով, մատէն էմինի ըրավ զինքը. դահիր աղան մատէն էմինի ըլլալով հոն գնաց, աղէկ կարգի դը-նելովը անչափ շատցուց բանեցընելը, որ 99 տեղ բովք (օճախ) բացաւ, ուսկից անչափ ոսկի արծաթ կելլար որ՝ ամէն ա-միս իրեք անգամ խազնա ճամիայ կելլար, մէկը տեղէն նոր կելլար, մէկալը ճամիան կըլլար, իսկ երրորդը ստամպօլ կըհանէր.

---

(1) Օսմանցիի երկրին չբացնված հանքերուն համ-րանքը խիստ շատ են, ինչվան ոմանք 400ի կըհա-նեն. ամէնէն աւելի մանիսային մեծ լեռանը վրայ է, որ իզմիրին կռնակը կիյնայ. ասիկայ յունաց ա-տենը կըբանվէր, կըսվէր զիֆթ մատէնի, բովքե-րուն (օճախներուն) տեղվանքը դեռ կերևան. ա-սոր վրայի ոսկին անչափ շատ է, որ դուրսէն գիծ գիծ (տամար տամար) վրան կըփայլի, յայտնի կերևնայ. տեղացիք բանեցընելը չուզելով, վրան հող կըքաշեն կըգոցեն, բայց քիչ մը անցնելէն ետև նոր նոր տեղվանք կըփայլին. գետին գտնով գուրս կելլան:

ամմէն մէկ խազնան 100 ուղտ էր, ամմէն մէկ բեռը 50 օխայ էր։ Երեք տարի քշեց իր մատէն էմինութիւնը, երեք տարուանը մէջ շատ բան բուսցուց. և որպէս զի պարապ տեղը բեռ ու խարճ չըլլայ, հողը չիմաքրած հանք խրկելով ստանպօլ, հրամանս առաւ Թագաւորէն, կիւմիւշխանայէն մէջը զարպխանէ բանալ տըվաւ, հոն կըկըխէր, կոխված ըստակ կըխրկէր ստանպօլ։ Ինչափ հաճոյ եղաւ աս բանս սուլթան մուստաֆային, որ չիշէք ամաններուն մէջ դնել կուտար կըսեն ամմէն կոխված ոսկիները, անանկ շարել կուտար կարգով ամաները, որ երբոր ուզենայ՝ ամմէնը մէկէն

տեսնայ։

Կիւմիւշխանան տեղ մը կայ ջուրի տակ; որ գետին քով ըլլալով ու վար տեղ, ջուրը հոն վազելով՝ ջուրի տակ կոխված այր (մաղարայ) մընէ, բայց մէջի եղած գետնին ոսկիին առատութիւնը իմքիր զինքը կըցըցընէ իրեն փայլելովը. վարպետները հասկըցուցին որ՝ աս ջուրիս պարպելը կարելի է վարպետաշէն դուլումպայ մը շինելով, անոր համար փարէզ աս դուլումպային պըղտիկը շինել բերել տըվաւ ստանպօլ, որ եօթը մէնքալ տեսանք պղնձէ շինված շատ զարմանալի օրինած, մաքուր,, վարպետ բան, որ միմիակ գոլոշտիքներուն ուժովը կըշարժի, որչափ շատ ջուր ըլլայ՝ կըպարպէ, բայց ասոր ՚ի գործ դնելը կիւմիւշխանայի մէջ չեղաւ։ Ոչ դահիր աղան եղաւ որ՝ ոսկիին այարը ցածցընել սկսաւ. վերջ-

գրեալ շէնքերնալ ենի խանը ու լալէլի Ճամիսին՝ դահիր աղային վերակացութ̃ըը շինվեցան ։

Սուլթան Մուսթաֆան աշխարհաշէն ըլլալով ուզեց նաև սապանձա կէօլիւն խառնել իզնիմիտի ծովին հետ, ան ատենը շատ աղէկութիւներ կըլլային․ մէյմը որ՝ անատոլուի շատ ապրանքը ջրով կինջնար մարմարա ծովը, անկեց աշխարհ ամմէն կրնար հեշտ (խօլայ) երթալ․ մէյմընալ որ՝ ան սապանձա կէօլին քով անտառ մը կըսկըսի անչափ մեծ՝ երկան՝ որ մէկ ծայրը խնչվան Ճանիկ կըհասնի, անոր փայտը ու տախտակը ջրով կրնար գալ ստանպօլ։ Բայց տեղացիք զանազան կերպեր՝ ոլորակներ բանեցընելով շատ դէմ դրին, թող չտուին ։

Պատերազմի դիւացէն խաղաղութեան մէջ էր սուլթան Մուսթաֆան, միայն թէ աս դիւ ան դին ապստամբները չէին պակսեր, կիւրճիի մէջէն, մորայ մէջէն, որուն պէյերը մեծ խռովութիւն հանեցին, խըպրըսի մէջէն, բայց ամմէնէն աւելի ռումէլիի մէջ խարատաղցիք մեծ ապստամբութիւն հանեցին 1181 հիճրէթին՝ յամին 1767․ որոնց վրայ զօրք խըրկեց սուլթան Մուսթաֆան ու 1768 անոնք կոտրեց ։ Իսկ քրիստոնէից տէրութեան հետ գրեթէ երսուն տարի կար՝ որ օսմանցին խաղաղութեան կերթար․ մոսկովին հետ 1739 հաշտութիւն ըրած ատեննին՝ (երբոր աննա իվանօվնա թագուհին էր նստած), անանկ սահմաններէն մէջերնին՝ որ քուպան թա-

Թարին երկիրը մէջ տեղը մնայ, որպէս զի
հեշտ (խօլայ) չըլլայ մէկմէկու երկիրը յար-
ձըկելու, և ազատ բերդը՝ որ Թէն կամ
տօնաւիս գետին բերանն է՝ չամրցուցած
մնայ, նոր սէրվիս ըրած մոսկովին դաւա-
ուին մէջնալ մարդ չիընակի, անապատ
մնայ։
Ու թէպէտ օսմանցին կըտեսնար որ՝ քու-
պանին դին մոսկովը ետեւ ետև բերդեր
կըշինէր սահման դրված տեղէն աւելի աս
դիս, նոր սէրվիսայի մէջնալ եղիսաբեթ թա-
գուհիէն ետև նորէնոր ժողովուրդ կըբնա-
կեցընէր, բայց խաղաղութիւնը չէր ավրէր,
լռութեամբ կերթար։ Երբոր լեհին իշխան-
ները մէջերնին չարաչար կռիւներ հանեցին
ու մոսկովի տէրութեան դէմ դնել ուզե-
ցին, 1766 յատուկ դեսպան խրկեցին ստամ-
պօլ, որ բազմութեամբ եկավ ստամպօլ պէյօղ-
լուն տէօրթ եօլ աղզին. ասիկայ յիշեցը-
նելով մէկիկ մէկիկ ինչ որ մոսկովը ըրեր էր
առաջուցմէ ինչվան հիմա տաճկին դաշնա-
դրութեանը դէմ, և ինչ որ կընէր հիմա լե-
հին վրայ, լալով աղաչանքով կըյորդորէր
օսմանցին, որ գայ զինք մոսկովին ձեռ-
քէն խալըսցընէ։ Այնպէս հետի եղօղ լեհի
իշխաններնալ շատ ընծայներ տալով սէ-
րային ու դուրսի աղայներուն, աւելի կը-
բռընկցընէին, լալով պատմելով աս դիս
ան դին՝ ինչպէս մոսկովը լեհին ազատու-
թիւնը ոտքի տակ առավ ամէն դաշնադրու-
թեց դէմ որոնց պաշտպան էր օսմանցիին
մեծազօր տէրութիւնը. թէ որ հիմա օսման-

ցին լուռ կենար, վրէժխնդիր չըլլար, իր մեծ վարկումը (ինտիպարը) պիտոր կորսնցըներ ։ Այս խօսքերս իժիր կըզրուցեցին ըստանպօլին մէջ մեծին, պզտիկին, ամմէնուն, ինչվան որ սուլթան մուստաֆային ականջնալ կըհասնէր. որոնց խօսքին իրաւունք տալով նաև ֆրանսզին դեսպանը՝ որ էր մուռքեզզէ բուիէֆդ, անալ իր մարդիկներով կըգրգռէր տաճիկը ։

Սուլթան մուստաֆան աս խօսքերս լսելով, տեսնալովալ որ կատարինէ Թագուհին լեհին մէջը զօրք խօթելով լեհին կառավարութենը մէջ կըխառնըվի, կուզէ իր տակը առնել, խիստ ատելութիւն մը ընկաւ սրտին մէջը մոսկովին վրայ, չուզեց փափկութէ մէջ կենալ ինչպէս իր երկու առջինները, հապա ուզեց իր ուժը ցըցընել, մանաւանդ թէ ինքը առնել լեհաստան ։ Որչափ որ պատերազմի հասկըցող մարդիկ կային կամ քրիստոնեայ, և կամ քրիստոնէիցմէ դարձած, ապսպրեց անոնց շտկել նորոգել ամրցընելու տեղերը, որ մէհէմմէտ փաշայէն (1) ետև թողված էին, եէնի չերինէրնալ սուլթան ահմէտին ապստամբութե (զօռպայէն) ետև ավարացած էին, առջի քաջասրտութիւը չունէին ։

---

(1) Ասիկայ քրիստոնէիցմէ դարձած էր առենօք, որուն անունն էր կղօգիոս աղէքսանդր կոմս պօննէվալայ. անոր համար քրիստոնէից գրքերուն մէջը Պօննէվալ անունով կիշվի, եղավ փաշայ. թօփճի պաշի, մեռաւ 1647. ասոր գերեզմանը պէյօղլուէ թէքէէն է ։

Բայց Նեմչէի կայսրուհին Մարիամ Թերեզինան, որ խիստ բարեկամ էր տաճկին, ու խաղաղութեան սիրող, խաղաղութիւն կը յորդորէր զտաճիկը, վախցընելով չըլլայ որ երկու ծայրէն զարնէ քեզ Թշնամին աւրեւելքէն ու արեւմուտքէն, մանաւանդ որ ինքնալ յոգնած ըլլալով պատերազմէն, չէր կրնար օգնութիւն մը ընելու։

Լեհերը Թագաւորներէն օգնութիւն կը խնդրեն. Ռուսները օսմանցիներուն երկիրը կըկոխէ. օսմանցին մեծի պատրաստութիւնը կըտեսնայ.

1766 — 1768։

Լեհին ամէն տեղը շփոթութիւնը ծաւալեցաւ. Ըստանիսլաւոս օգոստոս Թագաւորը ու ատենակալք երկան ատեն չիգիտնալով ինչ ճամփայ բռնեն, յայտնի խնդրեցին կատարինէ Թագուհիէն Մոսկովին՝ որ աւելի զօրք խրկէ Լեհի մէջ, որպէս զի եաւքի որոշումը տայ։ Անանկ կըկարծըվի որ՝ Մոսկովը դըրդերէր Լեհցիները՝ որ իրենք փնտըրեն իրմէ աս զօրաց խրկելը. վասն զի Մոսկովի զօրքը շուտ մը Լեհի մէջ աս դին ան դին եկան ցրուեցան, ուր որ կըգտնային միաբանները (քօնֆէտէռադինները) կըպատժէին, կըցրուէին, անանկով քանի մը տեղ խաղաղցուցին հնազանդեցընելով, որ Լեհի մեծերուն խիստ դէմ բան էր. վասն զի բնաւ չէին սորված հնազանդելու, այլ

միշտ իրենք իրենց կամքին կէօրէ կեր-
թային ։

Արեւելի մեծերէն շատը աս բանիս մը կատ-
ղելով, ճար չիգտնալով, սկսան ինչպէս տաճ-
կին՝ ասանկալ ուրիշ թագաւորներուն դի-
մել գանկտելով, ու շատ ըստակ ու ընծայ
պարգեւելով անոնց մեծ իշխաններուն, որ-
պէս զի յորդորեն իրենց թագաւորները,
զէնք առնեն մոսկովին դէմ, ինչպէս որ
խօսք տըված էին պաշտպան կենալու ան
դաշնադրութեցը, որ լեհին ազատութեը
համար եղած էին, իսկ հիմա կըսեն մոսկո-
վը ամենեւին չի պահեր ։ Պրուասինսքի կոմ-
սը որ մեծ մառեչալ էր եղած լեհին, կա-
տարինէ թագուհիին վրայ խիստ տաքցած
ըլլալով՝ թէ ինչու կարոլոս սաքսօնիայի իշ-
խանը (որ փեսայ էր իրեն մօտիկ ազգա-
կանի), քուռլանտիայի դքսութէ վար ձգեց,
ինչպէս որ վերը պատմեցինք, աս դիս ան-
դին մարդ խրկեց Ֆիլեմէնկ ունեմցէստան,
որպէս զի զէնք ու ձէպխանէ առնեն, հա-
րուստալ ըլլալով՝ ու շատ մեծերու հետ
ազգականութի ունենալով, շատ ըստակալ
սփռեց ամէն տեղ, որոնցմէ ոմանքալ
ստանպօլ եկան օսմանցին ոտք հանելու,
ինչպէս որ վերը պատմեցինք ։ Ինչ ցաւա-
լի վիճակ, ինչ խեղճ կառավարութի, ին-
քը անհոգ անզօր նստիլ զօրաւոր թագա-
ւորաց մէջ, ետքը երբոր գլուխը բան մը
գայ, ան ատենը հեռու թագաւորներու
դիմել, զօրք խնդրել, օգնութիւն մու-
րալ ։

Լեհի Թագաւորը 1766 սրբազան պապին միջնորդ ձգեց յոհաննէս Փրանչիսքոս ալպանի քառտինալը (որ Լեհի եկեղեցիներուն պաշտպանն էր,) որպէս զի սրբազան պապը հրամմէ Լեհի եկեղեցականներուն՝ կամաւոր տուրք մը տալու համար. Երբոր աս հրամանս եկաւ, Լեհի եկեղեցականները շուտ մը տուրք տուին Թագաւորին ։ Սըրբազան պապն ալ իր դիւացէն կըբաղձար որ՝ կամ կոնդակներ գրելով, և կամ ըստակ խրկելով, օգնուէ ընէ Լեհին, բայց ինքնալ ան ատենը վէճի մէջ ըլլալով Թագաւորաց հետ քաղաքային պատճառով՝ որ վարը պատմենք, մէկէ մը մէկ յայտնի օգնուէն մը չիգտան Լեհերը, միայն օամանացիէն յոյս մեծ տուին ։

Աս միջոցիս մէջ Մոսկովները միանալով ան Լեհցոց հետ՝ որ իրենց դին էին, շատ անգթուէ գործքեր կընէին մէկալ Լեհերուն վրայ, որ միաբանեալք (քոնֆէտէռադի) կըսուէին, ինչպէս որ պատմեցինք. վէյսմանն Մոսկովին զօրապետը ամէն տեղ անոնց ետևէն կիյնար կըհալածէր ջարդելով, իրենց ապրանքը երելով, մանաւանդ բօդոցքի կոմսին ետևէն կիյնար, որ ուղղափառներուն միաբանութեանը մէջ գլխաւորն էր ու զօրաւոր ։ Ասիկայ տեսնալով որ՝ ետևէն առջևէն Մոսկովին զօրքը մէջ առեր էին չէր կընար նորէն դառնալ բօտօլիա, ուր էին իրեն ուրիշ զօրքերը, հարկ եղաւ իրեն հեռանալ պառ տեղէն, Թողուլ Նաւքա լէհ ըսված բերդը, փախաւ եկաւ օս-

մանցիլին երկիրը, մնաւ պուղտանին երկի-րը, որպէս զի անկից անցնի երթայ իր ու-զած տեղը վօլհինիա. ասոր հոն գալը կերեւար որ օսմանցիին գիտնալովը եղաւ, որովհետեւ իր մօտիկ ազգականն էր որ ըն-տանիպօլ ամէնուն ըստակ կըբաշխէր:

Սէյսման ասոր միտքը գիտնալով՝ կուզէր ամէն կերպով արգելել, անոր համար ա-ւանց մէկ հրաման մը առնելու տաճկէն, ինքնալ իր խազախներով մնաւ տաճկին երկիրը: Պալթա քաղաքը որ գօձա պէյէն իրեք օր հեռի է դէպ 'ի հիւսիս, երեց մըր-կեց, որովհետեւ բօղօցքին հոն էր փախած: Որեն շատ զուրցեցին թէ պալթա քաղա-քին աղան, և թէ մօտիկ տեղերուն աղայ-ները, որ քու ըրածդ յայտնի կոտրել է ան դաշնադրութիւնները բարեկամութիւնները որ տաճկին ու մոսկովին մէջը կային, բայց Սէյսման քամահրելով մը պատասխան կու-տար, թէ որ մոսկովի թշնամին թող կու-տաք տաճկի երկիրը կոխելու, ինծիալ պէտք է որ թող տաք ըսելով լեհցոց ե-տեւէն կիյնար:

Խօթունին փաշան աս ամէն բանը դուռը հասկըցուց, ան պատենը սուլթան մուստա-ֆան խիստ տաքցաւ, պատերազմի պատ-րաստութի տեսաւ, պէյլիկ նաւեր խրկեց սեւ ծովը. 50 հազարովալ սերասքեր մը խրկեց լեհին սահմանին (սընըրին) դին, ապսպրելով որ երբոր պէտքը ըլլայ՝ Թուն-ձա կամ անեսդեր գետնալ անցնի. 10 հա-զար մարդ խրկեց պուղտանին վերի դին,

որ ետքը Պուքօվինա ըսվեցաւ. ուրիշ զօրքաւ խրկեց պէնտէրին տակը նաև ազախ. անատօլուաւ հրաման գնաց ամմէն փաշայներուն, որ իրենց զօրքով պատրաստ կենան: Պատերազմնաւ կարգով սկսելու համար՝ բէգլրպուրկ մոսկովին ասանկ պատգամ (խապար) խրկեց: „Ինչափ „մոսկովլի զօրք լեհի մէջ նստեցընել ու„րիշ բան չէ՝ բայց եթէ լեհին ազատու„թիը վերցընել, և որովհետև դաշնադրու„թեց դէմ է, որոնց ես ալ խոստացած եմ „պաշտպան ըլլալու, կուզեմ որ քու զօրքդ „քաշես հանես լեհին մէջէն, որպէս զի „բարեկամութիւնիս չիկոտրենք“: Լեհէբունալ իշխանութեան մը ու սպառնալով մը ապսպրեց որ՝ շուտ մը մոսկովները դուրս հանեն իրենց երկրէն, մէկ նոր ժողով մը ընեն, իրենք իրենց խռովութիւննին շտկեն առանց մէկ օգնութիւն մը կանչելու դըրսէն:

Բայց պռանիքի զօրապետը զարկաւ ան լեհերը՝ որ Ճէնկոյօղ կըսվէին, ու պառքաղաքը առաւ. ամմէն դիհացէն նոր նոր միաբանութիւններ կըլլային, անկէց հարկ եղաւ մոսկովլի ու լեհի զօրացը աս դիս ան դին բաժնըվիլ. միաբանեալները քուքով քաղաքը առին. մոսկովը վրայ վազեց անոնց ձեռքէն ետ առնելու, մարդ կորսնցընելով ետ հալածվեցաւ. բայց օգոստ.
16 նորէն զօրանալով, Ջրանցքի մը Ճամփայ գտնալով, ան Ճամփէն երթալով, նաև յարձըկելով մոսկովը ներս մտաւ, թալլեց,

մէջի պաշտպան զօրքը բռնեց. շատ արիւն եղաւ, ու 3 հազար հոգի միաբանեալնե-րէն գերի ընկան. միայն թէ մէկ տեղը զսպեցինին՝ ուրիշ շատ տեղեր նորէնոր ապստամբութիւններ կելլային. ամմէն լե-հաստան մէկ ալեկոծութեան մը մէջ էր ըն-կած։

Ան միջոցին մէջ երբոր քռաքօվլին ու քոռ-եավլին եպիսկոպոսները՝ ուրիշ մեծերով վարշով քաղքին մէջը գիշեր ատեն խո-րունկ քունի մէջ էին, մոսկովը եկաւ յան-կարծ բռնեց, սիպիր քշեց, ըստ որում ա-տոնք խիստ ջատագով էին իրենց ազատու-թեանը։ Աս բանիս վրայ ա՛լ աւելի գրգռե-ցաւ օսմանցին. ստանպօլ եղօղ ինկիլիզի դեսպանը Մուրրայի անունով բարեկամ ըլլալով մոսկովլին ու օսմանցիին, մէջ մտաւ, շատ ջանք ըրաւ որ խափանէ պատերազ-մը, բայց չկրցաւ։

Փրանսացիները իրենց զօրքը փօխադրելէն հեռանցին, փօխադրեա նոր եղխեղոպոս երեւալուն պատճա-ռովը՝ Ճեներալներուն թշնամութիւնը հեռացնելու.

## 1759 — 1760։

Գանք հիմա պատմելու ուրիշ տէրութեանց վրայ։ Փրանսացին զօրքը որ քօրսիքա կե-ցերէին, թէպէտ բան մը չէին ըներ, բայց հօն կենալովնին կերեւար թէ քիչ մը զսպը-ւած կըկենային երկու դիւացէնալ, հիմա

Ֆրանսային պէտք ըլլալով իր զօրքը՝ 1759 Քօռսիքայէն Բռօվանս գաւառը բերել տըվաւ. ան պատէհը երկու դինալ սկսան իրարու հետ զարնըվիլ. քանի մը Քօռսիքացի հերիք կըլլար շատ Ճենովէզներ փախցընել, վասն զի Քօռսիքացիք իրենց ուզածը առաջ տանելու համար սրտանց կը ծեծկըվէին, իսկ Ճենովէզներուն զինուորները վարձքով բռնըված միայն իրենց թաշակը (էօլէֆէն) առնելու համար կըծեծկըվէին: Հաս Ջանացին Քօռսիքացիք Պաստիան առնելու, բայց չըկրցան:

Բաօլին որ պատերազմէն զատ կընայէր որ Քօռսիքացիները մարդ ընէ, զանազան բարեկարգութիւններ մըցընէ, տեսնալով եկեղեցական բաները շատ անկարգութե մէջ ընկած ավըրշտըկված անչափ երկան ծեծին եաւէն որ երասուն տարվընէ վեր կըվաւվէր, ժողովուրդին յորդորանքովը խնդրեց ԺԴ. Կղեմէս Քահանայապետէն հաւնոյ մէկ առաքելական տեսուչ մը խրկել իրենց կղզին ամմէն իշխանութի ունեցող, որպէս զի շտկէ կարգաւորէ եկեղեցական բաները, ու գեղացի ժողովուրդներուն սորվեցընէ հաւատքի պէտք ըլլալու բաները, որ խիստ շատ կայլին ամենևին չէին գիտէր, սորվեցընող չունենալով: Աս խնդիրքս ընդունելով Հռոմ 1760 մէկ եպիսկոպոս մը խրկեց Հոն Քռէսչէնցիօ տանՃէլիս անունով, ամմէն պէտք ըլլալու իշխանութիւնները տալով իրեն եկեղեցական բաներու վրայօք, բայց Ճէնօվային կամ Ճի-

նիվիզին տէրութիւնը անանկ սեպեց որ՝ իբր թէ քաղաքական բաներու վրայ ալ պիտոր խառնըվէր , ու եկեղեցական բաները կարգի դնելով՝ իբր թէ ապստամբ քօռսիքացիները անկախ ճանչնալ կըցըցընէր հռոմ , ասանկ միտքը դնելով Ջինիվիզը՝ խիստ սրդողելով սկսաւ գէշ խօսիլ՝ գէշ գրել հռոմայու դէմ սպառնալով ըսելով որ՝ աս բանով հռոմ յայտնի անիրաւութիւն կընէ ան իշխանութենը դէմ՝ որ Ջէնօվային կամ Ջինիվիզին հասարակապետութիւնը ունի քօռսիքա կղզին վրայ . աս դիս ան դինալ գանկատ գրեցին , նաև ճանճրացուցիչ յայտարարութեն թղթեր : Աս հերիք չէ , պինտ ետքը 6 հազար ռիալի խոստացան ով որ ան եպիսկոպոսը բըռնէ , կամ գլուխը կտրէ :

Արքայական պապը մէկ թուղթ մը հրատարակեց կոնդակի պէս , ոչնչացուցանելով ու դատապարտելով Ջինիվիզին ըրած վճիռը , նաև նզով սպառնալով Ջինիվիզի կառավարներուն վրայ . բայց Ջինիվիզները հանդարտելուն տեղը , ա՛լ աւելի խստացան : Քօռսիքացիք ասոր դէմ խիստ դժարնին գալով Ջինիվիզին ասանկ չարժուածքին վրայ , աւելի պատիւ տըվին հռոմայէն խըրկըված եպիսկոպոսին , ու Ջինիվիզներուն վրայ աւելի ատելութին ունեցան , իրենց ամմէն ուժը բանեցուցին անոնց դէմ : Պաօլի զօրագլուխընին ու իրենց մէնծ ատեանը ժողվըվեցան , մէկ Յայտարարութիւն մը հանեցին անանկ մէնծ մէնծ

խոշոր խօսքերով՝ որ մէկ մեծ Թագաւորի
մը կըվայլէ, ասանկ գրելով։ „Մեր ար-
„դարութիւնը յայտնի է ամենուն. անտա-
„նելի բռնութիւնը Ճինիվիզներուն մեր
„կղզիին ու մեր ազատութեան դէմ, մեզ
„ստիպեց զէնք (սիլահ) վերցընել, քանի
„որ մենք մեզ չափաւորելով վարվեցանք,
„այնչափալ Ճինիվիզները սաստկութեամբ
„վարվեցան։ Երսուն տարիէն աւելի է
„որ կըծեծկըվինք, որպէս զի վերցընենք
„մեր վրայէն Ճինիվիզին լուծը, բայց ա-
„մենեւին չուզեցին իր ժողովրդեան ա-
„ռուտուրին դպչիլ, ցաւելով իրենց խեղճ
„կացութեան վրայ. վասն զի մէկ կառա-
„վարութեան մը տակ են, որ ազնուապե-
„տութիւն ըլլալով՝ ինքիրմէ կըլլայ բռնա-
„ւորական, բայց Ճինիվիզը կաշխատի բո-
„լորովին ջնջել խափանել մեր Թագաւո-
„րութե վաճառականութիւնը ծովու վրայ.
„չէ թէ միայն մեր դրօշակով (պայրախով)
„գտած նաւերը ամմէննալ կըբռնէ, հա-
„պա նաև ուրիշ տէրութեանց վաճառա-
„կանի նաւերը կըբռնէ կերէ, որոնք ա-
„ռուտուրի համար մեր նաւահանգիստնե-
„րը կըմտնան կելլան. Ճինիվիզցիք ասով
„կուզեն մեզ ամմէն բանէ զրկել, որ իրենք
„բանեցընեն մատրապապազութի մեր վրայ։
„Հիմա արդարութիւնը կըպահանջէ որ
„մենքալ ծովու վրայ պատերազմի նաւեր
„ձգենք, որպէս զի Ճինիվիզի դրօշակով
„գտնըված նաւերը ամմէն տեղ զարնենք
„բռնենք. Հրամանալ կուտանք մեր ազգին

„ որ ասպատակութի (խուրամնութիւն)
„ ընեն Ձինիվիզին նաւերուն դէմ, հրաւի-
„ րելով նաև ուրիշ ազգերնալ ասպատա-
„ կութիւն ընելու մեր քօռսիքայի դրօշա-
„ կով“ ։

Քօռսիքացիք խուրամնոք նաւեր կըհանեն ծովու վրայ. Ձինեվիզցիները կուզեն հաշտուիլ.

1760 — 1762 ։

Ո՛րչափ տարբեր բան մ'ընէ միաբանեալ ազգ մը անմիաբան ազգէն. լեհցիները շատվոր ազգ, հարուստ, լեցուն իշխաններով, բան մը չիկրցան ընել, վասն զի մէջերնին տարաձայնութիւնը շատ էր, մէկ խելացի գլուխ մընալ չունէին. իսկ քօռսիքացիք պզտիկ ժողովուրդ մը, աղքատ, բայց մէջերնին միաբան ըլլալնուն համար, ու խելացի զօրաւոր գլուխ ունենալնուն համար՝ նայէ որ ինչ կարգ, ինչ կանոններ մէջերնին մտուցին. ու 30, 40 տարի կըլլայ՝ ինչպէս դիմացան դէմ դրին՝ չէ թէ մինակ Ձինիվիզին, հապա նաև Ֆրանսզի տէրութեանը ։

Քօռսիքացիք վերոգրեալ յայտարարութիւնը հանածնին պէս՝ ասպատակները (խուրամնոնները) լեցվեցան ամմէն դօսքանայի՝ Ձենօվայի՝ ու սիչիլիայի ծովերուն մէջ քօռսիքայի դրօշակով, Ձինիվիզին վաճառականութիը խիստ նեղը ձըգեցին, որուն հազարաւոր նաւերը առաջ

ներթային կուզային , ամմէն տեսակ աւ-
րանք առնելով ծախելով՝ շատ ընտանի կը-
վատորկէին ։ Ճինիվիզը ապստամբները
զսպելու համար երկու չէքտիրի խրկեց ,
հազարմընաւ զօրք , բայց քօռսիքացիք միշտ
յարատեւօղ ու քաջասիրտ , իրենց հայրե-
նեացը վրայ վառւած , տարիներով դէմ
կեցան ; այնչափ որ՝ իրենց հալածիչները
կոտրըվելով պասթիայի մէջ փախան ։
Ճինիվիզները տեսնալով որ քօռսիքացոց
հետ գլուխ չեն կրնար ըլլալ , 1761 իրենց
ատեանը իրեն բարկութիւնը թողուց , անու-
շութիւնը ձեռք առաւ , ներումն խոստացաւ
իրենց ամմէն ըրածներուն , խօսք ալ տը-
ւաւ որ իրենց բանաւոր խնդիրքները կա-
տարէ ։ բայց Ճինիվիզը ուշ սկսաւ աս կեր-
պը բանեցընելու , քօռսիքացիները ալ հա-
ւատարմութիւն չունէին ասկէց ետքը Ճինի-
վիզին խօսքերուն . ատելութիւնը ծաւալե-
եր անոնց դէմ , անկախ ազատ ըլլալու
համը առերէին . իրենց ծանր կուգար նո-
րէն ուրիշի տակը անցնիլ . 1762 քօռսիքա-
ցի Փրանչէսքօ մադուան որ եղբայր էր
մեռնօղ մարիօ մադուային , ու հազարա-
պետ էր սառուտէնեայի թագաւորին քով ,
Ճինիվիզները իրենց մառէշալ ընելով քօռ-
սիքա խրկեցին իբրև խաղաղարար . աս-
կայ երբոր քօռսիքա եկաւ , մէկ յայտարար
թուղթ մը հանեց , բայց մէկ պտուղ մը
չըրաւ , վասն զի երկու դինաւ իրենց կար-
ծիքը չէին ուզեր փոխել , ամուր կեցերէին .
Ճինիվիզները կուզէին իրենց ներութիւնը

քոռսիքային վրայ, քոռսիքացիք կուզէին իրենց ազատութիւնը ։

Փրանսըզը օգնութ̃ հասցայ Ճէնէվիզներուն քոռսիքային համար. Ճէնէվիզները մարդ ղրկեն որ Բաօլին սպաննեն.

1764.

Վերոյիշեալ մարդուն տեսնալով որ հաշտութիւն պիտոր չըլլայ, ուզեց պատերազմով զսպել քոռսիքացիները, և թէպէտ ինքը քաջասիրտ մարդ էր ու արուեստը գիտցող, իրեն դիմաց մարդ ունէր քոռսիքացիներէն, բայց իրեն զօրքը կարողութիւն չունէին. որչափ որ ծեծկռուեցաւ՝ վնաս քաշեց. Ճէնովիզներուն կըգրէր օգնութի հասցընելու, բայց Ճէնովիզները յոգնած ըլլալով խարջէն՝ որ աս երկան ու արիւնահեղ պատերազմը իրենց ընել կուտար, կըմտածէին որ՝ աս կղզին աւելի զօրաւոր իշխանի մը տան, որ կարող ըլլայ քոռսիքացիները իր տակը պահել, անով իրենքալ իրենց վրէժը առնեն ։ Առաջ մտածեցին դօսքանային դուքսին տալ, ետքը փոխեցին, նորէն Ֆրանսըզին դիմեցին. 1764. օգոստ. 7 դաշնադրութի մը ըրին, որով Ֆրանսըզին թագաւորը յանձն առաւ օխտը գունդ զօրաց խրկել նորէն քոռսիքա, որպէս զի չորս տարւան մէջ պահէ Պաստիան, Ս̃ Ֆիոռէնցօ, Ալկալէօլա, Կալվի, ու Այաքչօ քաղաքները ։

արմնք մնացեր էին Ջէնօվացոց ձեռքը ։ Ս-
սանկալ սեպտ. մէջ Մարպէօֆ մարէշալը
Ֆրանսզ զօրքով քօռսիքա կղզին ելաւ,
գլխաւոր զօրանիստը պասդիան ըրաւ, իսկ
զօրապետը դօռռէ տիւբէն կոմսը՝ որ նոր-
տաւ այաքչիօն, Ֆրանսայի թագաւորին ա-
նունովը թուղթ մը հրատարակեց, թէ
միայն տեղվանքը պահելու համար մտանք,
և ոչ իբր դատաւոր ան կռուին՝ որ Ջէնօ-
վացոց ու քօռսիքացոց մէջը կայ ։

Ջէնօվացիք գիտնալով որ՝ Պաօլի զօրա-
պետն էր՝ որ շատ քաջագործութիւն ընել
կուտար քօռսիքացոց, իրեն մէկ քանի հա-
զարապետներուն ըստակ տըվին, որպէս զի
յանկարծ սպաննեն Պաօլին, որ ապստամբ-
ներու գլուխ կըկանչէին ։ Ասոնք օր մը
մէխանայի մէջ կռուիլ սկսան, կռիւը տաք-
նալով կարելի է թէ նաև գինիէն տաք-
նալով, բերաններնէն մնանկ խօսքեր փա-
խուցին, որ իրենց մտածածը երևան ե-
լաւ, մէխանաճին լսելով գնաց մատնեց
դատաւորներուն, դատաւորներնալ ասոնք
բռնեցին, Պաօլին ականջը հասուցին ։
Պաօլի զօրագլուխը միշտ մահուան մէջ
պատրաստ ըլլալով, առանց վախի երկայն-
մտութ̃ քննեց իմացաւ բանը, ետքը իր
առջին բերել տալով, ասանկ ըսաւ անոնց ։
» Դուք իս անիրաւութ̃ ուզեցիք մեռցը-
» նել, ես հիմա իրաւամբ կրնայի ձեզ մեռ-
» ցընել, բայց չեմ ուզեր իմ իշխանութիւս
» բանեցընել ձեր վրայ, երկաթնիդ կար-
» ձըկեմ ու կըթողում որ ազատ տուներ-

„ Նիդ երթաք, հոն մտածեցէք արժանի
„ եմ մեռնելու թէ չէ, թէ որ ասկէց ետքը
„ վրաս մէկ յանցանք մը գտնաք հայրենե-
„ եացս դէմ, ձեզի հրաման, համարձակ
„ իմ երեսս տըվէք։ Ասոնք աս խօսքերս
„ լսելով զղջումի եկան, ոտքը իյնալով ամ
„ մէն բանը խոստովանեցան ինչ որ պիտոր
„ ընէին “։

Աս մարդս բաօլին լման դիւցազնի մը պէս մարդ եղավ, իրեք կատարելութիւն ունենալով խոհեմութի̃, ճարտարութիւն, ու հաստատութի̃, ամենևին չէր վախնար, չէր շփոթէր Փրանսզներէն, շատ խոհեմութի̃ ամըրցուց զօրացուց քուսիքային տեղվանքը, կասկած երթալով քուսիքացոց վրայ չըլլայ թէ անհաւատարիմ ըլլան, մեծ ժողով մը ընել տըվավ, 1754ին ըրած երդումնին նորոգել տըվավ աւելի զօրաւոր խօսքերով ասանկ։ „ Մենք կերդվըն-
„ նանք, ա̃ծ վկայ կըկանչենք, որ աւելի
„ կընտրենք մեռնիլ, քան թէ Ճինիվիզին
„ լուծին տակը մտնալ, թէ որ եւրոպային
„ տէրութիւնները մանաւանդ Փրանսան
„ չիխղճան մեր վրայ, այլ մանաւանդ մեզի
„ դէմ զէնք վերցընեն մեզ ջնջելու, մենք
„ մեր դիւացէն ջանանք բռնութիը բռնու-
„ թի̃ վռնտել ծեծկըվիլ ինչվան որ ան զէն-
„ քը ինքիրմէ մեր ձեռքէն իյնայ. երբոր
„ ամմէն միջոցները պակսելու ըլլան, ալ
„ չիկրնանք ծեծկըվիլ, կըվճռենք յուսա-
„ հատված Սակունդիններուն պէս մեզ
„ կրակը ձգել, որ մեր հայրենեաց ու ազա-

„ տունն մէջ ետքի շունչերնիս տանք մեռ-
„ նինք, քան թէ ձինիվիզին անտանելի
„ բռնութեանը տակ նորէն մտնանք“ ։

Այս կերպ քաջասրտութիւնը հին հռոմայե-
ցոց ու լակեդեմոնացոց մէջը կըգտնըվէր, հիմա ասոնց վրայ տեսնալով, շատ մարդ-մանաւանդ ինկլիզները քուսիքացոց դին կըլլային ։ Ռուսսօ նոր փիլիսոփանալ զարմանալով ասոնց հայրենասիրութեը վրայ, երկան գովասանք մը շինեց ասոնց համար ։ քուսիքացիք իրեն շնորհակալութիւն ցըցընելու համար, յատուկ մարդ խրկեցին աղաչեցինալ որ իրենց կղզին գայ կառավարելու շտկելու իրենց նոր կառավարութիւնը խելացի կանոններով, բայց անիկայ առանձնութիւնը աւելի սիրելով չեկավ ։

Քուսիքացիք նոր նորէն կըռնեն, ճենովեզին շատ շինութիւն կընեն ։ Ֆրանսան նոր զօրք կըխրկէ ձինովեզին հետ դաշնադրութիւն ընելով ։

1766 — 1768 ։

Քուռսիքացիք իրենք իրենցմէ նոր կարգդնել սկսան. մէկ նոր ժողով մը սահմանեցին պատերազմի՝ զանազան գաւառներէն մարդ ժողվելով. ասոնց պարտքը աս պիտոր ըլլար, ինչ կանոններ որ եղված էին ու պիտոր ըլլըվէին, նայէին հոգ տանէին որ

պահվին, մանաւանդ այն կանոնը՝ որ կարգելէր հաղորդակցութիւնը քօռսիքացոց ու Ճինիվիզլին ձեռքի եղած տեղվանքներու մէջ. արգելեցին ալ որ՝ ֆրանսզներուն հազարապետները կղզիին ներս տեղվանքները չիթողուն մտնալու :

Պաօլին ամմէն քօռսիքացոց դիացէն Ֆըրանսզի թագաւորին գանկտեցաւ զօրք խըրկելուն համար իրենց դէմ, այն ատենը որ՝ իրենց հեշա էր եղած (խօլայցած էր) Ճինիվիզները դուրս հանելու. բայց ֆրանսըզները մտիկ չընելով 1766ին Ֆիօռէնցօ նաւահանգիստը առին, նաև այն տեղվանքները որ առաջ Ճինիվիզները առեր էին: Պաօլիին եղբայրը 3 հազար մարդով գնաց հալածեց ինչվան պօնիֆացիօ տեղը Պադուչչի մարդը, որ 500 մարդով այաքչիօին լեռներուն վրայ ամրցած կեցեր էր. աս մարդս ուզելով ամմէնէնալ անկախ ըլլալ, կապըստամբէր դէմ կըկենար Պաօլիինալ, Ճինիվիզինալ:

Քօռսիքացիք 1767 գացին քաբրայա կղզին առին, որ 40, 50 մղոն հեռի էր առնօ գետին բերնէն. աս մէկ հատիկ կղզին էր, որ դօսքանայի ծովուն մէջ Ճինիվիզներուն ձեռքը մնացեր էր, ֆրանսզները իրենց չորրորդ տարին մօտիկ ըլլալով լմննալու՝ անհոգ եղան աս բանիս դէմ դնելու: Բայց Պաօլին չէր դադրեր նորէնոր ամրցընել իր ազգին զօրութիւնը ծովու և ցամաքի վրայ, նաև քաղաքական բաներու վրայ աղէկ բարեկարգութիւններ կըդնէր, վաճառականու-

թիւը, երկրագործութիւնը, ծովարուեստը ու բանասիրութիւնը շատ ծաղկեցուց աս քաջ հայրենասէրս, թէպէտև պատերազմի ատենի մէջ էր, բազմամարդութեան աղէկ հոգ տարավ, տեղ տեղ գեղեր, տներ շինելով գեղացոց համար, նաև պզտիկ քաղաք մը շինեց կարմիր կղզիին մէջ ալկատօլա տեղէն երկու մղոն հեռի. անբնակ տեղի մը վրայ ուր որ առաջ կենդանիներ կըբնակէին, հոն մէկ հասարակաց պալատ (սէրայ) մը շինել տըվավ դատաւորներուն համար. մալթայի մէջ մէկ մեծ շամիդէք մը շինել բերել տըվավ. ալիկուռնայէն ալ նաւ շինող վարպետներ բերել տըվավ, իր թէրսանէներուն մէջ բաժնեց։

Ասանկով կըկարծըվէր որ՝ Ճէնօվացիք յոգնած ըլլալով անչափ խարճերէն պիտոր թողուին քօռսիքան. քօռսիքացիքալ իրենց ուզած ազատութիւնը պիտոր ձեռք ձգէին, բայց դիպուածը ամմէն կարծիքը փոխեց։ Աշխըրհիս մէջ պզտիկը որչափ քաջասիրտ ու խելացի ըլլայ, միշտ մեծին բերանը կիյնայ։ Ֆրանսզին թագաւորը ԺԵ լուիզ իրեն զօրքը ետ կանչելուն տեղը՝ նորէն 16 գունդ զօրաց խրկեց, նոր դաշնադրութիւն մը ընելով Ճենօվացոց կամ Ճինիվիզներուն հետ ութը թէութ 1768. մայիսի 15.

ա. Ճինիվիզին հասարակապետութիւնը Ֆըրանսզին կուտայ քօռսիքա կղզին ու թագաւորութիւնը իր բերդերովը, որոնց մէջի Ճէպխանէներուն համար ինչ որ կարժէ՝ ֆրանսըզը ըստակ վճարէ։

Բ. Երկրին գլխաւորութիւնը հասարակապե-տութեան ձեռքը մնայ։

Գ. Ամէն ապրանք որ քօռսիքայի մէջ ա-տեն մը Ճինիվիզներուն էին, իրենց տըր-վի։

Դ. Քօռսիքացիք հպատակ մնան Ֆրան-սային՝ որչափ ատեն որ Ֆրանսազը քօռսիքան ձեռքը ունենայ։

Ե. Ֆրանսազը անչափ զօրք պահէ հոն, որ-չափ որ պէտք է ապստամբները հնազանդե-ցընել։

Զ. Ֆրանսազը պաշտպան կենայ Ճենովայի կամ Ճինիվիզի դրօշակին (պայրախին), որ դարապլուսին, Ճէզայիրին, ու քօռսիքացոց ծովասպատակները (խուրսանները) չի-դըպչին, որպէս զի Ճինիվիզները ազատ առուտուր ընեն իրենց ծովերը, ու շրջակայ ծովերը։

Է. Եթէ որ Ճենովայի հասարակապետութիւնը ուզենայ նորէն քօռսիքային տէր ըլլալ, ինչ որ խարճեց Ֆրանսազը քօռսիքան հնազան-դեցընելու համար՝ Ճենովան վճարէ, անոր համար ճիշդ (հիսապ) բռնըվի ան խարճե-րուն համար։

Ը. Ֆրանսազը քաբռայա կղզին առածին պէս, Ճինիվիզին յանձնէ։

Քորսիքացիք օգնութիւն կըխնդրեն ուրիշ տէրութիւններէ. Բաօլին երկար յորդորական կըղրկէ Քորսիքացոց.

1768.

Քորսիքացիք գիտնալով որ ասանկ մեծ տէրութեան մը Փրանկսզին չիկրնան պիտոր դէմ դնել, սկսան օգնութիւն խնդրել օտար տէրութիւններէ. առաջ Ինկիլիզին դիմեցին, բայց ան ատենվան Ինկիլիզին վէզիրը լօրտ Պրուտ անուն՝ պաղ մարդ մը ըլլալով անկաձ չիկախեց, այլ Ինկիլիզին տէրութեան տեղը՝ մէջէն առանձին հարուստ մարդիկներ օգնութիւն ըրին, զարմանալով Բաօլինին քաջութեանը ու կառավարութեանը վրայ, ալկուռնային վրայէն շատ ըստակ անցուցին իր ձեռքը. Բաօլինալ ան ըստակը առնելով շատ տեղվանք ուժովցուց. 9 հազար նոր զօրք ոտքի վրայ հանեց ամմէննալ կտրիճ, ամմէննալ խօսք դրած որ կամ յաղթենք, կամ մեռնինք։ Ուրիշ գաւառցիքալ 2 հազար զօրք հանեցին իրենց խարճով, բայց ուզեցին որ մէկ զօրապետի մը տակ միանան, ուր որ պէտք ըլլայ՝ երթան. ծովու վրայի նաւերնալ ուժովցուցին. Նորէն մէկ ընդհանուր ժողով մը ըրին, նորէն հաստատեցին ինչվան ետքի շունչը ծեծկըվիլ, միայն թէ գերութեան տակը չիմնալ։

Փրանսզները բերդերուն աշտարակներուն վրայ սկսան Փրանսզի նշան տնկել, որ է

իրեք շուշան, ու Թօփ նետելով ուրախութիւն ընելով կանչելը, Կեցցէ Լուիզ ԺԵ, ոչ իբրև օգնական, այլ Թագաւոր քուռսիքացւոց: Ամէն կղզիին մէջնալ Թուղթ հրատարակեցին ըսելով որ՝ պէտք է հաւատարմութիւն ու հնազանդութիւն երդմնանք Փրանսզի Թագաւորին, Թէ չէ՝ իր բարկութեան պատուհասը վրանիդ կրտեսնաք:

Քուռսիքացիք կրմտմտային որ՝ հպատակ ըլլալ մէկ ազնուապետութեան մը՝ ինչպէս էր Ճէնովան, և հպատակ ըլլալ մէկ Թագաւորի մը՝ ինչպէս էր Փրանսան, նոյն բանն էր, ու նոյն նեղութեան տակը մտնալ: Բայց վայլէ բաօլին աս բանիս վրայ շատ մտածելով որոշեց որ՝ աս փոթորիկը Թէ որ չիկրնայ ցրուել, գոնէ ուշացընել տայ. նոյեմբ. առջի օրերը իր քովը կանչեց աւելի բարեկամները աւելի հայրենասէրները, Ճարտասանութիւն մը ասանկ սկսաւ խօսիլ: «Մենք «հիմա Թշնամի եղանք մէկ Փրանսզի տէ-«րութեան մը՝ որ մեծ տէրութիւններէն մէկն «է աշխըրհիս մէջ. ատէն մը մեր ազատու-«թեան պաշտպան էր, մանաւանդ Թէ «մեզ պաշտպանելու համար նոյն իսկ Ճի-«նովէզներուն դէմ ելած էր: Երկրորդ «հենրիքոս Փրանսային Թագաւորը՝ ինչ-«վան տաճիկնալ մեզի օգնութիւն կանչեց «մեր քուռսիքացիք ան ատենը յաղթեցին, «բոլոր կղզին առին բաց 'ի քալվի քաղ-«քէն, անոր համար Ճինովիզները կոչեցին «[illegible]: Բայց ինչ «օգուտ, երբոր 1559 քասդել շամպրէսիս

„ տեղը հաշտութե եղաւ, Ֆրանսացիները փոխ-
„ վեցան, մեզ ստիպեցին Չինովլիզներուն
„ հետ հաշտըւիլ ծանր թէութիւններով։
„ Հիմայ երբեմն պաշտպան կենալու ա-
„ նունով՝ երբեմն չեզոք անունով՝ մէկէն ՚ի
„ մէկ դարձան եղան մեր գլխաւոր թշնա-
„ մին, ըսելով որ՝ մենք ձեր Ներսի բանե-
„ րուն չենք խառնըւիր, կուզեն կորսնցը-
„ նել մեր անկախութիւնը, որ անչափ արիւն
„ թափելով վաստըկերենք։ Բայց աս բանս
„ առատասիրտ Ֆրանսաց ազգին գործքը չէ,
„ հապա իր խորամանկ արքունեացը՝ ու
„ շուազէօլ վէզիրին գործքն է, որ կաշառ-
„ (ռուպուտիէթ) կերան մեր հին նենգա-
„ գործ թշնամիներէն (Չինովլիզներէն), աս
„ էր իրենց խիստ եաքի վրէժխնդրութիւնը,
„ վասն զի արքունեաց մարդիկները միայն
„ իրենց շահը կընայէին, բայց դուք տեսաք՝
„ ինչպէս մեր ծեծկըւելովը ազատ կեցանք։
„ տեսաք նաեւ ինչպէս կռուեցայ մէկ հա-
„ սարակ զինուորի մը պէս հայրենեացս փրը-
„ կութե համար։

„ Աս կղզին առաջ կըսուէր Եւնէր պարծոյ,
„ վասն զի երեւելի փիլիսոփայները հոս կըքը-
„ շէին. եաքը մէկ ալլիկուռնացի կնիկ մը
„ իր անունով Կորսիկա անուն դրաւ, թէ
„ որ ան ատենը երկիր պատժոյ ըսվեցաւ,
„ հիմա Երկիր պաշտպանութե ու փառաց պէտք
„ է ըսվիլ. 1733ին Կօլօին բռնէն վռնտե-
„ ցինք Ճենովեցիները, 1737ին Մաւրիտանա տե-
„ ղը յաղթեցինք Ֆրանսացի զօրքին՝ որ վար-
„ ձով բռնըված էին, առանց հայրենասիրու-

„ Թէ ընելով վրայ նրանք Ճինովլիզներուն ։
„ Բայց հիմա կըվախնամ բան մը չիծածկի
„ մեր միաբանութիւնը ավրող. անծանօթ չեմ
„ որչափ որ ինծի դէմ որոգայթներ կըլա-
„ րեն, գիտէք Մաթթէզլիին ըրածը՝ որ մեր
„ մեծ դըրագրին տղան է, թէ որ չիմնա-
„ վէր՝ ես պիտոր մեռնէի, ինչպէս որ իմ
„ ամենէն նախորդ զօրագլուխները, ու Սը պե-
„ տրոս ըսված զօրագլուխը մեռուցին
„ 1567ին. իսկ Անճիօլեդդօն, Ճիաֆէռ-
„ ռօն, Չիքալտին, ու իմին հայրս խաբե-
„ լով առաջ Ճէնօվային բանտը՝ ետքը Սա-
„ վօնային բանտը տարին. Կաֆֆօռիօն եղ-
„ բօրը ձեռքովը սպաննեցին. չըլլայ թէ
„ ինծիալ հիմա ասանկ բան ըլլայ ։
„ Ես հիմա ուրիշ բան չեմ մտածեր բայց
„ եթէ փառքը, կարելի է որ՝ մէկ տեղուն
„ մը խղճայ մեր վրայ, չիթողու որ մենք
„ ընկըվինք, բայց թէ որ ասալ չըլլայ, մեր
„ քաջասրտութիւնը՝ մեր դիմանալը՝ թող ըլ-
„ լայ օրինակ ամենէն ետեւի եկօղներուն,
„ որոնք որ կուզեն Ազատութիւն “ ։

Կօռսիքայոց ծերակոյտը Փրանսըզին դէմ, Պաօ-
լիին հայրենասիրական պատասխանը.

1768 ։

Կօռսիքացիք որ արդէն վառված էին, ու խօսքերուն լսելով Պաօլիին բերնէն ա-ռելի վառվեցան, ձմռվան ցրտութիւնը չհնայ-ելով, առ դէմ ան դէմ Փրանսըզներուն վը-

րայ յարձըկեցան ջարդեցին ։ Պասքուալէ բաօլին 8 հազար մարդով ամէննալ մէկ սիրտ, ամէննալ կտրիճ, կըջանար որ թող չիտայ Մարպէօֆ ֆրանսազ զօրագլխին առաջ երթալ. մարտի 14. պարպանձիօ տեղին քով մեծ կռիւ մը ըրաւ, որ ութը ժամ քշեց. 1700 մարդ իրմէ կորնսցուց. կուզէր որ՝ պարպանձիօ ու Սր. Ֆիօռէնցօ ըսված տեղերուն հաղորդակցութիւնը թշնամիներէն կտրէ, քաբօ քօռսօ ըսված գաւառը մնայ, մէջինները իրեն դին դարձընէ ։

Անկլիզները աս մարդուս խելքը ու վարպետութիւնը տեսնալով, մանաւանդ թէ միայն իր մտքին դրածը իմանալով կըզմայլէին, իտալիայի մէջնալ՝ իտալիայէն դուրսնալ ամէննալ բաօլիին վրայ կըխօսէին. կըտեսնային կըզարմանային որ մէկ մարդ մը երբոր վարպետ ըլլայ կառավարութեան ու զօրապետութեան արուեստին մէջը, մահնալ աչքը առած ըլլայ, ինչե՞ր կրնայ ընել, անանկ եղաւ որ՝ բաօլիին պատկերը զանազան գովասանքով տպված ամէն քաղաք կըպըտըտէր. իր վրայալ գովասանքներ կըշինէին ոտանաւորով Ֆիօռէնցա, Հռոմ, Նաբօլի, ու վենետիկ ։

Մարպէօֆ ֆրանսազը շատ առաջնները բաօլիին եվէլօք բաներ խոստացաւ Ֆրանսայի թագաւորի դիւացէն թէ որ զէնքը ձգէ, ու թագաւորին մեծարտութեանը ապաւինի, բայց բաօլին ասանկ պատասխան գրեց՝ որ կըցըցընէ իր դիւցազնական ոգին ։ „Դու-

„ կին առաջարկութիւնդ իմ պատուոյս ու
„ իմ ոգւոյս դէմ են. իմ արեանս մէջ կը-
„ պըտըտի ոգի անկախութեան ազատութեան,
„ որ ինչվան իմ մահս կենդանի պիտոր
„ մնայ. դուք չէք ճանչնար քօռսիքացինե-
„ րը, աւելի կուզեմ մեռնիլ, քան թէ եր-
„ դումս կոտրել՝ որ իմ ազգիս երդուընցայ.
„ պատուով սկսայ՝ չեմ ուզեր անարգանօք
„ լմնցընել, ազատութիւնը կընմանի առող-
„ ջութեան, ան ատենը կիմացուի իր հարկին-
„ քը (խըյմէթը), երբոր կորսնցընելու
„ կըլլայ։ Ինէ որ տասը կեանք ունենայի,
„ ամմէնն ալ կուտայի ազատութեան համար,
„ մեծութիւնը անոր քով ոչինչ են, թէ որ
„ մեռնիմ ասոր համար՝ պատուովս կըմեռ-
„ նիմ, իմ օրինակս ուրիշներ կըյարուցա-
„ նէ։ Ազատութեան սէրը ոչ երբէք պիտոր
„ դադրի մեր երկրին մէջը. մեռնողներուն
„ արիւնը ըլլայ մէկ հունտ մը, որ մէկ օր
„ մը հարիւրապատիկ պտուղ բերէ, ու
„ քօռսիքային մէջէն դիւցազուններ բուս-
„ ցընէ։

Փրանսացիները Քօռսիքայոյ դէմ ծեծկըռտուելու առաջ
կերթան, Բաօլին նեղը իյնալով եղբօրը հետ
Ինկիլթէրրա կըփախչի.

1769։

Տեսնալով Փրանսազը որ Բաօլին քաջու-
թեանը չիկրնար այնչափ զօրքով յաղթել,
նորէն ուրիշ զօրք խրկեց Քօռսիքա, ծա.

վրան մէջընալ նաւեր ձգեց, որ Քորսիքա-
ցոց ծովապատակները (խուրսանները)
բռնեն, վասն զի ատոնք բռնել սկսան Ֆը-
րանսզին նաւերնալ որ պաշար (զահրէ)
կտանէին Քորսիքա եղօղ Ֆրանսզներուն:
Ան ատենը Բաօլին նորէն ժողով մը ըրաւ,
երկու բան որոշեց, մէյմը որ՝ ամմէն մարդ
16 տարվընէ մինչվան 60 տարվանը՝ զէնք
առնէ հայրենիքը պաշտպանելու համար.
մէյմընալ որ՝ ան աղքատ անվորները՝ որ
իրենց անասուններովը կղզին ներսի դին
փախեր պահվերէին Թշնամիի ձեռքէն՝ հա-
սարակաց ըստորկովը պահվին: Բայց գէշը
ան էր որ՝ ամմէն կղզեցիք կամ Քորսիքա-
ցիք միաբան չէին, մէջերնին մարդիկ կային
որ՝ մէկմէկու ատելութիւն ունէին, մէկ-
մէկէ վրէժ առնելը աւելի կընայէին՝ քան
թէ հասարակաց բարիքը:

Նոր զօրապետը Ֆրանսզներուն կըսվէր
Մօ կոմս; ասիկայ երբոր հասաւ Սբ. Ֆիո-
ռէնցօ, իր տակը ունենալով 20 հազար
կտրիճ զինուորներ, մայիսին առջի օրերը
չորս գունդ բաժնեց անոնք, Ճամփայ դրաւ
ամմէնը մէկէն վրայ վազել զարնել որչափ
որ զօրաւոր տեղվանք կային Քորսիքացոց
ձեռքը, մանաւանդ ան կամուրջին դիերը՝
որ Կօլօ գետին վրայ էր. ասանկով Ֆրան-
սըզները զանազան տեղվանք առին, թէ-
պէտ շատ ջարդ ուտելով Քորսիքացոցմէ,
որ մինչվան մահ կըծեծկըվէին:

Մայիսի 18 Բաօլին սաստիկ պատերազմե-
լով Ֆրանսզներուն հետ՝ նեղը ձգեց անոնք,

յանանկ կերևար որ՝ բաօլին կօլօ գետին անդի դին վիտօր անցնի նորէն, բայց լսե-լով որ՝ մարպեօֆ զօրագլուխը զանազան տեղեր առած ըլլալով իր վրայ կուգար, ետ քաշվիլ սկսաւ, բայց իր քօրսիքացինե-րէն որը Ֆրանսզին ձեռքը ընկաւ, որը փա-խաւ։ Ան ատենը բաօլին իմանալով որ Ֆրանսզին շատվորութենը չէր կրնար վրայ ելլալ, բաւական զօրք ձգեց ռօսդինօ բեր-դը, ապսպրելով որ գոնէ ամիս մը պաշտ-պանեն. ինքը 3 հազար մարդով գնաց վի-վարիօյին դին, որ դավինյանօ գետին հարա-ւին դին կիյնայ։

Մայիսի 19. Ֆրանսզներուն վօ զօրապետը ամմէն իր զօրքովը քօռդի գնաց մէջի եղած զօրքը թէպէտ շատ հեղ երդվընցերէին կամ՝ յաղթել, կամ՝ մեռնիլ, բայց առանց մէկ թուֆէնկ մը պարպելու՝ ինչ որ առա-ջարկեց Ֆրանսզը ընդունեցան, ու անձ-նատուր եղան, իրենց զէնքը ամմէննալ յանձնելով Ֆրանսզին, իրենց տները գա-ցին ինչպէս որ ապսպրեց Ֆրանսզը, ատոր օրինակին հետևեցաւ նաև քասդելլանօն։ Ասանկով քօրսիքային գլխաւոր տեղը Ֆը-րանսզին ձեռքը իյնալով, ամմէն իր տակի եղած քօրսիքայոց զէնքերնին ձգել կու-տար, սաստիկ պատիժ վրանին սպառնա-լով։ Պալանինին տեղնալ տեսնալով որ չկրնար Ֆրանսզներուն դէմ դնել, անալ անձնատուր եղաւ, Ֆրանսզը մայիսի 22 պէլկօտէռէ երկիրը մտաւ։

Հետևեալ օրը ութը հարիւրապետ՝ որ

կարմիր կղզիէն կիջնէին, լսելով որ քօռսի-քացիք անձնատուր եղան, տեսնալով ալ որ իրենքալ Ֆրանսզի բազմութ̃ պաշարված են, որոշեցին որ ձգեն թողուն իրենց հայրենի-քը, քան թէ տեսնան օտարի ձեռքը, ի-րենց տնվորները մէկ ինկիլիզի նաւ մը դը-րին որ հոն կըպըտըտէր, իրենքալ նաբօլիի նաւերով փախան եկան ալիկուռնա, դօս-քանայի մէջ ցրուեցան. Ֆրանսզները մը-տան կարմիր կղզին, հոն եղած բերդերը քակեցին, որ աղէկ շինած չէին։ Մար-պէօֆ Ֆրանսզ զօրագլուխնալ ռօստինօն առաւ, քալեց դէպ 'ի Նիէվէ Պամբօլօ-ռօ, ասիկայ քանի մը շաբաթ դէմ կեցաւ հոն ըլլալով սալիչէդի հարիւրապետը. Ֆրանսզները վիվարիօ բերդնալ առին, ուր Սպադուչչի անունով հարիւրապետը 300 մարդով շատ մեծ քաջութիւն ցըցուց, ինչվան ետքի շունչը կռուելով Ֆրանսզնե-րուն հետ։

Աս ամէն բանը տեսնալով բասքվալէ տէ բաօլին և իր եղբայրը կղեմէս, Ֆրանսզին շատվորութիւնը, քօռսիքացոց մէջի տարա-ձայնութիւնը, խօսքի վրայ չինկենալնին, իմացան որ առաջ պիտոր չերթայ իրենց մտածածը, անոր համար 1769. յունիսի 13. մէկ դօսքանցի ձկնորսի նաւակ մը մտան, որ բօռդօվէքքեօէն քիչ մը հեռու էր, անկէց ինկիլիզի Ֆռխաթա մը մտան, շատ վտանգներուն մէջէն անցնելով ալի-կուռնա հասան յունիսի 16. անկէց Ֆիօ-ռէնցա։ Յովսէփ կայսրը հոն գտնըվելով,

շատ երկան խօսակցութիւն ըրաւ երկուքին հետ, մանաւանդ թաօլինին հետ շատ հեղ խօրաթեց, որուն զուրցեցաւ կըսեն որ՝ թէպէտ ես քեզ իմ երկիրս կընդունէի, ու զօրացս մէջ մեծ պաշտօն մը կուտայի; բայց ես դեռ բացարձակ տէր չեմ. իմին մայրս ալ կայսրուհին կապված ըլլալով Փը-րանսզներուն հետ, թող չիտար աս բանս: Կարելի է որ քաշւից վէզիրնալ չէր ուզեր ընդունիլ, կայսրուհւոյն խրատ կուտար թէ անարժան բան է մէկ միապետութեան երկրի մը մէջ ընդունիլ անանկ մարդ որ՝ ապստամբներու գլուխ կըսվի: Կըպատմեն որ յովսէփ երկու եղբայրներուն շատ ըստա-կի թօլիցա տըված, որ ինչ քաղքեն ուզեն՝ ըստակ առնեն, բայց երկու եղբայրներն ալ չուզեցին, հրաժարեցան ան թօլիցային թուղթը առնելու: Ասոնք դօսքանայէն ելան՝ նեմցէի երկրի վրայէն դացին ինկիլ-դէռռա. ինկիլիզները շատ մեծ պատուով ընդունելութիւն ըրին ասոնց, մանաւանդ թաօլիին, որ [illegible] կըրկան չէին. բայց աշխարհ հասկըցաւ որ՝ ասանկ քաջունակները ու դիւցազուններըը միշտ բաղդաւոր չեն կընար ըլլալ. ամմէն միաբանութիւն երբոր մէջերնին կատարեալ համաձայնութիւն չունենան, դրսէնալ մէկ կռնակ մը չունենան, վերջերնին չիկընար յաջող ելք ունենալ: Ուրիշ քօռսիքացիներնալ՝ որչափ որ ինկիլդէռռա գնացին, շատ աղէկ ընդունելութիւն գտան ինկի-լիզներէն:

Այսպէսով 40 տարի սաստիկ պատերազմե-
լէն ետև քօռսիքա կղզին մէկ ամբողջան մը
մէջ Ֆրանսզներուն ձեռքը անցաւ, անոնց
տակը մնաց, որուն դիրքը ըլլալով Ճերմակ
ծովուն մէջ տեղը, իրենց հարկաւոր ե-
ղաւ։

## Դանիմարքայի Թագաւորին Ե Ֆրեդերիկոսի ըրած-
ները ու իրեն մահը.

1757 — 1766։

Այս Թագաւորը շատ սէր ունէր ծաղկեցը-
նել տանիմարքային վաճառականութիւնը,
Թունուզին ու Դարապլուսին հետ խաղա-
ղութիւն ըրաւ, Մաղրըպին հետ նորոգեց
խաղաղութիւնը՝ ուր տեղ որ դեսպանը
(էլչին) շատ տանիմարքացիներուն հետ
մէկ տեղ գերի մնացած էին, իրենց ապ-
րանքնալ առերէին։ Այս Թագաւորս Ֆե-
տերիքոս՝ տեսնալով 1757 որ հաննովէրցիք
Ինկլիզին հետ մէկ տեղ բոլորովին պիտոր
կորսուէին Ֆրանսզներէն, (ինչպէս որ ա-
ռաջ պատմեցինք,) մէջվընին մտաւ, ռիշ-
լիւ Ֆրանսզին զօրապետին հաւնեցուց՝ որ
մէկ դաշնադրութիւն մը ընէ քլօստէռսե-
վէնի տեղը քումպէռլանտի դուքսին հետ, ա-
նանկով խալսցուց հաննովէրցիները։
Երբոր օխտը տարուան պատերազմը կըլ-
լըվէր ուրիշ Եւրոպայի Թագաւորաց մէջ,
(որուն վրայ առաջ պատմած ենք,) տա-
նիմարքային նաւերը պաշտպանելու հա-

մար մէկ եղաւ շվէտին հետ, պզտիկ նաւ-
ւատորմիղ (տօնանմա) մը հանեց Ինկիլի-
զի ծովասպատակներէն (խուրսանտներէն)
խալըսցընելու համար: Ջանաց որ տաճկին
հետալ առուտուրի դաշնադրութիւն մը
ընէ, որ ան ատենը չյաջողեցաւ, բայց
ետքը 1763 մէկ արևելեան բաժանորդու-
թիւն կամ ընկերութիւն մը սահմանեց
տանիմառքացոց, որ շուտ մը ծաղկիլ
սկսաւ:

Իրեն քաջարտութիւնը ցըցուց, երբոր
1762 ք̃ պետրոս մոսկովյին թագաւորը ու-
զեց շլէսվիկ դքսութիւնը իրենմընէ առնել,
ատիկայ շուտ մը 60 հազար զօրք ոտքի
վրայ հանեց դէմ դնելու, (ինչպէս որ
պատմեցինք վերը): Բայց 1765 խօսք կա-
պեց որ քրիստիանոս տանիմառքայի թագա-
ւորին զաւակը պսակէ քառօլինա մաթիլ-
տէ իշխանուհւոյն հետ՝ որ Ինկիլիզի թա-
գաւորին քոյրն էր, աս խօսքս կապելէն
ետև հետևեալ տարին 1766 մեռաւ 42
տարվան. 19 տարի թագաւորելէն ետև:
Երբոր աս թագաւորս զովել ուզեն, իրեն
զովասանքի տեղ աս կըգրեն որ՝ ամէն կեր-
պով իր հօրը նման եղաւ:

Սպանեայի Թագաւորին աշխրհան հարկերնուն հայա-
բուհարին փաշէն հետ Յէքոլոսի։ Փեւեդպրոսի
Բառամայի գէօսէն ձանը.

.1769.

Ճառոնցմընէ 1752էն վեր սպանիան ու Նեմցէն խօսք դրած էին մէջերնին, որ երբ-որ առենը համնելու ըլլայ՝ իրենց երկրորդ զաւկընին մէկմէկու հետ կարգեն, անոնց տան դօսքանային դքսութիւը, անանկով անկախ ընեն թէ դօսքանային դքսութիւը, և թէ Նաբօլիի թագաւորութիւը. իրարու հետ պայման դնելով որ՝ աս իշխանութիւ-ները ոչ երբէք միանան Նեմցէի կամ աւս-տրիոյ տանը հետ, ոչ ալ պօւպօնեան ցեղին հետ՝ որ է ցեղ հիմակվան սպանիային թախ-տը նստող թագաւորին. առով դադրի ամ-մէն վիճմունքը՝ որ երկու թագաւորութեց նեմցէին ու սպանիային մէջը կըլլար, մանա-ւանդ մէտիչի կամ բժշկեան ըսված տանը ապրանքին վրայ դօսքանայի մէջ, որուն ցեղը հատեր էր։ Հիմա առենը գալով՝ նեմ-ցէի կայսրուհին խնդրեց սպանիայի թագա-ւորէն ՚ի կարոլոսէն իր երկրորդ զաւակը մարիամ լուիզա, որ հարս առնէ իր երկ-րորդ զաւկին, որ էր պետրոս լէոբոլտոս արշիդուքսը. առով Փիօրէնցային մէջը սկը-սի մէկ նոր ցեղ մը լօրէնայի տունէն։ Խօսքը ընցաւ 1764. փետրվ. 16. ամմէն սպանիայի արքունեաց առջին, հոն ըլլա-

լով նաև քարտինալ պատրիարքը Հընդկաց։

Աս իշխանուհի աղջիկս խիստ սիրելի ըլլալով, Կարոլոս իր հայրը հարուստ օժիտ (ճէհէզ) տալէն 'ի զատ՝ իր մեռած կողակցին ճէվահիրներուն մեծ մասը աս աղջկանս տըվավ, թող տուր ան ճէվահիրները՝ որ ատենօք պառպերեան փորթուկալու թագուհին էին, որ էր կին Ֆէրտինանտոսի, նաև իր մամինալ Եղիսաբեթ թագուհին Ֆարնէզեան՝ իրեն շատ ճէվահիր պարգևեց. ասանկով Եւրոպայի մէջ քիչ թագուհի կըգտնըվէր ասոր պէս փարթամութիւն ունեցող։

Հիմա հարսնիքէն ատենը հանելով, 1765 տարնան ատենը հայրը ու իրեն եղբարները ճամբայ դրին, Պարչէլլօնա խրկեցին, անկէց մեծ նաւատորմիղով (տօնանմայով) Ճէնօվա խրկեցին. թագաւորը թուղթ խըրկերէր Ճէնօվայի ատեանին ընդունելու համար նաև Մարիամ Լուիզա Թերեզան, որ երկրորդ զաւակն էր Փիլիպպոսի՝ Բառմայի ու Բիաչէնցայի դքսին, որպէս զի նոյն նաւերով խրկըվի Սպանիա, Աստուրիոյ իշխանին հետ կարգըվելու համար՝ որ էր ժառանգ թագաւորութեան։ Յուլիսի 17. արշիդքսուհի հարսնցուն հասաւ Ճէնօվա, ուր երբոր կըպատրաստըվէին մեծ ուրախութիւններ՝ հանդէսներ ընելու, մէյմըն ալ յանկարծ ուրախութիւնին սուգի դարձաւ, վասն զի լսեցին որ մեռերէ Փիլիպպոս Բառմային դուքսը։

Սա փիլիպպոս սպանիայի թագաւորին՝ Ե. փիլիպպոսի տղան էր, իսկ մայրը եղիսաբեթ Ֆառնեզեան էր, բառմայի՝ բիաչենցայի՝ ու կուաստալայի դուքս էր եղած, որոնք առեմնօք իրեն տրվէրէր մարիամ թերեզիա կայսրուհին՝ (երբոր միայն մաճառաց թագուհի կըսվէր)։ Սակայ աղեքսանդրիա բալլիա ըսված քաղաքը (1) նըստած ըլլալով, սպասելով հոն ընդունելու եկող հարսընցուն, որ անկեց պիտոր անցնէր նեմցէստան երթալու համար, հոն ծաղիկ հանելով 1765. յուլիսի 18, մեռաւ փիլիպպոս 45 տարվան (2). արդարասէր իշխան ըլլալով՝ շատ աղէկ կարգադրութիւններ ըրաւ ժողովրդեան համար, բարեպաշտ ու աստուածեռն՝ շատ ծաղկեցուց բառմա քաղաքը, ուր 16 տարի իշխեց, խիստ գթած ըլլալով՝ իրեն եկամուտը որ Ֆրանսայէն ու սպանիայէն կուգար, ամմէնն ալ ժողովրդեան վրայ կըխարճէր, գիտութիւնները ու ազատական արուեստները կըծաղկեցնէր. Ճեմարան մը սահմանեց տղաքը կըրթելու համար, որ կարելի է թէ առջինը եղավ

---

(1) Հոն էր նաեւ սավօեայի դքսուհին՝ որ եպքը սառտէնիայի թագուհի եղավ. իր ընկերնալ մէկ տեղ, որ էր դուքսն վիքդորիոս ամետէոս։

(2) Վեց տարի առաջ իր ընկերնալ լուիզիա եղիսաբեթ, (որ էր դուստր ԺԵ լուիզիի Ֆրանսայի թագաւորին), մեռերէր նոյնպէս ծաղկէն. աս ծաղկին ցաւը շատ մարդ տարերէ պօրպօնեան տնէն, որ է տուն սպանեայի ու Ֆրանսայի թագաւորներուն։

իտալիայի մէջ. համալսարան մը նորէն բացաւ, երևելի վարպետներ բերել տըլվալ հոն ամմէն տեսակ մակացութե վրայ. քօլօնեօ ըսված թագաւորական տեղը շատ գեղեցկացուց, շատ տէրութի ըրավ ան երևելի Ճինիվիզ բանաստեղծին՝ որ կըսվէր Ֆրուկօնի ինոչէնցօ։ Նաանկալ երկրագործութը, առուտուրը, ու արուեստները ծաղկեցընելով շատ սիրելի էր եղած ժողովրդեան. իրեն տղան Ֆէրտինանտոս իր տեղը նստաւ, որ լման իր հօրը բնութիւնը ունեցաւ։

Երկու հարմնցուն լսածնին պէս փիլիպպոսին մահը, ամմէն ուրախութիը թողուցին Ճամփայ ելան, մէկը ծովով սպանիայէն եկած նաւով երթալով, մէկալը ցամաքով մանդվայի վրայէն ինսբրուք երթալով, ուր ժողվըված կըսպասէին ամմէն կայսերականք, նաև կայսրուհին մարիամ թերեզինան. հոն ժամու մէջ կղեմէս իշխանը սաքսօնիայի եպիսկոպոսը օրհնեց պսակը։ Բայց աշխարհիս ուրախութիը շատ հեղ տրտմութենով պիտոր խառնըվի. երբոր հարմնիքին ուրախութիւնը կըլլըվէր, մէյմընալ կորըվեցաւ, նորէն սուգ դարձաւ. որուն պատճառը հասկընալու համար պէտք է գիտնալ որ, երբոր մատրիտ սպանիայի մայրաքաղաքին մէջ խօսք կորեցին, ստորագրեցին աս երկուքին կարգըվելուն վրայ, պայման դըրերէին որ փեսան լէոբոլտոս արշիդուքսը պսակվածին պէս, հարսը առնէ մէկ տեղ երթայ նստի Ֆիօռէնցա քաղա-

քը, երբև Կառավար ու Զօրապետ գըլխաւոր Ֆիօռէնցայի գաւառին վրայ [1] ինչվան իր հօրը Ֆրանչիսքոսին մահը, որ կայսր էր և միանգամայն դուքս դօսքանայի : Հիմա պատկը եղածին պէս՝ սպանիայի դեսպանը Մահօնի անունով ոտք կըկոխէր որ՝ լէոբոլտոս սպանիայի Թագաւորին փեսան՝. շուտ մը հանդիսապէս հրատարակվի մեծ իշխան ժառանգաւոր. կամ Նախիջական յաջորդ հայրենի ժառանգութե :

Բայց աս ընելու՝ պէտք էր որ յօվսէփ (որ Թագաւոր էր հռոմայեցոց, ու առջինեկ արշիդուքսը), բոլորովին հրաժարվէր իր իրաւունքէն, որ իր առջինեկութիւնը ունէր դօսքանայի վրայ : Առջի բերանը աս բանիս դէմ կեցաւ յօվսէփ ըսելով, ես դէմ չեմ կենար աս հրատարակման, և ոչ առջի դաշնադրութիւններուն, մանաւանդան դաշնադրութեը որ եղաւ արանքվէզ 1753 աս բանիս համար, այլ աս կըսեմ որ՝ երբոր իմին հայրս Ֆրանչիսքոս մեռնելու ըլլայ՝ ես կըմնամ մէկ իշխան մը մինակ կայսերական մականուն ունենալով վրաս, բայց առանց երկիր մը քաղաք մը ունենալու, ուր տեղ անկախ ուզածիս պէս իմ իշխանութիւնս բանեցընեմ, որով չեղած չիտեսնըված բանը աշխարհիս մէջ՝ իմին վրայ պիտոր տեսնըվի, անոր համար չեմ հրաժա-

---

(1) Իտ՛, կըսվի Կօվէռնադօռէ, ու Քափիթանօ Ճէնէռալէ :

ըլլր , ես ևս չեմ զրկեր դօսքանայի ժառան-
գութենէ , ինչվան որ բացարձակ իշխան չըլ-
լամ աւստրիական միապետութեան :

Աս բանիս համար սպանիայի դեսպաննալ ուրիշներնալ իրաւունք տըվին յօվսէփին , անոր համար քաունից վեզիրին խորհրդովը՝ կայսրուհին մարիամ թերեզինան յօվսէփին մայրը՝ խոստացաւ իրեն , որ զինքը ընկեր ընէ իր թախտին ու կառավարութեը , ինչ կերպով որ ըրեր էր իր ամուսինը Ֆրանչիսքոս : Ասանկով լէօբօլտոս հրատարակվեցաւ Մեծ Իշխան դօսքանայի , ամմէննալ սկսան ուրախութի ընել : Բայց ինչ խաղ , ինչ փոփոխութիւնէր կըհանէ աշխըրքիս շըջանը ( տէվըը ) · իր անունը Աշխար. է , որ դըրաբառ սուգ , լաց կընշանակէ , գործքովալ իրաւ սուգ կըբերէ ուրախութեն մէջ . նեմցէնները հազիւ սկսան ասանկ մեծ հարսնիքի ուրախութի ընել , մէյմըննալ տեսնաս որ նորէն սուգի դարձուց նոր դիպուածի մը համար՝ որ վարը պատմենք :

ա . Ֆրանչիսքոս կայսեր մահը .

1765 .

Վերոյիշեալ ա Ֆրանչիսքոս կայսրը առաջ մէկ մաղձոտութի մը իմանալով քանի մը տեղ չիսեպելով՝ թատրոնը ( քօմէտիան ) գնաց , հոն սաստիկ ուժաթափութի մը իմանալով չիկրցաւ կենալ , դարձաւ իր տունը , գետինը իյնալով մէկ քանի վայր-

կենէն ետև՝ իր որդւոյն յովսեփայ գիրկը
մեռաւ 1765. օգոստ. 18. 57 տարւան.
8 տարի լօռէնայի վրայ իշխեց. 28 տարի
դօսքանայի վրայ, 20 տարի գերմանական
կայսերութեն վրայ։

Աս իշխանս էր որդի երևելի լէոբոլտոսին՝ դուքսին լօռէնայի ու պառի, իր մայրը եղիսաբեթ՝ քոյր էր բարեպաշտ օռլէանս իշխանին՝ որ կառավար եղավ Ֆրանսայի, աստնք լօռէնայ պզտիկ տեղ մը իշխելով, մեծ մեծ թագաւորներու բարի օրինակ տըվին։ Ֆրանչիսքոս իրենց զաւակը բարեբաղդ անուն ունեցաւ, վասն զի իր լօռէնայեն ցեղը որ 500 տարիի չափ միշտ դըժբաղդուն քաշեց; Ֆրանչիսքոսը ան ցեղին վերջինը ըլլալով, վերջ տըվավ դժբաղդութեն, վասն զի իր օրը՝ անանկ բերաւ ատենը՝ որ իր հայրենական դժբաղդ երկիրը լօռէնա՝ փոխել տըվավ դօսքանայի երկրին հետ, դօսքանային հետ ժառանգեց նաև մէտիչի ըսված հարուստ ցեղին ժառանգութիւնը՝ որ ատենօք հոն կըտիրէր, հիմա հատած էր։ Իրեն կողակից ունեցաւ մարիամ թերեզինան, անանկ անուանի կայսրուհի մը, որ բաց 'ի բնական ձրից գեղեցկութեն ու խելացիութեն, ունէր նաև բարեպաշտութի կատարեալ։

Աս Ֆրանչիսքոսին բնութիւնը քաղցրաբարոյ էր, աւելի կըտեմնըվէր վարի աստիճանի մարդիկներու հետ՝ քան թէ ազնուականներու հետ, ամօթ չէր սեպէր վաճառականներու և արուեստաւորներու հետ կե-

նակցիլ։ Երկու քանի աղէկ գիտէր. մէյմը վաճառականութիւն, մէյմընալ հնագիտութիւն, ազատական արուեստներէն զատ՝ ծաղկե-ցուց նաև մեքենական արուեստը։

Իրեն յիշատակն են վիեննայի մէջ մէյմը բնական պատմութեան հանդիսարանը, որ շատ զարմանալիէ։ Երկրորդ՝ ամմէն հին ըստակ-ներու հանդիսարանը, շատ հարուստ ու երևելի. Մեծն կարոլոսէն ետև քանի ըս-տակ որ կոխված կան, ամմէննալ հոն կար-գաւ ժամանակագրութեամբ շարված կըտես-նաս։ Երրորդ՝ պարտէզները, որոնց մէջը կըտեսնըվին ցանցառագիւտ (թուաֆ) ծա-ռեր, պտուղներ, շատ խարճով ամերիկայ-էն ու հինտստանէն բերել տըրված։

Դոսքանցիք՝ որոնք իրեն հպատակներն էին, ուրիշ պակսութիւն մը չէին գտնար որ՝ իր հեռու կենալը, որովհետև իրեն տեղը դրված կառավարները աղէկ չէին կառա-վարեր. Ֆրանչիսքոս աս բանիս դեղ՝ օրէնք-ներ շինեց քիչ՝ բայց աղէկ։ Անով վերցուց աւելորդ հանդէսները ու երկան սուգերը՝ որ մեռելներուն համար կընէին ան ատե-նը գրեթէ՝ ամմէն իտալիա, աղջիկներուն համարձակութիւնը զսպել տըվավ, և առջի թագաւորը եղավ որ՝ հռոմայէն հրաման առավ տօները քիչցընելու, որովհետև խիստ շատ էին. համարձակեցաւ նաև օրէնք հրատարակելու եկեղեցական կա-լուածոց դէմ, արգելելով որ՝ ասկէց ետքը եկեղեցականք ոչ երբէք կալուած կարե-նան ունենալ, և կամ ժառանգութեամբ մնալ

հարիւր ոսկիէն աւելի, ոչ կտակով թողված, և ոչ պարգևով տրված (1)։

Երբ երկու տարի Ֆրանչիսքոսին մեռնելէն առաջ, մէկ բան մը եղաւ որ՝ իր անունը շատ արատաւորեց։ Պիքքօլօմինի եպիսկոպոսը բիէնցացի՝ որ սանեզլին մէջն է, զինուորները եկան իր ժամու մէջի խորանին վրայէն բռնելով տարին, ինչվան հռոմայու սահմանը քշեցին բերին. Եպիսկոպոսնալ հոն հասածին պէս՝ առջի ծառին վրայ որ հանդիպեցաւ՝ մէկ նզովքի թուղթ մը կախեց, ամմէնուն դէմ ով որ գործակից եղաւ զինքը բռնութեամբ քշելու իր թեմէն դուրս։ Այս որովհետև Ֆրանչիսքոսին անունովը եղաւ, իր յանկարծակի մահը աս նզովքէն եղաւ ըսելով, ձանձրընեցին ժողովրդեան մէջ. անոր համար մարիամ թերեզինա կայսրուհին՝ աղէքսանդր ալպանի քառտինալին ձեռքովը՝ (որ հռոմայու մէջ իր երեսփոխան դեսպանն էր), խնդրեց հռոմայէ՝ որ՝ աս արատս աս անունս իր ամուսնոյն վրայէն վերցընեն։

Մէկ պակասութիւնընալ Ֆրանչիսքոսի վրայ կրդնեն, որ քանի պէտաէթ ու մուխադա-

---

(1) Աս օրէնքս մէկ չփոթութին մը չիբերաւ հիմա դօսքանայի մէջ, որուն պատճառը եղաւ Ճիւլիօ ռուչէլլայի ատենակալը Ֆիօռէնցայի, որ խիստ տեղեակ էր իրաւագիտութե, բայց երբոր վենետիկցիք ըրին 1607, անկէց ետքնալ վիքդորիոս ամետէոս ըրաւ, (որ էր Բ. դուքս սավօյայի, ետքնալ սառտէնեայի թագաւոր,) ան ատենը շատ խռովութիւն եղաւ։

նէր կային, քանի ընկերութեան կար որ՝
բանակին (ուտուին) ապրուստը կըհոգայ-
ին, ամենուն մէջնալ բաժին ունէր. անոր
համար զինքը առջի մուխտաղածի կըկոչէին,
ասանկով երբոր մեռաւ՝ 60 միլիոն ֆիօռի-
նէն աւելի ժառանգութիւն թողուց. անկէց
զատ՝ ձէվահիրնէր թողուց, հին քարերու
վրայ փորված մատնինէր, ու վարպետաքան
պատկերնէր։ Այսչափ ըստակը շատ թեթեւ-
ցուց կայսրութեան պարտքը՝ որ ըրերէր եա-
քի պատերազմին ատեն։

Տօսքանային եկամուտը երկու միլիոն ռուխա-
լըէն աւելի էր. ամէն տարի կուղէր
Ֆրանչիսքոս որ կէսը իրեն գայ ոսկի ըստա-
կով. այսչափ ըստակ տօսքանայէն դուրս
հանելով՝ որչափ կըդժվարցընէր առուտու-
րին ու ըստըկին դառնալը տօսքանայի մէջ,
բայց որովհետեւ տօսքանան աղէկ ապրանք-
նէր ունի, բնակիչքը խիստ ճարտարութի ու-
նին, ու Լիվօռնօին, իր նաւահանգստին վա-
ճառականութիւնը խիստ ծաղկած է, ասան-
կով շուտով նորէն տեղը կըլեցընէին։

302.

Յովսէփ իր մօրը հետ մէկ տեղ ընկեր Աւստրիոյ կառավարութեան մէջ, Բարեկարգութիւն կ՚ընէ․ Լեոպոլդոս իր եղբայրը Տոսքանա Իտալիոյ դուքս նշանէ․

1765—1766։

Նորա Ֆրանչիսքոս կայսեր մահուան բօթը Ինսպրուք քաղաքը հասաւ, ամէնքն ալ տրտմութեամբ լցուց․ ամէն կայսերականք ճամբայ ելան Վիեննա դառնալու, մանաւանդ կայսրուհին Մարիամ Թերեզիան՝ որ 29 տարուան իր ընկերն էր եղած, շատ տրտմութիւն ունեցաւ․ Յովսէփ իր որդին թաղման հանդէսը ընելէն ետև՝ իր հօրը մարմինը խրկեց Վիեննա, ուր թագաւորական գերեզմաններու մէջ թաղուեցաւ քապուչիններուն վանքը։

Անկէց ետքը կայսրուհին իր խոստմունքին կ՚ըրէ Ֆրանչիսքոսին տեղը զՅովսէփ առաւ իրեն ընկեր կառավարութեան․ բայց կայսերութիւնը կամ թագաւորութիւնը ինչպէս առաջ՝ հիմա ալ իրեն պահեց․ վասն զի Պրագմադիքա ըսուած սահմանադրութեան ուժովը՝ ինքը կայսրուհին պիտոր ունենար ամէն աւստրիոյ երկրին վրայի տէրութիւնը, առանց մէկ բան մը քիչցընելու։ Ամէնքն ալ ասանկ ճանչցան զՅովսէփ․ մեծերը իրենց երդումը ըրին, արդէն ամէն գերմանական մեծերը՝ իշխաններուն ժողովը՝ ազատ քաղաքներն ալ ճանչցեր էին զՅովսէփ Հռոմ. կայսր։

Յովսէփ Բ․ երբոր իր մօրը կառավարութե-
ընկեր եղաւ 1765, առջի հոգը եղաւ եկա-
մուտը բարեկարգել, և իր արքունեացը
մէջ որչափ խարճ որ իրեն աւելորդ կերե-
նար՝ ամմէննալ վերցընել, որպէս զի տէ-
րութե պարտքը քիչցընէ, որ խիստ շատ-
ցած էր։ Իր մօրմէն հրաման առնելով
կարգաւորել ուզեց նաև զօրքը ան կարգո-
վը՝ որ ուզածին պէս շուտ մը կարող ըլլան
բանակ (օրտու) կազմել, պատերազմիլ,
ատոնք կընէր զգուշութե համար՝ կմ իր բաղ-
ձանքը կատարելու համար՝ չէ թէ պատե-
րազմի կասկած կար, որովհետև ուրիշ տէ-
րութիւններուն մեծ մասը յոգնած ըլլալով
պատերազմական ոգին թողուցեր էին, տե-
սան որ պարապ խարճ և պարապ տեղը
յոգնիլ մընէր․ բայց և անհնարին էր ա-
նանկ հաշտութի մը ընել՝ որ մշտնջենաւոր
ըլլայ, ինչպէս որ կառաջարկէր Մր․ պէտրո-
սի քահանան։ Մէկ բարեկարգութիւնալ
յովսեփայ եղաւ՝ սաստիկ պատժով արգե-
լել ըստրկով խաղ խաղալը։

Իսկ պէտրոս լէոբոլտոս օգոստ․ 30 իր ըն-
կերովը ինսբրուքէն Ճամփայ ելաւ Փիօ-
ռենցա երթալու՝ որ դոսքանային մայր
քաղաքն է, ուր շատ հանդէսներ կըպատ-
րաստէին, բայց երբոր Փրանչիսքոսին մա-
հը լսեցին, ամմէն բանը սուգի դարձուցին․
Լէոբոլտոսնալ իբր առանձին մարդ մը մը-
տաւ Փիօռենցա գեղեցիկ քաղաքը։ Ժո-
ղովուրդը խիստ կուրախանար որ՝ բուն
տէրը քաղքին կուգար կառավարելու, և

ոչ փոխանորդներ ինչպէս առաջ, որ սրտանց չէին նայիր, մանաւանդ որ առաջ սորված էին Մ՝ետրիչի ցեղին կառավարութեը տակ, որոնց յատուկ ըլլալով աս երկիրս՝ իբրև Հայր կըկառավարէին զժողովուրդը. ետքը անոնց տեղը Մառեշալ պօդդանը եկեր էր կառավարելու իբրև Ֆրանչիսքոսին փոխանորդ. ուսկից խիստ շատ գանգատ ունէին: Հիմա Լէոբոլտոս եկավ շատ պարգևներ բաժնելով շնորքներ ընելով. որուն խորհրդակից և իբր երկրորդ կառավար կայսրուհին դրավ անտոն Թուռնեան կոմսը, ըլլալով Լէոբոլտոս ան ատենը 18 տարվան տղայ: Լէոբոլտոս իր հօրը մահուան սուգը պահելու համար՝ Թախտը նստելու հանդէսը ուշացուց, 1766 մարտի 31 ըրավ. նոր նոր կանոնաւորութիններ դրավ քաղաքական ու քրէական դատաւորութեց վրայ, նաւերու վրայ, արուեստներու և ձեռագործներու վրայ. նոր նոր Ճամփայներ բացաւ շտկեց, և ուրիշ կարգեր դրավ:

Ամէն կառավարութի նոր սկսված ատենը աղէկ են, հանդարտ, բարերարօղ, առատաձեռն, բայց խիստ քիչ կըլլայ որ երկան քշեն, շուտով կըփոխվլին. Հիմաալ դօսքանցիք իրենց առջի ձախորդութիը տեսան վերոյիշեալ Թուռնեան կոմսին վրայ որ մեռաւ. Թող տուր սովը (խըթլըխը) որ քաշեցին 1764. ու 1766. իրենց արտաւնաւութի մը ունէին հնուցմէ՝ որ ժողովուրդը մինոր խանձրվէր կառավարութե մէջ, տեսան որ նոր եկած երիտասարդ իշխանը

Ջանաբարաւ որ անփոյթ ձգէ վերջերութենէ. Ռուսաստանը կիմանար, բայց չերկնչելով անոր դէմ դնել, ինչ որ կընար իր հայրենեացը աղեկութենը համար զանց չէր ըներ առաջ տանելու. Մեկ դաշնագրութիւն մը ըրաւ վաճառականութե՛ համար Նաբօլիի Թագաւորին հետ՝ որ էր Ֆերտինանտոս Դ. պայման դնելով մեյմը որ՝ քանի Ֆրանսացի դրօշակով (պայրախով) վաճառականի Նաւեր մտնան ելլան Նաբօլիի ու Սիչիլիայի Նաւահանգիստները, մէջը չմտնան, քննութի չընեն, ատանկալ Ֆրանսայի մէջ Նաբօլիի ու Սիչիլիայի Նաւերուն քննութի չընեն. Երկրորդ՝ Ֆրանսացիները որչափ իփեկ, եղ, և ուրիշ ապրանք առնեն բաւլեայէն, քալապրիայէն, ու Սիչիլիայէն, ազատ ըլլան տուրք տալէն. Երրորդ՝ բօստային խարճը Թղթերու համար խիստ քիչ բան մը ըլլայ.

Նաբօլիի տէրութիը ալ ամմէն բանը յանձն առաւ, որպէս զի Ֆրանսացւոց իր Նաւատորմ միջով (տօնանմայով) պաշտպանութիւն ընէ որ՝ Նաբօլիին Նաւերնալ Ճերմակ ծովին մէջ համարձակ երթան պարպարիա ցորեն բերելու համար, ուրիշ ափրիկէի ասպատականներէնալ (խուրսաններէն) ու պահելով մանա: Ասոր հետև անչափ ագահութիւն մտեր էր ցորենի տոկոսաց քով, և անչափ անհոգ կեցած էին Նաբօլիի կառավարիչները, որ երբոր 1764 մեծ սով (խըթլըխ) եղաւ, ամմէն ցորենը դուրսէն ուտողներուն ծախեցին լմնցուցին. Նաբօլիի մէջ

բաւական ցորեն չմնաց. փուռներուն առ-
ջին անչափ խառնիճաղանճ ժողովուրդ կը-
դիզուէր որ՝ մեծերը չէին կրնար սուղ գնով-
ալ հաց առնել. աղքատները անշահ կե-
րակուր ուտելով մէջերնին փոխադրական
հիւանդութիւն ընկաւ. հարիւր հազարէն
աւելի մեռաւ ան տեղուանը մէջ. տիրացուն-
ալ (հիւանդան) տեղ տեղ հարիւրէն քառա-
սունը տարաւ: Էս մահերէն զատ՝ դատա-
ւորներնալ մէկալ դիւացէն սպաննել կու-
զէին անոնք որ նաւօլին մէկ դաւաւէն
մէկալ դաւաւը ալիւր կամ ուրիշ ուտելիք
կըտանէին. երբոր քաղաքիային մէջը ա-
սոնցմէ մէկ քանին բանտը դրերէին որ մեռ-
ցընեն, ժողովուրդը բազմութիւն դիմեցին
բանտէն դուրս հանեցին ազատելով, ա-
սոնք մեր ազատօղներն են. ասոնց տեղը՝
դատաւորները մեռցընելու են:

Էս բաներուս պատճառը նաւօլի թագա-
ւորին երիտասարդ ըլլալն էր. դատաւոր-
ները իրմէ վախ չունենալով ամէն տեղ
ուզածնին կընէին իրենց շահը նայելով.
կարողա էր հայրը՝ (որ սպանիայի թագա-
ւորն էր), հեռուն կեցած ըլլալով ինքը
կըխաբէին ան կառավարները ան դատաւո-
րակները՝ որ երիտասարդ տղին վրայ դրեր
էր. ուրիշ բան կընէին, ուրիշ բան կը-
հասկըցընէին.

## Մահ զանազան Թագաւորաց.

## 1765—1768:

Այս տարի 1765 դեկտ. 20 (1) մեռաւ ժե Լուիզի Ֆրանսայի Թագաւորին առջինեկ զաւակը Լուիզ, որ կըսվի Տօֆէն (2), շատ երկան ու արտառոց հիւընդութի քաշելով. այսոր մահուան վրայ շատ լացին Ֆրանսզները, որ եղաւ որդի Թագաւորի, եղբօրորդի Թագաւորի, հայր Թագաւորի, բայց ինքը չիհասաւ չեղաւ Թագաւոր: Այսոր մահը իրեն համար աղէկ եղաւ որ՝ չիտեսաւ ետքի աղէկտուր դիպուածնէրը՝ բայց Ֆրանսային համար մէկ հարուած մը եղաւ. ըլլալով խիստ խելացի, շատգէտ, աղէկ վարպետ զինուորական արուեստի մէջ, բայց ամէնէն աւելի մէկ բարեպաշտութի մը ունեցօղ զարմանալի, իր մահուամբ զրկեց Ֆրանսան ան բարեկարգութէ՝ որ կընար ընէր: Իր բարեպաշտ մօրը խրատովը մեծցած ըլլալով չունէր ան մոլութինէրը, որ հասարակօրէն կըլլան արքունեացը մէջ. կըցաւէր շատ՝ գէշ կառավարութեանը վրայ՝ որ Ֆրանսայէն պաշտօնատէրէրը ու

(1) Ոմանք կըդնեն 1766. սեպտ. 4. ոմանք դեկտ. 10. որ սխալ են:

(2) Ամէն Ֆրանսայի Թագաւորին առջինեկ զաւակը Տօֆէն կըսվի. իտ'' Տէլֆինօ. ըստ որում իշխան կըլլայ մէկ երկրի մը՝ որ Տօֆէն անուն ունի:

մեծերը կըմնէին․ չէր հաւնէր իր հօրը վարքին, որ ինքը զուարճութեանց մէջ զբաղեալ ըլլալով՝ կառավարութիւն ուրիշ-ներուն ձեռքը թողուցեր էր, անոր համար հայրենալ իրեն հետ աղէկ չէր ։ Ես աղէկ բնաւորութիւնը սէրը առաքինութեան վրայ պզտիկուց տեսնալով իր մայրը լեցնուքի թագուհին, կըսէր՝ ան ինձի մէկ զաւակ մը տըվավ, բայց անանկ զաւակ՝ ինչպէս որ ես կըբաղձայի ։

Աս տղին աղքատսիրութիւնը այնչափ էր որ՝ երբոր թագաւորը իր հայրը ուզեց իրեն թոշակը (կէլիրը) աւելցընել՝ ըսավ, աւելի կըբաղձայի որ՝ ինչ թոշակ որ պիտոր տաս, ինծի տալուն տեղը՝ անչափ մը քիչցընես ժողովուրդին վրայի տուրքը ։ Մեծաշէն սերայներու՝ պարտէզներու՝ օրինակներ (րէսիմներ) կըքաշէր իր ձեռքովը, տես-նողները ամէնը հաւնիլ կըցուցընէին գե-ղեցկութեան վրայ, ինքը պատասխանի կու-տար, աւելի հաւնելու բան աս րէսիմներուն վրայ ան է որ՝ ասոնք ժողովուրդին վրայ մէկ ծանրութիւն մը խարճ մը պիտոր չձը-գեն, որովհետեւ շինելու համար չէին քաշ-ված որ ժողովուրդէն տուրք պահանջէի, այլ միայն ատեն անցընելու համար ։

Երբոր աս տոֆէնին զաւակ եղաւ որ պուրկօյնի դուքս ըսվեցաւ, խաղեր ուրա-խութիւններ ընելուն տեղը՝ առատ ողորմու-թիւ բաժնեց աղքատաց, ու հանդէս (տօ-նանմա) ընելու խարճը՝ 600 աղջկան ձե-հէզ ըրավ ։ Օր մը հացի վրայ խօսք բաց-

վերլով ըսաւ, մէկ իշխան մը՝ թագաւոր մը՛ համով հարկինք (զիաֆէթ) մը ուտելու համար՝ պէտք էր որ ամէն ժողովուրդն ալ ան հարկինքը կանչէ. կամ թէ ըսէ՝ իմ ժողովուրդէս չեմ ուզեր որ՝ այսօր մէկը տունանց ուտելու երթայ: Օր մը օրտորդութէ (ավլի) երթալով չուզեց շիտակ կարճ ճամփան բռնելով իր ուզած տեղը երթալ, որպէս զի վարուցան եղած տեղվանքը չիկոխէ, հապա երկան պտուտ ընելով գնաց. ան տանէնը խեղճ գեղացիներէն մէկը կանգնեց, տեսնէք մեր իշխանը, ինչպէս հող կըտանէր մեր ցանած տեղերը չիկոխել. Աոֆէնտաղ դարձաւ իր հետի եղող իշխաններուն զուրցեց. կըլսէ՞ք ինչպէս գեղացիք կըճանչնան կընայլին ինչ փնաս որ մենք իրենց կուտանք:

Սէղու րամներ են իրեն տըրված խրատները ո՛ր իր զաւկըներուն կուտար. օր մը ժամէն բերել տըրվաւ ան մնտանտը (:քիւթիւկը), որուն մէջը կըգըրեն մկըրտըրված տղոց անունները և օրը. տեսնէք ըսավ տղաքներ ձեր անունները հոս գըրված են, մէկ աղքըտի մը՝ մէկ կարօտեալի մը քով, մ՚ո զի հաւատքը ու բնութիւնը ամէնուն չիզատեր հարուստը աղքատէն. ան՝ որ ձեզ պիտոր զատէ, վեր պիտոր գնէ, միայն առաքինութիւնը պիտոր ըլլայ, կարելի է որ՝ ձենէ առաջ գըրված աղքատը աւելի մեծ ըլլայ եայ առջինի՝ քան թէ դուք ժողովուրդին առջին: Հանրի կուտար իր զաւկըներուն գեղացոց խեղճ բնակարանները, ցըցուցէք կըսեր տանց

վէս մը ձեռքը՝ գաւազան մը բռնելով՝ մէջ տուլելու ձայն մը հանելով՝ հեքէք կրկնեց իր ամմէն անբան հօտը միաբան շարժելու. իր ամմէն պաշտօնեայները երկու ջուն ունենալով կըլլմնայ, որոնք միայն երբեմն հաչելով և ոչ խածնելով խաղաղ հանգիստ կըպահէին այնչափ բազմութիւնը. ինչ պէտք էր մեր այսչափ անկարգութիւնները վերցընելու, նորոգութիւն տալու, բայց եթէ երկու միայն թագաւորութիւն. մէյմը՝ արդէն եղած անկարգութիւնները վերցընել, մէկալը՝ արգելել որ նորէն չըլլան :

Իրեն խիստ սիրելի բարեկամ մը ունէր Փելիքս կոմս Մ՝ուլի, ասոնք երկուքնալ ամենևին մէկ բնութիւն ունէին, մի և նոյն մարգասիրութիւն, նոյն առատասրտութիւն, ազգասիրութիւն, նոյն ջերմեռանդութիւն հաւատքի, նոյն խստութիւն վարուց. ասիկայ կըխրկէր իր երկիրները քալելու, աչքով տեսնալու, որ անոր կեօրէ հոգայ. վասն զի կըսէր որ՝ մէկ երկրին կացութիւնը հասկընալու և դեղ ընելու համար՝ պէտք է որ իշխանը ինքիրմէ քալէ, աչքովը տեսնայ, հիմա վերյիշեալ կոմսին երթալը՝ նոյն է թէ ինքը երթար. որովհետև ամենևին իրեն պէս հաւատարմական բարեկն կուզէր, իրեն պէս աղէկ գաւառուն ունէր :

Ըս անհնման իշխանիս մահուան վրայ ոմանք կըկասկածին որ՝ ան ատենվան անհաւատ իշխանները տեսնալով որ ասիկայ թագաւորելու ըլլայ՝ չկրնան պիտոր իրենց մտքի դրածը առաջ տանիլ՝ որ ան ատենէն

կրմօնձէշին, որովհետեւ խիստ յարեալ էր շփոթակ հաւատքի, հռոմայ աթոռոյն, նաեւ ձիզվիթներուն, անոնք մէկ կերպով մը դեղեցին ասիկայ։ Նոր վաքքը գրեցին բա-եառ ու վիլլիէ. իրեն յիշատակարաններնալ երկու հատոր հանեց Կուրիֆֆէն։ Առաջ կարգըված էր մարիամ Թերեզիանայէն հետ, որ սպանիայի Թագաւորին աղջիկն էր, բայց անիկայ մէկ տարիէն ետեւ մեռնելով նորէն կարգըվեցաւ սաքսօնեան մարիամ Ձիւզէփփայէն հետ, ասկէց ծնան իրեք մանչ ու երկու աղջիկ, մեծ զաւակը որ կըսվէր Պետրոս դուքս, Թագաւորը Տօֆէն անուանեց անիկայ, իր հօրը տեղը դրավ. աս է որ ետքը Թագաւոր նստաւ ժզ. լուիզ կոչվելով, ու գլխատվեցաւ։ Աս երկրորդ կողակիցնալ քիչմը ատենէն ետեւ .1767. մարտի 13 մեռաւ։

Հռոմայու մէջնալ մեռաւ 1766. յունվարի 2. երրորդ յակոբոս ըստուարդեան, որ ինկիլիզի Թագաւորի մականունը միայն կըրան ունէր. (ըլլալով զաւակ Բ. յակոբոս Թագաւորին.) ու հռոմ կընստէր առանձին Աթէ գեօրգայ ասպետ ըսվելով։ Նաեւ որովհետեւ ըստուարդեան տանը պէս դըժբաղդ տուն չիկայ Թագաւորներուն մէջ, ասիկայալ դժբաղդութե մէջ ծնած ըլլալով պզտիկուց սկսաւ նեղութիւն քաշել։ պզտիկ երեխայ ըլլալով կոմսուհին վիքդոռիա տարվիա (որ ինկիլիզէ Թագուհիի քովի խաթուններէն մէկն էր), 1688 մէկ բեռուքայի տուփի (խուԹիի) մէջ դնելով, ա-

նանկ հազիւ մեռնելու վտանգներէն խալըս-ցուց, Փրանսա փախուց Սէն Գերմանոս ան-ղը. շատ վտանգներէն անցնելէն ետև Հռոմ գնաց կեցաւ. Հոն կարգըվեցաւ Մարիամ Քըլէմէնդինա Սօպեէսքիին հետ, որ Լեհի Թագաւորին Թոռն էր, և 1735 մեռաւ։ Սա Գ. Յակոբոս Հռոմայ մէջ բարի օրի-նակ մընէր եղած. ամենևին փառըթամու-թիւն չէր ցուցըներ, քանի մը Հռոմայու գի-նուորներէն ունէր իրեն պահապան, ու եր-կու իրեք ինկլիզի սեպուհներ (լօռտ) ի-րեն ընկեր, իրեն սեղանը չափաւոր էր, ուր ամմէն եկողները կըհրաւիրէր. կամա-ցուկ կըխօսէր, ամենևին չէր ծիծաղէր, ամ-մէն բանի մէջ կանոնաւոր կըշարժէր։ Սոր տնէն էն Կարողոս Եդուարդ, որ Ինկլիթե-ռա գնաց զօրքով Թագաւորութիւնը ձեռք ձգելու համար, բայց չյաջողեցաւ. և Հէն-րիքոս Պենետիքդոս Քարտինալ Եօրքը, Փռասքատիի եպիսկոպոսը։

Այս տարվանս մէջ 1766. փետրվ. 24 մե-ռաւ նաև ծեր Թագաւորը Ըստանիսլավոս Լէցինսքի, որ Թէպէտ երկու անգամ Լեհի Թագաւոր էր ընտրըված, բայց Մոսկովի զօրքէն միշտ հալածական ըլլալով հարկա-դրեցէր հրաժարիլ, միայն Մոսկովներու պա-հելով, որուն Փրանսայի Թագաւորը (որ իր փեսան էր,) Լօռէնայի ու Պառի դքսու-թիւը տուներ տըվերէր։ Հիմա 89 տարեկան ըլլալով երբոր օր մը կրակին քովը նստած կըտաքնար իր տանը հագուստով լինելով քաղքին մէջը ուր սովորաբար կընստէր,

քունը գալով՝ կրակը լաթերուն վրայ ցաթ-կելով անանկ բռնկեցաւ երեց որ՝ խոցե-րէն տաքութի (հիւմմայ) եկաւ վրան, չորս օրէն մեռաւ. իր մեռնելովը Լօռէնային ու Պառին դքսութիւնը վերցուեցաւ, Փրանսայի գաւառներուն մէկը եղաւ.

Ասիկայ 30 տարի շատ աղէկ կառավարեց ան դքսութիւնը, միշտ բարերարութի ընելով ժո-ղովրդեան. Նանսի ու Լիւնեվիլ քաղաքնե-րուն մէջը մեծագործ շէնքեր, հրապարակ-ներ, հիւանդանոցներ շինեց, նաև փառաւ-չէն տուն մը առաքելական քարոզութե, գպրատուններ հիմնեց, աղքատ աղջիկնե-րուն ձէհէզները հոգաց. մէկ օր մը Թէ որ բարերարութի ըրած չըլլար մէկի մը՝ ան օրը տխուր կայնէր պէս կորսնցված օր կ'ըսէ-պէր. Պզտիկուց սորվեցուցերեր զինքը չարքաշութե. Խոտէ մահճի պէս բան մը ունէր՝ միշտ անոր վրայ կը պառկէր, իր ան-ձին համար մէկ ծառայութի մը չէր ուզեր իր տնեցոցմէ. Բնութը անուշ էր, սրտցաւ, իր ժողովրդեան հետ անանկ կը խօսէր՝ ինչ-պէս Թէ իրեն հետ հաւասար ըլլային, հօր պէս ամենքնուն կը մխիթարէր. Կարօտ պատկերհան մը քաշած պատկեր մը բերաւ իրեն ծախելու, քովինները սկսան վար զար-նել, իսկ Ըստանիսլավս Թագաւորը շատ գովելով պատկերհանը առատ վճարելով խրկեց. Ետքը դարձաւ քովիններուն ըսաւ, չէք տեսնար որ աս մարդս կարօտ է տունը պահելու. իրեն համարումը պէտք է շատ-ցընել որ՝ ըստակ կարենայ վաստըկիլ, ա-

ասանկ վար զարնելով սիրտը կըկոտրի, պէտք է միշտ օգնել ամենուն, միսաս տալով ինչ կըշահվի ։ Ասանկ սիրտը՝ զինքը սիրեցընել կուտայ ամենէն ժողովուրդին, որոնք միաբերան իրենկ մականուն դրին Ստանիսլաւոս Բարերարող ։ Շվէտին Թագաւորը ԺԲ. Կարոլոս կըսէր աստոր համար, թէ մարդ մը չիտեսայ ամենեւին երկու դիրացի բաժնը վողջները խաղաղցընող ինչպէս ըստանիսլաւոս ։

Արամիտ էր ; շատ տեղեկութի ունեցող, գիտութիւնները՝ արուեստները՝ առաջ տանող. թէ որ առանձին մարդ մը եղած ըլլար՝ երեւելի պիտոր ըլլար մեքենարուեստի մէջ. զանազան գրուածներ ունի փիլիսոփայական, կենցաղակրթական (բօլիդիքա), ու բարոյական, որ 1765 տպված են չորս հատոր. ան գրուածներուն մէջ կըցըցընէ իրեն ամուր հաւատքը, նորելուք մոլորութենց դէմ նախանձայուզութիւը, մարդասիրութիւը, բարերարող բնութիւը, իմաստուն խելացի խրատները։ „Ճշմարիտ փի-
„լիսոփան, կըսէր, պէտք է ազատ ըլլալ նա-
„խապաշարմանէ, Ճանչնալ խելքին աժէ-
„քը, մեծութիւնները իրենցմէ աւելի մեծ
„չիսեպել, պզտիկութիւնալ իրենցմէ աւե-
„լի պզտիկ չիսեպել. պէտք է վայելել
„զուարճութիւը առանց գերի ըլլալու, և
„հարստութիւը առանց սիրտ փակցընելու,
„պատիւը փառքը առանց գոռոզնալու,
„պէտք է ձախորդութիւը քաշել առանց
„վախնալու, անօգուտ ձեպել ան ամենէն

„ բանը որ չունի. բաւական սեպել ան ամ-
„ մէն բանը որ ունի. միշտ միակերպ մնալ
„ բաղդաւորութեան կամ դժբաղդութեան մէջ, միշտ
„ հանգիստ ու զուարթ մնալ իբրև բնա-
„ կան, սիրել բարեկարգութիւնը՝ ու մտցընել
„ իր ամմէն ըրած բաներուն մէջ. խիստ ըլ-
„ լալ իր վրայ, ներող ուրիշներուն վրայ,
„ ազատ հարազատ ըլլալ առանց գռեհկութեան
„ (գեղացիութեան), բարեկարգ առանց ստու-
„ թեան, պէտք է սրտոտ ըլլալ, փառքը ոչինչ
„ սեպել, իր առաքինութիւնները չիճանչնալ“։
Ան իր ըսածներուն կեօրէ եղաւ ինքը ըն-
դանիքովը, որուն պատմութիւնը գրած ու-
նի բռօեառ քահանան երկու հատոր։
Երկու տարի անցնելէն ետև 1768 յունի-
սի 24 մեռաւ Փրանսայի թագուհին, որ կրա-
վէր մարիամ քառլօդդա սօֆիա լէցինսքի.
վերոյիշեալ ըսդանիքովս լէհին թագա-
ւորը իր հայրը ըլլալով, նոյնպէս վերոյ յի-
շեալ լուիզ տօֆենը իր սիրական զաւա-
կը, ան երկուքին մեռնելուն կսկիծը իրեն
մեծ ցաւ բերաւ, ըլլալով ինքը ան ատենը
65 տարվան։ Այս թագուհին իր բարի հօրը
կրթութեան մեծցած ըլլալով օրինակ եղաւ
ամմէն առաքինութեց, բայց մանաւանդ
վեհանձնութիւնը, համբերութիւնը, աղքատա-
սիրութիւնը՝ իրեն իբր բնական էին. Թա-
գուհի էր՝ բայց ինչպէս որ ուրիշ տեղեր
զրուցեցինք, որովհետև ուրիշը տիրերէր
արքունեացը մէջ՝ անիկայ թագուհիի պէս
կըվարուէր, ան լէցինսքին քաշված կենալով
ամենևին չէր ճշգրտհար, այլ ինքը բոլորո-

կին աղօթքի տալով՝ անով կըզգանար իր մխիթարութիւնը, ու կըջանար միշտ զինքը կրթել խոնարհութեան համբերելու, իր սովորական գործքն էին յոխն քաշածները մտածական ընել, խաչելութեան առջին կենալով լալով շնորհք համբերութեան խնդրել։ Իրեն պէս քանի իմընայ ջերմեռանդ ընկերներ առեր էր, անանցմով կառաձնանար, աղօթքի՝ հոգեւոր ընթերցման՝ ու ձգնութեան հետ կըլլար մարապետի կեանք վարելով, որով բարի օրինակ մընէր եղած արքունեացը մէջ անանկ ատեն՝ անանկ տեղ՝ ուր որ ջերմեռանդութիւնը խիստ քիչցած էր. իրեն խոստովանահայրը եաքը յայտնի ըրավ իրեն ըրած ձգնութիւնները։

Նոր մէկ առիթ մընաց համբերութեան ան եղավ որ՝ իր առջինեկ տղէն ան լեհի թագաւորին աղջիկը առնելու որ՝ կըսվէր Գ. ոգոստոս սաքսօնեան, ու իրեն հայրը լեցինսքին թախտէն վար ձգելով՝ ինքը անոր տեղը լեհի թագաւոր եր նստած, հիմա միշտ արքունեացը մէջ տեսնալով աստանկ թագաւորի աղջիկը, իրեն մէկ կինք մը կընար ըլլալ։ Կարգըլվելուն երրորդ օրը սովորութիւն է որ՝ նոր հարսը անանկ պիլէզիկ մը կըդնէ՝ որուն վրայ իր հօրը պատկերը քաշված պիտոր ըլլայ. աս բանս լեցինսքի թագաւորին խիստ կերք բերելով, հարցուց հարսին որ՝ աս է քու հօրդ պատկերը, բայց հարսնայ խելացի ըլլալով իր հօրը օգոստոսի պատկերին տեղը, ընդունիխնավորին պատկերը քաշել տըված էր.

որ իրենն Լէցինսքի Թագուհիին հայրն էր : Ճրամերես առ է իմ հօրս պատկերը ըսե-լով ցըցուց, անանկով խիստ հաճոյ եղաւ Թագուհիին :

Երկու մանչ զաւակ ունեցաւ, ութը աղ-ջիկ, ամմէնն ալ կըհոգար աղէկ կըթութը մեծցընելու, իրեն մէկ զաւկըներնալ քաղ-քին աղքատները եղած էին, որոնց վրայ կըխարձէր իրեն առանձին եկամուտը, զին-քը զրկելով կըջանար որ անոնց հաճնի, ա-նոր համար երբոր մեռաւ, շատ սուգի մէջ թողուց ամմէն փարէզին բարեպաշտներն-ալ, աղքատներնալ :

Ծովապատակները հալածուին . Քորսիքա կղզին կը- [illegible] [illegible] կենքն .

1765 — 1768 :

Ծովապատակներուն ( խուժանամենե-րուն ) յանդգնութիւնը զսպելու համար՝ որ խիստ շատցերէին Ճերմակ ծովին մէջը, 1765 Նաբօլիին տէրութիւնը 6 նաւ շամպէք չինել տըլաւ, 2 չէքտիրի, 4 ալ մեծ չէքտի-րի որ կալէօդդա կըսեն . Ֆրանսայնալ իր դաշինքին կեօրէ մէկ պզտիկ նաւատորմիղ ( տօնանմա ) մը հանեց, որ բռնադատեց պարպարըշի ասպատակները Նաբօլիի նաւե-րուն չդպչելու : Նոյն ատեն վենետիկցինալ մէկ նաւատորմիղ մը պատրաստեց Թու-նուզլիները զսպելու, որ իրենց նաւերուն

շատ վնաս կուտային , ու նեղը ձգեց բռնադատելով որ անոնց Տային վճարէ եղած վնասը ։ Ըսանկով դաշինք ըրին խօսք կապեցին , որ պարբարըշներուն ծովապատակները Ս. Մարիամ ըսուած հրուանդանէն ( քիթէն ) ինչվան յուսոյ հրուանդանը ընեն իրենց ասպատակութը . անկեց ետքը ապահով մնացին Նաբօլիի ու ադրիական ծովեզերքը ։

Իսկ 1768 Փրանսզի Թագաւորը Թուղթհանեց Թագաւորութեան պարտքը վճարելու համար , բայց բառլամէնտները խիստ դէմ ելան . մանաւանդ փարէզին՝ ռօանին՝ ու բօին բառլամէնտները , ինչվան Թագաւորը նախատել սկսան . հարկ եղաւ որ՝ Թագաւորը Թախտը նստած անանկ Թախտէն ապսպրեց մարտի 2. անոր վրայ ան գրուածները՝ որ Փրանսայի մէջ ցրուերէին բառլամէնտներուն դիւացէն՝ նախատական ու անվայել խօսքերով անմէննալ արգելեցին ։ Ոմանք Թագաւորին ու արքունեացը ասանկ տուրք պահանջելը պատճառ կըդնեն ան խռովութը որ ետքը ելաւ Փըրանսայի մէջ , իբր Թէ անտանելի տուրք կըդնէր ժողովրդեան վրայ . բայց ետքը նոյն խռովութիւն հանօղները շատ աւելի տուրք պահանջեցին ժողովրդենէ , անով ցըցուցին որ պատրուակ ( մահանայ ) մը էին ասոնք ։ Ճշմարիտ է իմաստնոց ըսածը ։ Ա՛ն որ անհնազանդութիւն կուղէր տեղ մը ընել , հոգւոյն անհնազանդութիւն , հոն ուր որ հոգւոյն անհնազանդութիւն , հոգւոյն խռովութիւն , ապստամբութիւն ։

Պրուշին Թագաւորը Յ. Փետերիքոս տեսնա-
լով որ՝ ինչպէս ինքը ուրիշներուն երկիրնե-
րը աւրերեր պատերազմի մէջ, ուրիշներն-
ալ իր երկիրը աւրերէին, սկսաւ բարեկար-
գութին ընել շտկել. որպէս զի եղած վնաս-
ներուն ճար մը ընէ ։ Առջի վնասը ցորենի
պակսութիւն էր՝ որուն պատճառը ինքն էր
եղած. վասն զի պատերազմին պատճառո-
վը երկրագործ չէր մնացած, կէս մը ինքը
առեր զինուոր ըրերէր՝ որ ծեծի մէջ մե-
ռան, կէսմընալ զինուոր չըլլալու համար
իրենք օտար երկիր փախերէին. աս Թշուա-
ռութիւնները (որ ծեծի պտուղ են) վերցը-
նելու համար, հրաման հանեց ներում տա-
լով ամմէն փախչողներուն՝ որպէս զի դառ-
նան գան իրենց երկիրները բնակեցընեն ։
Ամմէն օր կարօտելոց համար հաց ու ալիւր
բաժնել կուտար. ապսպրեցաւ որ՝ Սաքսո-
նիայէն շատ ցորեն բերվի կարօտներուն
բաժնելու համար. անկար երկրագործնե-
րուն ընդեղէն ու ցորեն բաժնեց՝ որ իրենց
երկիրը ցանեն. նաև ան ձիերը՝ որ առա-
պայի կամ հեծնալու չէին իգար՝ ձրի տը-
վավ անոնց. բօմէռանիայէն ու Նոր մառ-
քայէն բնակչացը շատ ըստակ բաժնեց.
իրենց փլած խրճիթները յարդնոցները
(խօլխվաները ու սամանլըխները) և ախոռ-
ները նորէն շինեց. ինչ քաղքըներ որ աւե-
լի նեղութի քաշերէին, անոնց շատ օգնու-
թի ըրաւ. ով որ կամ պզտիկ կամ մեծ եր-
կիր ունէր՝ ազատ ըրաւ զինուորական ծա-
ռայութէ, միայն թէ կարգըլվին, տուն տեղ

ըլլան. ըստերկին պայմանաւ որ խիստ ցածցու-
ցերէր ծեծին ատենը՝ ջանք ըլլայ որ որչափ
կարելի է՝ շտկէ. վասն զի այն ըստակը քիչ
քիչ իր երկիրը կըդառնայ :

Փետերիկոս Կուիլլելմոս Ա. իր նախորդը՝ այն տեղվանքները որ զօրանիստ տեղվանք էին, շատ մեծ համբարներ շինել տըվերէր ցորենի՝ որպէս զի զօրքը ցորեն ունենան, բայց ժողովրդեան համար հոգ չէր տարած, հիմա Փետերիկոս Բ. ժողովրդեան հացընելու համար եռապատիկ աւելի շատցուց ցորենը՝ մանաւանդ երբոր աժան կըծախվէր : Շլէզիային մեծերուն շատը՝ և անոնք որ երկիր ունէին՝ այն կացուիր հասերէին՝ որ չէին կրնար բանեցընել տալ իրենց երկիրները. քիչ մը առաջ անանկ դէշ կարգ մը դրերէին՝ որ երկիրներուն տիրվըտանքը իրենց ամմէն առնելիքը կորսընցուցերէին, չէին կրնար իրենց երկիրները գրաւ (ըռեհին) դնելով մէկէ մը փոխ ըստակ առնելու : Աս բանիս դեղ՝ պարոն Վարմէռը որ առջի դատաւորն էր պըրէդլաւ քաղքին մէջը՝ առաջարկեց պըրուշի Թագաւորին մէկ մնտուկ մը սահմանել փոխ ըստակ առնելու համար, ուսկից կարենայ ամմէն մարդ փոխ ըստակ առնել, գրաւ (ըռեհին) դնելով իրենց ազատ ապրանքները :

Անկէց ետքը պարտաւորեց ամմէնը՝ ով որ տէր էր երկիրներու և կալուածներու, միաբան մէկ ընկերութի մը սահմանելու՝ որով հասարակաց առնելիքները տոքի վրայ

ելլան, այսինքն սահմանել մէկ հասարակաց Պանթէոն մը, որ հայերէն կրնանք ըսել Փառաւորաց կամ Թանգարան: Աս ընկերութեան պրուշին Թագաւորը տըվաւ 200 հազար ռիալը, որպէս զի ատոնցմէ մէկ մասը խարձըվի առջի պէտք եղած խարձերու համար, իսկ մէկալ մասը մնայ ան Թանգարանին մէջը, հարիւրին չորս շահ տալով, որպէս զի ան շահը բաժնեն հազարապետներուն (ոֆֆիցիալներուն) ու իրենց որբեվարի կնիկներուն և աղջիկներուն: Ինչափ հարկինք ունեցաւ աս Թանգարանը՝ որ քիչ ատենի մէջ չորս դիւացէն ըստըկով լեցվեցաւ. վս զի ով որ ըստակ կուտար հոն, ամմէննալ կըշահէին: Ասկէց օրինակ առնելով նաև արևելեան և արևմտեան բրուսիան, և մակտէպուրկեան սահմանը՝ շուտ մը իրենքալ Թանգարան սահմանեցին, որով իրենց ապրանքը շահեցուցին, ու աւելորդ դատէրը (տավաները) վիճմունքները խափանեցին, որ միշտ կըլլար առնելիք ու տալիք ունեցողներուն մէջ:

Ասանկ բարեկարգութիւն կընէր Ֆ. Ֆետերիքոս ըստըկի դիւացէն. միանգամայն կարգացողութիւնը ձեռքէ չէր ձգեր, սիրով ումանց հետ կըլլար, որուն վրայ ետքնալ ունինք պատմելու: Աս ատեններս օսմանեանց Նոր Թագաւորը դեսպան (էլչի) խրկեց պէռլին. Ֆետերիքոսալ ստանպօլ դեսպան խրկեց: Հելվեցիոս անունով բժիշկը ընդունելով իրեն իբր խորհրդական ըլլալ, որ Փրանսայի մէջ եկամուտի վրայ եղօղ

դատաւորներէն մէկը ըլլալով մէկ ամբա-
րիշտ գիրք մը շիներեր հոն՝ Հոգէ անունով.
վախնալով որ դատաւորները զինքը կըդա-
տապարտեն՝ Ինկիլդէռա փախաւ, հոն
անչափ երես չիգտնալով՝ անկէց Փետե-
րիքսուին քովը եկաւ, գիշեր ցորեկ հետը
խորամթելով իրեն միտքը խօթեց, ճամ-
փաներ ցըցուց տուրքերը՝ մաքսը (կէօմ-
րիւքը՝) ու մուխադամները եվելցընելու ։
Պետերիքսոն ալ ասոր խօսքին հետեւելով
եվելցուց, ու մաքսապետները՝ մուխադա-
ճիները՝ եկամուտին վրայ եղողները՝ ամ-
մէնն ալ դրսեցի Փռանսզներ դրաւ ընելով,
ասոնք դրսեցի ըլլալով ատելութիւն ունին,
սաստիկ կընան պահանջել տուրքը, և թէև
կեղեքեն քերեն, բայց Փռանսզ ըլլալով
շուայլ են, ինչ որ և ունկէց որ կըյափշտա-
կեն, նորէն հոն կըթողուն խարձելով ։
Բայց ասանկ ընելով շատ տրտունջ ելաւ
ժողովրդեան մէջ. վասն զի կըտեսնար ժո-
ղովուրդը՝ որ եկամուտին վրայ եղող դրսե-
ցիները 30 հազար ուխալի կըշահէին. իսկ
իրենց մեծերը ու զօրապետները հազիւ 4
հազար կըվաստըկէին ։ Աձաւականներն-
ալ հեռըվանց պտըտելով իրենց ապրանք-
ները կըտանէին. որպէս զի պրուշի երկ-
րէն չանցընեն, այնչափ ծանր տուրք չի-
վճարեն ։

Աս բաներս տեսնալով Ինկիլիզի դես-
պան մը՝ որ պէռուլին խրկըված էր՝ ըսաւ.
» Պրուշները ատեն մը աղէկ սանտրեցին
» Փռանսզներուն գլուխը, երբոր ռօզպաք

„ յաղթութիւն ըրին, հիմաւ Փրանսացիները
„ աղէկ փաշի (Թօղ) կըցանեն պըուշնե-
„ րուն գլխներուն վրայ ":

Փետերիքոսին շինած մէկ գրքին պատճառովը խռովութիւն ելլալ Զուիցցերիին քաղքըներուն մէջը, Պեռնա ու Նեւշատլ.

1769:

Մերոնց հեղինակը օգոստոս 20 տարվան մեռաւ ծաղկի հիւանդութենէն՝ շատ ցաւ տըվաւ Փետերիքոսի. մանաւանդ որ իրեն ժառանգը կուլիելմոս Փետերիքոս՝ մանչ զաւակ չունէր, հապա մէկ աղջիկ մը միայն. Թող տուր որ նոյն կուլիելմոս աղէկ չըլլալով իր կողակցին հետ՝ որ էր եղիսաբեթ իշխանուհին պրունսվիքեան՝ անչափ շատցերէր հակառակութիւնը իրենց մէջը, որ 1769 հարկ եղաւ իրարմէ քակելու. անոր համար կուլիելմոս Փետերիքոս նորէն պսակելով իրեն առաւ Փետերիքա լուիզան, որ հասսիա տարմշտատեան լանկրավիոյին (կամ իշխանին) դուստրն էր, իսկ առջի կնկանը նստելու քաղաք ու պաշտատական (խաս) տըվին ըշտետտին քաղաքը՝ որ բօմէռանիայի մէջն է: Նս թանս թռօտէտտանդներուն մէջնալ հազիւ երբեք եղված էր:

Սուրիչ մէկ դիպուած մընալ պատահեցաւ Փետերիքոսի Թագաւորին. ինքը մէկ համառօտութիւն մը շինած ունէր Փլիւռիի հե-

ղինակին եկեղեցական պատմութեանը , որուն մէջը շատ անվայել բաներ գրված ըլլալով ըզվիցեռցիք՝ իրենց պէռնա քաղքին մէջը հրապարակաւ երեցին նոյն Փետերիքոսին շինած համառօտութիւնը , ու իրենց ամմէն երկիրներուն մէջը արգելեցին ըսելով որ՝ սուտմըտընէ էր գրված մեր պէռնա քաղքին անունը գրքին ճակտին վրայ , իբր թէ պէռնա տպված էր ։

Նիւշադըլ անունով մէկ պզտիկ իշխանութի̃ մը կայ , մէջինները կէս մը Փրանսզ են , կէս մը ըզվիցերցիք , սահմանակից ըլլալով իրարու ․ 1707ին զանազան ցեղերու մէջ վէճ ընկաւ աս իշխանութիւնս ժառանգելու համար , պրուշին ձեռքը անցաւ , բայց խօսք դնելով որ իրենց արտունութիւնը պահեն ։ Աս Նիւշադըլցիքալ դէմ ելան աս գրքին արգելեցին , որովհետև մէկ քանի գրքածախ յայտնի կըծախէին ․ աս բանիս համար քաղքին կառավարը մարդ խրկեց Փետերիքոսի , բայց անիկայ բանի մը տեղ չսեպեց ։ Նորբոր Նիւշադըլ եկավ անուանի անհաւատը յակոբ ռուսսօն , քաղքին քարոզիչը մուդիէ դռավէ անոր դէմ կեցաւ , թող չէր իտար ընդունելու ըսելով որ՝ ասիկայ գլուխ է անհաւատներու՝ չենք ընդունիր ․ և մեր արտունութեանց մէջը մէկնալ աս է որ՝ մէկ դրսեցի մը չընդունվիր ինչվան որ հրաման չառնըրվի մեր դաւանանքին քահանայներէն՝ որ էր ռէֆօռմադ ըսված դաւանանքը ․ Բայց քաղքին կառավարը որ էր լօռտ մառշալը՝ չէր ուզեր դուրս հա-

նել զուարասն. այնչափ եղաւ որ ետքը պրու-
շի Թագաւորին հրամանովը գիշերանց բռնել
տրվաւ ան քարոզիչը, վճռել թերդը
քշեց :

Նիւշադլցիք աս բաներես գրգռելով նոր վէճ մը հանեցին ըսելով թէ մեր հին արտօնութիւնները ամմէնն ալ գետին ընկած են. վասն զի պրուշը ինչպէս իր ուրիշ երկիրները՝ նոյնպէս ալ նիւշադլին մէջը՝ եկամուտի վրայ եղօղները փրանսզ դրեր էր, իսկ մեր հին օրէնքը կարգելէ կըսէին որ դրսեցի չըլլան տուրք առնօղները : Աս դատս (տավան) խօսվեցաւ քաղքին դատաւորաց առջին, ետքը պէունայի մեծ ժողովքի առջին, վասն զի երբոր նիւշադլ պրուշին ձեռքը անցաւ, անանկ սահմանեցին որ՝ երբոր քաղքըցոց ու պրուշին մէջը վէճ մը ծագելու ըլլայ, պէունա ըլլայ դատաւոր որոշօղ :

Բայց կավտօղ անունով մէյմը՝ որ ընդհանուր փաստաբան (ավօքադ) էր պրուշի Թագաւորին՝ անանկ վարպետութեամբ ու ճարտասանութ. խօսեցաւ Թագաւորին դիւացէն, որ ամմէն ժողովականք պրուշի դին կորեցին դատը, և պարտաւորեցին որ նոյն եղած խարճը նիւշադլցիք վճարեն. աս խարճն ալ այնչափ ծանր դրին, որ թէև հարիւր տարի կըրենց ուզածին պէս ըլլար, խարճածնին չափ չէին կրնար ունենալ : Ասկէց անչափ կատղեցան որ՝ չըգիտնալով ուսկից առնեն վրէժնին, ան փաստաբանին տունը մտան թալլեցին, զինքն ալ որ

տօլապի մը մէջ պահուած էր՝ գտածնին պէտ ապանեցին. իրենն պզտիկ տղաքը ու մէկ քանի հոգի ընտանիքներէն խոցեցին։ Սա բանիս վրայ Փետերիկոս պրուշին Թագաւորը գանգատ գրեց Պէռնայի դատաւորներուն, պատժել ապսպրեց յանցաւորները. տեսնալովալ որ՝ Նիւշադել շատ հեռու է ուրիշ իր գաւառներէն, ծախու հանեց, բայց ծախու առնօղ մը չգտաւ.

Կատարինէն Մոսկովի Թագուհին երկու հեղ Թախտէն վար ձգել. Յոհաննէս Թագաւորը սպաննեցին.

1764.

Յոհաննէս անուն Մոսկովի Թագաւոր կար՝ պզտիկուց շղթայակապ բերդը դրած. ասիկայ պետրոս Մոսկովի Թագաւորը քեռ-հօրմ բերդը տանիլ տուեր էր, որ Լատոկա լճին մէջ մէկ կղզիի մը վրայ էր. հոն կեցաւ մինչև 1762, օգոստոս ամիսը, ան ատենը կատարինէն նորէն բերել տուաւ շղթայակապ։ Երկու տարի անցնելէն ետեւ հոն եղօղ պահապաններէն մէկ հազարապետ (ուֆֆիցիալ) մը Բարսեղ Միրօվիչ անուն՝ միտքը դրաւ որ՝ յոհաննէսը Թագաւոր նստեցնէ, կատարինէն Թախտէն վար ձգէ. որպէս զի իր ապրանքը որ արքունիքը (միրին) առած էին, նոր Թագաւոր գնելով իր ձեռքը ձգէ. երբոր իրեն եկավ

պահպանութեան կարգը, 1764. յուլիսի 15. գիշերանց մէկ քանի հոգի մանծերէն իրենց դին դարձուց մեծ բաներ խոստանալով: Անոնք երդուում ըրին մէջերնին՝ որ կէս գիշերը անցնելուն պէս 'ի գործ դնեն, ելան դէպ 'ի բանտը գացին ուր էր յովհաննէս, հետերնին 50 զինուոր մը առնելով որ իրենց տակն էին. հոն եղող բերդին պահապաններուն մէկը դէմերնին ելավ հարցընելով թէ ինչ կուզէք, անոնք չիկարծելով որ արթուն գտնան անիկայ, միրօվիցը առանց պատասխան տալու զարկաւ անոր, ու ընկերներուն տըվավ որ բռնած պահեն:

Առաջ գացին բանտին դուռը ափ առին, հոն եղող պահապանները որովհետև դէմ կեցան, անոնք որը զարկին, որը սպաննեցին, հոն հասան ուրիշ խումբ մը խումպարաճիներու, միրօվիցեանք շուտ մը մէկ չինծու սուտ թուղթ մը ցըցուցին անոնց՝ ատեանին (տիվանին) դիւանէն գրված, ուր կըսէր թէ՝ յովհաննէսը հանվի բանտէն թագաւոր նստի, իսկ կատարինէն վար ձգվի. վասն զի անիկայ լիփօնիա գացած էր բոնիադօվսքի կոմսին հետ պսակվելու համար, որ ետքը լեհի թագաւոր եղավ: Աս խօսքերս կարդալով ան ռամիկ զինուորներուն խումբը՝ խաբվելով հաւատացին թողուցին, և իրենց պզտիկ թօփ մը տըվին որ դուռը կոտրեն: Երկու պահապանները՝ որոց յանձնըված էր յովհաննէս, աղաղակ վերուցին դէմ կեցան՝ որ նէրս չիմտնան,

բայց տեսնալով որ մօտիկ էին դուռը կոտրելու, և իրենք հերիք չէին դէմ դնելու, Թուրքերը ձեռվընին նետս մտան յահաննէսին վրայ վազեցին սպաննելու. խեղճ յոհաննէսը արթըննալով երդում ընել կուտար կաղաչէր որ զինքը չիմեռցընեն. տեսնալով որ իր աղաչանքին մտիկ ընող չիկար, սկսաւ հետերնին կռուիլ, երկան տեննը զինքը պաշտպանեց, Թէպէտ և մէկ շապիկ մը միայն վրան էր հագած. մարմինը ամմէն դին խոցվեցաւ, աջ ձեռքը կտրըվեցաւ, անանկալ ըլլալով երկըրթով մը մէկին անանկ կըցաւ զարնել՝ որ կըխալըսէր, բայց անոնք անտանը սուրերը կուշտը խոԹելով սպաննեցին: Ետքը իրենք վազեցին դուռը բացին, յոհաննէսին մեռնելը ցըցուցին միջօվլիցին, ու հրամանագիրնալ՝ ուր ապսպըրված էր իրենց, Թէ որ մէկը գայ խալըսցընել ուզէ, շուտ մը զարկէք սպաննեցէք յոհաննէսը. ան տեննը միջօվլիցը զարհուրելով՝ ետ դարձաւ իրեններով: Աղուան օրը յոհաննէսին մեռնելը հրապարակաւ ժամը դըրին որ ամէննալ տեսնան. և Թէպէտ մէկ նաւավարի (կէմիճիի) հագուստ մը հագուցերէին, բայց կերևար իր Թագաւորակերպ ըլլալը. վեց տանաչափէն աւելի իր հասակը, մարմինը ձերմակ, դէմքը վայելուչ, երկան մազերով, ամմէն ժողովուրդը լացընել կուտար, իր դժբաղդուԹեան վրայ ողբալով, որ օրօրոցի ( պէշիկի ) մէջ ըլլալով անմեղ տղայ բանտը դրվեցաւ. իր եօթնալ ծաղիկ հա-

սակի մէջ ասանկ խեղձ մահուամբ վերջացաւ (1)։

Կատարինէն ռիկա էր երբոր աս բանս եղաւ, ուր իրաւցընէ բօնիադօվսքի կամնին հետ ծածուկ խօրաթա կընէր. լսածին պէս վէյմար զօրապետը խրկեց քննելու. ասիկայ եկաւ միրօվիցին ու իր համախոհներուն վրայ թուղթ գտաւ կատարինէին դէմ ու կառավարութենը դէմ, որ պիտոր դուրս հանէին՝ երբոր ուղածնին առաջ երթար։ Միրօվիցին գլուխը վճռեցին կտրելու, մնացածները որ 60 հոգիի չափ կային, անչափ ծանր պատիժներ չի տըրվին, ուզեցին աւելի գոցել, որպէս զի ամմէն բանը դուրս չելլայ։

Երկրորդ անգամ կատարինէին թշնամիները ետեւէ ընկան սպաննելու. իրենց պահապան աղախինը՝ որ իր խուցին առջին կըսպասէր՝ իրենց վաստըկեցան, որ խօսք տըւաւ ապստամբներուն երբոր քուն ըլլայ կատարինէն իրենց մտնէ, բայց անոնք սխալեցան ժամադիր ըլլալուն վրայ, վասն զի ան ատենը ելան եկան ապստամբներէն իրեք հոգի՝ որ ատեն որ ուրիշ աղախին մը

(1) Ծիհանեան փառաւէշտ օրմաւ՝ հեման պեր քեթխիւտալըգ տըր,
պու ֆանի տիւնեատէ պիդայտ սուլթանլըգ՝ կէտալըգ տըր։
Պիւթիւն տիւնեատէ սուլթան տըր, կէտա տէրլէրիսէ սաալըգ տըր,
պու ձանըն չիւնքի քէտըր՝ տադըպէթ թէնատէն ձիւտալըգ տըր։

կըսպասէր պահպանելու, անիկայ երբոր
տեսաւ անձանաչ մարդիկները անանկ տա-
րաժամ ատեն, կանչվռտել ճչալ սկսաւ,
ասոնք սերայի չուխատարի հագուստ հագ-
ված ըլլալով համարձակ կրցան փախչիլ ։
Ասոնց ուրիշ գրգռօղներ կային՝ որոնց շա-
տը մեծ մարդիկներ էին, որ կատարինէին-
ալ և իր հետ եղօղ իշխաններունալ դէմ
էին. բայց չէինալ միաբան թէ կատարինէն
վար ձգելէն ետև ով դնեն թագաւոր. ո-
մանք իր տղան թագաւորեցընել կըսէին,
ոմանք շվետի թագաւորի տղան. ասանկով
յարմար մարդ չիգտնալնուն համար թա-
գաւոր նստեցընելու՝ ապստամբութի հանե-
լը դժար կըլլար ։

Կատարինէն իմացաւ աս ապստամբութիը,
բայց չունենալով յայտնի նշաններ՝ թէ ո-
րոնք էին գլխաւորները, չուզեց շատ խըս-
տութի բանեցընելու, որպէս զի ա՛լ աւելի
չիծաւալի ապստամբութիր ։ Ասլօֆեան իշ-
խանուհւոյն՝ որ վօրօնցօֆին քոյրն էր, մէկ
սիրալիր թուղթ մը գրեց գովելով ու յոր-
դորելով որ իրեն յայտնէ, որոնք էին ար-
դեօք աս ապստամբութիս գրգռօղ, խոս-
տանալով ներումն տալ ամմէնուն ։ Իշխա-
նուհին կասկած երթալով որ՝ կատարինէն
աս բանովս կուզէ իրմէ վրէժ առնել, գրեց
իրեն որ՝ ամենևին չեմ գիտեր, իսկ թէ
որ կուզէ զինքը մեռցընել, պատրաստ է
մեռնելու ։ Ան ատենը կատարինէն թուղթ
մը ծաւալեց յայտ առնելով որ՝ հիմակվան
պարագայները նայելով ասկեց ետքը մէկ

դի պիտոր թողում ներելը ու գթութիւը՝ որ եղիսաբեթ կայսրուհիէն սկսեալ՝ի գործ կըդրվէր, այլ ամմէն յանցաւորները իրենց յանցանացը կեօրէ պատժել պիտոր տամ. վան ղի մոսկովները ուրիշ կերպով չէին կրնար զսպըվիլ, միայն թէ վախցընելով :

## Կատարինէին ըրած կենցաղօգուտ գործերը :

Գիտնալով կատարինէն որ սաստիկ ահացուցիչ վախցընող թղթերը քիչ պտուղ կըբերեն, անոր տեղը մէկ հատիկ միջոց ժողովուրդ շահելու՝ է անոնք խրատելը, աղէկ բարոյական սկզբունքներ մէջերնին մտցընելը, ան խրատները պահող մարդնալ փառքի պատուի հասցընելը ու մեծարելը, անոր համար կատարինէն խելացի ըլլալով՝ որչափ որ մէկ դիւացէն իր վրայ վախ ունէր, այնչափալ մէկալ դիւացէն աս բաներուս վրայ հոգ կըտանէր, աս միջոցներուն ձեռք կըզարնէր առաջ տանելու՝ ինչ որ պէտք էր աղէկ կառավարուն համար, նաեւ մանր ու մունր բաներու մէջ : Նոյն իրաւի որ անպտուղ կառավարութե մէջ ասոր ներհակը կըտեսնանք. շատ թղթեր օրէնքներ կելլան յանցաւորը պատժելու համար, բայց քիչ միջոցներ կըբանեցըվին սիրտ տալու, առաքինութիւնները առաջացընելու համար :

Աս բաներս մտածելով կատարինէն՝ նոր դպրատուններ ու հիւանդանոցներ շինեց՝ վաճառականութիւը արուեստները ծաղկեցը-

նել ուզեց, Թէրամանէներուն մէջ նոր պատերազմական նաւեր շինել տըւաւ։ Տեսնալով որ Մոսկովյին երկրին կեօրէ մէջի մարդիկները քիչվոր էին, անոր համար մէջէն քիչ բերք կելլար, Թուղթ մը հանեց հրաւիրելով ամմէն դրսեցիները ինչ հաւատքէ որ ըլլան, որպէս զի իր երկիրը գան նստին, և ուզածնին պէս բանեցընեն, իրենց իշխանութեը Թողլով երկիրը, երբոր ուզեն երԹան, իրենց հետ տանելով իրենց վաստըկածնին. գիտեր ինքը որ՝ մէյմը բնակելու սկսին, անկէց ետքը դժար կըլլայ իրենց երկիրնին Թողուլ։

Նորկու(Ս)ուլօֆ եղբայրներուն վրայ, մանաւանդ գրիգորին վրայ միշտ աւելի սէր ցըցուց, աւելի մեծցուց. վասն զի անոնց ձեռքով ազատեցաւ, ու իր մեծութիւնը անոնցմով ունեցաւ, իսկ ուրիշ մէկալ հազարապետները (ուֆֆիցիալները) որ զինքը Թախտը գնել տըվին, անոնց հաստուցում ընելէն ետև քիչ քիչ հեռըցուց իր աըքունիքէն (սէրայէն), բայց ապստամբութեոգին չիկըցաւ մէջերնէն վերցընել։ Նօվօկոււօտի մետրապօլտին հեռանալը (որ անցած ապստամբութեան մէջ գլխաւորներէն մէկն էր), ու իր զաւկին տկարութիւնը քիչ առողջութիւնը՝ հերիք պատրուակ (մահանայ) մընէր ապստամբութի հանել տալու։

Մոսկովյին եկեղեցականքը՝ որ աս խոստմամբ վաստըկված էին կատարինէին Թագաւորեցընելու ատենը՝ Թէ իրենց ապրանքները որ Գ. պետրոս առեր էր՝ իրենց պիտոր

դարձընել կատարինէն, հիմա տեսնալով որ 'ի գործ չիդրվիր, գրգռեցին ժողովուրդը ու ձմերոցներու մէջի եղած զինուորները, երրորդ անգամ նոր ապստամբութի մը հանեցին ընդհանուր, որով կատարինէն շատ վտանգի մէջ ընկաւ։ Ըն իշխանները որ զինքը թագաւորեցընել տըվերէին ռուսօմօսքի, պետրուչէֆ, բանին, կլեպօֆ, քովը եկան դողդղալով, բայց կատարինէն անոնց դէմ աներկիւղ ցըցընելով զինքը, շատ քաջալերելով աստնկ սիրտ տըվավ անոնց։ Ա.յ Նախախնամութիւնը որ զիս կանչեց թագաւորելու, իս պիտոր պահէ՝ պէրութիւնը խաղաղ պահելու համար, ու իր ամենակարող ձեռքը անոնք պիտոր ընէ իմ Թշնամի-ները։

Երկու օռլօֆ եղբայրները իրենց մարդիկներովը ըստակ բաժնելով ուրիշ կերպեր բանեցընելով խաղաղցուցին ամբոխը. շատ զինուորներ ու 25 հազարապետներ բռնեցին, անանցմէ չորսը գլխաւոր ըլլալով մահապարտ վճռեցին՝ արժանի իրենց ոսկորները ջարդելու, բայց կատարինէն գթութի ցըցընելով փոխեց պատիժը, սիպիր քշել վճռեց։ Ուրիշ ազգաց մէջը ամօթ մը վախ մը կայ վատահամբաւ ըլլալու համար, աս ամօթս չիկար մոսկովներուն մէջ. հիմա կատարինէն աս ամօթս մէջերնին խօթելու համար՝ հրապարակաւ վար ձգել տըվավ ան չորս հազարապետները իրենց իշխանութենէ, ու դահճի ձեռքով ապտակել (սիլլէ զարնել) տըվավ։

## Ստատարինէին նոր ատեան ( դիւան ) մը հաստատել սահմանել ։

Ստատարինէն շատ մեծ կըսեպէր Ռանէին կոմը իր վեզիրը՝ աղէկ խորհուրդ տալուն համար, ու մանրդս բարեպաշտ էր ու քաղցրաբարոյ, իր միտքը դրեր էր մէկ նոր ատեան մը հաստատելու. օր մը երբոր սըրտում կեցած տեսաւ Ստատարինէն, բացաւ իրեն խորհուրդը ըսելով ։ Մէկ հատիկ միջոց քեզ խռովութէ խալսցընելու, թախտդ ապահովցնելու՝ աս է. մոսկովներուն թագաւորները ինչվան հիմա մէկ իշխանութի մը բանեցուցին չափէն աւելի, բայց աս եվելոք իշխանութիը է՝ որ զիրենք վտանգներու մէջ ձգել կուտայ. անանկենէ ըրէք թագուհի ինչ որ կըսեմ, Նուիրեցէք աս ձեր բացարձակ իշխանութիւնիդ, մէկ ատեան մը սահմանեցէք ազնուականաց որ միշտ մնայ, հրաժարեցէք ձեր դիւացէն ու ձեր յաջորդներուն դիւացէն, որ չփոխէք մէջէն իշխանները, իսկ թէ որ անոնցմէ մէկը յանցաւոր գտնըվի՝ միայն իրեն ընկերները իրաւունք ունենան զանիկայ դատելու և պատժելու ։

Ստատարինէն որ միշտ նոր նոր բաներու յօժարութի ունէր, խիստ աղէկ երևցաւ իրեն աս խորհուրդս. անանկ սեպեց որ իրեն բացարձակ իշխանութէ հրաժարելով, իրեն մեծ փառք կըվաստըկէր, ու սէր ժողովըրդեան ։ Ըս բանս իրաւ աղէկ կըլլար՝ թէ

որ ան ատեանը (տիվանը) ընտրըված ըլլար ամէն դաս մարդոցմէ, մեծերէն նաև հասարակ ժողովրդէն, անալ բազմութ̄ ժողովրդեան ընտրըված ըլլար, բայց ազնուականներուն միայն ժողովքին տակը ձգել անչափ զանազան ազգերը որ մոսկովստան կըրգտնըվին, ըսել էր որ՝ մէկ տիրոջ տեղ՝ երսուն քառասուն տիրվըտանց տակը ձգել տան: Բանին իմաստուն օրէնսդիրները որ եղած են աշխըրքիս մէջ՝ ամէննալ գրած են որ „ Մէկ ժողովքի մը բռնութիւն որ „ մեայուն է՝ ու ժառանգութ̄ որդւոց որ- „ դի կանցնի, շատ ծանր է ու անտանելի, „ քան թէ մէկ միապետի մը բռնութիւնը՝ „ որ միայնակ մէկ հոգի է, ան բռնութ̄նալ մեռնելուն պէս կըփոխվի“:

Նոր համար պէտղուչէֆ հին դիւանագիրը իմացածին պէս աս բանս, գնաց շատ պատճառներով կատարինէին միտքը խօթեց որ աս բանս ընել չիտայ. որովհետև բանին վէզիրը կատարինէին հաւանութիը առածին պէս գացեր՝ գրիգոր օռլոֆին բացերեր, ըսելով որ՝ զինքը գլուխ պիտոր դնէր ան նոր ատեանին (տիվանին): Օռլոֆը ուրախացաւ, բայց աղէկ ըրավ որ ժամանակ խնդրեց ասոր վրայ մտածելու, եկաւ խորհուրդ հարցուց վերոգրեալ պէտղուչէֆին, ատիկայ ըլլալով ծեր հասուն մարդ, հնցած անանկ կառավարութ̄ մէջ, և ուրիշներէն շատ աւելի տեղեակ, սոսկաց երքոր լսեց որ կատարինէն հաւանութի տըվերէր, գնաց միտքը դարձուց:

## Է. Քրիստիանոս Տանիմարքայի թագաւորին ըրած-ները.

### 1766 — 1771:

Քրիստիանոս կամ Քրիստիեռն Է. 1766
թախտը անցնելէն ետև՝ շուտ մը հրատա-
րակեց իր քրոջը պսակվիլը՝ որ կըսվէր Սօ-
ֆիա Մագդաղենա, և պիտոր կարգըլվէր
Շվէտի թագաւորին ժառանգ տղին հետ,
որ սեպտեմ. մէջ պսակվեցաւ. քրոջը պսակ-
վելէն ետև ինքն ալ կարգըլվեցաւ հոկտ. 1.
Լօնտռայի մէջ, որուն համար արդէն 1765
խօսք կապեր էին. պսակին ատենը իր տեղը
փոխանորդ՝ եօրք դուքսը կեցաւ Լօնտռա.
Հետևեալ օրը հարսը Քառօլինա Մաթիլ-
տէ՝ որ քոյր էր Ինկիլիզի թագաւորին՝ Է.
Գէորգին՝ Համբուրգ ելավ տանիմարքա գա-
լու, երկուքնալ մանկահասակ, բայց աս
իրենց պսակը մէկ աղէկտուր դժբաղդութիւն
մը բերաւ՝ որ ետքը պատմենք:

Աս թագաւորս քրիստիանոս խիստ դէմ
էր գաղտուկ պսակվելու. անոր համար ար-
գելեց որ պսակի օրհնութիւնը ուրիշ ժամէ-
րու մէջ չըլլայ, հապա միայն ամմէն մար-
դու իր ժողովրդապետական ժամու մէջ.
թէ որ՝ մէկ զաւակ մը իր ծնողացմէ գաղ-
տուկ պսակվելու ըլլայ, կարօղ ըլլան ծնող-
քը ան զաւակը ժառանգութէն զրկելու:
Շատ ջանք ըրավ որ՝ ինչ վէճ որ կար ըն-
լէզվիկ Հօլշտէյն դքսութ̃ վրայ՝ տանիմա-

քայի ու Մոսկովին մէջը վերջացընել կուզէ. աս բանիս վրայ 1767 դաշնադրութիւն մը եղաւ երկու տէրութեանց մէջ՝ որ ամմէն վէճը վերջացուց. բայց ան ատենը դաղտուկ ու անգործ մնաց ինչվան որ մեծնար մոսկովին մեծ դուքսը, ու ինքնալ իբրև դուքս հօլշդէյնի հաստատէր ան դաշնադրութիւնը:

Նոյն տարի քրիստիանոսի մէկ զաւակ մը եղաւ իրեն յաջորդ, որ Ֆրետերիքոս ըսուեցաւ, իսկ 1768 Ճամփայ ելաւ, օգոստ. 11. լօնտրա հասաւ, ուր շատ մեծ ընդունելութիւն ըրաւ Ենկլիզին թագաւորը՝ մանաւանդ որ իր էնիշտէն էր. անկէց հոկտ. 13 փարիզ գնաց, ետքը դարձաւ եկաւ քօբէնհայկ իր թագաւորանիստ քաղաքը:

Ճէզայիրլիները իրենց դաշնադրութիւնը աւրեցին, թշնամութիւն ընել սկսան տանիմարքացոց հետ, անոր համար 1770. մէկ պզտիկ նաւատորմիղ (տօնանմա) մը խրկեց անոնց վրայ, որ խումպարա ձգել սկսաւ անոնց քաղքին վրայ. բայց որովհետև չափաւոր պաշար (զահիրէ) չէին առած հետերնին՝ շուտով ետ դարձաւ. ետքը ամմէն պատրաստութիւնը տեսնալով Ճերմակ ծովին մէջը պըտըտիլ սկըսաւ՝ որ տանիմարքայի նաւերը պաշտպանէ:

Երբոր քրիստիանոս իր Ճամփորդութիւնը լմնցուց քօբէնհայկ եկաւ՝ ուղղափառներուն կատարեալ ազատութիւն տըվաւ, եկեղեցիները բաց թողլու՝ զանգակ զարնելու՝ հրաման տալով, և ուրիշ հրապարակական

բաներ ընելու որ մինչվան ան ատենը ար-գելված էին։ Մէկ ձիաւոր արձան մը կանգնել տըվավ Ս. Փետերբուրգի մեռած Թագաւորին յիշատակ՝ իրեն ըրած աղէկութեանը համար։

## Բողոքականներուն վրայ եղած վէճը ու խռովութիւնը Փրանսայի մէջ.

1761։

Շատանցմընէ դադրած էին եկեղեցական վիճմունքը՝ որ ժզ և ժէ դարերուն մէջը կըլլային հաւատքի ու իրաւունքի վրայ. բայց աս ժը դարուս մէջի ատեններըը նորէն սկսան, մանաւանդ ճիզվիթներուն կարգին վրայ շատ մեծ փոփոխութիւն գալով, անկեց աւելի շատցան, Թագաւորներուն մէջնալ խռովութիւն ընկաւ։

Մէկ ճիզվիթ մը վալլէթ անունով որ մեծաւոր էր Մառդինիքա կղզիին մէջ, մտածեց որ աս կղզիին վարուցանը առուտուրը ծաղկեցընէ, խիստ յարմարութիւն ունենալով ատանկ բանի վրայ, սկսաւ վաճառականութիւն ընել՝ Մառդինիքա կղզիին հարուստ ապրանքները Մարսիլիա ղրկել, իրմէ վերադոյն մեծաւորնալ հեռու ըլլալով աւելի համարձակութիւն առավ օրէօր մեծցընել իր առուտուրը։ Աս բանս թէպէտ իր կացութեանը դէմ բան էր՝ բայց շատ անուն հանեց, շատ վարկուն ունեցաւ ամմէն տեղ աս արուեստին մէջ. ամմէն շահատան տեղ

իրեն բաժանորդ (օրթախ) ունեցաւ, և ծովու վրայ նաւէր. անչափ որ՝ ուրիշ վաճառականները ասոր վրայ նախանձելով գանգատ գրեցին փարէզ, ամերիկայէն կանչել տըվին. բայց աս գանգատը՝ զինքը կանչել տալը՝ ալ աւելի վարկումը շատցընել տըվաւ իր բաժանորդներուն. (օրթախներուն) մէջ. ասանկով 1743էն սկսեալ ամերիկայի առուտուրին մէջը իբր վաճառականութե̃ հոգին կըսեպվէր վալլէթ:

Բայց ինչպէս որ աշխարհիս սովորութի̃ է՝ մէկ ձախորդ դիպուած մը թէ զինքը՝ և թէ ամմէն ճիզվիթին կրօնքը տակն ու վրայ ընել տըվաւ: Վալլէթ քանի մը նաւ լեցուն բեռներով շատ միլիոններու աժողչէքով մարսիլիա խրկերէր երկու հարուստ վաճառականներու վրայ, հետնալ ծանր գամպիալներ կամ բօլիցաներ քաշելով իրենց վրայ, ան նաւերը ինկիլիզներուն ձեռքը ընկան, մէջի ապրանքներով առին տարին: Ճիզվիթին կարգին սովորու̃ն էր՝ որ երբոր քարոզչաց մեծաւորը պարտք մը ընէր, ան պարտքը ամմէն կրօնքին կըլլար. անոր համար իրենց քարոզչաց գործակալը աս պարտքըս վճարելու համար քիչ մը բան խըրկեց, բայց չէին օգտէր, պարտատէրներնալ չէին ուզէր սպասել. ասկէց ան երկու վաճառականները բաց ելլալու եղան. իրենց պատճառովնալ ուրիշ շատ վաճառականներ գրեթէ Փրանսային ամմէն շահաստան տեղերը բացը ելան:

Ճիզվիթին ընդհանուր մեծաւորը ռիչչի

անունով հռոման տրվաւ քարոզչաց գոր-
ծակալին մէկ միլիոն լիրէ փոխ առնել աս
բանիս համար. վերոյիշեալ գործակալեալ
մարսիլիա խրկեց, բայց պատահմունքը բե-
րաւ որ՝ հոն հասնելէն օր մը առաջ բացը
ելերէին ան վաճառականները, ինչպէս ալ
որ սովորութիւն էր, իրենց տէֆթէրները
յանձներէին հոն եղած ատեանին (տիվա-
նին): Ան ատենը տեսնալով ձիզվիթները
որ բանը մեծցաւ, շատ դէշի կերթայ, ետ
կեցան պարտքը վճարելու, ըսելով որ ի-
րենք պարտըկան չեն առանձին ձիզվիթի
մը պարտք վճարելու՝ որ ինքիրմէ ըրերէր,
և ոչ յանձնարարութ. և հրամանով ձիզվի-
թի կրօնքին: Բայց պարտատէրները աս
պատճառս բանի տեղ չխսեպելով դատա-
տան կանչեցին վալլէթ ձիզվիթը որ բօլի-
ցաները քաշերէր, կանչեցին նաև քարոզ-
չաց գործակալը, որ մասնակից էր վալլէ-
թին վաճառականութէր, որոնք դատա-
տանը վճռով պարտաւորեց որ վճարեն:
Թէ որ ձիզվիթին կրօնքը աս պարտքս վճա-
րէր՝ կըգոցվէր բանը, բայց չվճարելովը
լուռ կենալովը՝ այնչափ դէշի գնաց ետև
ետև դատաստանական վճիռմունքը՝ որ Ֆր-
րանսային Թագաւորը ԺԷ լուիզ՝ բառլա-
մէնդին յանձնեց, որպէս զի ամմէն բանը
հասկընան: Աս վճիռմունք ըլլալէն ետև՝
բառլամէնդը բոլոր ձիզվիթին կրօնքը պար-
տաւորեց, որ ինչ վնաս եղաւ ան երկու
բաց ելլող վաճառականներուն՝ ամմէննալ
վճարէ, նաև բօլիցաները որ չէին վճար-

ված՝ իրենց շահովը վճարէ. աս բանս ՚ի գործ դնելու համար՝ քանի ապրանք ու կալուած ունէին Ճիզվիթները Փրանսայի մէջ, ամմէննալ ծախու հանել վճռեց: Ու 'որովհետեւ ան ատենը Փրանսային շատ մեծերը առիթ կըփնտռէին ամմէն եկեղեցականքը, մանաւանդ Ճիզվիթները ոչնչացընել, աս բանս աղէկ առիթ (փռսանտ) սեպելով իրենց ուզածը առաջ տանելու, սկսան բանը ալ աւելի բռնկցընել: Վճիռ մը ելավ Թագաւորական, որ Փրանսայի մէջ եղող Ճիզվիթները ամենեւին չխառնըվին առուտուրի մէջ, Ճիզվիթին կրօնքնալ իր սահմանադրութիւնը շուտով յանձնէ թաւլամէնդին որպէս զի քննէ, մանաւանդ ան որ 1757 տպված էր բռակա, վասն զի դատաստանի մէջ ան էր որ փաստաբանները վկայութի կըկանչէին. ուստի ձան հանեց թաւլամէնդը՝ թէ Ճիզվիթները 'ի սկզբանէ հետէ քանի որ ելերեն՝ ետեւէ ետեւ իրենց ուզերեն քաշել թէ եկեղեցական եւ թէ քաղաքական իշխանութիւը:

Նանկով մէկ վաճառականութեան վէճին առջի թերանը դեղ չիդնելով՝ բանը գնաց ինչվան կրօնքին վրայ վիճմունք բացաւ. Սկսան Ճիզվիթներուն գիրքերնալ քննել, որոնց մէկ գլխաւոր գիրքնալ եղավ պէլլարմինոսին շինած քրիստոնէական խրատը. ետքը 33 գրեանք զանազան Ճիզվիթներու շինված՝ դահճի ձեռքով հրապարակաւ երեցին իբր ապստամբեցուցիչ գրեանք. սկսան նաեւ Ճիզվիթին ընդհանուր մեծա

ւորին իշխանութիւնը յանցանքի տեղ սե-պել։

## ՃԻԶՎԻԹՆԵՐՈՒՆ ՆՈՐԷՆ ՎԵՐՋՆԱԼԸ ՖՐԱՆՍԱՅԻ ՄԷՋ.
## 1763։

Թագաւորը մինչդ որ ամէն ժողովուրդն-ալ՝ կիմանային որ պառլամէնդը Ճիզվիթի դէմ հակառակութի ունենալէն աս բաներս կընէր. առաջ օխտը մարդ դրերէր յա-տուկ իր խորհրդովը՝ որ Ճիզվիթին բանե-րը քննեն, հիմաալ 1761. Նոյեմբ. 29. վճիռ հանեց որ՝ Ֆրանսայի եկեղեցականքը քննեն աս չորս բանս, ու իրեն ճիշդ տեղե-կութի տան. Ա. Ճիզվիթներուն շահաւոր կամ վնասակար ըլլալնուն համար թագա-ւորութե. Բ. Ճիզվիթներուն վարդապե-տութեը վրայ. Գ. իրենց ըրածնին արդեօք դէմ էր, վնաս մը կըբերէր եպիսկոպոսնե-րուն իրաւանցը. Դ. Ճիզվիթներուն գըլ-խաւոր մեծաւորին իշխանութեը վրայ։ Եկե-ղեցականք 6 արքեպիսկոպոս և 6 եպիսկո-պոս դրին աս բանիս համար, ասոնք դեկ-տեմբ. 10 աղէկ ջատագովութի գրեցին Ճիզ-վիթներուն համար ամէն բանի վրայօք, որ 1762ին սկիզբները ներկայացուցին։ Բայց Ճիզվիթները ամէն տեղ իրենց թըշ-նամի ունէին, քարտինալ Շուազէօլը քա-նի մը եպիսկոպոսով աս ջատագովութեա դէմ ելան. պառլամէնդը ասոր մտիկ դրաւ և ոչ ջատագովութեը. աշխարհականներուն

օխտը հոգիի ժողովման որ Թագաւորը դրեր էր՝ անոնքաւ Թուղթ մը հանեցին որ Ճիզվիթներուն դէմ կըկտրէր, ան Թուղթը բառլամէնդին տըվին, բայց բառլամէնդը բանի մը տեղ չիսեպեց անիկայ. վերջապէս 1762. օգոստ. 6. արգելեց որ՝ մէկ աշխարհական Փրանսաց մը Ճիզվիթին կարգը չմտնայ, անոնց հագուստը չհագնի: Ամէն Ճիզվիթներուն արգելեց պատժի տակ ձգելով՝ որ վարպետութիւն չընեն, ոչ եկեղեցական և ոչ արտաքին գիտութիւն չսորվեցընեն: Ամէն ծնողքներուն ապսպրեց որ՝ իրենց զաւկըները որ Ճիզվիթներուն դպրատուններըը կերթային տըվելու՝ վերցընեն. Փրանսայէնալ դուրս չխրկեն Ճիզվիթներուն քով. ով որ խրկէ՝ պաշտօնի վրայ չիկրնայ ըլլալ, ատանկալ մէկը չիգանըվի Ճիզվիթներուն եղբայրութեան կամ հոգևոր կրթութեանը մէջ մտնալ:

Հոս պէտք է գիտնալ որ՝ հին ատենը երբոր Ճիզվիթները Փրանսա մտան, 1594ին դուրս հանեցին, բայց 10 տարիէն ետևնորէն մտան, բառլամէնդը չէր ուզեր ասոնք ընդունելու, աս պատճառներս բերելով որ՝ Ճիզվիթները ամէն արքունեացը մէջ իրենց մտերիմ բարեկամներ ունին, ամէն արքունեացը մէջ իրենք խոստովանահայր ըլլալով տիրերեն անոնց վրայ, երբեմն լրտեսութիւն (չաշուտութիւն) կընեն կըսէին մէկ արքունիքէն մէկալ արքունիքը, մէջերնէն ոմանքալ վաճառականութիւն կընեն: Ան ատենվան Փրանսային Թագաւո-

րը Դ. Հենրիկոս՝ մտիկ չըդնելով անոնց, մէկ պատուաւոր հրամանագրով մը ընդունեց Ճիզվիթները. բայց որովհետև ան ատենը անհոգ ըլլալով՝ բաւլամէնդներուն քիւթիւկը չէին անցուցած ան հրամանագիրը, անոր համար հիմակվան բաւլամէնդները կըսեպէին որ՝ իշխանութ՟ի ունին Հենրիկոսին հրամանագրին մտիկ չըդնել, Ճիզվիթները դուրս հանել։

Մինչև իցէ 1763 [1] Նոյեմբ. մէջ Թագաւորական վճիռ ելաւ Ճիզվիթները Փրանսայէն վերցընելու համար, հրամայելով մէյմը՝ որ ամմէն Ճիզվիթ ութը օրվան մէջ պարպեն ամմէն վանք, դպրատուն, նորընծայարան, օթարան, և ինչ տեղվանք որ ունին, դուրս ելլան, զատ զատ երթան ուր որ ուզեն։ Երկրորդ՝ ասկէց ետքը Թագաւորին՝ դատաւորներուն՝ ու եպիսկոպոսներուն հնազանդութ՟ի կառավարվին, ոչ երբէք ընկերութ՟ի մէկ տեղ նստին, չիպահեն Ճիզվիթին սահմանադրութ՟իը, հագուստը, չիթղթակցին Փրանսայէն դուրս եղած մեծաւորներուն հետ, կամ մինչև իցէ Ճիզվիթի մը հետ, չուխտեն, ընկերութ՟ե մէջ չիմտնան։ Երրորդ՝ ան Ճիզվիթները որ 43 տարին անցած են՝ մէյմէկ թոշակ (էօլէֆէ) առնեն ինչվան իրենց մահը. իսկ մէկալ Ճիզվիթները իրենց տները երթան, և եկեղեցական պաշտօններու մէջ կարենան

(1) Ոմանք կըդնեն 1764, ոմանքալ 1762։

մտնալ, բայց առաջ երդում ընեն հաւատարիմ մնալու թագաւորին, և ուրիշ իշխանութիւն մը չճանչնալու ո՛չ աշխարհական և ո՛չ կրօնաւորական։

Բարլամէնդին հրամանագիրը Ճիզվիթները վերցընելու համար՝ խիստ երկան գրած էր իրեք բանի վրայօք։ Առջի մասը որչափ զրպարտութիւն, ամբաստանութիւն, վճիռներ որ եղերեն Ճիզվիթի դէմ զանազան տեղ 'ի սկզբանէ ինչվան ետքը՝ ամմէնը մէջ կըբերէ կըյիշէ. ասոնք տարիներ պէտք էր որ՝ Բարլամէնդը ժողվէր, բայց հայարաւոր յանսենեանք և ուրիշ թշնամիներ ինչ որ Ճիզվիթի դէմ շինած գրքերու մէջ կային, ժողվեցին տըվին. իսկ այնչափ վճիռներ որ Ճիզվիթներուն դէմ եղած էին, կամ չըյիշեր և կամ կեղվրայ մը կանցնի։ Երկրորդ մասին մէջը կըդատապարտէ Ճիզվիթին ամմէն կերպ վարդապետութիւնը մանաւանդ բարոյականը, ուր մանաւորաց վարդապետութիւնը կըջանայ բոլոր կրօնքին տալ, և անչափ մոլորութիւն կուտայ անոնց՝ որ ամմէն կարդացողը կիմանայ թէ թշնամութենէն կըխօսի, չէ թէ արդարութենէ շարժեալ, վասն զի անանկ կըցըցընէ որ՝ Ճիզվիթները ինչվան կռապաշտութիւն, գողութիւն, գինովութիւն, մարդասպանութիւն և այլն՝ կըսորվեցընեն եղեր։ Երրորդ մասը Ճիզվիթներուն սահմանադրութիւնը կըքննէ, անոր ամմէն բանը կըդատապարտէ։

Աշխարհ ամմէն զարմացան Փրանսային ասանկ խիստ երթալուն վրայ Ճիզվիթնե-

րուն դէմ, ուր աս դարուս սկիզբները՝ ԺԴ Լուիզին թագաւորութեան ատենը՝ այնչափ վարկում (իտիպար), այնչափ համարձակութիւն, ու ազատութիւն ունէին հոն ճիզվիթները, երբոր Լա Շէզ ու Դէլլիէ ճիզվիթները խոստովանահայր էին թագաւորին։ Բայց պատճառը աս էր որ՝ ճիզվիթները եկեղեցականաց մէջ իրենց շատ թշնամիներ ունէին, մոլինեանք և մանաւանդ յանսենեանք, ալ աւելի շատ թշնամի ունէին աշխարհականաց մէջ, վասն զի աս ԺԸ դարուս ետքերը երևան ելան որ՝ ան նոր աղանդ հաւնօղ բազմութիւնը Փրանսայի մէջ՝ որոնք կը քարոզէին չիճանչնալ ոչ թագաւորական և ոչ եկեղեցական իշխանութիւն, այլ ազատութեան անունով ինչ չարիք կուզեն ընեն, աս աղանդաւորները շատոնցմէ խորհուրդ կընեն եղեր որ՝ ինչվան ճիզվիթները աշխըրհէս չիվերցընեն, իրենց մտքին դրածը առաջ չիկրնան տանիլ. որովհետև ճիզվիթները չորս դին բռներեն կըսէին, թագաւորներուն՝ մեծերուն խոստովանահայր իրենք են եղեր, մենք ինչ որ իրենց սորվեցընենք, մէկալ դիհացէն ճիզվիթները կավրեն, դէմը կըսորվեցընեն, ասանկ ըլլալով՝ առաջ պէտք է կըսէին ճիզվիթին կրօնքը աշխըրհէս վերցընել։ Աս իրենց գաղտուկ խորհուրդը ետքը իրենց աղանդաւորաց թղթերուն մէջէն յայտնի ելաւ։

Ասոր համար մէկ երկու ճիզվիթին պակսութիւնը իբր բոլոր կարգին պակսութեան

հուչակեցին, և պզտիկ պակսութիւնը մեծ պակսութեն մը ձևացուցին աշխըրհիս առջին, անկեց եղաւ որ՝ ներհական խօսքեր ալ ելան : Փօրթուկալին մէջէն ճիզվիթները ջնջեցին ըսելով՝ թէ իրենց առջինները ինչ աղէկ ճամբայ որ գացին, հիմակվանները թողուցերէին . ու իրենց սահմանադրութիւնը ինչ որ կըպատուիրէր, հիմակվանները փոխերէին ան աղէկ կանոնները . իսկ հիմա Ֆրանսային մէջէն ճիզվիթները կըվերցընեն ըսելով՝ որ բուն ճիզվիթներուն հին սահմանադրութիւնը դէշ էր, եկեղեցական և թագաւորական օրինադրութեցը և իրաւանցը դէմ էր : Աս պատճառներուն ու ձեռնարկութիններուն վրայ ան ատենվան իմաստունները կըծիծաղէին, գիտնալով որ առաջ սկսեալ ինչվան հիմա միշտ ան մարդիկ որ՝ զէնք ունին, կարողութիւն ունին՝ ինչ կուզեն կընեն ան մարդկանց վրայ որ տկար են, ու միշտ իրաւամբք ըրածի պէս կըպարծին անոնց վրայ . իսկ հիմակվան իմաստունները ու ռամիկները պայծառ կըտեսնան պատճառները թէ ինչու այնչափ խստութի բանեցուցին ճիզվիթներուն վրայ :

Շատ գրուածներ ելան բառլամէնդին ըրածին դէմ, ու ճիզվիթներուն ջատագովութի . ցըցընելով որ՝ որչափ անվայել էր բառլամէնդին ասանկ գիր հանել . իսկ մէկ քահանայ մը խիստ ցաւելով տաքնալով ճիզվիթներուն ասանկ վերնալուն վրայ, փարէզի մէջ բերնէն անանկ խօսքեր փա-

խուց խոհեմութեան դէմ, որ ականջներն հատանելով կուզէր ըսած հրապարակին մէջ կախել տալին ։

## Ճիզվիթներուն պատճառով եղած գործուածները ։

1764 — 1767 ։

Ճիզվիթները Փրանսայի մէջ առնելիք տալիք ունէին . առնելիք ունեցողները մտածեցին որ Ճիզվիթին կարգը ինչ ապրանք որ ունի Փրանսայի մէջ, անոնցմէ առնեն իրենց առնելիքնին . բայց ան տեղացի դատաւորները դէմ ելան ըսելով, թէ Ճիզվիթները ձրի (պատէհավա) կըրար վերցընէին տղաքը, ուրիշ շատ աղէկութիւններ կընէին, հիմա ան բաները ընելու պէտք է ըստըկավ ընել, նոր տուրք չենք կրնար դնել, Ճիզվիթներուն ապրանքը աս բաներուս համար պիտոր բանեցընենք ։ Մարդս ասանկ է, երբոր իր ձեռքն է չիմանար, երբոր կըկորսնցընէ՝ ան ատենը կիմանայ մէկ մարդուն աղէկութիւնը ։ Թագաւորն ալ մէկ հրաման մը հանեց աս ապրանքներուն վրայ 27 գլուխ բան . հրամեց որ առնելիք ունեցողները իրենց մէկ գլխաւոր մը դնեն, որ անիկայ փօսի ընէ ։ Իսկ Ճիզվիթներուն մէկ մասը ապրուստ կրցան ունենալ, մէկ մասն ալ ան խեղճութեան հասան, որ մուրացկան եղան ։

Սուասոնի եպիսկոպոսն ալ մէկ Թուղթ մը

հանեց, մէջը Ճիզվիթ հեղինակներուն շատ նախադասութիւնները կըդատապարտէ, շատ գրքերու ալ երեց, բայց ասոնք անանկ բաներ էին՝ որ դեռ (տահա) եկեղեցին չի-դատապարտած չիներէին ան գրքերը, չէ-թէ միայն Ճիզվիթները, հապա նաև ու-րիշ կարգի ա͞ծաբանները, որ իբր կարծիք ան ատենը իրենց մէջը կըվիճաբանէին։ Հիմա թշնամիները անանկ կըհուշակէին՝ իբր թէ մինակ Ճիզվիթներն են որ ասանկ գրերէին, և իրենք հնարերէին ան կարծիք-ները, ան նախադասութիւնները, ինչպէս որ յատուկ է զրպարտողներուն. բայց մէկ Ճիզվիթ հեղինակ մը չիկայ որ՝ եկեղեցին դատապարտելէն ետև անանկ բան գրած ըլլայ։ Ինչևիցէ՝ հռոմայու Քննուե͞ ատեա-նը արգելեց ան վերոյիշեալ եպիսկոպոսին թուղթը. բառլամէնդը հռոմայու դէմ ելլով, անանկ բաներ զուրցեց բառլամէն-դին դատաստանը՝ որ կըհակառակի իշխա-նութե͞ հռոմայ աթոռոյն։

Իսկ փարէզին արքեպիսկոպոսը 1764. ա-ռաջ մէկ քննութի͞ մը հանեց ան դատաս-տանին վրայ՝ որ բառլամէնդը ըրաւ, ետքը մէկ եպիսկոպոսական թուղթ մը հանեց, որուն մէջը կըբացատրէ քանի͞ յանդգնու-թի͞ էր աշխարհական դատաստանի բառլա-մէնդին՝ դատել վար զարնել Ճիզվիթին սահմանադրութիւնը՝ որ հռոմայու աթոռէն ընդունուած էր, ոչնչացուցանել կրօնաւո-րական ուխտը՝ որ հռոմ սահմաներէր, նոյնպէս դատապարտել Ճիզվիթին վար-

դատապետութիւնը, աս լսելով ինքը կըջատա-գովէ թէ՛ սահմանադրութիւնը, և թէ ձիգ-վիլթները։ Ասանկ ջատագովութիւնը իրեն դէմ գրգռեց բառլամէնդը, որ շատ մեծ պատիժ կըմտածէր տալու արքեպիսկոպո-սին. Թագաւորը քիչ պատժով խալըցընե-լու համար՝ փարիզէն դուրս քշեց արքե-պիսկոպոսը 150 մղոնի չափ հեռու։

Աս արքեպիսկոպոսը առաքելական Ճգնա-ւոր մարդ ըլլալով աղէկ մարդիկներուն յանձնեց իր աթոռին կառավարութիւնը, իր ամէն եկամուտնալ աղքատաց բաժնել ապսպրեց, ինքնալ Նօռմանտիա գնաց, ուր մէկ սաստիկ խստակեաց Ճգնաւորներու վանք մը կայ Դռապբա կըսվի՝ հոն մտաւ. ատոնք միայն ընդեղէն (զահրէ), խաշած խոտ, ու արմատ կուտեն, վրան ամենեւին բան մը չխցանելով. խոտի վրայ կըպառկին, միշտ լռութիւն կըպահեն, անդադար կամ կաշխատին գետինը փորելով, կամ աղօթք կընեն, ատոնց պէս ինքնալ կեանք վարել սկսաւ, բայց հիվընտնալով մահուան դռու-ռը հասաւ։ Թագաւորը սիրելէն իր սե-տեան խրկեց, անանկով քօնֆըլանս տեղը բերել տըվավ. երբոր ըռընտցաւ՝ իր աթո-ռը բերաւ նստեցուց։

Թագաւորը աղէկ կիմանար որ բառլամէնդին ըրածը չափէն դուրս յանդգնութիւն է. բայց կըտեսնար որ՝ իրեն իշխանութեանը դէմ կըկենային, հուզէին ջնջացընել, երբոր իր իշխանութիւնը չէր կընար պաշտպա-նել աս նոր աղանդաւորներուն ձեռքէն,

եկեղեցւոյ իշխանութիւնը ինչպէս պաշտպանէր ։ Վերոյիշեալ արքեպիսկոպոսին նման ուրիշ շատ եպիսկոպոսներալ վարդապետներալ ջատագովեցին Ճիզվիթները, բայց կամ բանտը դրվեցան, և կամ քշվեցան ։ Հետևեալ տարին 1765, Փրանսայի եկեղեցականաց ժողովը եղաւ որ նորէն վճռեց Միածին կոնդակին համար՝ թէ հաւատոյ բանի մէջ Ունիճէնիդուս օրէնք եկեղեցւոյ ունէ, շատ գէշ գրքեր տպատարածեց՝ որ նորաղանդ անհաւատները Փրանսայի մէջ կրծաւալէին, ու եկեղեցական իշխանութեան իրաւունքը պաշտպանեց ։ Բառլամէնդը ասոր վրայ տաքնալով մերժեց վճռելով, բայց թագաւորեան բառլամէնդին վճիռները մերժեց ոչնչացուց. եկեղեցական ժողովքին թուղթ մը խրկեց խոստանալով որ եկեղեցական իշխանութիւնը ալ պաշտպանէ ։ Ուղղափառ եպիսկոպոսները ժողովին մէջը վճռեցին որ չհաղորդակցին հերձուածող եպիսկոպոսներուն հետ որ էին յանսենեանք, և ոչ ալ եպիսկոպոսներուն հետ՝ որ հետագայ ընդհանուր ժողովքին բողոքում ըրերէին ։ Հոկտեմբերի սկիզբը ժողովը արձակվեցաւ, խօսք դնելով որ գալ տարվան մայիսին մէջը նորէն ժողվին ։

Սրբազան պապն ալ շատ եպիսկոպոսներուն աղաչանքովը՝ որ զանազան տեղերէն աղաչեցին 1764. յունվ. 7. կոնդակ մը հանեց, որ Ապոսթոլիկում բառով կըսկըսի, անով կըհաստատէ ու կըջատագովէ Ճիզվիթնե-

րուն սահմանադրութիւնը և Ճիզվիթները. Իրեք թուղթալ գրեց զանազան եպիսկոպոսներու. մէջը կըգովէ ան եպիսկոպոսները՝ որ արդար դատաստանը պաշտպանել ուզերէին, ու կըյանդիմանէ վար կըզարնէ անոնք որ մէկ եղերէին անոնց հետ որ՝ անմեղները ու կրօնքը կըդատապարտէին: Աս խօսքերս որովհետև դատապարտել էր բառլամէնդներուն ըրածները (գոնէ անուղղակի) որ ըրին Ճիզվիթին կարգին դէմ, անոր համար կոնդակնալ ու իրեք թղթերնալ մերժեցին. Թագաւորին խիստ դէմ էին աս բաներս, բայց վախէն լուռ կըկենար:

Հիմա կարդալով աս դիպուածներս աղէկ կիմանաս՝ ինչպէս կամաց կամաց հիմն (թեմէլ) ձգեցին նոր ազանդաւորները կամ անհաւատները ան խռովութիւն որ աս դարուս եւքը յայտնի բռնկցուցին, որոնց միտքը միայն Ճիզվիթը վերցընել չէր, հապա ամմէն եկեղեցականքը, նաև թագաւորները ու օրէնքը, և այլն: Քարվալեօ կամ Բոմպալ փորթուկալին վեզիրնալ՝ որ եկեղեցականքը հալածողներուն գլխաւորը եղած էր՝ հասկընալով որ աս կոնդակս իրեն փորթուկալին տէրութեան դէմ էր, ջանաց՝ թագաւորէն թուղթ հանել տըրվալ որ ան կոնդակը ոչինչ հրատարակեց:

Աս տարվանս մէջ Փիլէմէնկի մէջ եղօղ յանսէնեանները ուզելով աւելի զօրանալ, մէկ գաւառական ժողով մը ըրին, ու ջանացին որ Փրանսա եղօղ յանսէնեանց հետ

միանան, բայց Փրանսայի Թագաւորը իմա-
նալով վճիռ մը հանեց որ՝ իրենց մտքի
դըրածը ոչնչացուց։

Իսկ 1767ին ատենները Փրանսայի մէջ սկսան մէկալ կրօնաւորներն ալ քշցընել, շատոնցմընէ կուզէին ամմէն կարգ վերցընել, որպէս զի իրենց ապրանքը առնեն, հիմա ժողով մը սահմանեցին աշխարհական ու եկեղեցական մարդիկներով, որպէս զի քննեն ամմէն կրօնաւորաց սահմանադրութիւը. որոնց առջի պատուէրքը աս եղաւ որ՝ ամմէն վանքերու մէջ տասը կրօնաւոր գտնըվին։ Ազին զինուորութենէ որ աս դարուս մէջը եւրոպացոց սիրտը մտնալ սկսերէր, կամաց կամաց ներսխրդինին բանելով կրքոնադատէր կրօնաւորներուն վանական կեանքը վերցընել, որ անոնց տեղը նոր վանականներ դնեն աշխարհական զինուորներու. կրօնաւորներուն ըրածը իրենց պարապ բան կերեւար, իսկ զինուորներուն ըրածը՝ շատվորութը՝ խիստ հարկաւոր. Բայց աս բանիս վնասներուն վրայ՝ եւրոպացոց օրէնսդէտներուն ողբը պէտք է կարդալ որ ինչպէս կուլան կողբան.

### Սպանիային ըրած ժողովրդին հետ հաշտութիւնը, և նոր աղմուկը.

### 1766:

Սպանիային ու Մադրիդին մէջը շատոնցմը-նէ թշնամութիւն կար, անկէց շատ ղարնը-վըլըներ շատ արիւնհեղութիւն կըլլար, ատ տարի հաշտութիւն ըրին իրարու հետ. մադ-րըդնները խիստ մեծարելով ընդունեցան սպանիային գեսպանները, իրենց թագա-ւորն ալ անոնց առջին գնաց ինչվան մէքի-նեզ քաղաքը, ամմէն սպանիայի ու նաբօ-լիի գերիները ետ տվին, նաանկ մեծարանք-ով սպանիացիք ըրին մադրըդի գեսպա-նին՝ որ ան տարի մատրիտ եկավ:

Ասկից ետքը ծաղկազարդին օրը մէկ աղ-մուկ (վէլվէլէ) մը եղավ մատրիտի մէջ. բազմութիւն մէկտեղված եկան հասան ինչ-վան թագաւորին պալատին (սէրային) առջին, շատ հայհոյութիւններ գէշ խօսքեր խօսելով, չարսուի մէջ խանութներու մէջ վնաս տալով. նաանկ աղմուկ եղավ ետեւէ ետեւ նաեւ արակօնիա ու քաղալօնիա գա-ւառներու մէջ: Կարօլոս սպանիային թա-գաւորը արանքվէզ տեղէն՝ (ուր շատ կեր-թար որսորդութեան համար) եկաւ՝ անու-շութ̃ խօսելով ժողովուրդին հետ՝ խաղաղ-ցուց:

Աս խռովութեան չիտակ պատճառը չիմաց-վեցաւ, մանաւանդ աս էր զարմանալին որ՝

ան բազմութեան ետեւէն անճանաչ մարդիկ-
ներ կուգային, ինչ միսս որ ասոնք կու-
տային խանութներուն մէջը, ամմէնն ալ
ըստակ տալով կը վճարէին ։ Հասարակաց
կարծիքը աս եղաւ որ՝ գրիգոր մարքէզ
ըսքվիլլաչեան կար՝ որ հասարակ մարդ մը
ըլլալով՝ Թագաւորը հազարապետ էր ըրեր
իր եկամուտներուն վրայ՝ Նաբօլիէն հետը
բերելով, ուր շատ կողոպտեր էր ժողո-
վուրդը. ասիկայ սպանիայի մէջալ անանկ
ուզեց ընել, բայց սպանիացիք չիկրնալով
դիմանալ՝ աս աղմուկս հանեցին ։ Ոմանք
սաելով աս բանս, ըսին որ՝ ուրիշ մենծերը
նախանձելով անոր վրայ, ռամիկները գրգ-
ռեցին ան աղմուկը հանելու. անոր համար
Թագաւորն ալ անիկայ հեռըցուց մատրի-
տէն՝ վենետիկ դեսպան խրկելով. մատրիտի
մէջ շատ դրուեցիներ ժողվըվերէին պարապ
մարդիկներ աշխարհական և եկեղեցա-
կան, անոնցալ դուրս ելլալու վճիռ մը
հանեց ։

Բայց աւելի խորունկ պատճառ ունի գաղ-
տուկ, որ ետքը դուրս ելաւ. շատոնցմընէ
կուզէին ճիզվիթին կրօնքը վերցընել տա-
լու սպանիայի մէջէն, առանտա կոմսը որ
սպանիայի վեզիրն էր՝ խիստ ներքին բա-
րեկամ ըլլալով քօնտոռսէին հետ՝ միշտ
կրպըրտըռտէր աս բանս առաջ տանելու. վե-
րջիշեալ ըսքվիլլաչը աս բանիս մէջ իրենց
հետ համախոհ ըլլալ չուզեց. կարոլոս Թա-
գաւորն ալ կըտեսնային որ բարեպաշտ մարդ-
էր, չէին կրնար իրենց դին քաշել, բայց

եթէ զրպարտութին ու վախ ձգելով Ճիզվիթներուն վրայ, իբրև ապստամբ ու ամբարիշտ ցուցնելով իր աչքին, անանկ հասկըցնելով որ կը ջանան թագաւորը մեռցընելու, անոր համար աս աղմուկը հանել տուին, անանկ որ՝ ինքը կարողացաւ կասկած երթալով ասոնց մտքին վրայ, ան աղմուկին ատենը զուրցեց պաշտպանիչերի Ճիզվիթին՝ որ արքունեացը խոստովանահայր էր. Ազգը պիտոր ըսեն որ՝ դուք Ճիզվիթներդ էք աս խռովութիւնս հանել տըւող:

## Եղիսաբէթին Թագուհիին Մահը.

1766:

Յուլիսի 5. մեռաւ Եղիսաբեթ Փառնէզեան՝ գրեթէ յանկարծակի մահուամբ. որ վերոյիշեալ Գ. կարոլոսի սպանիայի Թագաւորին մայրն էր. ասիկայ եղաւ ետքի մնացածը Փառնէզեան ցեղին, որ Գ. պօղոս քահանայապետ նոյն տնէն ըլլալով՝ ասիկայ բառմայի ու բիաչէնցայի Թախտը դըրեբեր. 1714, կարգըրվեր էր Ե. փիլիպպոսի պօրպօնեան սպանիայի Թագաւորին հետ. բնութը ըլլալով արթուն, Ճարտարամիտ, աչքը բաց, քանքարաւոր, վեհանձն, բայց և փառասէր տիկին, իշխերէր իր էրկանը սրտին վրայ. ան ատենը սպանիան թուլցած ու ցած տէրութի մը եղերէր, բայց աս Թագուհիս քառտինալ ալպէռօնիին ու

բագիյնօլին (1) սկզբունքը ու խորամները պահելով 32 տարի անանկ խելքով կառավարեց սպանիան որ՝ մեծ տէրութեանց կարգը անցուց։ Մէկ եղական անսուանի կնիկ մը եղաւ, որ իդալիացին բարակութիւն ու ճարպիկութիւն ունէր կըսեն, Ֆրանսայի աշխոյժ ոգեւոր բնութիւն, Անկլիլիզի քաջասրտութիւն համարձակութիւն, ու հին սպարտիական դաժանութիւն. իր մտքին դրածը ընելու համար միշտ կամաց կամաց առաջ կերթար, մէկ ճար մը չիկար որ՝ անիկայ իր մտածածէն ետ դարձընէ. իր օրը եղածներէն մէկ դիպուած մը պատմենք, անով հասկընաս։ Նօյեմբեր 1734. մատրիտին թագաւորական դարպասը (ռէքայը) երեցաւ, ու փիլիպպոս սպանիային թագաւորը կանչեց եուվարա ըսւած սիճիլիացի երեւելի ճարտարապետը սուռտէնեայի թագաւորին քովէն, ուր շատոնցմնէ կըբանէր ան ատենը, հրամեց որ մէկ կաղպար (րէսիմ, մօտէլլօ) մը շինէ։ Ու բանս եղիսաբեթ թագուհին դէմ եկաւ, վասն զի ան ատէնը միտքը դըրեր էր ծեծ բանալ տալ, որ զի կարողոս իր զաւակը իդալիայի մէջ մէկ տեղ մը թագաւոր նստեցընէ, ան շէնքին խարճը մեծ արգելք կըլլար աս ծեծը բանալու, բայց եղիսաբեթ խորագէտ ըլլալով խափանելուն տեղը կըյօրդորէր եուվարան՝ որ շուտով լմնցընէ։

---

(1) Ասոնք երկուքնալ ետեւէ ետեւ սպանիայի վէզէրը եղան։

Երբոր միամիտ Ճարտարապետը որ բանէն տեղեակ չէր արտորալով լմնցուց, եղիսա-բեթը բազդեկյօ վէզիրը Թագաւորին խրկեց ըսելու՝ որ եուվարան մէկ կաղապար մը հա-նէրէր պալատի (սէրայի) համար՝ խիստ նեղ ու պզտիկ, անվայել օսմանեայի Թա-գաւորին, անոր համար ապսպրեցէք որ մէկ մեծաշէն պալատի մը օրինակ հանէ, ինչպէս որ կըվայլէ, փիլիպպոս Թագա-ւորինայ, որովհետև ինչ կըսէր եղիսաբեթ Թագուհին, մինչև կըղնէր, անանկ ապս-պրեց։

Եուվարան միամիտը մէկ գիրացէն ուրա-խացաւ աս լսելով, որովհետև անանկ շէնք մը պիտոր չլինէր՝ որ իր ամմէն վարպետու-թիւնը, Թագաւորինայ մեծութիւնը՝ հարստու-թիւնը պիտոր ցըցընէր։ Երեք տարի վրան աշխատելով մէկ կաղապար մը հանեց, որուն փառաւորութիւնը ամմէն Թագաւորին մար-դիկները հաւնեցան. բայց երբոր խարճը լսեցին իրմէ՝ թէ 500 միլիոն ռիալէ չէր օգ-տէր, եղիսաբեթ Թագուհին ու իր վէզի-րը ըսին, Թագաւորին խազնան չըկրնար աս խարճիս տակը մտնալ, անոր համար ապս-պրեցին որ մէկ երրորդ կաղապար մը շինէ ոչ առաջինին պէս պզտիկ, ոչ երկրորդին պէս մեծ։ Խեղճ եուվարան Ճղակտոր մնաց հոն, բայց դէմ կենալ չէր ըլլար, երրորդը սկսաւ շինել, ան ատենը ծեծ բացվեցաւ, որուն համար շատոնցմընէ պատրաստութիւն կըտեսնային, շէնքը մոռցըվեցաւ, եուվա-րան հազիւ կըրնար շէնքի վրայ խօրաթա

բանալ (1), և ամէն անդամուն որ՝ իրեն շինած կաղապարներէն մէկը կըցըցնէր Թագաւորին, բաղկյնօ վէզիրը անչափ դժուարութիւններ ընդդիմութիւններ կըցըցնէր, որ եռանդուն երևելի Ճարտարապետը մեռաւ հնհընուքէն, իսկ բաղկյնօն Թագաւորին կամքը առած տարաւ:

## Ճիզվիթները օսմանեայէ երկրէն դուրս հանելը.

## 1767:

Վերոյիշեալ Եղիսաբեթ Սպանիայի Թագուհին ընդհանրապէս պաշտպան էր Ճիզվիթներու, մանաւանդ որ՝ բաղկյնօն որ Ճիզվիթներուն կարգէն դուրս էր ելած, իրեն միշտ ըստակ կըգտնար խարձելու. բայց երբոր Եղիսաբեթ մեռաւ՝ Առանտա կոմը Սպանիայի վէզիրը համախոհ էր Քարվալհօ Բօմպալ մարքէզին հետ՝ որ Փորթուկալի վէզիրն էր, նաև Շուազէօլ դուքսին հետ որ Ֆրանսայի վէզիրն էր, և Թանուչչի մարքէզին հետ՝ որ Նափոլիի վէզիրն էր, անոնք ամենքն ալ մահուչափ Թշնամի ըլլալով Ճիզվիթներուն դէմ, Առանտան ալ գէշ աչքով սկսաւ նայիլ Ճիզվիթներուն վրայ, անոնց հետ մէկ եղաւ:

Սպանիայի Թագաւորը Գ. Կարօլոս երբոր

---

(1) Կիւլէ կիւշ էթմիրէմէզ, եօգ էէրէ պիւլպիւլ ինլէր,
վերջինը մինչև վեֆայը-քեմ․ օգուր, քեմ․ ունիւլեր:

Նաբօլլի Թագաւոր էր՝ աւելի Ճիզվիթնե-
րուն դէմ էր, մէկ մըն ալ չէր գտած առանց
պատճառի, բայց չի գիտցըվիր ինչ պատճա-
ռով 1767. փետրվ. 17. վճիռ մը խրկեց Ա-
ռանտաս կոմսին՝ ապսպրելով որ ամէն Ճիզ-
վիթները դուրս ելլան Սպանիայի երկրէն
որչափ որ կան վերի և վարի աշխարհ, և
իրենց ապրանքը՝ արքունիքը (միրիին) առ-
նըվի: Արանտաս կոմսը անանկ. կարգով
խելքով աս հրամանս 'ի գործ դրաւ որ՝
մէկ ձայն մը չելավ, աշխարհ ամէն զար-
մացաւ. ամէն տեղ Ասիա՝ Ափրիկէ՝ Ամե-
րիկա՝ մէկ օրվան մէջ գիր խրկեց, ապսը-
պրելով որ՝ գիրը չի բացվի մինչվան ապրիլին
առջի օրը, մարդու մըն ալ չըլսվի ինչվան ա-
տենը գայ, բացվելէն ետև մէջը ինչ որ
գրած է, 'ի գործ դրէք:

Ամէնէն առաջ մարտուն մէջ մարտի 31.
գիշեր ատեն վանքերը կոխելով, դռներուն
պահապան դնելով, իրենց սեղանատունը
ժողվեցին կրօնաւորները, հոն կարդացին
թագաւորական վճիռը իրենց քշվելուն հա-
մար, ետքը. տաս տաս հոգի իրենց խցերը
տարին պահապաններով որ իրենց պէտք
եղած լաթերը ու ժամագիրքը առնեն
միայն, ուրիշ գիրք կամ թուղթ ամենևին
արգելեցին առնելու. ըստակ թողուցին առ-
նելու՝ բայց գիր անցընելով որչափ ըստակ
որ կառնէին ամէն մէկը: Ամէն դռները
գոցելէն ետև՝ չորս չորս հոգի առապայ
դրին, ամէն մէկ առապային երկու ձիա-
ւոր զինւորներ պահապան, անանկ քաղա-

Ճենա ընծեցուցին, հոն նաւի մէջ դնելով ասոնք չիվիդա վէքքեա խրկեցին, որ հռոմայու նաւահանգիստն է։ Բայց թէ՛ ցամաքի և թէ ծովու ճամբուն մէջ թագաւորին աղօտարելովը նայեցան որ իրենց ամմէն ախտանաւորութիւնին հոգացվին, մէկ թագաւոր մը առանկ հանգիստ ճամփայ չիտրաւ Ճիզվիթներըը։ Աս կարգով ըրին գրեթէ նաև ուրիշ ամէն տեղ։ Ճիզվիթներուն դիմացէն մէկ ընդդիմութիւն մը չելլալ, ամէննալ թագաւորին հրամանքին հնազանդեցան. ան ատենը յայտնի իմացան թշնամիներուն ստութիւը, որ կըսէին, կաղէթաներուն մէջը կըգրէին, թէ Ճիզվիթները զատ թագաւորութիւն մը ունին ամերիկա բարակվայի մէջ, գլուխ կըքաշեն, զատ տէրութիւն մը կընեն։

Ապրիլ 2. մատրիտին ամէն տեղը գրած թղթեր դնել տրվավ թագաւորը, որուն մէջը կըսէր թէ „Ծանր պատճառներ „ունէի Ճիզվիթները դուրս հանելու՝ որ „միայն ինծի յայտնի է՝ իրենց ապրանք„ները առնելով. ամէն Ճիզվիթ քահա„նայներու 100 ղուռուշ տարին կապվի ինչ„վան 'ի մահ (իրենց ղուռուշով,) իսկ եղ„բայրներուն 60 ղուռուշ, վեց ամսէ վեց ա„միս վճարելով իրենց վանքերուն ապրանք„ներէն, միայն օտարական եղօրներուն աս „եկամուտս չիտրվի։ Ամէննալ հռոմայու „երկիրը խրկեցի, թէ որ մէկը ինքիր կամ „քովը անկից ելլայ՝ կըկորսնցընէ ան եկա„մուտը, առանկալ կըկորսնցընեն որոնք

„ որ իմ ըրածիս դէմ բան մը գրէն ։ Այսու-
„ գտելունք որ՝ ոչ երբեք մէկ Ճիզվիթ մը
„ մտնայ մեր երկիրները, թէեւ իր կացու-
„ թիւը փոխած ըլլայ, ուրիշ կրօնք մտած
„ ըլլայ, կամ աշխարհական եղած ըլլայ ։
„ Մէկ մարդ մը իմ երկրէս կարօղ չըլլայ
„ Ճիզվիթի եղբայրութեան թուղթ մը ունե-
„ նալու, եւ ով որ ունի՝ բերէ յանձնէ ։
„ Ամէն մարդ լաւ կենայ, մէկ բան մը
„ չիգրէ ոչ վար զարնելու՝ եւ ոչ ջատա-
„ գովելու աս ըրածս, թէ չէ՝ պատժի տակ
„ կիյնայ ։

Հռոմայ շուտ մը թուղթ գրեց նոյն Թագա-
ւորը Գ. կարօլոս ըսելով. „ Թագաւորական
„ պարտքս ըլլալով իմ երկրիս խաղաղու-
„ թիւը՝ Թախտիս պատիւը՝ ժողովրդեան
„ ներքին հանգստութիւնը հոգալու համար՝
„ բռնադատուեցայ շուտ մը Ճիզվիթները
„ դուրս հանել իմ երկրէս, ձեր եկեղեցա-
„ կան երկիրը խրկել, որ ձեր իմաստուն
„ կառավարութեան տակը մնան առանց մէկ
„ ծանրութիւն մը տալու ձեզի խարճի դի-
„ ցէն, բաւական եկամուտ իրենց կապե-
„ լով ։ Ես բանս օրովհետեւ աղէկ մտածե-
„ լէն ետեւ ըրի, հռոմ ինծի իրաւունք պի-
„ տոր տայ“ ։ Հռոմայու դիւանէն քառտի-
նալ դօռռիճիանին որ դիւանագպիր էր,
խիստ յաւ ցըցընելով աս բանիս վրայ,
կըխնդրէր որ յայտնի թող գրէ սպանիան;
թէ ինչ էր Ճիզվիթներուն յանցանքը, որով-
հետեւ ընդդէմ օրինաց ազգաց էր բռնա-
դատել ուրիշ Թագաւոր մը՝ որ անչափ

քշված օտարականներ իր երկիրը ընդունի։

Սպանիան միշտ աս կըսէր որ՝ որբազան պապը ըլլալով գլուխ եկեղեցւոյ՝ պէտք էր որ քշված Ճիզվիթները իրեն իր որդիքները ընդունի, մանաւանդ որ դեռ մէկ նոր կոնդակ մը խրկեր էր 1765, ուր Ճիզվիթները արդիւնաւոր եկեղեցւոյ անուանելով շատ մեծ շնորհքներ ու արտօնութիւններ կուտար անոնց, անոր համար ան կոնդակը դուրս հանել չխտրվին ոչ Փրանսան, և ոչ փորթուկալը, ինչպ̅ որ վերը պատմեցինք։ Սղեմէս ժգ̅ ալ երկան ու ցաւագին թուղթ մը գրեց սպանիայի թագաւորին գ̅ կարոլոսի 1767. մայիսի 16. թէ ինչպ̅ դուռնալ աս բանին մէջ մտար, իմ ծերութես ցաւի մէջ խօթեցիր, առանց քննութեն պատժեցիր Ճիզվիթները, տանեն չխտրվիր որ զիրենք արդարացընեն, ինչպէս որ օրէնքը ամմէնուն կուտայ, հիմա անոնց քարոզչութեն տեղվանքը քանի հոգիներ պիտոր կորսըվին, ետքը կըյորդորէ որ նորէն ընդունի Ճիզվիթները։ Բայց սպանիայի թագաւորը նորէն պատասխանեց յունիսի 2. կարճ լակոնացի ոճով գրելով, թէ ես անանկ պատճառներ ունէի, որ այ̅ դատաստանին առջին կընամ համար տալ, իսկ Ճիզվիթներուն պակսած տեղվանքները ուրիշ քարոզիչներ խրկեցի։

Երբոր Ճիզվիթները սպանիայէն դուրս ելան, առանտա կոմսը ամմէն իրենց գրուածները՝ տէֆթէրները քննել սկսաւ․ ան ա-

տոնը Քամբօմանէս անուն մէկ իրաւագէտ մը կար, ասիկայ գիրք մը շինեցեր՝ որ շատ անուն հանեց, շատ լեզու թարգմանուեցաւ, աս գրքով ուզեց ցուցընել թէ ամէն կրօնաւորները՝ բայց աւելի Յիզվիթները, իրենց քաշելու հետ են եղեր ընդդէմ տպանխայի օրինացը: Աս մարդուս վրայ մեծ վարկում ունենալով թէ առատասան և թէ թագաւորը, իրեն յանձնեցին հիմա որ քննէ Յիզվիթներուն տէֆթէրները՝ թղթերը՝ ու գրքերը. բայց որչափ որ քննեց՝ բան մը չիգտաւ ան զրպարտութիւններէն՝ որ Յիզվիթներուն վրայ կըձգէին, հապա պատճառ ան էր որ՝ ամէն մարդու աչքը կրօնաւորաց հարստութեան վրայ ձգուեր էր, թէ ինչու կրօնաւորները այսչափ բան պիտոր ունենան, իսկ անոնց ըրած ողորմութիւնը արդիւնքը ոչինչ երեւցան աչվընին, ասոր ներհակ զինուորները շատցընելը խիստ հարկաւոր երեւցաւ: Աս բաներս ալ աւելի կըբռնկցընէին խօսելով գրելով անհաւատներուն ֆռամասօններուն ժողովները՝ որոնք դըրեր էին որ ուզածնին առաջ տանելու համար առջի հարկաւոր բանը կրօնաւորները վերցընելն է:

Ասոնք ետեւէ ետեւ լսելով աս պատմագրութեան մէջ, աղէկ կիմանաս թէ՝ ինչպէս շատոնցմէնէ գաղտուկ սկսեր են եղեր կամաց կամաց հիմն (թեմէլ) ձգել ան խռովութեան անհաւատութեան, և սուտ ազատութեան, որ աս դարուս եղքերը այսչափ ըլըլկոց հանեց, որոնք ետքը պիտոր պատմենք: Ասն

զի այն ատենը իրաւ է չիմացվեցաւ պատ-
ճառը, մէկ խորունկ դաղտնիք (սըռ) մը
եղաւ Ճիզվիթներուն՝ ասանկ սպանիայէն
դուրս քշվելուն վրայ. որովհետեւ սպա-
նիայի մէջ ոչ յանսանանք կային, եւ ոչ
նորադարձող անհաւատներ եկեղեցիոյ դէմ,
ինչպէս որ կային փորթուկալին ու Ֆրան-
սային մէջ. Թող տուր որ դ կարօղաս սպա-
նիային թագաւորը անանկ խղճմտանքաւոր
ու բարեպաշտ էր, որ եկեղեցական բանե-
րու մէջ միշտ կանոնով կըշարժէր, Ճիզ-
վիթներուն ալ անանկ յարգեալ էր իրեն
պապերուն պէս, անանկ կըսէրէր՝ մանա-
ւանդ նաբօլի եղած ատենը՝ որ երբոր նա-
բօլիէն ելաւ՝ սպանիա գալու եղաւ, խոս-
տացաւ Ճիզվիթներուն զիրենք պաշտպա-
նելու, գիտնալով իրենց օգնութիւնը՝ ու
թշնամիներուն ըրածները։ Ասանկ թագա-
ւորը ինչպէս եղաւ որ այսչափ խստութէ
իր ամմէն երկրէն քշէ, ու ետքը ինքը ետեւէ
իյնայ սրբազան պապին որ՝ բոլոր Ճիզվի-
թներ կարգնալ աշխըրքէս ջնջէ, ամմէնմալ
կըղարմանային։

Բայց ետքը յայտնի իմացվեցաւ որ այն
Ֆռամմազօններուն դաղտուկ դրդութէն էր՝
որ սպանիային մենծերուն սիրտնալ դար-
ձուց. անոնք հնարքներ, սլորակներ, նենգու-
թիւններ բանեցուցին, որոնց մէկ քանի
ըրածնին ասոնք են։ Նախ՝ ջանք ըրին՝
թագաւորին խոստովանահայրը փոխեցին,
անանկ մէկը դրին որ Ճիզվիթներուն դէմ
էր, ատոր ձեռքով հաւատացընել կուտային

Թագաւորին՝ ինչ որ իրենք սուտ զրպարտու-թիւներ կը հնարէին ճիզվիթներուն վրայ, ու մէկ խորամանկ կերպով մը կը գունաւո-րէին։ Նոյնը սուտ թղթեր հանեցին ճիզ-վիթներուն ընդհանուր մեծաւորին բերնէն գրուած, ուր Թագաւորին անձին դէմ բա-ներ էր գրած, ու ժողովուրդը ապստամբե-ցընել կը յորդորէր. աս թուղթերս ուրիշ պահարանի մէջ առնելով մէկ անմեղ միա-միտ ճիզվիթի մը յանձնեցին, որ տանի տե-ղը հասցընէ, ան միամիտ ճիզվիթն ալ չի-գիտնալով առաւ իր սնտուկը դրաւ, եր-բոր ճամփայ ելաւ Ո'եռօնա տեղը հասաւ, ճիզվիթը բռնեցին, թղթերուն հետ մէկ տեղ Թագաւորին առջին հանեցին, ական-նատես վկայներով ցըցուցին որ ան ճիզվի-թին սնտուկէն ելաւ։

Սանկով միշտ Թագաւորին ականջը կը-լեցընէին որ՝ ինչ խռովութիւն կելլան սպա-նիայի ընդարձակ երկրին մէջ վերի աշ-խարհ ու վարի աշխարհ, ամմէնն ալ ճիզ-վիթներուն գործածելովն է։ Ինչպէս որ ըսին՝ փորթուգալին թագաւորը ուզեցին մեռ-ցընել, ասանկալ ամմէն թագաւորներուն կեանքը ճիզվիթները կուզեն վերցընել, մեռցընել։ Բայց ասանկալ գործելով չէր հաւատար թագաւորը, ետքը ան աղմուկը հանել տուին որ վերը պատմեցինք. ան օրը Թագաւորին ըսելէն մէկ ճիզվիթի մը՝ թէ վնասը ձեր վրայ պիտոր ձգեն աս աղ-մուկը՝ ճիզվիթները արթընցան, հասկը-ցան որ թշնամիները իրենց ետեւէն որս

գայթնէր կըքանեցընեն զիրենք կորմնցը-
նելու՝ սկսան սօթթըվիլ, բայց չար կենցա-
ղագէտ (բօլիդիքօ) մարդկանց մէջ, բարի
մարդ մը չիկրնար կենցաղագիտութիւն բա-
նեցընել։ Խոխաքվէզ անուն ձիզվիթը՝ որ
կուանադաի դուքս էր՝ ու խիստ առաքինի
որքանկաց կրօնաւոր, սպանիայի թագաւո-
րին առջինալ խիստ յարգ (իխտիզար)
ունէր ու համարձակութիւն, յանձն առաւ
թագաւորին հասկըցընել, որ ինչ վախի
մէջ էին ձիզվիթները իրենց թշնամինե-
րուն նենգագործութենցը համար, անկեց
թագաւորին աղաչել որ՝ յայտնի ընէ ի-
րենց ան սուտ ամբաստանութիւնները, ժա-
մանակ տայ իրենց որ արդարացընեն։ Ինչ-
վան հոս մտածածը աղէկ, բայց չիտակ թա-
գաւորին գնալու հասկըցընելուն տեղը՝
միամիտ ձիզվիթը առաջ առանտա կոմսին
գնաց, որ իր ազգականն էր (1), ու սպա-
նիային վէզիրը, անոր բացաւ իր ամէն
սիրտը խորհուրդը, չիգիտնալով որ ձիզվիթ-
ներուն գլխաւոր թշնամին ան էր։ Առան-
տան կեղծաւորը աս բանէս խիստ վախցաւ,
բայց իր վախը ամենեւին ցուցնելով՝ շուտ մը
սկսաւ քաջալերել իր ազգականը ըսելով։
„ Հայր իմ աս բանս ընելդ անօգուտ է
„ նաեւ վնասակար ձիզվիթներուն, ինչ կը-

(1) Ըսէ մուշքիլ տիր վէֆա ումմադ՝ ձիհանըն պի-
վէֆաարընտան,
քիշինին մուհնեպպի սադըգը՝ նէյ տիր ագրապա-
րընտան։

„ վախնաք, ռամկին խօսքերուն ականջ մի՛
„ տաք, Թագաւորը խիստ համարում ունի
„ Ճիզվիթներուն վրայ, հիմա անոնք ար-
„ դարացընել ուզելը՝ ամբաստանել կըլ-
„ լայ, դուն կը հաւատա՞ս որ՝ ձեր կարգին
„ դէմ բան մը ըլլար, ես ձեզի չէի իմացը-
„ նէր. չե՞ս տեսնար որ՝ քանի մը օր առաջ
„ նոր քարոզիչներ խրկեցինք Ճիզվիթնե-
„ րէն Ամերիկա, ի՞նչպէս կը հաւատաս որ
„ Թագաւորը մտածէ Ճիզվիթները ջնջե-
„ լու“ ։ Անկեղծ Ճիզվիթը խաբուեցաւ՝ իր
դիմացինին անկեղծ շիտակ կարծելով, ամենէն խօսքին հաւատալով, չիգնաց Թագաւորին զուրցելու ։

Թշնամիները Ճիզվիթներուն տաանկ հաւատացուցին, իսկ Թագաւորին ալ անանկ ըրին՝ որ վերջապէս հաւատացուցին իրեն Թէ՝ օր մը մէկ Ճիզվիթ մը կամ Ճիզվիթներէն դրդըւող մարդ մը յանկարծ քեզ պիտոր մեռցընէ, տաանկ անհանգիստ մնալով անոր վրայ Ճիզվիթին կարգը վերցընելու վճիռը ըրեր է ։ Ռամկային ըսածը իրաւ է որ՝ Ճիզվիթ քարոզիչներ խրկերէին Ամերիկա, բայց խաբելու համար խրկերէին, անոնց ետևէն հրաման գացեր էր՝ որ առանց դուրս հանելու նաւէն՝ խեղճերը բանտարկեալ ետ դարձուցին Եւրոպա ։

Աղած ամբաստանութենց սուտութիլը ետքը իմացաւ կըսեն Գ. Կարոլոս Թագաւորը, նըշան աս կուտան որ՝ առաջ ամէնուն չիյայտնեց Ճիզվիթներուն յանցանքը՝ որչափ որ ստիպեց Դօռռիճիանի քառտինալը,

ինչպէս որ փօրթուկալը՝ Փրանսան՝ սուտ կամ իրաւ յայտնեցին, այլ միշտ կըրգոցէր ըսելով՝ թէ ինծի յայտնի է անոնց յանցանքը: Հարկաւորապէս խիստ մեծ յանցանք ըլլալով թագաւոր սպաննելու յանցանքը՝ չէր ուզեր յայտնել, կամ անուննին չիկոտրելու համար, և կամ չըլլայ թէ արթնցընէ, աւելի թշնամիներ իրեն հանէ. իսկ իր եօքի ատենները հաւկընալով ստութիւը՝ Ճիզվիթները կանչեց, շատ բարերարութիւն ըրաւ իրենց, հեռու օտար տեղեր գիրք չինօղ Ճիզվիթներուն վարձ տըվաւ, անոնց իրաւունքը ջատագովեց, ու ամմէն տեղ իր պաշտպանութեան տակը առաւ, թէ որ իրենց վըրայ դըրած յանցանքին մէկը իրաւ ըլլար՝ ասանկ չէր արդարացընէր:

## Նաբօլիի մէջ եղած դիպուածները, Ճիզվիթները ելլելը Նաբօլիէն ու Մալթայէն.

## 1766 — 1768:

Սաստիկ սով եղաւ ամմէն Իտալիայի մէջ 1766. աս տարի և հետևեալ տարին 1767 վէսուվ լեռը նորէն բռնկեցաւ, երկրորդ անգամուն շարժալ մէկ տեղ եղաւ, անոր համար Նաբօլիին արքունիքը բօռդիչի տեղէն ելաւ Նաբօլի քաղաքը գնաց: Այն տարինալ բազմուի Ճերմակ մարախներու լեցվեցան առնօ գետին քովերը:

Իսկ 1768 ինչպէս որ սպանիա՝ անանկալ Նաբօլի Ճիզվիթները վերուցին, որուն պատ-

Ճառը ասանկ եղաւ։ Մէկը կտակով Ճիզ-
վիթներուն թողուցերէր Սօռա քաղաքը,
բայց կտակ ընողին քեռորդին պետրոս ռէն-
ցի անունով կուզէր ինքը ժառանգել, աս
բանիս համար 1762. օգոստ 31. արքունա-
կան խորհուրդ եղաւ, ուր քննելով ռէն-
ցիին գլին կտրեցին, և վճռեցին որ ասկէց
ետքը Ճիզվիթները չիկրնան կալուած ու-
նենալ, ու ժառանգութիւն մնալ։ Աս
դիպուածէս ետև 1768. նոյեմբ. 21. որ-
չափ տեղ որ Ճիզվիթ կային Նաբօլի, բօռ-
դիճի, և անոնց շրջակայները, գիշերանց
զինուորներով մտան, գրեթէ 500 Ճիզվիթ
մէկ տեղ գոցեցին, տանկալ ըրին ամմէն
Նաբօլիի տէրութեը մէջ ու սիջիլիա կղզին
մէջ. առապաները դնելով ոմանք բօցցօլօ,
ոմանք քասդէլլօ ինջեցուցին, նաւերով տա-
րին հռոմայու երկիրը հանեցին։
Օր մը ետև Թուղթ ելաւ ասանկ. „Թա-
„ գաւորին միտքը աս էր որ՝ Ճիզվիթնե-
„ րուն եղած ապրանքները բարի գործքե-
„ րու բանեցընէ, նաև ողորմութի տայ թէ
„ ան տնանկ աղքատներուն՝ որոնց կու-
„ տային Ճիզվիթները, և թէ ան հասա-
„ րակ աղքատներուն՝ որ ամմէն օր Ճիզ-
„ վիթներէն ողորմութի կառնէին„։ Ասանկ
Թուղթ հանելով ժողովուրդը հանդարտե-
ցուցին՝ որով զի իրենք կառավարները դա-
տաւորները ուտեն, բայց ետքը ուրիշ ա-
նուն մը հնարեցին, ամմէն Ճիզվիթներուն
ապրանքը ան բանին բանեցուցին, այնչափ
որ՝ հազիւ կըմնար քիչ մը բան՝ քշվօղ Ճիզ-

վիլթներուն տարեկան եկամուտը տալու, որուն վրայ նաև Ֆերտինանտոս Նաբօլիի թագաւորը իր մեծերուն առջին շատ հեղ կըգանկատէր ըսելով, Ճիզվիթներուն այնչափ ապրանքը յափշտակողաց ձեռքը իյնալով, ես մէկ ըստակ մը անկեց չիտեսայ :

Ճիզվիթներուն դպրատուններուն մէջ կրօնաւորներէն չիդըրին վարպետ՝ այլ աշխարհականներէն. ատոնք իրենց անվորներով եկան նստան, ատանկով ան դպրատունները զուարճասիրութե՛ն զեղխութե՛ն ծաղրաքանութեան տեղվանք եղան, և ոչ բարեկարգ կրթութե, ինչպէս որ կըլլար Ճիզվիթներուն ատենը, ետքը կամաց կամաց յաջորդեց ագխտութը. առջի հմտութները գիտութները անհետ եղան : Իսկ Նաբօլիի մայր քաղաքը մէկ քանի տարիէն ետև՝ Ճիզվիթներուն տեղը Սօմասքի ըսված կրօնաւորները դրին դպրատուններուն վարպետ :

Մէկ ուրիշ թուղթ մընալ ելավ թագաւորական, որ մէկ Ճիզվիթ մը ինչ ազգէ որ ըլլայ՝ ամենևին ոտք չիկոխէ Նաբօլիի տէրութէ հողը. ամենևին թղթակցութի չըլլըլի Ճիզվիթներուն հետ, և մէկ ճամփորդ մը կամ առապաճի մը չիկըրնայ Ճիզվիթի մը թուղթ բերել կամ տանիլ :

Կղեմէս ԺԴ. շատ ցաւելով զանգատանքի թուղթ գրեց Նաբօլիի մանկահասակ թագաւորին, թէ ինչու քշեց Ճիզվիթները, և ինչու քշվածները հռոմայու հողը հանեց առանց իրեն հարցընելու : Իր նուիրակինալ գրեց որ՝ աս զանգատս ընէ Նաբօլիի

վէզիրին մարքեզէ դանուչչին, և թէ յէնու-չու Օւթա ըսված տեղին ապրանքնալուին, որ Հռոմայու դպրոցներեցին (սէմի-նառիօին) յատուկ էր։ Դանուչչի վէզիրնալ պատասխանեց նուիրակին՝ որ կրակէր Քալքայնինի, թէ Նաքօլին ուրիշ սահմա-նակից չունի իրեն՝ ուր իրկէ քշվածները, բայց եթէ Հռոմայուն հողը. եւ երբ օւսինի քառտինալինալ (որ Հռոմ կընստէր պաշտ-պան Նաբօլիի տէրութեր՝) մէկ թուղթ մը գրեց դանուչչին խիստ խօսքերով իբր պա-տասխանի քալքայնինին ըրած գանգատին, քանիմընալ գունդ զօրաց իրկեց սահմա-նադրուխ տեղերը, որ չըլլայ թէ Հռոմայե-ցիք քշված ձիզվիթները ետ դարձընեն. ուրիշ զօրքալ իրկեց պէնէվէնդօ ու բօնե-դէ քօռվօ ըսված տեղվանքը՝ որ սրբազան պապին յատուկ երկիրներն էին Նաբօլիի հողին մէջ։ Արչափալ արծըլթեղէն զարդեր արձաններ ունէին ձիզվիթներուն ժամերը՝ ամմէննալ զարպխանէն իրկեց, ըստակ կռ-խել տըվավ։

Մալթայի մէջ ձիզվիթի վանք կար՝ ուր 20 հոգիի չափ կային, աս վանքն իբր ձիւղ մը սէպված էր սիջիլիայի գաւառին՝ անկեց կախում ունէր. անոր համար Նաբօլիի թա-գաւորին անունովը գրեց դանուչչին մալ-թայի մեծաւորին՝ որ դուրս հանէ քշէ, և թէպէտ մալթային շատ ասպետները աղա-չեցին որ աս բանս չըլլայ, բայց մալթային մեծաւորը մէկ նաւ մը դըրաւ զանոնք անքօ-նա իրկեց՝ որ Հռոմայու հողն է, և իրենց

ապրանքը առաւ պահեց ինչվան որ նոր հրաման գայ ։

Աս բաներուս ծանօթութիւն չունէր Փէր-տինանտոս Նաբօլիին Թագաւորը, տղայական բաներու և զբօսանքներու մէջ կըզբա-ղեցընէին՝ որ չիմանայ. սպանիային արքու-նիքը կըկառավարէր ան ատենը Նաբօլիին ամէն բանը ։

Բառմայի դուքսը իր երկրէն դուրս կըհանէ Ճիզ-վիթները, սպանիային ու Փրանսային պաշտ-պանութիւնը կըխնդրէ ․

1768 ։

Բառմային դուքսը Ա. Փէրտինանտոս՝ ըլ-լալով սպանիայի պօռպօնեան Թագաւորին ցեղէն, անալ սպանիայի ու Նաբօլիի իր ցե-ղերուն ըրածին հետևելով 1768. փետրվ. մէջ Ճիզվիթները վերցուց Բառմայէն ու Բիաչէնցայէն ։ Ան ատենը Փէրտինանտոս դուքսը պզտիկ ըլլալով ամէն բանը կըկա-ռավարվէր տիւ դիլլօ ըսված վեզիրին խրա-տովը՝ որ Փելինօյի մառքեզն էր ։

Ճիզվիթները վերցընելէն ետև քիչ մը անցաւ՝ մէկ օրէնք մը հանեց Բառմային դուքսը ապսպրելով մէյմը որ՝ իր ժողովր-դէն մէկը չիկրնայ մէկ դատ (տավա) մը օտար երկրի դատաստաններուն ձգել և ոչ հռօմայի՝ առանց իրեն բացայայտ հրա-մանի ։ Երկրորդ՝ մէկը կարօղ չըլլայ դրսի իշխաններու դիմել, որպէս զի եկեղեցական

եկամուտ կամ շնորհք մը ունենայ բառամայի ու բէրաչէնցայի մէջ, առանց իրեն հաւանութիւն ունենալու ։ Երրորդ՝ ամմէն եկեղեցական եկամուտ կամ պաշտօն մէկը չիկրնայ ունենալ, բայց եթէ իր ազգային ժողովուրդը՝ անալ դուքսին հաւանութիւնը ։ Չորրորդ՝ ինչ գրուած՝ վճիռ՝ կոնդակ՝ և այլն, հռոմայէն կամ մէկ դուրսի երկրէն որ գայ՝ 'ի գործ չիդրվի՝ ինչվան որ դուքսին գրուած հրամանը չունենայ ։

Աս օրէնքը շատ շփոթութիւն հանեց անկից որ՝ կղեմէս ժգ. խիստ վիրաւորվելով մէկ թուղթ մը հանեց 1768. մարտի 3. որով վերոյիշեալ բառմայի դուքսին օրէնքը ոչինչ կրհանէր, կապանքալ կրպառնար հանողին՝ ու մասնակից եղողին, անանկ որ մէկը չիկրնայ արձըկել (մեռնելու ատենէն զատ) բայց եթէ ինքը ։ Բառմայի դուքսնալ ուրիշ թուղթ մը հանեց ամմէն եւրոպայի հասկըցընել ուզելով, թէ իրաւունք ունէի ընելու, ինչպէս որ իդալիայի մէջ ըրին նաև ուրիշ տէղէրալ, մանաւանդ բիէմօնդէի ու դօսքանայի մէջ ըրին վիքդորիոս ամետէոս բ. կայսրը, ֆրանչէսքոս ա. (որ և էր մեծ դուքս դօսքանայի). որոնք ընելէն ետևալ մէկ յանդիմանութիւն մը չիլըսեցին հռոմայէն. աս թուղթս հանելէն ետքը պաշտպանութիւն խնդրեց իր ցեղին թագաւորներէն ։ Ասոնքալ ժե. լուիզ պօրպօնեան ֆրանսային թագաւորը՝ կարոլոս գ. պօրպօնեան սպանիային թագաւորը՝ շատ

մը խօսք տըւին իրենց պաշտպանութիւնը
ընելու, ուրիշ Թագաւորներուն ալ գրեցին
թէ Հռոմայի դուքսին ըրած օրէնքը ամէնն֊
նալ կընայէին ժամանակաւոր ու քաղաքա֊
կան կառավարութեան վրայ, և ոչ եկեղեցա֊
կան իշխանութեան վրայ, որ միայն հոգևոր
բաներու պիտոր խառնըւի։

Ըս ատեններս Միլանի մէջնալ ան կրօնա֊
ւորներուն՝ որ քանի մը կալուած ունէին
ու կըմուրային, արգելեցին մուրալը ա֊
պըսպըրելով թէ որ կալուածներուն մէջէն
բաւական ապրուստ չէլլար իրենց համար՝
Թագաւորական դիւանէն հոգացվին, միայն
թէ իրենց կալուածները ու ըստակները
աշխարհականի ձեռք յանձնեն ։

Մօտէնայի դուքսնալ խնդրեց Հռոմայէն՝
որ կրօնաւորներուն պզտիկ վանքերը վեր֊
ցընէ, Հռոմ առաջ չիհաւնեցաւ աս բանիս
վրայ, բայց ետքը ըստ մասին տըւաւ իր
հաւանութիւնը ։

Սպանիական եկեղեցական հարկատրութեան հըմէ֊
տանի մը վերաբերեալ Ինօկենտ ԺԳ ըրած
հանդակ հարցմունքը Հըռոմայեցիներէն ։

1768 ։

Ըս ատեններս Եւրոպային Թագաւորնե֊
րուն վրայ ուրիշ բան չիկարդացվիր՝ բայց
եթէ կրօնաւորները վերցընել, եկեղեցա֊
կան իշխանութիւնը ձնշել, քիչցընել ։ Հի֊
մա Սպանիանալ Փրանսային հետևելով

խնքնալ ուզեց քննութ ու նոր կարգադրու-
թի ընել կրօնաւորներուն և ուրիշ քահա-
նայներուն վրայ, հռոմայէն անօրինութիւններ
բերելուն վրայ՝ և այլն ։ Աս բանիս համար
մէկ նոր խորհուրդ կամ ատեան մը սահ-
մանեց՝ որուն մէջը եպիսկոպոսներալ կային,
ասոնց տասներկու գլուխ ասանկ բաներ ա-
ռաջարկեց որ քննեն ։ Մէկ Թագաւորա-
կան խորհուրդի մը մէջնալ վճռեց աստա-
նիան՝ որ Թագաւորական պատիւը տեղը
դնելու համար՝ հռոմայէն պահանջըվի հա-
տուցում ընելու ան ամմէն նախատինքնե-
րուն՝ որ կերևար Թէ ըրած են պօրպօնեան
տանը, (որ է սպանիային ու Ֆրանսային
Թագաւորին տունը,) և ուզվի որ Ճիզվիթ-
ները բոլորովին վերցըվին. Ճիզվիթներուն
ընդհանուր մեծաւորը ուրիշ չի անուանով ու
քառտինալ դօռռէՃիանին հռոմայու դի-
ւանադպիրը յանձնեն ան տէրութեանց՝ որ
Ճիզվիթներուն բանին մէջն են, որպէս զի
ինչպէս կուզեն անանկ տրամադրեն անոնց
վրայ. Ինչվանալ որ աս խնդիրքներս ըլլը-
վին՝ մատրիտի մէջ հռոմայու նուիրակ
չիդանըվի, նաբօլիին զօրքնալ մանան պէ-
նեվէնդ քաղաքը՝ նաև հռոմայու հողը Թէ
որ պէտք ըլլայ ։

Ասանկով սպանիային մայր քաղքին մէջը
որ է մատրիտ, հռոմայու նուիրակին ճամ-
փայ տըվին, իր դարպասնալ (սէրայը)
գոցեցին. Ֆրանսային Թագաւորնալ գունդ
մը զօրաց խրկեց առաւ ավինյոնը, քառ-
բէնդռասը, ու վէնասինօնը, որ Ֆրանսային

բռօվանս՝ դաւառին մէջն են, բայց որքա-
զան պապին յաթուկ (1)։ Նաբօլիի զօրքն-
ալ գնաց՝ պէնեվէնդօ ու բօնդէքօռվօ
քաղաքները տիրապետեց, որ Հարիւրաւոր
տարիներէն վեր Հռոմայու յաթուկ էին.
որոնց կառավարը որ էր եպիսկոպոս, Հարկ
եղաւ լթողուլ երթալ։

Կարտինալ դօուռիճիանին որ Հռոմայու
դիւանատպիր էր, ուզելով եկեղեցական
իշխանութիւնը ջատագովել, պօռպօնեան
դեսպաններուն հետ խօսելէնինի Հռոմայու
իրաւանց վրայ, միշտ վկայ կըկոչէր անուա-
նի կոնդակին հեղինակութիւնը որ կըսկըսի
Ին Քէնէ տն. խօսքով, ու ամէն աւագ եշէ
օրը կըկարդացվի։ Նոյնքան սկսան ան
կոնդակը քննել, սպանիային՝ փօրթուկա-
լին ու Ֆրանսային մէջ վերջացուցին կար-
դալը. մատրիտի մէջ ըսին որ՝ ԺԴ. գրիգոր
քահանայապետին՝ ու Բ. փիլիպպոս Թա-
գաւորին ատենէն սկսեալ ան կոնդակը
դժվարութիւներ հաներեր, և կայսերքնալ
կարոլոս Ե. փիլիպպոս Գ. Դ., նաև Ե, չէին
ուզած 'ի գործ դնել տալ։ Եպիսկոպոսնե-
րէն ոմանք աս բանիս դէմ կեցան, քվէն-
քային եպիսկոպոսը գանգատ գրեց Թագա-
ւորին խոստովանահօրը ըսելով, Թէ Թա-
գաւորին պաշտօնեայքը հալածեցին եկե-

---

(1) Աս քաղաքներուն համար կըսեն Թէ 1347 գըն-
ված են Նաբօլիի Թագուհիէն, որ էր Ա. յօհաննա
անձիօ ցեղէն։

դեցին, յափշտակեցին իր ապրանքը, ոտքի տակ առին եկեղեցականաց ազատութիւնը. բայց Թագաւորը իր ձեռագրովը պատասխան գրեց արդարացընելով, թէ իր ըրածներուն մէջը չիկար ամենեւին հալածում։

Մէկնալ Փրանսային բառլամէնդին մէջէն ելավ ըսաւ՝ որ ան կոնդակը ապստամբեցուցիչ է ժողովուրդը իր Թագաւորին դէմ, ինչպէս որ առաջ Ճիզվիթներուն համար կըսէին աս զըրպարտութիւնը. ասոր խօսքը մտիկ դնելով բառլամէնդնալ վճռեց որ՝ մէկ եպիսկոպոս մը կամ աւագ երէց մը չիկրնայ հրապարակաւ կարդալ տալու ան կոնդակը։

Կայսերական երեսփոխաննալ միլանու կառավարութէնը մէջ՝ որ էր Ֆիումիան կոմսը՝ Թուղթ խրկեց լոմպարտիայի մէջ եղած ամմէն եպիսկոպոսներու՝ որ անկեց ետքը տօնացոյցներուն մէջէն վերցընեն չյիշեն Ունիճէն թուն ըսված կոնդակը. անոր օրինակները աւանդատուններէն վերցընեն։ Բայց ասոր վրայ շատ եպիսկոպոսներ դէմ ելան, մանաւանդ միլանու քառտինալ արքեպիսկոպոսը՝ ու Բավիայի քառտինալ եպիսկոպոսը վէննա գրեցին, իրենց ընդդիմութիւնը ցըցուցին։

Աս բաներուս վրայ կղեմէս ժդ. խիստ խոցված ըլլալով՝ յունիսի 30 մէկ ցաւագին ու երկան Թուղթ մը գրեց կայսրուհւոյն ու իր որդւոյն յովսէփ կայսեր՝ որ պաշտպան ու միջնորդ ըլլան աս բաներս շտկելու. կայսրուհին պատասխան գրեց մխիթարե-

լով ու հասկըցընելով որ խօսքը սաստիկ ըլլալով, դժար էր դեղ մը գտնալ ըռընտցընելու. վասն զի իրենքալ կիմանային որ՝ մէկ ուրիշ ազգի մը մտերէր, եկեղեցականաց ամմէն ըրած բանը իշխել կերեւնար աշխարհականաց առջին. ան աղանդը՝ որ կըմտածէր ամմէն եկեղեցական իշխանութիւը վերցընել, կամաց կամաց ամմէն տեղ աս միտքս խօթել կուտար, ինչվան որ դարուս ետքը ամենեւին երեւան հանեց։

## Վենետիկի և ուրիշ տէրութեանց հարկատրութիւնը կալուածներու վրայ. ԺԳ Կղեմէս սրբազան պապին մահը.

## 1768 — 1769։

Աս տարիներս նաև վենետիկի հասարակապետութիւնալ նոր կարգաւորութի հանեց իր եկեղեցականաց վրայ, որուն գլխաւոր խորհուրդ տվօղը եղավ անդրէաս թռօն անուանի սեպուհը (ռիձալը), հրամայելով որ ասկէց ետքը մէկը չիկրնայ բան մը շնորհել կրօնաւորներուն, եկեղեցականներուն, կամ եղբայրութիւններուն, ոչ կենդանութե և ոչ մահուան ատենը։ Նոյն 1768 (1), սեպտ. 7. աւելի սաստիկ վճիռ հանեց կրօնաւորներուն վրայ, թէ վենետիկի պատրիարքը ու եպիսկոպոսները

(1) Ոմանք կըսեն 1767։

խառնըվէին վանքերու վրայ, մեծաւորները միայն օրվան պէտք եղած բաները նայէին, վենետիկցի մը չիկրնայ օտար երկիր կրօնաւորի հագուստ հագնիլ, ուխտել, ու ուսում առնել, այլ վենետիկի սահմանին մէջը ըլլալու. մէկ եկեղեցական մը չիկրնայ ամենևին ըստակ խրկել դուրսի երկիրները, ու հաշիւ (հիսապ) տալու ան դատաւորներուն՝ որ վանքերու վրայ դրված են եւն. ասկէց ետքը ան վանքերը որ աւելորդ կերևային՝ վերցուց, անանկով ինչվան 1772 տարին՝ 60 վանքեր վերցուց վենետիկի տէրութեն մէջէն.

Ասիկայ մէկ օրինակ մը եղավ որ՝ ետքը նեմցէնաւ, դօսքանանաւ, Ֆիանտրա, ու նաբօլինաւ ըրին. Ֆրանսայի մէջնաւ որ խորհուրդ կընէին կրօնաւորներուն վրայ, առաջ որոշեցին որ՝ պենետիքդեան ըսված կրօնաւորները կարգաւորեն, թէ որ ուրիշ պատճառ չէկար, աս պատճառս մինակ հերիք կըլլար որ՝ ամմէնէն աւելի հարուստ անոնց վանքերն էին. Փորթուկալի տէրութինը 1764 արգելէր որ՝ ինչվան տասը տարի մէկը վանք չիմտնայ, քահանայ չիձեռնադրըվի, ու տարի 1768 օգոստինեան ու դոմինիկեան կրօնաւորներուն հրաման տըվավ քսանական հոգի առնել վանքը. Իսկ հետևեալ տարին 1769, պօրպօնեան արքունիքը (որ սպանիային ու Ֆրանսային թագաւորին ցեղերն են), նորէն սկսան խնդրել սրբազան պապէն՝ որ ճիզվիթներուն կրօնքը աշխըրքէս վերցընէ, եւ որուն

ծանր պատճառներ ունէին․ իսկ սրբազան պապն ալ կուզէր ան թագաւորներուն հաս-կըցընել թէ Ճիզվիթներուն թշնամիներն են՝ որ ձեզ խաբել կուզեն, ես չեմ կրնար անանկ անիրաւութիւն ընել որ՝ այս ազգին պատրոնկան ըլլամ։

Ըս նեղութիւներէս խիստ վշտանալով սրբա-զան պապը ԺԴ․ կղեմէս, որ վենետիկի սե-պուհներէն էր ռեցցօնիքօ մականուամբ, 1768ին վերջի օրերը թուղթ գրեց վենե-տիկի պատրիարքին, և ուրիշ թուղթ մը-նալ գրեց վենետիկի ատեանին աս բանիս վրայ․ իսկ 1769․ փետրվ․ 2․ երբոր աղօթք կընէր խաչելութեան աւջին գիշերը պառկե-լու ատենը՝ իբր յանկարծ մահուամբ քա-նի մը ժամու մէջ մեռաւ 75 տարվան, տասը ամսըվան։ Բնութեամբ խիստ անուշ էր ու ողորմած, իրեն ունեցածը աղքատաց կըբաժնէր․ մեռած ատենը գրեթէ ըստակ մը չիգտան քովը, ըստըկին տեղը ձեռա-գիրներ (Թէմէսուկներ) գտան աս ան աղ-քըտի, որ իրմէ հազարաւոր ոսկի ողոր-մութիւն առած էին։ Թեպէտ իր քահանայա-պետութեան տարիները ցաւագին եղան, բայց անանկալ ըլլալով՝ իրեն յիշատակ թողուց շինութիւններ ընելով․ հռոմայու նաւահան-գիստը չիվիդա վէքքեա ըսվածը՝ որ շա-տանցմընէ անհոգ ձգելով լեցվել սկսեր էր՝ շտկեց․ անքօնային նաւահանգստին ամ-բարտակը, (որ է խաղտըրըրըմ) խորունկ ծո-վի մէջ՝ մեծցուց երկնցուց, որ եղաւ մէկ երևելի մեծագործութիւն մը, ասանկալ

հասարակաց համբարները մեծցուց. երբոր 1764 սաստիկ սով (խըթլըխ) եղավ Հռոմ, շատ օգնութին հասաւ խեղճերուն: Երկու շրջաբերական թուղթ հանեց արգելելով եկեղեցականաց վաճառականութին ընել, վտանգաւոր խնդիրներու վրայ վիճաբանիլ:

Նոր յիշատակը պահելու համար՝ իրեն ազգականները նոր ատեններս մեծաշէն շիրիմ կամ գերեզման շինել տըվին մերմերքարէ անուանի վարպետին՝ որ կըսվի Քանովա, զարմանալի փորուածով:

ՃԴ. Կղեմէս տասնչորրորդին նստիլը, իրեն խոհեմութիւնը, նախօրէին ու գովանային ըրած եկեղեցական բաները.

1769:

Քարտինալները ըստ սովորութեան ժողով ընելով նոր քահանայապետ ընտրելու՝ ըսպասեցին որ Ֆրանսզի ու սպանիայի քարտինալները գան, իրենց տէրութեան կամքը բացատրեն. վասն զի ասոնք չէին ուզեր ընտրելու ան քարտինալները՝ որ Ճիզվիթի յարեալ էին: Երեք ամիս տասը օր անցնելէն ետև՝ մայիսի 19 ընտրըվեցաւ քարտինալ յոհաննէս լօրէնցօ անտօն Կանկանէլլի, որ մէկ հատիկ կրօնաւոր էր այնչափ քարտինալներու մէջ քօնվէնդուալ կարգէն, և իրեն անուն առաւ Կղեմէս ԺԴ: Նէրկայ իր կրօնաւորութեան ատենը երբոր

օր մը ասսիզի քաղաքը կերթար, Ճամփան մէկ գեղացի մը իրեն ընկեր ունեցաւ, ասիկայ հետը վարվելով՝ աշխատասէր եղբայր կարծեց՝ ըսաւ իրեն, վասն որ ուսում չես սորված, քահանայ չես եղած, թէ որ դուն սորված ըլլայիր՝ կրնայիր Ն. սիքստոսին պէս պապ ըլլալ, անոր պատկերը մեր տունը ունինք, քուկին երեսդ ալ գլուխդալ ըլլման անոր շատգէտ գլխին կըմանի: Ծնած էր հռոմայու ուռպինո գաւառին մէջ, բնութ̃ երաժշտութ̃ ներդաշնակութ̃ կըսիրէր, վասն զի իր հոգւոյն կարողութիւներնալ ներդաշնակաւորեալ ըլլալով մէկին ըսածին պէս՝ բնութիւնը ինքիրեն ան բանին վրայ կըվազէր: Պզտիկուց ունէր մէկ շիտակ կտրուկ զուրցըված մը, բայց ամենևին մարդու սիրտ չէր խոցէր. իր կրօնաւորութ̃ ատենը պենետիքդոս ժդ, այնչափ սէր ունէր վրան որ՝ օր մը ձեռքը գլուխը դնելով յանձնեց իր մեծաւորին՝ որ աղէկ հոգ տանի անոր վրայ; ետքը սրբաքննութ̃ ատեանին խորհրդական ըրաւ ասիկայ, որուն շատ հեղ խորհուրդ կըհարցընէր: Շատ զարմացերեմ կըսէր կանկանելլին երկու բանին վրայ, մէյմը որ մէկ ծովածաւալ հմտութ̃ մը ունի ու դատուամբ հասուն, զինքնալ անանկ կըցըցընէ որ՝ իբր թէ ամենևին բան մը չէյտէ. մէյմնալ այնչափ զուարթ է՝ որ գիտես թէ ամենևին առանձնութ̃ մէջ մեծցած չէ:

Մէկ ատեն մը աթոռը նստաւ որ՝ շատ նեղութ̃ մէջ էր եկեղեցին, փորթուկալը

հռոմայեցին կորովին ուզելով՝ կընայէր որ իրեն մէկ պատրիարգ մը սահմանէ. սպանիան՝ ֆրանսան՝ ու նաբոլին՝ նեղած էին որ իրենց նախորդը ինչու բառմայի դուքսին ըրածին դէմ կըկենար. վենետիկը կրօնաւորաց վրայ նոր նոր կարգադրութիւն կընէր առանց բան մը հարցընելու հռոմայու. Լեհին մէջն ալ՝ նաեւ հռոմայու մէջն ալ տըրտունջ կար աթոռոյն վրայ: Բայց աս ԺԴ. կղեմէսին խելքը խոհեմութիւնը անանկ թագաւորներուն սիրտը առաւ, խաղաղցուց, որ աշխարհ զարմացաւ, պատրաստ ցըցնելով զինքը իրենց կամացը կէօրէ ամմէն բան շտկելու: Չորս պօրպօնեան արքունիքները՝ (որք են Ֆրանսա՝ սպանիա՝ նաբոլի՝ բառմա՝) ձեռք առնելու համար, հռոմայու դիւանադպիրը ըրաւ քարտինալ բալլաւիչինին, որ առաջ սպանիայի նուիրակն էր. առջի դիւանադպիրը քարտինալ տօռէճիանին փոխեց, ու որպէս զի աւելի չի գրգռէին արքունիքները, Բէնէվէնթօն բռնուած կոնդակին կարդալը վերջացընել տըւաւ: Տատանցմընէ կուզէր սպանիային արքունիքը երանացուցանել յոհաննէս բալաֆօքսը՝ որ անճէլօբօլօին եպիսկոպոսն էր, բայց ճիզվիթի դին եղողները խիստ դէմ կելային աս բանիս. անկէց պզտիկ բանը մեծ դատ (տաւա) եղած էր, մեծ կիրք բերել տըվերեր. քահանայապետը որպէս զի խաղաղցընէ ինքը վրան առաւ աս դատը տեսնալու. անոր համար սպանիայի թագաւորն ալ յունիսի 20, շատ շնորհակալութիւ

ընելով պատասխան գրեց, ու մանաւանդ
ուրախութիւն ցուցուց իրեն ընտրութեանը
վրայ ։

Ըս քահանայապետս կընայեր որ՝ ժը. պե-
նետիքդոսին Ճամփան երթայ, սէր կըցըցը-
նէր Թագաւորներուն վրայ, ասով զինքնալ
սիրելի կընէր անոնց, շատ բանը աչք գո-
ցելով լուռ կենալով խաղաղցուց. ասանկ-
ալ լուռ կեցաւ երբոր Պուանուչալի նաբօ-
լիին վեզիրը (որ խիստ կըսիրեր նոր նոր
բաներ ընել,) Թագաւորին անունովը՝ քա-
նի պզտիկ վանքեր որ կային նաբօլիին հո-
ղը՝ ամենքնալ վերցուց, արգելեց որ դրսե-
ցի քարոզիչ չիգայ նաբօլիին երկիրը, չըլ-
լայ որ ասով դուրսի տէրութենց սկզբունքը
նաբօլիի մէջ խօթվի, հոգևոր տեղվանք
կալուած մը չառնեն, ուրիշ ասոնց նման
պատուէրքներ դրաւ եկեղեցականաց վրայ
դանուաչէն 1769, մարտի 11. և օգոստ. 3։

Լուռ կեցաւ քահանայապետը նաև երբոր
դօսքանային մեծ դուքսը օրէնք շինելով
(որ բոլորովին ներհակ էր առջի դրած հին
օրինացը մէտիչի իշխաններուն,) նոր եկե-
ղեցական օրէնքներ դրաւ, թէ հոգևոր
տեղվանք բռնակ չիթողուն, ան յանցաւոր-
ները՝ որ եկեղեցիները փախած պահված
էին, հրամեց որ մէկ վիճերվան մէջ դուրս
հանեն ։ Ըսոնց նման բաներ էին նաև ինչ
որ բառմա ու միլան ըրին ։

Ըս ամեն բաներու վրայ խոհեմութին ընե-
լով լուռ կըկենար սրբազան պապը անչափ
որ՝ հռովմայեցիք իր անունը Ըռաձիներոր

Լուսմէջ դրին. բայց առակաց ըստ ծինն պէս՝ Շատ հեղ բերել կայ որ խօսիլ է, խօսքէն աւելի խօսող է, երբոր չխօսեցուն բանը առաջ տանող է: Մխիթար սիրելի եղաւ քահանայապետը սպանիայի Թագաւորին Գ. Կարոլոսի, որ երբոր առջի զաւակը եղաւ Դ. Կարոլոսին՝ ուզեց որ կնքը մկրտէ, և աս բանիս յիշատակը մնալու համար՝ նոր կարգ ասպետութեան դրաւ Անարատ յղութե անունով, որուն մեծաւորը կնքը եղաւ, և ուրիշ Թագաւորազունք կարգակից եղան:

### Սպանիոյին ու Ինկիլիզին մէջ եղած վէճը, Փրանսըզի Թագաւորին բանակը հարմնելը, փէտր ժողովքով վէճերին ելնելը.

### 1766 — 1770:

Աս տարիներս քիչ մնաց որ՝ ծեծ բացվէր սպանիոյին ու ինկիլիզին մէջ աս պատճառով որ ամերիկայի հարաւակողմը կղզի մը կար Ֆալքլանտ անունով, կըսվէր նաև Մալուինա, ու Էկմօնդ նաւահանգիստ, ինկիլիզը աս կղզին առաւ: Երբոր սպանիան իրեն զանկատ գրեց, ինկիլիզը պատասխան տըվաւ որ՝ մէկ երեսէ ձգած անապատ դարձած կղզի մըն է, ով որ կուզէ կրնայ առնել, ասոր վրայ Թէպէտ դժվարցաւ սպանիան, բայց լուռ կեցաւ, չուզեց ծեծ բանալ, ըստ որում դեռ նոր դադրած էին պատերազմէ:

Ինչպէս որ վերը պատմեցինք, որովհետև

քիչ մը առաջ Ֆրանսայի Թագաւորին առաջինեկ զաւակը, անոր երկրորդ ընկերը, նաև Թագուհին՝ իրարմէ ետև մեռերէին, այսչափ մեռնողներուն տրտմութիւնը փարատելու համար՝ տիւք շուազէօլ վէզիրը խորհուրդ տալով Ֆրանսացի Թագաւորին, որ նոր ժառանգը Թագաւորութեան Տօֆէն ըսւողը՝ (1) պսակեն, ուրախութեան հարսնիք ընեն. իրեն ընկեր առնելով արշիդուքսուհին աւստրիոյ մարիամ անդօնիէդդան՝ (ինչպէս որ խօսք դրերէին, որ էր դուստր մարիամ Թերեզինա կայսրուհւոյն, և քոյր Բ. յովսէփ կայսեր, որպէս զի ասով աւելի կապվին աւստրիոյ տանը հետ, Թէպէտև փեսան ան ատենը դեռ պզտիկ էր 16 տարվան ըլլալով: Հարսը 1770 ապրիլի 21 Ճամբայ ելաւ, մայիսի 14 Ֆրանսա հասաւ, Թագաւորը ու փեսան առջևը գացին ընդունելու, ու հարսնիքին յիշատակ և պատիւ հարսին՝ մէտալ տպեցին 1770. ապրիլի 19. Հարսը առին տարին փարէզին արքունի պալատը (սէրայը), որ վէրսայլիէ ըսւած տեղն է, հոն շատ ուրախութեամբ, հանդէսներով, զուարճութիւններով հարսնիքը կատարեցին մայիսի 16. գովելով հարսը ու մեծցընելով: Բայց ով կըսէր որ՝ քանի մը

---

(1) Ասիկայ Ֆրանսայի Թագաւորին Թոռն էր, ետքը Ֆրանսայի Թագաւոր նստաւ, ժԶ. լուիզ ըսվելով. 1793. յունվ. 21. գլխատվեցաւ, ինչպէս որ ետքը պիտոր պատմենք: Իր ընկերն ալ մարիամ անդօնիէդդան՝ նոյն տարին հոկտ. 15 գլխատվեցաւ:

տարի անցնելէն ետեւ՝ ան բարբարացուցած հարմնալ փեռանալ չարագործներու ալեօ մէկիկ մէկիկ փարէզին հրապարակը պիտոր բերեն, գլխընին կտրեն, ինչպէս որ ետքը ունինք պատմելու ։

Մէկ ձախող դիպուած մընալ եղաւ որ՝ առանց հարմնիքին ուրախութիւը շատ տե-ւեց, փարէզին մէկ հրապարակին (մէյտանին) մէջը՝ որ Տօֆինա կըսուի, Փիչենկի խաղերը ընին շատ վարպետ խաղերով, մայիսի 30 ։ Պաշտօնատարները Թողուցին որ՝ ժողովուրդը համօրձակ մտնայ, որպէս զի ան մէնալ տեսնան. բայց անչափ շատցաւ հոն ժողովուրդին բազմութիւը, որ մէկզմէկէ ու առապայներէն կոխկռտըվելով 500 մարդէն աւելի ճզմըվեցան մեռան, իսկ խեղճօղները աւելի շատ եղան. անչափ էին առապայներուն բազմութիւը՝ որ շատ մարդ խալըսելու համար ձիերը դանակով կըպատռնէին, մէկ առապաճիմընալ ապառնեցին դանակով որ վեց ձիով բազմութեան մէջ կըցմնար մտնալու. ան ատենը ուրիշ մէկ խռովութիմընալ դողերը (եան քէախճիները) կըհանէին, առկեց անկեց պողնալով։ Սոր վրայ շատ ցաւելով փեսան, կըցածին չափ ըստակ խրկեց մեռած դատաւորին առանկ գրելով իրեն ։ „Խիստ տրտմութիւն „բերաւ ինծի աս ձախորդ դիպուածը՝ որ „իմ հարմնիքիս պատճառովը փարէզին „մէջը եղաւ դատաւորներուն անհոգ կե- „նալովը. հիմա ինչ ըստակ որ հայրս ինծի „տըվաւ խաղճըլըխ ընելու, կըխրկեմ քե-

„ զի որ բաժնես ան ցաւագարներուն՝ որոնք „ աւելի կարօտ են“ ։ Աս բանով աւելի մեր կապեց ժողովուրդը փեսին ու հարսին վրայ, տեսնալով իրենց սրտցաւութիւնը, բայց ժողովրդեան մէջ ոմանքալ գտնըւեցան, որ աս ձախորդ դիպուածս գէշ գուշակութիւն մը սեպեցին փեսին ու հարսին վրայօք, ինչպէս որ ետքը իրաւ ելաւ։

Գիտենք որ Փրանսային մէջ Թագաւորին վարմունքը շատ խռովութեան ու անկարգութեան պատճառ կըլլար. առաջ ամմէն կառավարութիւնը թողուցերէր բօմբատուր խաթունին ձեռքը, երբոր անիկայ մեռաւ 1764ին, ուրիշ ալ դուքսին խորագիտութիւնը տիւ պարրի խաթունը անոր տեղը անցընել տըւաւ, որպէս զի անոր ձեռքով ինչ որ ուզէ՝ ընէ (1)։ Ասիկայ շատ ազելոր վառվըռուն ու խորամանկ կին ըլլալով հալեւոր Թագաւորին սիրտը բոլորովին իր ձեռքը առերեր, անանկով շատ նոր նոր վնասներ բերել տըւաւ թէ արքունեացը, և թէ ամմէն թագաւորութեանը։ Թագաւորին ժառանգ եղօղը (որ Տօֆէն կըսվի,) ատոր չէր հաւնէր, չհաւնելուն համար տիւ պարրին անոր հետ թշնամութիւն կապեց, միշտ կըխորտակէր զանիկայ Թագաւորին առջին, նաև տօֆէնին կողակիցն ալ մարիամ անդօնիէդդան կընախատէր, և որ-

---

(1) Աս կինը ան է՝ որ 1793. ռօպէսբիէռին հրամանովը գլուխը կտրըվեցաւ։

պէս զի աղէկ մը աչքէ հանէ աս անդօնիէդ-դան, ետեւէ ընկաւ տիւ պարրի խորամանկը՝ որ ան բարեկամութիւնը ու դաշնադրութիւը որ Նեմչէին ու Փրանսզին մէջը կային, վերցընէ կամ քիչցընէ: Բայց ասիկայ առաջ տանելու համար՝ պէտք էր որ տիւք շուազէօլը իր վէզիրութէ ձգվէր, անոր համար կերպ կերպ ճամփաներ՝ բարակ խորամանկութիւներ չիթողուց որ չիբանեցընէ, որպէս զի աս թագաւորիս առէնը շուտով պաշտօնէ ձգել տայ ան բազմէբախտ ու խելացի վէզիրը: Որ շատ հեղ իր տիրասիրութիւը ցըցընելով խրատ կուտար թագաւորին ետ կենալ տիւ պարրիէն, որուն վատահամբաւութիւը զինքը թագաւորը քամահրել կուտար, և որուն համար կըսէին որ՝ իր ծնօղքը դեղելով մեռցուցեր էր. տիւք շուազէօլին քշվելուն խորհրդակից եղան նաև ռիշլիւ դուքսը, ու շառդա դուքսը (1):

Ինչափ թագաւորին ետեւէ ընկաւ աս տիւ պարրի խաթունը՝ որ թագաւորը անոր թախանձանքին չիդիմանալով մէյմը կըստորագրեր տիւք շուազէօլին քշվելուն վրայ, մէյմնալ քիչ մը անցնելէն ետև ինքիրեն կուգար, իր ձեռք դրած թուղթը կըպատըռտէր, գիտէր որ իրեն խիստ պէտք ըլ-

---

(1) Ասիկայ է ան ախտաւոր մարդը՝ որ ետքը ընվեցաւ Օռլէանս դուքս, որ Փրանսայի խռովութիւը հնչղնեքրուն մէջ երևելին եղաւ, իրեն անուն դնելով Փիլիպպոս, Հաւասարութի:

լմլու մարդ էր անիկայ։ Բայց իրաւ է ա-ռակայց ըսածը. Մշնուրհիս մեծը էնը բանէն վախ-նալուն է, որմէ մէկէն վախնալուն՝ Կրնկան ապրանք է։ Թագաւորը առանկ շատ հեղ մէյմը ձեռք դնել՝ մէյմը պատռել ընելէն ետև՝ այնչափ ըրաւ տիւ պարրին՝ որ վերջապէս 1770. դեկտ. 24. իբր թէ բանի (դօռով) թագաւորին ձեռք դնել տըվավ առ թղթիս՝ ուր ՝ առանկ գրված էր տիւք շուազէօլին։
„ Ռուսկէն ըրածներդ իս անանկ սրդող-
„ ցուցին՝ որ զիս բռնադատեցին շանդե-
„ լուք տեղը քշել զքեզ. քանըրչօրս ժա-
„ մու մէջ ելլես հոն երթաս, աւելի հեռու
„ տեղ քեզ կըքշէի, թէ որ քու կողակցիդ
„ դքսուհիին ողջութենը չիխընայէի, նայէ
„ անանկ բան չընես որ՝ զիս հարկադրես ա-
„ ւելի պատիժներու տակ ձգել զքեզ (1)։
Տիւ պարրիին թշնամութիը աւելի եղավ անդօնիեգդայիին հետ, միշտ կընայէր անի-կայ քամահրել, որպէս զի թէ թագաւորին և թէ ժողովուրդին աչքէն հանէ, ատելի ընէ, անոր ամմէն ըրածները գէշի տանե-լով. թէ որ մէկի մը հետ անուշութիւն կը-վարվէր, թեթևսօլիկ կըկանչէր, թէ որ մէկի մը բարերարութիւն կընէր, չար մտքի վրայ կըտանէր. թէ որ ծանր կընստէր, Փրանսացիներուն չիհաւնիր կըսէր. թէ որ

---

(1) Տօզքուես իշխանպար եզքաուր չիւնքի. իշխան-պար եղանէ,
Օնուն իչին եայլը դուձար, օզու աթար եա-ղանէ։

մէկը՝ մանաւանդ գիտուններին կըմեծարէր կըպատուէր, գիտուն չեղողները կանարգէ կընէր ։ Այս որովհետև կնկան կախումը շատը գեղեցկութեան ու ազնուութեան վրայ կըլլայ, աս դիտացենալ շատ ծաղր կընէր, մականուններ (լաղաբներ) կըկպցընէր վրան՝ մազերը դեղին ու շատ ըլլալուն համար, նաև պարսաւագէտ նախատական գրքեր հանել տըվալ անդօնիեդդային վրայ, ու իրեն թարուցը վրայ, ոչ միայն զինքը կընայեր անարգելու, այլ նաև զանանք՝ որոնց որ տէր պաշտպան կըկենար անդօնիեդդան։ Սանկով թէ աս իշխանուհիս անդօնիեդդան, և թէ իր ընկերը տօփէնը չորս տարի շատ նախատինք քաշեցին տիւ պարրիին ձեռքէն, որուն հետ ուրիշ կերպ չէին կրնար գլուխ ելլալ, բայց եթէ բանի տեղ չխաբելով։ Միայն թէ աս պզտիկ քանաք հրամքները՝ բանի տեղ չխաբված պզտիկ տարաձայնութիւնները՝ շատ մեծ փառաւոր հետևութիւներ հանեցին, որ երկան կըպատմըվին ԺԵ. լուիզին, տիւ պարրիին, ու ռիշլիւին վարուց մէջերը։

Ասանք պէտք է հիմակուցմէ աղէկ միտք առնել, որ ետքը աղէկ իմանաս պատճառները՝ թէ ինչպէս ելաւ Ֆրանսային զարհուրելի անմտութիւնը (վէլվէլէն), որ դարուս ետքերը այնչափ ըլլըլկոց հանեց։

Թուռնուզցիք աս տարի 1770 թշնամութիւն ընել սկսան Ֆրանսայի նաւերուն վրայ, մանաւանդ քօրսիքացոց դէմ որ Ֆրանսային տակն էր ; անոր համար Ֆրանսան նաւեր

խրկեց Թունուզին քաղքընները Թօփատե-լու, անկեց Թունուզի տային խոնարհեցաւ, հաշտութի̃ ըրաւ։

### Փօրթուգալի ու Հասմայու մէջէ եղած դիպ-ուածները.

### 1769—1775։

Փօրթուգալին Մազական ըսուած տեղին վրայ վազեցին մաղրըպիները 1769. մէջինները երկու ամսի չափ դիմացան, բայց որովհետեւ քիչ զօրք կային, չկրցան աւելի դիմանալ՝ ձեռվընին տըվին. չորս օրվան զինադուլ (միւթարեքէ) ընելով։ Ա̃ն միջոցին մէջ փօրթուգալները ազատութի̃ ունեցան դուրս տանիլ բաներնին՝ որչափ որ կրցան, բայց մաղրըպիները իրենց սովորութե̃ը կեօրէ անհաւատարիմ գտնըվելով նեղութիւն տըվին փօրթուգալցոց, ուզեցինալ որ ատենէն առաջ ներս մտնան, բայց շատ վնասակար եղաւ իրենց, վասն զի տեղին կառավարը՝ ականն (լաղըմ) էր փորել տըված, ելլալու ատենը ֆիթիլները բռընկցուցած էր, մնացած թօփերնալ չափէն աւելի լեցուցած էր, լաղըմները պատռելով, թօփերը ճաթելով, մաղրըպիներէն շատ հոգի տակը մնացին թաղվեցան։ Ասկէց ետքը զինադուլ (միւթարեքէ) մը սահմանեցին մաղրըպին կայսեր՝ ու փօրթուգալին մէջ, որ շատ շահաւոր եղաւ փօրթուգալի վաճառականներուն։

Երբոր 1769 Կղեմէս ԺԴ. նստաւ Հռոմայ աթոռը, Հռոմայու և փորթուկալի մէջի գժտութիւնը վերջը բոլորովին փոխվեցաւ, մէկ խաղաղութի մը եղաւ որ աշխարհ զարմացնէ. ալմատոն դարձաւ Նորէն Հռոմայու դեսպան եղաւ, Քոնդի եպիսկոպոսն ալ, Հռոմայէն Նուիրակ գնաց փորթուկալ։ Ասիկայ երբոր Դակօ գետին քովը հասաւ, Թագաւորը իր նստած նաւը խրկեց խիստ զարդարված, երբոր Լիզպոն քաղաքին առջին հասաւ, Թագաւորական զարդարուն առապան խրկեց, ուրիշ իրեք առապաներով մէկ տեղ՝ անանկ մեծարելով առին բերին, ատանկով խիստ փառաւորութը բացվեցաւ Նուիրակին զարպասը Լիզպոնին մէջ։

Լիզպոն քաղաքնալ 1755ին եղած շարժէն ետև օրէօր կը շինվէր առջինէն աւելի գեղեցիկ շինուածներով, Լիզպոնցիք Թագաւորին շնորհակալութե յիշատակ՝ մէկ պղնձէ ձիաւոր արձան մը կանգնեցին, բայց Քառվալհօ վէզիրը իրեն պատիւնալ նայելով պատուանդանին վր իր պատկերնալ փորել տըվաւ։ Այս պատերազմի դիպացէն Թէպէտ աս առեններս հանդարտըված էր փորթուկալին տէրութիւնը, բայց իր ներսի դին մեծ անկարգութե մէջ էր վէզիրին բռնաւորութեր համար՝ որ էր վերօգրեալ Քառվալհօ բօմպալ մարքէզը, ինչ կուզէր ինքը կընէր, թող չէր իտար Թագաւորին բանի մը մէջ խառնըվելու, որ էր տ. յօվսէփ, մարդ տկարամիտ. և որպէս զի չըլլայ որ մէկը

քառավալհօին վրայ երթայ գանկատի թագաւորին, մարդու մը թող չէր տար ամենեւին թագաւորին հետ տեսնըվելու, ոչ իր ընտանեացը հետ, նաեւ ոչ իր առջինեկ աղջկանը հետ, որ պրատիլու իշխանուհի կըսվէր, և թագաւորութեր ժառանգ պիտոք ըլլար: Անէ որ երբեմն մտիկ չընէր թագաւորը իր դարպասին (սէրային) ներսի դըին գոցված կենալ ինչպէս որ կուզէր քառավալհօն, ան ատենը զինքը կըվախցընէր սուտ բաներով, թէ դուրսը մարդ կըսպասէ քեզ մեռցընելու, կամ թէ խօսք դըերեն մէկ ապստամբութի մը հանելու:

Այս խրատուցընէ 1769 տարուոյն ետքերը՝ երբոր թագաւորը առտըվանց դուրս ելավ որսի (ավի) երթալու, մէկ նեղ ու մութ կամարի մը տակէն անցնելընինի իր դարպասին մօտիկ, մէկ գեղացի մը պատին ետևը կըզկըռտած պահված ըլլալով, մէկ հաստ գաւազանով մը ուզեց թագաւորին գլխին զարնել, թագաւորը հազիւ խալըսեցաւ. շուտ մը գեղացին բռնեցին. բանտը դըրին, շատ տանջանքներ տվին որ զուրցէ, ով զինքը գրգռեց աս բանս ընելու, պինտ ետքը ասանկ հասկըցան, կամ մանաւանդ ասանկ հասկըցընել տըվին որ՝ խենթ մընէ եղեր, չէյտե եղեր իր ըրածը: Բայց աս բանս հերիք եղավ թագաւորին ալ աւելի զինքը գոց պահելու, մէկի մը հետ խօսիլ որ պէտք ըլլար, առաջ նայիլ կուտար վրան՝ որ զէնք մը չունենայ, ետքը մէկ պատուհանի (փէնճիրէի) մը պէս ծակ շինած

ունէր, ան պատուհանէն կը խօրաթէր։ Մա-կեց եռքնալ 1774. մէկ հիւանդութի մը եկաւ Թագաւորին վրայ, որով ամենեւին անկար եղաւ կառավարելու. Հետեւեալ տարին ինջուածքաւ ինջաւ վրան, շատ վախ տրվաւ մեռնելու, եօքը քիչ մը վրայ գա-լով անանկ հիւանդոտ մնաց։

Հռոմայու երկրին մէջնաւ 1771ին շատ պակսութի եղաւ ցորենի գինացէն, ան ա-տեններ մատրապարզները շատնալով ինչ-պէս որ սովորութի է, ան ատեն սղութի ձգելու պատճառ կըլլային. աս իմանալով կղեմէս ժդ. կանկանելլի՝ շատ լռաակ փոխ տրվաւ կարօտ եղօղներուն որ ցորենն առ-նեն, արգելեց որ մէկը չիկրնայ մատրապա-զութի ընել, ցորենին գինը նաւ ինջեցուց, ամմէն մէկ գաւառին գլխաւոր քաղաքնե-րուն մէջ համբարներ չինել տրվաւ, ցորե-նով լեցուց, աստուծնեայէն բերել տալով աղքատաց ու գեղացոց բաժնելու համար, որպէս զի չխարկնն ուտելու և ցանելու համար։ Մս բանս շատ դէմ էր վաճառա-կաններու, բայց կանկանելլին գիտէր որ՝ Նաբօլի 1764ին, Ղօսքանան 1767ին աս ըղ-ձուշութիններըը չընելով՝ սովը (խըթլը), ու սովէն հետեւեալ հիւանդութիններըը որ-չափ մարդ մեռցուցերէին ան տեղերը։

